ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՌՈՒՍԱՑ

ՅՕՐԻՆԵԱԼ

Ի Հ. ԳԱԲՐԻԵԼԷ ԱՅՎԱԶՈՎՍԿԻ

ԿԱՖԱՑՒՈՅ ՄԽԻԹԱՐԵԱՆ






Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՍՈՒՐԲՆ ՂԱԶԱՐ

1836



ՅԻՇԱՏԱԿ ՀՈԳԻՈՅ

ՏԵԱՌՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ԵՒ ԵՂԲՕՐ

ՆՈՐԱ ՊԱՐՈՆ ԲԱՂՏԱՍԱՐԱՑ

ՆԵՓԻՍԵԱՆՑ

# ԶԵԿՈՒՑՈՒՄՆ

ՊԵՏՈՒԹԻՒՆ Ռուսաց յերբեակ գա-
լուց միջոցի անկարծելի բարգաւա-
ճեալ 'ի զէն և յիմաստս և 'ի կենցաղա-
կիրթ քաղաքականութեն, առաւել քան
զեղանկար 'ի հիացումն կարգեցաւ աշ-
խարհի, յորում է տեսանել ակն յայտ-
նի զմեծագոր ձիրն և զպերճ արգասիս
ազգասէրն հանճարոյ ։

Ընդ նորին թեւարկութբ հովանաւո-
րեալ և ոչ սակաւք յանդրանկաց այրա-
ցելոյ մօրն ամենայն ազգաց, Արարա-
տեանն սեռն աշխարհի, վաղու եւ իղձ
լինէին 'ի գիտել զազգասիրութիւն և

զանցս և զգործս հոյակապ ժառանգոր-
դացն հիւսիսոյ, որ այսգունակ մար-
դասիրութ̃ք հիւրընկալեցին զնոսա:

Եւ ահա ՚ի լրումն ըղձից նոցա, մա-
նաւանդ թէ իրաւացի թախանձանացն,
այս ընծայի համառօտ Պատմութի̃ Ռու-
սաց ՚ի սկզբանէ հետէ մինչև ցժամանակ
թագաւորութե̃ն Եղիսաբեթի, հան-
դերձ ծաղկաքաղ յաւելուածով յիշա-
տակելեաց դիպելոց ՚ի Ռուսիա ՚ի Պե-
տրոսէ երրորդէ և այսր:

Կարևոր թուեցաւ յաւել զկնի և
զնկարագիր աշխարհին Ռուսաց ըստ
քաղաքական հանգամանաց արդի ժա-
մանակացս. հոգ ՚ի մտի եդեալ զնոցին
իսկ Ռուսացն մատենագրաց զկարծիս
ընտրել ըստ կարի յայսմ ամենայնի ա-
ռաջնորդ, և խոյս տալ ՚ի բազմաբանու-
թէ̃, յուշիմութի̃ ընթերցասիրին առ-
նելով ապաստան հանդերձ այլովք և
զպիտանի խրատուց և զիմաստից ար-
դիւնս յանձին ամբարումն:

Եւ եթէ մտադիր ընթերցող հայկ-

ազն բազում ինչ յանցս նախնոյն Ռու-
սիոյ ազգ. և կշիռ անցից հայրենի աշ-
խարհին տեսանիցէ , մանաւանդ զա-
մանին յերկար անզօր և տառապեալ մնա-
լոյ 'ի պատճառս անմիաբանութեան իշխա-
նացն , մեր յոյս և ուխտ սրտի այն է ,
զի և յայժմու բարգաւաճանացն Ռու-
սաց 'ի վարժս իմաստից և 'ի փոյթ ազ-
գասիրութեան ոչ հարկանիցի և ունայնա-
ձեւն վերջնոցի ։

Ի հինգ գլուխս բովանդակեսցի զՊատ-
մութիւնս .

Ա. Յամէ տն 862 մինչև ցամն 1054,
միջոց ժամանակի հարիւր իննսուն և եր-
կուց ամաց . յորում սկիզբն պետու-
թեան Ռուսաց 'ի Նովկորոտ 'ի Ռիւրի-
քայ , և Օլէկայ փոխադրել զաթոռն 'ի
Քիեւ քաղաք , և թագաւորել որդւոցն
Ռիւրիքայ ազգաւ մինչև ցՅարոսլաւ
օրէնսդիր ։

Բ. Ի 1054 ամէ ցամն 1236, միջոց
ժամանակի հարիւր և ութսուն ամաց .
յորում եօթնեւտասն թագաւորք պայա-

զատեն՝ եղբայր յեղբօրէ ժառանգելով
յաճախ զաթոռն . և 'ի նոսա ականա-
ւորք Վլատիմիր Մոնոմախ , և Անդրէաս՝
որ 'ի Քիեվէ 'ի Վոլատիմիր քաղաք փո-
խեաց զաթոռն :

Գ . Ի 1237 ամէ ցամն 1460 , միջոց
ժամանակի հարիւր քսան և երից ա-
մաց . յորում արշաւանք Թաթարաց 'ի
Ռուսիա , և Թագաւորել Ալէքսանդրի
Նեւսքեայ , և Միքայէլի Թվերացւոյ և
այլոց մինչև ցԻւան Ա , որ հաստատեաց
զաթոռ Թագաւորութեն 'ի Մոսքուա :

Դ . Ի 1460 ամէ ցամն 1613 , միջոց
ժամանակի ամաց հարիւր յիսուն և ե-
րից . յորում Թագաւորել Իւանեանց՝
երրորդին և չորրորդին , և ազատել աշ-
խարհին Ռուսաց յերեսաց Թաթարաց ,
և շփոթք վասն աթոռոյն՝ որ հուսկ ու-
րեմն անցանէ առ տոհմն Ռոմանովեանց :

Ե . Ի 1613 ամէն մինչև ցամն 1762 ,
պատմութի ժամանակի հարիւր քառա-
սուն և ինն ամաց , 'ի Թագաւորելոյ
անտի Միքայէլի Ռոմանով մինչև ցմահ

Եղիսաբեթի ։ Յորս յարեմք զլրումն պատմութեան Ռուսաց, միջոց ժամանակի ամաց վաթսուն և ութից. այս է ՝ի թագաւորելոյ Պետրոսի երրորդի մինչև ցհինգերորդ ամ ինքնակալութեան մեծի կայսեր ՆԻԿՈՂԱՅՈՍԻ Ա. ցամն 1830 ։





ՆԻԿՈՂԱՅՈՍ Ա.

Ինքնակալ ամ. Ռուսաց

НИКОЛАЙ I.

Самодержецъ Всероссійскій

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՌՈՒՍԱՑ

## ԳԼՈՒԽ Ա.

862=1054

### ՀԱՄԱՌԱԿԱՊԵՏՈՒԹԻՒՆ ՆՈՎԿՈՐՈՏԱՑ

ՈՐՊԷՍ յոլով ազգաց Եւրոպիոյ, նոյնպէս՝ և առաւել ևս Ռուսացն պատմութիւն անծանօթ է՛ սկիզբն մինչև ցհինգերորդ դար. յորում Սլաւեանք նեղեալք ՚ի Բուլղարաց՝ խաղացին անցին, ամեն, ՚ի Ռուսիոյ յափանց անտի Դանուբ գետոյ: Կէս նոցա զաղթեալ առ Տնեպերաւ՝ կառուցանեն զքաղաքն Քիեվ. և միւս կէսն անցեալ ևս դիմեալ ընդ հիւսիս՝ կանգնեն իւրեանց քաղաք Սլաւենսք անուն. և ՚ի կրկին անգամ անկայանալ քաղաքին յերեսաց պատերազմաց և ժանտ ախտից՝ հիմն արկանեն նորոյ քաղաքի, այն ինքն է Նովկորոտ:

Սոքա անդստին բաղձանօք և հզօր

գոլով քան զմերձակայս իւրեանց, գիտացին անքոյթ պահել զազատութիւն իւրեանց, և գամ քան զգամ բարգաւաճեցին վաճառաշահ ընդ Յոյնս լինելով. զի տային նոցա մորթ և սամոյրենիս, ձկունս աղծեալս, մեղր և մոմ. և առնուին 'ի նոցանէ գինի, բրինձ, մրգս, ասր, մետաքս և կտաւ:

Եւ այնչափ ահարկու եղեն շրջակայ ազգաց, զի և անդէն 'ի հինգերորդ դարուն յառակս եղև ասել. " Ո՞ իշխեսցէ ընդդէմ կալ Աստուծոյ, և Նովկորոտայ մեծին ,,: Եւ էին յայնժամ 'ի Նովկորոտ, որպէս ասեն, չորեքհարիւր հազար բնակիչք:

ՌԻՒՐԻԿ

ՎԱՂ զեղծան Նովկորոտացիք երջանկութեան իւրեանց և անկան յընտանի յուզմունս շփոթից. և 'ի դարման չարեացն խորհուրդ վաստութէ 'ի մէջ առեալ՝ կոչեցին իւրեանց 'ի Թիկունս զիշխանան Ինկլիոյ զերեսին եղբարս, որոց անուանք էին Ռիւրիկ, Զինեաւ, և Թրուվոր, որպէս զի տասցեն իրաւունս և նուաճեսցեն զգխմակացս ընկերհաշտութեանն. և էին սոքա յազգէ Վարեակք, կամ ըստ այլոց՝ Ռուսք հատուածք 'ի Սլաւեանց. Որոց եկեալ

հաստատեցին զտեղի բնակութեան իւրեանց արտաքոյ Նովկորոդայ յերից կողմանց քաղաքին. Ռուրիկ 'ի Լատոկա, Սինեա 'ի Պելօօզերօ, և Թրուվոր յԻզպորսք. և յանդորրու պահէին զՆովկորոդ 'ի յարձակմանց օտարաց և յաւանին դըժ-տութեց:

Ի մեռանել Սինեայ և Թրուվորայ զհետ երկուց ամաց, միայն ժառանգեաց Ռուրիկ զիշխանութիւն եղբարցն՝ 'ի միապետել ձեռն արկանէր. և այն ինչ խլրտէին Նովկորոդացիք Թօթափել զլուծն Ռուրիկեայ, սաստ ահա պատճառս իրաւանց առեալ նորա՝ ձկուն արար զնոսին զինու բռնութբ. եդ զաթոռ իշխանութե իւրոյ 'ի Նովկորոդ, և որ շուրջ քաղաքք և աւանք էին՝ բաշխեաց զնոսին 'ի զօրավարս իւր և 'ի բարեկամս, և հզօրացաւ յոյժ յոյժ: Եւ ընդ սմս եօթնևտասն խաղաղութբ կալեալ զԹագաւորութին՝ մեռաւ յամի ամն 879, Թողեալ որդի մի Իկոր անուն չորեքամեայ, որում խնամակալ կարգեաց զՕլեկ զազգականն իւր:

Առ Ռուրիկաւ Թուի բարձեալ խափին որ ընդ Վարեակս և ընդ Յունաստան, և ամենեցուն կոչեցեալ հասարակաց միով անուամբ Ռուսք:

## ՕԼԵԿ

Սա այր հզօր և խորամանկ փութա-ցաւ զիւրև ածել զՎարեակսն, և 'ի նո-ցունց յոլովել իւր անձնապահս. ապա զօրաժողով լեալ 'ի Վարեկաց, 'ի Սլա-ւեանց և յայլոց Սարմատացւոց՝ խաղաց նախ առաջին 'ի Քիեւ. 'ի մտի եդեալ էր յաւելուլ և զայն 'ի պետութիւն անդր Նովկորոտայ:

Ածէր ընդ իւր և զԻկոր մանուկ. և զճանապարհային նուաճեալ զքա-ղաքսն Սմոլենսկ և Լիւպեց, եկն ե-հաս գիշերի մերձ առ պարիսպս Քիե-ւայ: Անդ 'ի դարանի արարեալ զմեծ կէս բանակին, ընդ այգն հրեշտակս արձակեաց առ Ասքոլտ և Տիր որ էին գլխաւորք աւագանւոյն Քիեւայ՝ կան-խաւ ընդվզեալք 'ի ներքուստ ձեռնին Րիւրիկեայ, և առէ ցնոսա բանիւք նեն-գուն. “Աքք վաճառականք իմ և քաղաքա-կիցք, իմ 'ի մտի եդեալ է խաղալ ընդ-դէմ Յունաց. արդ թէ բարւոք թուի յաչս ձեր՝ եկայք առ իս, և խորհուրդ կարևոր միաբանութեան հաստատեսցուք 'ի միջի„: Եւ իբրև ելին յանկարծակի իշխանքն ըստ դուռն քաղաքին, անդէն պաշարեաց զնոսա Օլեկ իւրովք զօրա-կանօք, և կալեալ զձեռանէն Իկորայ՝

տանէ ցնոսա զայրագին. «Չէք դուք իշխանք, և ոչ որդիք իշխանաց. ահա որդին Ռիւրիքայ՝ միոյն իշխան Ռուսիոյ»: և հրամայեաց խողխողել զնոսա, և ապա խուժեալ 'ի ներքս իւրովքն հանդերձ անհակառակ, տիրեաց քաղաքին, և անդ հաստատեաց զաթոռ իշխանութեան: Կառայց և այլ ևս քաղաքս շուրջանակի, և ընդ հարկաւ արար զՏրեւլեանս, զՍեւերեանս, զՌադիմիչս, և զայլս յազգաց մերձաւորաց:

Այլ նորա 'ի Ցուձնացն պետուէն անկն եղեալ էր, և 'ի Բիւզանդիոն դնել զաթոռ իւր. վասն որոյ պատրաստեալ նաւակս երկու հազար ընդ մեծ և ընդ փոքր, թողու զԻկոր 'ի Կիեւ, և ելեալ զնաւակօն ամբոխիւ խիզախ Վարեկաց հանդերձ այլովք՝ անհնարին տաժանմամբ նաւարկեալ անցանէ ընդ Ջրվէժան Տնեպերայ, և ելեալ 'ի կղզի մի մերձ յՕզու նորոգէ զխարխալեալ նաւակսն. զնոյն և յանցանել ընդ Պոնտոսն արտաքեալ՝ գայ հասանէ 'ի բերան նեղցին Բիւզանդիոյ, այն է Վոսփորան. զոր անցեալ արգելեալ աստուար շղթայիւք, հրամայէ ընդ ցամաք զնաւակսն վարել՝ անիւս 'ի ներքոյ նոցին յարմարեալ, մինչև եկին էջ հուպ 'ի պարիսպս անդր թագաւորեալ քաղաքին: Իսկ թէ զոր չարիս անցոյց այս բանակ ահարկու տակաւին դեռևս հեթանոսս՝ ընդ բնակիչս ծովեզերեայցն, անհնար է բանիւ յայտ

առնել. զի յեկեղեցեաց մինչեւ 'ի չիրիմս մեռելոց ոչ զերծան 'ի յափշտակութենէ նոցա, եւ ոչ ալիք ծերոց մինչեւ ցգրկընկալ մանկունս ոչ ապրեցան 'ի սրոյ նոցա։

Իսկ Լեւոն իմաստասէր հայկազարմ որ ինքնակալէրն յայնժամ, յաղեկարծում ազգերին 'ի խնդիր ուխտի խաղաղութեան եղեւ ապաստանան։ Եւ այս դաշինք հաստատեցան 'ի միջի, զի հատուցեն Յոյնք զօրականին Ռուսաց մէն մի դահեկան առ այր, եւ զի ընդ ամիս վեց կերակրեսցեն զվաճառականս Ռուսաց որ դայցեն 'ի Բիւզանդիոն, եւ ազատս արասցեն զնոսա յամենայն բաժից եւ մաքսից։ Ի հաւատարմութիւն այսր ամենայնի երդուաւ Լեւոն 'ի վերայ խաչին, եւ Ռուսք 'ի սուսերս իւրեանց եւ 'ի դիսն 'ի Փեռուն ամպրոպայինն, եւ 'ի Վոլոս հօտից շահապետ։ Անդ 'ի դրունս Բիւզանդիոյ կախեցին զվահանս իւրեանց Օլեկ եւ առաջնորդք իւր, եւ դարձան 'ի Քիեւ ազխազխեալք բազում աւարաւ։

Զհետ ամաց ութից 'ի ծագել երկպառակ խորհրդոց եւ դժուարութեանց ինչ զդաշանցն հաստատելոց՝ դարձեալ առաքեաց Օլեկ հրեշտակս 'ի Կոստանդնուպօլիս, եւ այնուհետեւ ընդ ամս քսան եւ ութ խաղաղութիւն կացին ընդ միմեանս Յոյնք եւ Ռուսք։

Իսկ իբրեւ Իկոր յարբունս եհաս, Օլեկ ած նմա 'ի կնութիւն զօրիորդ մի, զոր եւ

յետ անուան Օլկա անուանեաց, և ինքն յետ սակաւուց օձահար եղեալ մեռաւ յամին 913, խնամակալեալ քաղաքութե̃ զամս երեսուն և չորս :

# ԻԳՈՐ

Ի ՀԱՄԲԱՒ մահուան Օլեկայ փառաւորանձեցին յԻկորայ Տրեւլեանք և մերձաւորք նոցա, զլացեալ նմա զպայմանեալ սակ հարկացն. այլ ապա ընդ ծանրագոյն հարկօք նուաճեցան : Առաւելագոյն ձգանց պէտք եղեն Իկորայ 'ի նուաճել զՈւկլիչս բնակեալս առ Տնեբերաւ. յորոց վերայ արձակեալ զզաւր սպարապետ իւր Սվենալդ՝ էառ զքաղաք նոցա զՓնիի եռամեայ պաշարմամբ, և եդ 'ի վերայ նոցին ամ ըստ ամէ հարկ ըստ երդմորթ մի աքիսի : Այսպս հալածական արար Իկոր և զՓեչենեկս արշաւեալս 'ի Ռուսիա :

Եւ վառեալ ոգւով աշխարհակալութե̃, մանաւանդ թէ հուղկահարութե̃ ըստ օրինակին Օլեկայ, կազմեաց, որպէս ասեն, նաւակս բիւր մի, եդեալ քառասուն այր 'ի մի նաւակ, և խաղաց ընդդէմ Յունաց :

Սոցա ևս զնոյն սաստանաւական ճանապարհն Օլեկայ հատեալ անցեալ, և յայրեաց և յաւեր դարձուցեալ զգա-

ւառան Պափլագոնիոյ, Բիւթանիոյ և Պոնտոսի, եկին հասին 'ի Վոսփորոն :

Յայնժամ Յոյնք վառեալք 'ի վրէժ քինու անարգանացն անցելոց, և յառաջիկայիցն խիթացեալք՝ զօրաժողով եղեն յամենայն կողմանց, յարձակեցան կատաղաբար, և փախուցին զՌուսս անդրէն 'ի նաւակս իւրեանց : Եհաս 'ի վերայ և Թէոփանէս պատրիկ իւրով նաւատորմաւն, և ահագին կոտորած 'ի վերայ հասուցանէր Ռուսաց՝ արտևատաւոր հրձգութեամբքն. մինչ զի հազիւ զչորրորդ մասն քանակին իւրոյ ապրեցուցեալ Իկորայ՝ եկն անկաւ 'ի Քիեվ :

Յետ ոչ սակաւուց վերստին խրախուսեալ զհւրսն 'ի յոյս աւարին Յունաց, զինեաց եհաս մինչև 'ի Խրիմ. այլ խաղաղանէր ինքնակալն Կոստանդին Պերփիւռուժէն ոձապարեաց խոստացեալ նմա հատուցանել անթերի ըզխնդրելի տուրսն, և նորոգեալ զդաշինսն ըստ պայմանացն զորս պահանջէր 'ի նմանէ Իկոր՝ դարձոյց զնա միւսանգամ յերկիր իւր :

Ի ձախողել այսպէս ակնկալութեան Ռուսաց՝ ստիպեցին զԻկոր 'ի Դրեւլեանց անտի խլրտելոց յապստամբութի՝ հանել զվրէժն միանգամայն և զաւարն. և նորա գնացեալ նուաճեաց զնոսա, և յաւել ևս 'ի ծանրութի հարկացն զոր հարկէին նմա. և սոքա յանհոգս եղեալ

վասն մեծի յաղթութեանն՝ արձակեաց յիւրմէ զմասն ինչ բանակին ։

Յայնժամ դարանեցան նմա Տրեւլեանք, և յանկարծակի հասեալ 'ի վերայ հատին զգլուխն, և մեռաւ նա ամաց վաթսուն և ութից՝ թագաւորեալ ամս երեսուն և երկու. և եթող ընդ խնամակալութ՟ կնոջ իւրոյ Օլկայի զորդի մի մանուկ հասակաւ Սվեաթոսլաւ անուն ։

## ՕԼԿԱ

ՏՐԵՒԼԵԱՆՔ ակն ունելով յօգուտ անձանց վարել զանտերական հասակն Սվեաթոսլաւայ, խորհեցան զեշխանն իւրեանց փեսայացուցանել Օլկայի, և յինքեանս ձգել զթագաւորութիւն Քիեւվայ. այնր իրի առաքեալ առ Օլկա յաւագորերոյն իւրեանց արս քսան, զառաջինն ողերախ իսկ անբասիր արարին զգաւաճանել իւրեանց զխնդիր անկատարապայման ծանրութեան հարկացն՝ զորս պահանջէր 'ի նոցանէ. և ապա 'ի դովեստ առեալ զհանճար և զքաջութիւն իշխանին իւրեանց, յորդոր եդեն Օլկայի յանձն առնուլ զայն նմա 'ի հարսնութիւն ։

Օլկա 'ի վերինս երեսս հաւանեալ խնդրոյ նոցին, առ այժմ դարձարուք

գոլով քան զմերձակայս իւրեանց, գի-
տացին անքոյթ պահել զազատութիւն
իւրեանց, և գամ քան զգամ բարգա-
ւաճեցին վաճառականաւ ընդ Ցոյնս լինե-
նելով. զի տային նոցա մորթ և սամոյ-
րենիս, ձկունս աղծեալս, մեղր և մոմ.
և առնուին 'ի նոցանէ գինի, բրինձ,
միրգս, աղ, մետաքս և կտաւ:

Եւ այնչափ ահարկու եղեն շրջակայ
ազգաց, զի և անդէն 'ի հինգերորդ դա-
րուն յառաջ եղև ասել. "Ո՞ իշխեսցէ
ընդդէմ կալ Աստուծոյ, և Նովկորո-
տայ մեծին,,: Եւ էին յայնժամ 'ի Նով-
կորոտ, որպէս ասեն, չորեքհարիւր հա-
զար բնակիչք:

## ՐԻՒՐԻՔ

ՎԱՂ զեղծան Նովկորոտացիք եր-
ջանկութեան իւրեանց և անկան յընտա-
նի յուզմունս շփոթից. և 'ի դարման
չարեացն խորհուրդ վատութե 'ի մէջ
առեալ՝ կոչեցին իւրեանց 'ի Թիկունս
զիշխանսն Ֆինկլիոյ զերեսին եղբարս, ո-
րոց անուանք էին Րիւրիք, Ջինեաւ, և
Թրուվոր, որպէս զի արասցեն իրաւունս
և նուաճեսցեն զգժմակացս ընկերհաշ-
տութեանն. և էին սոքա յազգէ Վա-
րեակք, կամ ըստ այլոց՝ Ռուսք հա-
տուածք 'ի Սլաւեանց. Որոց եկեալ

հաստատեցին զտեղի բնակութեան իւրեանց արտաքոյ Նովկորոտայ յերից կողմանց քաղաքին. Ռիւրիկ 'ի Լատոկա, Չինէու 'ի Պելօզերօ, և Թրուվոր յԻզպորսք. և յանդորրու պահէին զՆովկորոտ 'ի յարձակմանց օտարաց և յաւանին գըժ-տութեց:

Ի մեռանել Չինէուայ և Թրուվորայ զհետ երկուց ամաց, միայն ժառան-գեաց Ռիւրիկ զիշխանութիւն եղբարցն՝ 'ի տիրապետել ձեռն արկանէր. և այն ինչ խլրտէին Նովկորոտացիք թօթափել զլուծն Ռիւրիկեայ, աստի ահա պատճառս կռուանց առեալ նորա՝ ճկուն արար զնոսին զինու բռնութեամբ. եդ զաթոռ իշխանութեան իւրոյ 'ի Նովկորոտ, և որ շուրջ քաղաքք և աւանք էին՝ բաշխեաց զնոսին 'ի զօրավարս իւր և 'ի բարե-կամս, և հզօրացաւ յոյժ յոյժ: Եւ ընդ ամս եօթնևտասն խաղաղութեամբ կա-լեալ զթագաւորութիւն՝ մեռաւ յամի Տն 879, թողեալ որդի մի Իկոր անուն չորեքամեայ, որում խնամակալ կարգեաց զՕլեկ զազգականաց իւրոց.

Առ Ռիւրիկաւ թուի բարձեալ կռապին որ ընդ Վարեակս և ընդ Սլաւեանս, և ամենեցուն կոչեցեալ հասարակապար միով անուամբ Ռուսք:

## ՕԼԵԿ

Սա այր հզօր և խորամանկ փութացաւ զիւրև ածել զՎարեակն, և 'ի նոցունց յօրինել իւր անձնապահս. ապա զօրաժողով լեալ 'ի Վարեկաց, 'ի Սլաւեանց և յայլոց Սարմատացւոց՝ խաղաց նախ առաջին 'ի Քիեւ. 'ի մտի եդեալ էր յաւելուլ և զայն 'ի պետութիւն անդր Նովկորոդայ:

Ածէր ընդ իւր և զԻկոր մանուկ. և զճանապարհայն նուաճեալ զքաղաքսն Սմոլենոք և Լիւպեց, եկն եհաս զիջերի մերձ առ պարիսպս Քիեւայ: Անդ 'ի գաղտնի տարաբեալ զմեծ կէս բանակին, ընդ այգն հրեշտակս արձակեաց առ Օսքոլտ և Տիր որ էին գլխաւորք աւագանւոյն Քիեւայ՝ կանխաւ ընդվզեալք 'ի ներքուստ ձեռինն Ռուրիքայ, և ասէ ցնոսա բանիւք նենգութե. "Արք բարեկամք իմ և քաղաքակիցք, իմ 'ի մտի եդեալ է խաղալ ընդդէմ Յունաց. արդ թէ բարուք թուի յաչս ձեր՝ եկայք առ իս, և խորհուրդ կարևոր միաբանութե հաստատեսցուք 'ի միջի,,: Եւ իբրև եկին յանկասկածս իշխանքն ըստ դուռն քաղաքին, անդէն պաշարեաց զնոսա Օլեկ իւրովք զօրականօք, և կալեալ զձեռանէն Իկորայ՝

տուէ ցնոսա զայրադին. «Չէք դուք Իշխանք, և ոչ որդիք Իշխանաց. ահա որդին Րիւրիքայ՝ միոյն Իշխանն Ռուսիոյ». և հրամայեաց խողխողել զնոսա, և ապա խուժեալ 'ի ներքս իւրովքն հանդերձ անհակառակ, տիրեաց քաղաքին, և անդ հաստատեաց զաթոռ Իշխանութեանն: Կառուցց և այլ եւս քաղաքս շուրջանակի, և ընդ հարկաւ արար զՏրեւլեանս, զՍեւերեանս, զՌադիմիչս, և զայլս յազգաց մերձաւորաց:

Այլ նորա 'ի Յունաց պետութիւն ակն եդեալ էր, և 'ի Բիւզանդիոն գնել զաթոռ իւր. վասն որոյ պատրաստեալ նաւակս երկու հազար ընդ մեծ և ընդ փոքր, Թողու զԻգոր 'ի Կիեւ, և լցեալ զնաւակսն ամբոխիւ խիզախս Վարեկաց հանդերձ այլովք՝ անհնարին աւարժանմամբ նաւարկեալ անցանէ ընդ Ջրվէժսն Տնեպերայ, և եկեալ 'ի կղզի մի մերձ յՕզու նորոգէ զխարխալեալ նաւակսն. զնոյն և յանցանել ընդ Պոնտոս արարեալ՝ դայ հասանէ 'ի բերան նեղուցին Բիւզանդիոյ, այն է Վոսփորան. զոր տեսեալ ապխազդեալ սուար շղթայիւք, հրամայէ ընդ ցամաք զնաւակսն վարել՝ անիւս 'ի ներքոյ նոցին յարմարեալ, մինչև եկեալ էջ հուպ 'ի պարիսպս անդր Թագաւորեալ քաղաքին: Իսկ թէ զոր չարիս անցոյց այս բանակ ահարկու տակաւին գենիւ հեթանոս՝ ընդ բնակիչս ծովեզերեայցն, անհնար է բանիւ յայտ

տանել․ զի յեկեղեցեաց մինչև 'ի շի-րիմս մեռելոց ոչ զերծան 'ի յափշտա-կութեանց նոցա, և ոչ ալիք ծերոց մին-չև ցգրկընկալ մանկտին ոչ ապրեցան 'ի սրոյ նոցա ։

Իսկ Լևոն իմաստասէր հայկազարմ որ ինքնակալէրն յայնժամ, յարեկար-ծում աղետին 'ի խնդիր ուխտի խաղա-ղութեան եղև աղաչաւոր ։ Եւ այս դա-շինք հաստատեցան 'ի միջի, զի հա-տուսցեն Յոյնք զօրականին Ռուսաց մէն մի գահճեկան առ այր, և զի ընդ ա-միսս վեց կերակրեսցեն զվաճառականսն Ռուսաց որ գայցեն 'ի Բիւզանդիոն, և ազատս արասցեն զնոսա յամենայն բա-ժից և մաքսից ։ Ի հաստատութիւն այսր ամենայնի երդուաւ Լևոն 'ի տէր խաչն, և Ռուսք 'ի սուսերս իւրեանց և 'ի դիսն 'ի Փետրունն ամպրոպայինն, և 'ի Վոլոս հօ-տից շահապետ ։ Անդ 'ի դրունս Բիւ-զանդիոյ կախեցին զվահանս իւրեանց Օլեկ և ատաղձանին իւր, և դարձան 'ի Քիեվ աղխաղխեալք բազում աւարաւ ։

Զհետ ամաց ութից 'ի ծագել երկ-պառակ խորհրդոց և դժուարութեանց ինչ զգաշանցն հաստատելոց՝ դարձեալ ա-ռաքեաց Օլեկ հրեշտակս 'ի Կոստանդ-նուպօլիս, և այնպէս ընդ ամս քսան և ութ խաղաղութեամբ կացին ընդ միմեանս Յոյնք և Ռուսք ։

Իսկ իբրև Իկոր յարբունս եհաս, Օլեկ ած նմա 'ի կնութիւն զօրիորդ մի, զոր և

ւառան Պափլագոնիոյ, Բիւթանիոյ և Պոնտոսի, եկին հասին 'ի Վոսփորոն։

Յայնժամ Յոյնք փութային 'ի վրէժքինու անարգանացն անցելոց, և յառաջիկայիցն խիթացեալք՝ զօրաժողով եղեն յամենայն կողմանց, յարձակեցան կատաղաբար, և փախուցին զՌուսս անդրէն 'ի նաւս իւրեանց։ Եհաս 'ի վերայ և Թէոփանէս պատրիկ իւրով նաւատորմաւն, և ահագին կոտորած 'ի վերայ հասուցանէր Ռուսաց՝ արուեստաւոր հրձգութեամբքն. մինչ զի հազիւ զչորրորդ մասն քանակին իւրոյ ապրեցուցեալ Իգորայ՝ եկն անկաւ 'ի Քիեվ։

Յետ ոչ սակաւուց վերստին խրախուսեալ զհուրսն 'ի յոյս աւարին Յունաց, դիմեաց եհաս մինչև 'ի Խրիմ. այլ խաղաղասէր ինքնակալն Կոստանդին Պերփիւռուժէն աճապարեաց խոստացաւ նմա հատուցանել անթերի ըզխնդրելի տուրսն, և նորոգեալ զդաշինսն ըստ պայմանացն զորս պահանջէր 'ի նմանէ Իգոր՝ դարձոյց զնա միւսանգամ յերկիր իւր։

Ի ձախողել այսպէս ակնկալութեան Ռուսաց՝ ստիպեցին զԻգոր 'ի Դրեւլեանց անտի խլրտելոց յապստամբութի՝ հանել զվրէժն միանգամայն և զաւարն. և նորա գնացեալ նուաճեաց զնոսա, և յաւել ևս 'ի ծանրութի հարկացն զոր հարկէին նմա. և ապա յանհոգս եղեալ

վասն մեծի յաղթութեան՝ արձակեաց յերամէ զմասն ինչ բանակին ։

Յայնժամ դարձան նոմա Տրեւլեանք, և յանկարծակի հասեալ 'ի վերայ հատին զգլուխն, և մեռաւ նա ամաց վաթսուն և ութից՝ թագաւորեալ ամս երեսուն և երկու. և եթող ընդ խնամակալութ. կնոջ իւրոյ Օլկայի զորդի մի մանուկ հասակաւ Սվեաթոսլաւ անուն ։

## ՕԼԳԱ

ՏՐԵՒԼԵԱՆՔ ակն ունելով յօգուտ անձանց վարել զանախական հասակն Սվեաթոսլաւայ, խորհեցան զիշխանն իւրեանց փեսայացուցանել Օլկայի, և յինքեանս ձգել զթագաւորութիւն Քիեվայ. այնր իրի առաքեալ առ Օլկա յաւագորերոյն իւրեանց արս քսան, զառաջինն աղերսիւ իմն անբասիր արարին զդաւաճանել իւրեանց զԻգոր սակս տարապայման ծանրութե հարկացն՝ զորս պահանջէր 'ի նոցանէ. և ապա 'ի գովեստ առեալ զհանճար և զքաջութի իշխանին իւրեանց, յորդոր եղեն Օլկայի յանձն առնուլ գալ նմա 'ի հարսնութի ։

Օլկա 'ի վերին երեսս հաւանեալ խընդրոյ նոցին, առ այժմ դարձարուք

գուք առէ 'ի նաւակս ձեր , և վաղիւ եկեսջիք այսրէն , զի 'ի պատիւ երեսաց ձերոց և իշխանին ձերոյ ընկալայց զձեզ արժանապէս մեծարանօք առաջի իմոցս իշխանաց ։

Ի վաղիւ անդր առաքելոց կոչեաց զնոսա հրաւիրանաւ 'ի քաղաքն . և ընդ մտանել քսանեցունց իշխանացն 'ի ներքս՝ ըստ յառաջագոյն հրամանին Օլկայի սպասաւորք նոցա և զօրականք խարդաւանեցին զնոսա 'ի պատրաստեալ վիհ խորայատակ , և թաղեցին կենդանւոյն ։

Ապա առաքելոց դեսպանս առ Տրեւլեանս խնդրել 'ի նոցանէ և զայլ ևս ականաւոր մարդիկ , եթէ 'ի հաստատութիւ պայմանաց ամուսնութեան , և եթէ 'ի տանել զինքեն առ իշխանն իւրեանց . քանզի խիթամ ասէր , զի Քիեվացիք խափան ինչ լինիցին մեկնելոյս իմոյ աստի ։ Արձակեցին Տրեւլեանք արս յիսուն 'ի գլխաւորաց քաղաքին . որոց այն ինչ հասեալ առ Օլկա՝ հրաւիրեցան 'ի նմանէ 'ի բաղանիս , և անդէն կենդանւոյն այրեցան ։

Յետ այնորիկ յաւել առաքեաց այլ Ռուսս առ Տրեւլեանսն՝ ազդ առնել նոցա զգալուստ իւր , և աղաչել զի տարցին 'ի գերեզման Իգորայ մեղրաջուր և խորտիկս և գահաւորունս , իբր զի 'ի մտի եդեալ է խնջոյս մեծ կարդել անդանօր 'ի յիշատակ առաջնոյ ամուսնոյն՝ մինչ

չև ձեռն տուեալ երկրորդին ։ Կատարեցին Տրեւլեանք անդէտք եղելոցն՝ անվրէպ զբանսն, և խնդալից ընդ առաջ ելին Օլկային, որ եհաս սակաւուք ումամբք խորհրդակցօք. և 'ի հարցանել Տրեւլեանց զիշխանացն իւրեանց, ընկալան պատասխանի՝ թէ նոքա ընկերել և առաջնորդել ունին պաշտօնականացն և ընտանեաց գշխոյին ։ Իսկ նորա աշխար եդեալ 'ի վերայ գերեզմանին Իկորայ, չիրիմ կանգնէ 'ի վերայ. և զգեցեալ զհանդերձս հարսանեաց գայ 'ի խնճոյսն հանդերձեալս ըստ բանի նորա ։

Անդ իբրև ընդ գինիս մտեալ զգլխէին Տրեւլեանք, և սկսեալ իսկ էին բանս նախատանաց բարբառել ընդդէմ Իկորայ, Ռուսք անդէն յակնարկել Օլկայի անկեալ 'ի վերայ թմբրելոցն ընդ ուր հանին զամենեսեան, և կոտորեցին ոգիս իբրև քսան հազար ։

Դարձաւ Օլկա 'ի Քիեվ, և վաղվաղակի գունդ կազմեալ յարձակեցաւ 'ի վերայ Տրեւլեանց մինչ նոքա դեռ զաղմկաւն էին ։ Եւ ոչ հանդարտեալ նոցա ընդդէմ բանակին Ռուսաց 'ի փախուստ դարձան, և ապրեալքն 'ի սոյն ամրացեալ 'ի քաղաքին իւրեանց ընդ ամ մի ողջ ժուժկալեցին պաշարման, և ապա քաղջալերեալք 'ի խոստմանցն Օլկայ՝ թէ շատասցի պայմանեալ հարկաւ, և ոչ ևս վրէժխնդիր լիցի նոցա, անձնա-

տուր եղեն 'ի նա . և հաստատեցաւ զաշն խաղաղութեան 'ի միջի :

Անտի շուրջ յայց եկեալ 'ի գաւառս գաւառս, կառոյց զքաղաքն Փսքով և այլ ևս գեօղս և աւանս : Եւ իբրև դարձաւ անդրէն 'ի Քիեվ, կամեցեալ գիտել լինել զկրօնից քրիստոնէիցն գաւելոց անգամօր, յօժարեցաւ առնուլ զմկրտութիւն : Ամին իրի գնաց 'ի Բիւզանդիոն, և մկրտեալ կոչեցաւ Հեղինէ : Կայսրն Կոստանդին Պերփիւռոժէն ընկալաւ զնա յաւազանէ, և մեծապարգև մեծարեաց զնա և զիշխանս նորա, որք առ հասարակ մկրտեցան ընդ նմա :

Այլ ոչ կարաց Օլկա դարձուցանել 'ի քրիստոնէական հաւատս զորդի իւր զՍվեաթոսլաւ զպատերազմասէրն և զդոռոզ . և ինքն դշխոյն մեռաւ յամին 955 . և դասեցին զնա Ռուսք 'ի կարգս սրբոց :

## ՍՎԵԱԹՈՍԼԱՒ Ա.

ԻՆՔՆԻՇԽԱՆ անցեալ Սվեաթոսլաւ 'ի գահն հայրենի, լաւ համարեցաւ զվայրագասուն կեանս որում սովորեալ էր 'ի մանկութէ՝ քան զպերճանս արքունեաց : Վասն որոյ ցանգ 'ի բացի 'ի զէն և յասպազէն վարժեալ . լոկ մով ձիոց շա-

տանայր, և գետնախշտի բազօթեայ ննջէր:

Առաջին գործ արար յառնել պատերազմաւ 'ի վերայ Խազարաց կամ Խազրաց Խրիմու, որոց յաղթեալ՝ էառ և զմայր քաղաքաց նոցա որ կոչէր Սարքէլ:

Զհետ երկուց ամաց Նիկեփորոս Փոկաս կայսր ձեռն օգնականութեան խնդրեաց 'ի Սվեաթոսլաւայ ընդդէմ Բուլղարաց, որք միաբանեալ ընդ Մաճառաց ասպատակէին 'ի գաւառս Յունաց: Խաղաց գնաց Սվեաթոսլաւ 'ի Բուլղարս, և էառ զքաղաքս նոցա զՓերէասլաւ, այն է Եամպոլու առ Դանուբ գետով:

Բայց անդուստ պարապ առեալ Փեչենեկք յարձակեցան 'ի Ռուսիա, և պաշարեցին զԿիեւ: Այն ինչ յառնուլ էր քաղաքն, և ահա պատանի մին խիզախ և արի՝ հմուտ թշնամեացն բարբառոյ, այլակերպեալ զանձն իւր անց ընդ մէջ բանակի նոցա, և ընթացեալ ազդ արար 'ի գունդ մի Ռուսաց՝ որոց զօրավարին անուն էր Փռետիչ: Աճապարեաց նա յօգնութիւն քաղաքին. և ասաց աղաղակ զօրացն և հնչումն փողոց և թմբկաց, և անտի անդրէն կրկնել պաշարելոցն զաղաղակ ցնծութեան այնպէս իմն կարծեցուցին Փեչենեկաց, եթէ ինքնին Սվեաթոսլաւ եկեալ հասեալ իցէ 'ի վերայ, վասն որոյ փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց:

Եւ յիրաւի յետ սակաւուց հասանէ և Սվեաթոսլաւ զօրու ծանու. յարձա-կի 'ի Թշնամիսն, խորտակէ զնոսա, և ուխտիւ խաղաղութեան դուռ առնէ պա-տերազմին :

Այլ զի յապահովի կացուսցէ զգա-ւառս տէրութեան իւրոյ ընդդէմ արշա-ւանաց օտարաց, բաժանեաց զնոսին ընդ որդիս իւր. զՔիեւ ետ Եարոփոլ-քայ անդրանկին իւրում, զաշխարհն Տրեւլեանց՝ Օլեգայ, և զՆովկորոտ Վլա-տիմիրայ. իսկ անձին զԹագաւորութեան պահեալ զիշխանութիւն դարձ առնէ 'ի Բուլղարս 'ի նոր աթոռ արքայութեան իւրոյ :

Սվեաթոսլաւ 'ի խաղալ իւրում ընդ-դէմ Փեչենեկաց՝ ընդ իւր ածեալ էր զամենայն զզօրս իւր. սմին իրի քաջ գիտացին Բուլղարք յօգուտ 'ի կիր ար-կանել զպէրիպանսն. և 'ի դալ մերձենալ նորա 'ի Փերէեասլաւ՝ յարձակեցան ելին 'ի քաղաքէն և անկան 'ի վերայ բանակին Ռուսաց : Յանակնկալ յօր-հասական արկածիցն յանհնարինս մո-լեգնեալ Ռուսաց՝ ընդդէմ կացին յու-սահատաբար, մինչև պարտաւեալ Բուլ-ղարաց՝ լքին զզէնսն և զքաղաքն 'ի ձեռս Սվեաթոսլաւայ, և նա երկրորդ-անգամ տիրեաց քաղաքին :

Բայց ոչ այս միտք էին կայսերն 'ի հրաւիրելն անդ զՍվեաթոսլաւ 'ի Բուլ-ղարս, այլ զի պատերազմ ևեթ տացէ

նա 'ի կողմանէ Յունաց. վասն որոյ դեսպան առաքեալ յուշ ածնէր նմա զպայման դաշանցն, և ասէր մեկնել յաշխարհէն: Եւ պատասխանի յոխորտ Սվեաթոսլաւ. "Եթէ այլ ևս պնդեսցի ասէ կայսրդ, 'ի Բիւզանդիոն եկեց ես տաց նմա պատասխանի,,:

Աճապարեցին կանխեցին Ռուսք քան զՅոյնս 'ի պատերազմ, և առհաւաքին բազմութբ զօրաց, ըստ ոմանց երեքհարիւր հազարաւ, մխեցան 'ի Թրակիա, և հարեալ զամենայն 'ի հուր և 'ի սուր եկին և ղակիշ ածեալ բանակեցան հանդէպ Ադրիանուպօլսոյ:

Եւ էր անդ յայնժամ քաղաքապետ Վարդ կամ Վարդան ոմն (Թերևս հայկազն) այր նրբամիտ և ճարտար 'ի հնարս պատերազմի. որոյ կեղծեալ թէ յանհընարս է քաղաքն և մերձ է անձնատուր լինել՝ այնպէս պատրեաց զՌուսս, զի շատ համարեալ նց զմասն ինչ բանակին թողուլ առ պարսպօքն, ինքեանք յարպատակ սփռեցան շուրջ ընդ գաւառսն:

Յայնժամ անհնարին սաստկութբ ելեալ յարձակեցաւ Վարդ, կոտորեաց զպաշարիչսն, և կալաւ զբանակատեղն. և Ռուսք հազիւ անձնապուր եղեալ անկան 'ի Բուլղարս:

Ի գալ ամին միւսոյ ինքնին կայսրն Զմշկիկ հայկազն ել 'ի վերայ նոցա, և էառ զՓերէեսլաւ և զայլ քաղաքս: Իսկ Սվեաթոսլաւ եհան զվրէժ քինուն

'ի Բուլղարաց անտի, խողխողեալ անխնայ՝ զորոց միանգամ կալաւ կասկած մատնութեն :

Ցուրասթոլ միայն քաղաք մնացեալ էր առ Դանուբաւ 'ի ձեռս Ռուսաց. զոր պաշարեալ Յունաց ընդ ծով և ընդ ցամաք, արգելին առ սաստիկ 'ի քաղաքին : Վասն որոյ Սվենաթոսլաւ յուսահատեալ ել արտաքս ամենայն ամբոխիւն հանդերձ, և եռ ազխել 'ի Թիկանց կուռէ զգրունան, զի կամ յաղթեսցեն Ռուսք, և կամ 'ի սուր մատնեսցին :

Անդ ճակատ յարդարեալ Յունաց ընդդէմ Ռուսաց խառնեցան 'ի պատերազմ. և եղև մարտ սաստիկ յերկուց կողմանց անպարտելի, մինչև հուսկ ուրեմն յաղթահարեցին Յոյնք, և Սվենաթոսլաւ խնդրեաց զհաշտութիւն : Զիջաւ և կայսրն, և հաստատեցաւ 'ի մէջն ուխտ սիրոյ և միաբանութեան :

Ասի բան թէ Յոյնք 'ի կողոպտել զդիականունս Ռուսաց, գտին զի և կանայք բազումք էին 'ի զօրս անդ առնացի սպառազինեալք :

Ընտրեաց Սվենաթոսլաւ ընդ Բորիսթենէս առնել զդարձ իւր 'ի Ռուսիա, քան ընդ ցամաք՝ որպէս խրատ տայր նմա սպարապետն Սվենալտ. և հասեալ յառաջին ջրվէժս գետոյն, ուր և ետես զի Փեչենեկաց կալեալ պաշարեալ էր զտեղին, հարկեցաւ ձմերել անդէն :

Այլ 'ի սովաբեկ լինել ամբոխին իւ-

րոյ որ ըստ օրէ, խիզախեաց հատանել տնցանել զճամբարս Թշնամեացն. բայց 'ի բազմութէ նոցին անճողոպրելի մնացեալ՝ կորոյս զմեծ մասն բանակին իւրոյ. անկաւ և ինքն ամաց քառասունից, Թագաւորեալ ամս քսան և եօթն. և մեծ իշխանն փեչենեկաց առեալ ըզգանկն Սվեաթոսլաւայ՝ նովաւ ըմպէր զգինի, որպէս ասեն։ Սվենալտ ևեթ սակաւուք ոմամբք անկաւ 'ի Կիեվ տալ Եարոփոլքայ զլուր աղետից հօրն։

## ԵԱՐՈՓՈԼՔ Ա.

ԵԱՐՈՓՈԼՔ յողդողդ 'ի բարս և կնամարդի՝ 'ի Սվենալտ ևեթ յեց կայր 'ի զօրավարն և 'ի խորհրդականն քաջ. այլ և նա ոչ սակաւ խռովութե եղև պատճառք յարքունիսն։

Քանզի յաւուր միում դիպեալ որդին Սվենալտայ որսոյ աղագաւ յանտառս ուրեք Տրեւլեանց, իբրև ետես զնա յերկրի իւրում Օլեկ եղբայրն Եարոփոլքայ, որ նոյնպէս յորս ելեալ էր, ցասեաւ ընդ գործ պատանւոյն՝ յանդըգնութե և արհամարհանս դրեալ նմին զի յիւրում երկրին յորս հեծանէր. և ոչ ինչ ունելն մատուցեալ աղերսի ապաբանութեն՝ յարձակեցաւ ինքնին 'ի վերայ և խողխողեաց զնա։

Յայնժամ Սվենալտ 'ի մեծ սպա-
նութեն որդւոյն գրգռեալ յարուցանէ
զԵարոփոլք 'ի մարտ ընդդէմ եղբօրն։
Եւ Օլեգ 'ի պարտութեն մատնեալ՝ 'ի
փախչել անդ իւրում ընդ կամուրջ գե-
տոյն՝ առ խուռն խուժանի փախստէից
մերժեալ անկանի 'ի գետ անդր և անհե-
տանայ։

Անագան ուրեմն յապաշաւ նստեալ
Եարոփոլք խնդրէր զեղբայրն, ատա-
ղէր զանձն, և տրտնջէր զՍվենալտայ,
այլ 'ի զուր. յարեաւ գրաւեաց և զեղ-
բօրն իւրոյ զբաժին, և վաղվաղակի միխ-
թարեցաւ 'ի վերայ մահու նորին։

Վլատիմիր միւս եղբայրն Եարոփոլ-
քայ յերկեղոյն ինքնին փախստական եղև և
զիւրոյ բախտէն, և ոչ ապաւինեալ 'ի
սակաւաձեռն զօրս իւր, գնաց անկա-
ւառ Վարեակսն. և Եարոփոլք աճա-
պարեաց էառ և զնորա զերկիրն լքեալ,
և բաժանեաց 'ի կուսակիցս իւր։

Բայց Վլատիմիր հանդերձ Վարեկօքն
դայ մատանէ անընդդիմակ անդրէն 'ի Նով-
կորոտ, և ազդ առնէ Եարոփոլքայ ըղ-
գալուստ իւր առ նա յողջոյն զօրու-
ծանու։

Էր յայնժամ խորհրդակից մտերիմ
Եարոփոլքայ շողոմարար ոմն Պլուտ ա-
նուն. սա կաշառեալ 'ի Վլատիմիրայ՝
յանհոգս առնէր զԵարոփոլք, մինչև
եկն եհաս Վլատիմիր 'ի Քիեվ։ Եարո-
փոլք 'ի գրգռելոյ Պլուտայ սպան նախ

զարիագոյնս 'ի զօրավարաց իւրոց իբրև ձեռնտուս 'ի թշնամիս անդր, և ապա երկուցեալ թէ իւրքն մատնել ունին զնա 'ի ձեռս Վլատիմիրայ, որպէս կեղծէր Պլուտ, գաղտագնաց եղև 'ի քաղաքէն. և Քիեվացիք անթագաւոր մնացեալ՝ բացին զդրունս քաղաքին և ընկալան զՎլատիմիր 'ի թագաւոր։

Սակայն նորա այնու ոչ շատացեալ հետամտեալ եղև Եարոփոլքայ. և անօրէնն Պլուտ 'ի լրումն դաւաճանութեան իւրոյ հաւանեցոյց զեղկելին Եարոփոլք անձնատուր լինել 'ի ձեռս եղբօրն, և նա արար այնպէս, այլ անդէն առ տան Վլատիմիրայ խողխողեցաւ սրով։

Զաւուրս երիս մեծարեալ Վլատիմիրայ զՊլուտ, ապա ասէ ցնա. « Լցի ըզխոստումն իմ առ քեզ, վարեցեալ ընդ քեզ ցարդ իբրև զբարեկամ. ժամ է իբրև զդատաւոր արդար պատուհասել ըզտիրասպանդ դաւաճան »։ Եւ անդէն հրամանն ետ սպանանել զՊլուտ։

## ՎԼԱՏԻՄԻՐ Ա.

ՎԼԱՏԻՄԻՐ զերծ մնացեալ 'ի թշնամեաց շուրջանակի, ետ զանձն 'ի գրգանս հեշտութեան։ Ապա 'ի պահանջել Վարեկաց 'ի նմանէ 'ի վարձ ածելոյ իւրեանց զնա 'ի Քիեվ զհարկ ինչ սա-

րեկան, 'ի վերին երեսս խոստացաւ հաստուցանել նոցա զհարկ 'ի սահմանեալ ժամու, և գամ քան զգամ ստուարացուցեալ զզօրս իւր, այնպէս իմն ահարկու եղև Վարեկաց, զի լուեալ նոցա 'ի պահանջմանացն՝ խնդրեցին հրաման 'ի նմանէ երթալ 'ի Յունաստան 'ի խնդիր բախտի։ Եւ նորա տուեալ զհրամանն, առ նմին և գրով աղդ առնէր կայսեր և աղաչէր խորտակել զնոսա։

Նուաճեաց ապա զվատարանջեալսն յինքենէ ժողովուրդս, 'ի պարտուն մատնեաց և զԼեհս որոց թագաւորէր յայնժամ Մսթիսլաւ Ա. և ընդ հարկաւ արար զՅաթվիկս բնակեալս առ Գոկ գետով, և զհատուածս Բուլղարացն Խազանու։

Վասն այսր ամենայնի յաջողութեանց կամեցեալ շնորհս մատուցանել դից, նախ զոհեաց նոցա զմարդագերին զոր ածէր 'ի պատերազմէն։ Եւ 'ի բարբանջել քրմացն թէ արժան իցէ ազգային իմն մատուցանել մարդազոհ, անկաւ վիճակն Վարեկի ուրումն որդւոյ առն քրիստոնէի. և յընդդէմ կալ հօրն՝ անդէն ընդ որդւոյն խողխողէր առ ոտս դիւաշունչ կռոցն։

Այնչափ յաղթանակօքն և ահարկու զօրութեամբն ցանկալի եղեալ բարեկամութն Վլատիմիրայ բազմաց 'ի թագաւորաց, դեսպանք ամենայն ուստեք արձակէին առ նա՝ և յորդոր լինէին նմա

դառնալ ընդունել զիւրեանց կրօնս ։ Այսպէս տարածն և Թագաւորք արևմտից, և կայսերք Յունաց ։ Բուլղարք առաջին գնէին զդենն մահմետական, և Հրեայք Խորիմու զմովսիսական օրէնս ։

Այլ Ճոխագոյն 'ի խառն անդ դեսպանաց երևեցաւ մեծապայծառութիւն Յունաց առաքեալ 'ի պատրիարգէն Կոստանդնուպօլսոյ՝ որ միաբան էր յայնժամ ընդ եկեղեցւոյն Լատինացւոց ։ Սա թէ և ոչ հաւանեցոյց զԹագաւորն, սակայն գրաւեաց զբարեկամութիւն նորա, և մեծապարգև դարձ արար 'ի Բիւզանդիոն ։

Վլատիմիր հաստատեալ զմիտս իւր յընտրել զլաւն 'ի կրօնից անտի առաջարկելոց, արձակեաց տասն 'ի սոյն ազգաց ընտրանաւ արս տասն ։ Որոց հասեալ նախ առ Բուլղարսն մահմետականս, ոչինչ հաճեցան ընդ օրէնս նոցա ։ Ոչ գտին և յանշուք եկեղեցիս Գերմանիոյ մեծավայելչութիւն հանդէսս արարողութեանց, որպէս կարծէին ։ Այլ 'ի տեսիլ հոյակապ տաճարի սրբոյն Սոփիայ 'ի Կոստանդնուպօլիս՝ և որ 'ի նմա պերճ հանդիսիցն յապուշ հարեալ, գոչեցին . " Այս են ճշմարիտ կրօնք որ այսպիսեաւ մեծվայելչութ՟ քարոզին " ։

Զոր և 'ի դառնալ իւրեանց առ Վլատիմիր մանրապատում արարեալ՝ աղերսէին զնա անդրէն առաքել զինքեանս 'ի Թագաւորեալ քաղաքն ։ Եւ 'ի յաւե-

լուլ աւագանւոյն Վլատիմիրայ, « Եւ թէ չէին ազնուագոյն կրօնք Յունաց՝ ոչ արդեօք յանձն առնոյր զայն մեծախոհն Օլկա », եւ 'ի մտի Վլատիմիր քրիստոնեայ լինել: Եւ եղանակ դարձին նորա իմն և արդարև խժական:

Քանզի բանակ կազմեալ խաղայ գնայ 'ի Խրիմ, և պաշարէ յանկարծ զՔերսոն քաղաք, կամ ըստ այլոց զԹէոդոսիա, այն է Քէֆէ կամ Կաֆա. կամեցեալ իմն զինու բռնութ̃ զհաւատսն ածել 'ի ձեռս. այսինքն զի դերեացէ երիցունս քրիստոնեայս, յորոց առնուցու զմկրտութի. զայն և առ Աստուած աղօթս, ասեն, ուխտիւք մատուցանէր:

Ընդ ամիս վեց անհնարին կոտորած հասուցեալ 'ի վերայ պաշարելոցն՝ կորոյս և յիւրոցն ամբոխ բազում. և այն ինչ հանդերձեալ էր ձեռնթափ լինել 'ի գործոյն՝ ըստ բախտի լեալ ընկալանէր մի յանծանօթ ձեռաց արձակեալ 'ի բանակ իւր, զորով գալարեալ թուղթ այսպիսի. թէ ակն ջրոյ քաղաքիս հուպ է 'ի բանակ այդր քո. զոր եթէ խնուցուս, քո է քաղաքս: Եւ նորա անդէն հետազօտեալ գտանէ զաղբիւրն, և խանգարեալ զջրանցսն, առնու զքաղաքն: Այսպէս ապա տէր լեալ քաղաքին, և Խրիմու ողջոյն, ոչ ևս կարօտանայր քահանայից զի մկրտեսցի 'ի նոցանէ:

Այլ այն չէ շատ. կամեցեալ և յազգակցութի մտանել ընդ կայսերաց, ա-

առաքեալ խնդրէ իւր 'ի կնութիւն զքոյր կայսերացն Վասլի և Կոստանդնի. ապա թէ ոչ, ասէ, ակն կալջիք և Բիւզանդիոն անցիցն Քերսոնի: Ի վարանս մտեալ կայսերացն՝ պատասխանի առնեն թէ նախ առաջին․ հարկ է նմա քրիստոնեայ լինել. այլ 'ի պնդել նորա՝ անձկարացեալք առաքեն զքոյրն իւրեանց:

Յայնժամ գազանն այն գառն եղեալ հեզ, կրթի 'ի հաւատս քրիստոնէութեան. և մկրտեալ հանդերձ երկոտասան որդւովք իւրովք՝ կոչի Վասիլ. ամուսնանայ ընդ դշխոյին. 'ի բաց թողու զգաւառսն հատեալս, և դարձ առնէ յերկիր իւր յաղթական աւարաւ ն̄ք սպասուց, գրովք եկեղեցական պաշտամանց, պատկերօք և նշխարօք սրբելոց սրբոց՝ և խուռն բազմութե̄ վարդապետաց և պաշտօնէից:

Վլատիմիր՝ անհամբոյր և վայրենամիտ երբեմն 'ի հեթանոսութեան, քրիստոնեայ լեալ՝ այնչափ հեզահամբոյր եղև և զգօն, զի քան զամենայն հպատակս իւր մեղապարտ զանձն համարեալ, զաւազակս և զյափշտակօղս անգամ չառնոյր յանձն պատուհասել. "Ո՞ իցեմ՞ ես, ասէր, առ 'ի մահ տալ զմարդիկ". և յղէր զնոսա առ մետրապօլիտն Քիեվայ Միր անուն այր արդարակորով և առաքինի, զի դատ արասցէ նոցա:

Այլ և ըստ չափու նախկին կռամոլութեան՝ նմին հակառակ յաւելութիւն

վառեալ ընդդէմ կռոցն, ընդ ամենայն տեղիս կործանէր զբագինս նոցա, և խորտակէր զպատկերսն, և զՓեռունի զդիցահօր Ռուսաց զանապատկերն կապեալ յագի ձիոյ՝ եա գանակոծ քարշել ընկենուլ մինչև 'ի Տնեպեր գետ:

Ապա և համօրէն Քիեվացիք զհնա երթեալ օրինակի իշխանին իւրեանց, 'ի ժամադրեալ աւուր ժողովեցան յափն գետոյն՝ և մկրտեցան. «Զի թէ ոչ բարի ինչ էր ասեն՝ բանք, ոչ արդեօք առնէին զայն թագաւորն և աւագանին»:

Պատուիրեաց ես Վլատիմիր, որպէս ասեն, զի որ ոք պնդեսցի դեռ ես 'ի դիցապաշտ կրօնսն, թշնամի ծանիցի Քրիստոսի, և թագաւորին. այլ ըստ խրատու մետրապօլտին չափ եդ նախանձաւորութե̃ն:

Յայնմհետէ ոչ ես ապստամբեաց նա յաշխարհս օտարաց, այլ խորումն շատ համարեցաւ զգուշանալ. և 'ի յառնել 'ի վերայ նորա Փեչենեկաց և այլոց խուժից, խաղաց ընդդէմ նոցա ահագին բազմութբ̃ զօրաց:

Մինչդեռ ճակատ առ ճակատ բանակեալ կային երկոքին կողմանքն, դեսպան 'ի թշնամեաց հասեալ առ Վլատիմիր՝ հաւանեցուցանէր զնա մենամարտութ̃ երկուց չահատակաց երկուստեք վճարել պատերազմն, պայմանաւ՝ զի կողմն պարտելոյն ընդ ամս ե-

րիս մի՛ իշխեսցէ զէն առնու
մուսայ կողմանն ։

Այլ 'ի վարանել Վլատիմ
զո՛ յիւրոցն յառաջ կոչեսցէ , ե
'ի մէջ հինաւուրց ոմն զօրական
որդիք չորք էին ընդ նմա 'ի բանա ,
և գովեաց զզօրութիւն հինգերորդին ։ Ածին զպատանեակն , և առ 'ի փորձ ուժոյ և յաջողութեն նորա կատաղեցուցին հրաշէկ երկաթովք զցուլ միթխարի , և անոյեանն յարձակեալ ընդ առաջ՝ և կալեալ զեղջերացն՝ առ եւեղ արձանացոյց զցուլն, և անդէն զգետնեալ յօշ յօշ պատառեաց ։ Ապա դիմեալ 'ի Ճակատ խրոխտ անոյեննին , զյափշտակելն՝ զզգետնելն և զգլխատելն մի առնէր ։

Յայնժամ յաճապարել Թշնամեացն 'ի փախուստ՝ Ռուսք պնդեցան զհետ , և հարուածս սաստիկս հասուցին 'ի վերայ նոցա ․ և զի Փերեսլաւ անուն էր յաղթականին , Վլատիմիր 'ի տեղւոջ անդ քաղաք կառոյց նմին համանուն ։

Զհետ երից ամաց եկեալ պաշարեցին Փեչենեկքն զքաղաք մի ․ գնաց Վլատիմիր 'ի վերայ նոցա , այլ ձախող ելից դիպեալ, և վէրս ևս առեալ, հազիւ զերծաւ Թագուցեալ ընդ կամրջաւ ուրեք ։

Անտի և յառաջ Թշուառութիւնք 'ի Թշուառութիս յաւելան նմա ․ զի Թո՛ղ զմահ սիրեցելոյն 'ի մէջ յորդւոց իւրոց ,

վառեալ ընդդէմ կռոցն, ընդ ամենայն տեղիս կործանէր զբագինս նոցա, և խորտակէր զպատկերսն, և զՓերունի զչիցահօր Ռուսաց զառնապատկերն կապեալ յագի ձիոյ՝ եա զանակոծ քարշել ընկենուլ մինչև 'ի Տնեպր գետ:

Այս և համօրէն Քիեվացիք զհետ երթեալ օրինակի իշխանին իւրեանց, 'ի ժամադրեալ աւուր ժողովեցան յափն գետոյն՝ և մկրտեցան. «Զի թէ ոչ բարի ինչ էր ասեն՝ բանդ, ոչ արդեօք առնէին զայն թագաւորն և աւագանին»:

Պատուիրեաց ևս Վլատիմիր, որպէս ասեն, զի որ ոք պնդեսցի գեռ ևս 'ի դիցապաշտ կրօնսն, թշնամի ծանիցի Քրիստոսի, և թագաւորին. այլ ըստ խրատու մետրապօլտին չափ եդ նախանձաւորութեն:

Յայնմհետէ ոչ ևս ասպատակեաց նա յաշխարհս օտարաց, այլ իւրումն շատ համարեցաւ զգուշանալ. և 'ի յառնել 'ի վերայ նորա Փեչենեկաց և այլոց խուժից, խաղաց ընդդէմ նոցա ահագին բազմութբ զօրաց:

Մինչդեռ ճակատ առ ճակատ բանակեալ կային երկոքին կողմանքն, դեսպան 'ի թշնամեաց հասեալ առ Վլատիմիր՝ հաւանեցուցանէր զնա մենամարտութբ երկուց չահատակաց երկոսեանք վճարել զպատերազմն, պայմանաւ՝ զի կողմն պարտելոյն ընդ ամսե-

րիս մի՛ իշխեսցէ զէն առնուլ ընդդէմ միւսոյ կողմանն ։

Այլ 'ի վարանել Վլատիմիրայ թէ զո՛ յիւրոցն յառաջ կոչեսցէ, եկն անց 'ի մէջ հինաւուրց ոմն զօրական, որոյ որդիք չորք էին ընդ նմա 'ի բանակին, և գովեաց զզօրութիւն հնգերորդին ։ Ածին զպատանեակն, և առ 'ի փորձ ուժոյ և յաջողութեն նորա կատաղեցուցին հրաշէկ երկաթովք զցուլ մի թխարի, և ախոյեանն յարձակեալ ընդ առաջ՝ և կալեալ զեղջերացն՝ առ եւտեղ արձանացոյց զցուլն, և անդէն զգետնեալ յօշ յօշ պատառեաց ։ Ապա դիմեալ 'ի Ճակատ խուռն ախոյեանին, զյափշտակելն՝ զզգետնելն և զգլխատելն մի առներ ։

Յայնժամ յաճապարել թշնամեացն 'ի փախուստ՝ Ռուսք պնդեցան զհետ, և հարուածս սաստիկս հասուցին 'ի վերայ նոցա ․ և զի Փերեսլաւ անուն էր յաղթականին, Վլատիմիր 'ի տեղւոջ անդ քաղաք կառոյց նմին համանուն ։

Զհետ երից ամաց եկեալ պաշարեցին Փեչենեկքն զքաղաք մի ․ գնաց Վլատիմիր 'ի վերայ նոցա, այլ ձախող ելից դիպեալ, և վէրս ևս առեալ, հազիւ զերծաւ թագուցեալ ընդ կամրջաւ ուրեք ։

Անտի և յառաջ թշուառութիւնք 'ի թշուառութիս յաւելան նմա ․ զի թո՛զ զմահ սիրեցելոյն 'ի մէջ յորդւոց իւրոց,

և զմահ Աննայի կնոջ իւրոյ, այլ և մի յորդւոց իւրոց ապստամբեաց 'ի նը-մանէ։

Քանզի 'ի տասանց որդւոցն մնացելոց զԳորիս ընտրեալ իւր 'ի յաջորդ՝ ետ 'ի նա զիշխանութիւն Ռոստովայ, և անուանեաց զնա իշխան մեծ, որ հասարակաց անուն էր թագաւորացն Ռուսաց. Եարո-սլաւայ ետ զՆովկորոտ, Կլեպայ զՎոլո-տիմիր, Սվեաթոսլաւայ զաշխարհն Տրեւ-լեանց, Մսթիսլաւայ զԹեմուրուք, և զայլս այլոց։ Բայց Եարոսլաւ ամբա-ցեալ յիշխանութիւն իւրում՝ ժխտեաց զամ հարկին, զոր հարկէր հօր իւրում, և Թիկունս եւս խնդրեաց 'ի Վարեկաց առ 'ի զդէմ ունել Վլատիմիրայ։ Եւ նորա ակամայ կամօք ելեալ ընդդէմ որդւոյն, զճանապարհայն մեռանի առ ցաւս սրտին, թագաւորեալ ամս քառա-սուն և հինգ։

Սա բազմապատիկ արդասեօք ճոխա-ցոյց զպետութիւն իւր. զբազում վայրս ան-բերս ետ 'ի մշակութիւն, հիմնեաց քաղաքս, կարգեաց դպրոցս. ծաղկեցոյց զա-րուեստս՝ ածեալ ճարտարապետս և ա-րուեստագէտս 'ի Յունաց աշխարհէն։ Հաստատեաց եւ մեծ գլուխս կանո-նաց վասն եկեղեցականաց ազգին. յորս որոշեալ սահմանեաց զեկեղեցական և զաշխարհական իրաւունս, զտասանորդս և զհաս առաջնորդաց, զպէտս և ըզ-խնամ որբոց և այրեաց և զաղքատաց

և զհիւանդաց ։ Եւ վասն այսր ամենայ-նի քաղաքաւորութեանցն Մեծ կոչեցաւ . և եկեղեցին Ռուսաց կարգեաց զնա 'ի թիւս սրբոց ։

## ՍՎԵԱԹՈՓՈԼՔ Ա.

ՊՈՐԻՍ արժանաւոր ժառանգ թա-գաւորութեան մեծին Վլատիմիրայ 'ի բա-նակին էր ընդդէմ Փեչենեկաց՝ յորժամ մեռաւ Վլատիմիր ։ Նմին իրի դէպ ժա-մանակ գտեալ Սվեաթոփոլք որդի Եարոփոլքայ որ ցայնժամ ակն եդեալ մնայր 'ի Քիեվ մեռանելոյ հօրեղբօրն իւրոյ, անց նստաւ յաթոռ նորա, և արձակեաց զոմանս 'ի դաւակցացն սպա-նանել զՊորիս . որոց անյապաղ երթեալ 'ի բանակ նորին, և մտեալ 'ի խորանն՝ անդէն խողխողեցին զնա և զսեննակա-պետ նորա ընդ նմին ։

Այս զհետ եղեալ դաւաճանն 'ի բառնալ և զայլ եղբարս նորին, հոգա-ցաւ 'ի ծածուկ պահել 'ի Կլեպայ զմահ հօրն, և դեսպան յանուն նորա առա-քեալ ազդ առնէր՝ իբրու թէ խօթ է հայրն 'ի Քիեվ և 'ի վտանգ մահու, և զյետինն ողջոյնն կամի տալ նմա ։

Աճապարեաց Կլեպ առ գութ ծնո-ղին . և զճանապարհայն ըստ ոչ բաղդի անկեալ յերիվարէն՝ ջախջախեցաւ մին 'ի

բարձից նորա։ Սակայն անձկացեալ 'ի տեսանել զհայրն՝ եմուտ 'ի նաւ, և եհաս մինչև 'ի Սմոլենսք. ուր այն ինչ 'ի քեռւէն իւրմէ իրազգած լինէր մահու հօրն և եղբօր, հասին 'ի վերայ անօրէն գաւակիցքն Սվէաթոփոլքայ, և խողխողեցին զԳլեպ։

Ի լուր աղետիցն գուժելոյ շուրջանակի, զգացեալ Սվէաթոսլաւայ իշխանին Տրեւեանց՝ եթէ և անձն իւր 'ի վտանգի կայր, փութացաւ անկանել առ Անդրէաս արքայն Մաճառաց, զորոյ զքոյրն ունէր 'ի կնութեան։ Այլ որբանեակքն Սվէաթոփոլքայ զհետ պընդեալ հասին նմա 'ի սահմանս աշխարհին Մաճառաց, և առին զգլուխն 'ի նմանէ։

Մինչդեռ Սվէաթոփոլք յայս ոճիրս դեգերէր, Եարոսլաւ անդէտ մահու հօրն, նա և միաբանեալ ընդ իւր զՎարեակս՝ գայր 'ի վերայ նորա։ Եհաս մինչև 'ի Նովկորոտ. և այն ինչ արիւնռուուշտ կոտորածս առնէր 'ի քաղաքացիս անդր, և յիւրոցն ևս զբազումս կորուսանէր, էառ զդոյժ մահու հօրն և զեղբարց իւրոց։ Եւ հզօր պերճախօսութ՟ե իւրով խաղաղեալ զՆովկորոտացիս, յարձակեցաւ նոքօք հանդերձ 'ի Քիեվ. որում ոչ կարացեալ զդէմ ունել Սվէաթոփոլք՝ կորոյս զբանակ իւր, և ինքն անկաւ առ Պոլեսլաւ արքայ Լեհաց առ աներն իւր։ Եւ յաղթականն

Եարոսլաւ եկն եմուտ խաղաղութեամբ 'ի Քիեվ:

Պոլեսլաւ ոչ այնչափ առ գութ փեսային՝ քան 'ի փութեժխնդիր լինել չարեացն զորս անցուցեալ էր Ռուսաց ընդ Լեհս առ ժամանակօքն Վլատիմիրայ՝ խաղաց ընդ Սվեաթոփոլքայ 'ի վերայ Եարոսլաւայ: Եւ 'ի Ճակատել բանակացն երկուստեք Պուկ գետոյ, մի ոմն 'ի զօրագլխաց անտի Եարոսլաւայ կայր և ծաղրէր ասեն զքաղրթեղ Թանձրամսութի արքային Լեհաց. վասն որոյ և նա ձայն տուեալ իւրոցն անդէն 'ի լող անկանէր. փողեցան և իւրքն զկնի, և անկեալ 'ի վերայ Ռուսաց՝ ցիր և ցան կացուցին զբանակ նոցա. և Եարոսլաւ հազիւ զդէմ կալեալ Լեհաց առ վայր մի մնացելովք զօրօքն, ապա և ինքն մազապուր զերծաւ երիւք ոմամբք ըսպայիւք: Իսկ Պոլեսլաւ ձիգ զհետ մտեալ փախստէիցն, և սպառեալ զամենայն զՃանապարհայն, եկն պաշարեաց զՔիեվ, և սով արկեալ էառ զքաղաքն. կողոպտեաց զոսուն գանձի թագաւորացն Ռուսաց, և հաստատեալ յաթոռն զՍվեաթոփոլք՝ մեկնեցաւ յաշխարհ իւր, և զԿարմիրն անուանեալ Ռուսիա եհատ միացոյց ընդ Լեհաստանեայց:

Եարոսլաւ զհետ խորտակմանն իւրոյ ապաստանեալ էր 'ի Նովկորոտ, և կամէր առ Վարեակս անդր անցանել. այլ

արգահատեցին նմա Նովկորոտացիք, և հուր հարեալ 'ի նաւակսն՝ որովք հանգերձեալ էր փախչել, խոստացան ձեռնտու օգնական լինել նմա արծաթով և զօրօք: Եւ նորա նօքօք զթիկունս հաստատեալ՝ խաղաց գնաց 'ի Քիեվ, և անխափան եմուտ անդր:

Զի Սվեաթոփոլք անդէն ընդ լուր գալստեանն Եարոսլաւայ անձապարեալ դիմեալ էր առ Փեչենեկսն թշնամիս Ռուսաց. որոց կարգեալ զնա իւրեանց 'ի զօրավար՝ յարձակեցան 'ի վերայ Քիեվայ: Եւ եղև պատերազմ սաստիկ զերիս աւուրս, որպէս ասեն, անպարտելի քաջութբ. այլ հուսկ ուրեմն յաղթանակեաց Եարոսլաւ. և հայրանենգն Սվեաթոփոլք առ անհնարին տագնապ աղետիցն ցնորեալ 'ի մտաց մեռաւ չարաչար 'ի կատաղութենէ իւրում՝ գոչելով. թէ խոցեցին զիս, ուր չէր ոք որ խոցէր զնա: Եւ թագաւորեաց ամ մի ևեթ:



# ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## 1054=1236

## ԵԱՐՈՍԼԱՒ Ա.

ՍԱ այր լեալ զարմանալի ըստ արիութեն միանգամայն և ըստ մարդասէր բարուց, ընթերցասէր և իմաստասէր, ուշեղ և խոհական, ժաղ անյիշաչարակ առար զառաջին զվրիպակ յանցանացն, և սիրելի գտաւ իւրոցն և օտարաց:

Ի հրկէզ լինել յանկարծակի քաղաքին Քիեվայ՝ անդրէն շինեաց զայն մեծ քան զառաջինն. և երախտագէտ մտօք բազում պարգևս և առանձին շնորհս պարգևեաց ետ Նովկորոտացւոց. և կարգեաց նոցա օրէնս իմաստունս, քան զորս կանխաւ չէր լեալ Ռուսաց օրէնք գրաւոր:

Մի ոմն յազգականաց իւրոց իշխան Փոլոցքայ, ոգւով փառամոլ ագահութե յարձակեցաւ յաւարի էառ զՆովկորոտ, և բազում գերիս աղխաղխեալ տանէր յաւագաց քաղաքին: Իբրև ազդ եղև Եարոսլաւայ՝ դիմեաց ՚ի վերայ նորա ստուար գնդաւ. և հասեալ նմա զճանապարհայն՝ թափեաց զամենայն

զաւարն և զգերին: Եւ առաքինաբար ներումն շնորհեալ անխոհեմութեն երիտասարդին, յաւել պարգևեաց նմա և երկուս քաղաքս. և ոչ միայն նուաճեաց զապստամբն, այլ և յինքն յանկոյց անմեկնելի սիրով:

Սակայն զհետ ամաց ինչ և որդի նորին Իշխանի Ուշեսլաւ 'ի նոյնօրինակ աւազակութիւն յանդգնեալ՝ արկաւ 'ի բանտ հրամանաւ Իսիասլաւայ արքայի որդւոյ Եարոսլաւայ:

Այլ և եղբայրն Եարոսլաւայ Մսթիսլաւ իշխան Թմուրքայ վստահացեալ 'ի զօրութն իւր՝ վտարանջեաց 'ի նմանէ, և դիմեաց 'ի Քիեվ. բայց ուժգին վանեալ 'ի Ռուսաց՝ անկաւ 'ի Չէրնիկով քաղաք, և տիրեաց նմին:

Եւ 'ի խաղալ Եարոսլաւայ 'ի վերայ նորա, Մսթիսլաւ օգնական իւր գտեալ զգիշեր մի անձրևայոյզ՝ անկաւ 'ի վերայ բանակին Եարոսլաւայ և ցրուեաց, և ինքն ապաստան եղև առ Պոլեսլաւ արքայ Լեհաց: Անդր դիմեաց Եարոսլաւ, և խառնեցան ճակատքն երկոքեան առ Պոկ գետով. և Պոլեսլաւ յաղթող եղեալ Ռուսաց՝ ընդ հարկաւ արար զնոսա, բայց զգերիսն շնորհեաց Եարոսլաւայ: Յայնմ հետէ մինչև ցմահճան Պոլեսլաւայ խաղաղութ̃ էր Եարոսլաւ ընդ Լեհս:

Հաշտեցաւ և ընդ եղբօր իւրոյ Մըսթիսլաւայ, և պարգևեաց նմա 'ի բա-

ժին զարեւելեան և զհարաւային մասն Ռուսիոյ մինչև ցՄէոտիս ծովակ, երկիր ընդարձակ, այլ անկոխ և ամայի։ Սակայն Մոլթիւլաւ ոչ ընդերկար վայելեաց 'ի պարգևսն՝ մեռաւ անորդի, և զամենայնն եթող կտակաւ Եարոսլաւայ։

Վաղագոյն քան զնա մեռաւ Գոլեսլաւ, և կալաւ զաթոռն Մեցիսլաւ որդի նորա խորթացեալ ամենեին 'ի բարուց և 'ի քաղցրութէ հօրն. որ և անկաւ եւ 'ի մնաց. և վարէր զԹագաւորութիւն կէին ոմն յամբարտաւան, մինչ և շուայտու Ռիքսա անուն։ Զայս պատեհ գտեալ Եարոսլաւայ՝ առ ընդ իւր և զՄոլթիւլաւ, և խաղաց 'ի վերայ Լեհաց, զբազումս կոտորեաց, և զայլս բազումս 'ի գերութի վարեաց, և զկարմիր Ռուսիա անդրէն յինքն նուաճեաց։

Յետ ոչ բազմաց 'ի յաճախել գժտութէց 'ի մէջ վաճառականացն Ռուսաց և Յունաց ընդդէմ զաշանցն առաջնոց, առաքեաց Եարոսլաւ դեսպան զոք 'ի Կոստանդնուպօլիս 'ի դարման իրացն. այլ դեսպանն սպանաւ յուզուոջ. և Եարոսլաւ լի սրտմտութբ եառ 'ի ձեռս որդւոյ իւրոյ Վլատիմիրայ իշխանին Նովկորոդայ զօրականս, որպէս ասեն, հարիւր հազար, և արձակեաց 'ի վերայ Յունաց։

Կոստանդին Մոնոմախ կայսր չև ես պարապ առեալ 'ի պատերազմացն Բուլ-

զարաց. հրեշտակս առաքեաց և աղաչէր զԵարոսլաւ 'ի խաղաղութիւն. այլ 'ի մերժել նորա զդեսպանսն՝ խմբեցաւ նաւամարտն մօտ 'ի նեղուցս Բիւզանդիոյ։ Եւ ոչ կարացին Ռուսք զդէմ ունել հրձգութեանցն Յունաց. յոր յաւելեալ և մրրիկ ահագին՝ ցրուեաց և խորտակեաց զբազումս 'ի նաւակացն Ռուսաց. և զերծեալքն 'ի նոցանէ 'ի ցամաք անդր՝ յանխնայ կոտորեցան 'ի հեծելագնդէն Յունաց, որք զծովեզրն ունէին։

Ի ցածնալ մրրկին արձակեաց Կոստանդին 'ի վերայ մնացելոցն Ռուսաց այլ ևս քսան և չորս նաւս մեծամեծս. և սոքա յուսահատեալք 'ի կենաց՝ անհնարին երագութ՟ յարձակեցան կատաղաբար 'ի նաւս անդր Յունաց. զոմանս հարին խորտակեցին, և զոմանս կալան 'ի գերութիւն, յորոց 'ի միումն էր և զօրապետ նաւատորմին Յունաց։

Վլատիմիր սակաւիկ մի ոգի էառ 'ի յաջողուածայն. այլ այն փոքր ինչ էր առ նախկին կոտորածին. և նոքին իսկ ապրեալքն 'ի փախչել անդ ընդ ցամաք յաշխարհ իւրեանց՝ ըստ մեծի մասին կոտորեցան 'ի Յունաց, և գերեցան։

Եարոսլաւ կենդանագոյն գործովք սփոփեաց զվիշտս աշխարհին իւրոյ։ Տարածեաց և ևս 'ի տէրութեան իւրում զքրիստոնեական հաւատս, և ժողովեալ արս հմուտս՝ ետ յեղուլ 'ի յոյն բար-

բառոյ 'ի Սլաւեանցն զմեծաշունչ գիրս 'ի Թարգմանութենէ եօթանասնից. և զընտրագիրն եդեալ յեկեղեցւոջ սրբոյն Սոփիայ, զոր ինքն իսկ շինեալ էր 'ի Քիեւ և զարդարեալ մեծաշուք վայելչութիւք, հրամայեաց փոխագրել զմատեանն և բազմացուցանել։ Եւ Թարգմանել և զայլ ևս գիրս պիտանիս, կառոյց զքաղաքում եկեղեցիս, և հաստատեաց դպրոց 'ի դաստիարակութիւն ազատորդւոցն Քիեւայ ընդ ձեռամբ եկեղեցականաց անձանց։

Վասն այսր ամենայնի բարեկամութեցն առաւել ևս սիրելի եղեալ Ռուսաց, ոչինչ նուազ ցանկալի եղև բարեկամութիւն նորա և ազգաց հեռաւորաց. սակս որոյ և խնամութիւք եղեն ընդ մէջ տան նորա և Թագաւորացն Շվետաց, Լեհաց, Անգղիացւոց և Գաղղիացւոց։

Ապա լեալ ամաց վաթսուն և վեցից, և բաժանեալ զերկիր պետութեան իւրոյ յորդիս իւր, աղերսիւ պատուիրեաց նոցա՝ հնազանդ լինել Իզիասլաւայ անդրանկին իւրում իբրև աթոռաժառանգ փոխանորդի իւրոյ, և մեռաւ յամին 1053, թագաւորեալ ամս երեսուն և ութ։

## ԻՍԻԱՍԼԱՒ Ա.

Ընդ մարդասէր բարոյից և զարութեան քաջութեան լծորդեալ և սա հանգոյն հօրն, պէտ արար յառաջ քան զամենայն՝ միաբան հաւանութեամբ եղբարց իւրոց Սվեատոսլաւայ և Վսեվոլոտայ հանել 'ի բանտէ զեղբայր մօրն իւրեանց Սուտիսլաւ, որ յերեսուն ամաց հետէ 'ի կալանս կայր վասն սուտ ամբաստանութեան եղելոյ զնմանէ ։ Այլ նորա հրաժեշտ տուեալ ամենայնի, եմուտ 'ի կարգ միանձնութեան ։

Ընդ այն ժամանակս բազմութիւն Թաթարաց բնակելոց առ Եայիք և Տոն գետովք, զորս Ռուսք Փոլովցիս կոչէին, յարձակեցան 'ի կողմանս Տնեբերայ 'ի բաժին Վսեվոլոտայ. որոց ոչ կարացեալ նորա զդէմ ունել՝ ամրացաւ 'ի քաղաքի իւրում. և նոքա ասպատակ սփռեալ յաւարի առին զամենայն երկիրն, և զմնացուածսն այրեցին ։

Եւ 'ի գալ ամին միւսոյ իբրև անդրէն արշաւեցին նոքա 'ի Ռուսիա, երեքին եղբարքն եւս միաբանեալ ելին ընդդէմ նոցա. այլ վաղ հարկեցան խոյս տալ անդրէն ամրանալ 'ի քաղաքս իւրեանց ։

Յայնժամ տեսեալ բնակչացն Քիեվայ՝ զի Փոլովցիք սփռեալ են այսր անդր

յաստատակի, խնդրէին 'ի ապարապե-
տէն իւրեանց զէնս՝ զի հարցեն խորտա-
կեսցեն դիւրաւ զՓոլովցիսն ցրուեալս.
և 'ի ժխտել նորա՝ կասկածեալ եթէ
ապստամբել խորհիցին, առհասարակ
'ի զայրոյթ սրտմտութեան բորբոքեցան,
և ամբոխ արարեալ դիմեցին 'ի խողխո-
ղել զապարապետն. և չգտեալ զնա 'ի
տան, յարձակեցան ընդ ամենայն քա-
ղաքն, և բազում չարիս գործեցին. բա-
ցին և զդրունս բանտից և արձակեցին
յազատութիւն զբանտարկեալսն: Ի թիւս
նոցա գոլով և Ուչեսլաւ իշխանն Փոլոց-
քայ՝ զորմէ կանխեցաք ասացաք, զնա
կարդացին իւրեանց առաջնորդ և թա-
գաւոր:

Իբրև արդ եղեն իրքն Իսխասլաւայ՝
յանհնարս մտեալ անկաւ առ Բոլե-
սլաւ Բ. արքայ Լեհաց, և ընկալեալ 'ի
նմանէ զօրս՝ խաղաց եկն 'ի վերայ Ու-
չեսլաւայ: Իսկ նորա զարհուրեալ 'ի
բազմութենէ զօրացն, գիշերախառն զեր-
ծաւ յանտառամէջս ուրեք. և ընդ այգս
այգոյն անգլուխ տեսեալ իւրոցն զան-
ձինս՝ աճապարեցին դարձան 'ի Քիեվ.
և առաքեալ աղաչեցին զՍվեաթոսլաւ
և զՎսեվոլոտ միջնորդ լինել առ Իսխա-
սլաւ, զի անյիշաչար լիցի յանցանաց
իւրեանց. ապա թէ ոչ՝ ասէին, հրոյ
ճարակ տուեալ զՔիեվ՝ 'ի Յոյնս անդր
անցանեմք:

Իսխասլաւ ներեաց նոցա, և առա-

քեաց 'ի Քիեվ զորդի իւր զՄսթիսլաւ. որոյ տեսեալ զքաղաքացիսն նկուն և և հանդարտեալս՝ առս վաթսուն յառաջնորդաց անտի ապստամբութեն կոտորեաց յանդէտս հօրն ։ Նա ապա էառ յԻսխասլաւայ զիշխանութիւն Փոլոցքայ ։

Այն ինչ սակաւիկ մի ոգի առնոյր Իսխասլաւ 'ի խռովութեանց անտի, և ահա եկն 'ի տեղիս տեղիս աշխարհին սով սաստիկ ։ Զորոյ զպատճառն արկեալ ոմանց չարախնդիր արանց զկանանամբք Ռոսթովայ և Պելօզերոյի, իբրու եթէ զխեթութեն նոցա լեալ էր սովն, յարձակեալ կոտորեցին զբազումս 'ի նոցանէ ։ Այլ Իսխասլաւ և զնոսա անդէն չարաչար մահուամբ սատակեաց ։

Ի միւսում ամի երևեցան և երկու սուտ մարգարէք, յորոց մին գուշակէր՝ 'ի կատարած հնգից ամաց դառնալ Ջուրցն Տնեպերայ 'ի վեր յակունս իւրեանց, և թէ յայնժամ Ռուսիա Յունաստան լինիցի, և Յունաստան Ռուսիա ։ Այլ սա վաղ բարձաւ 'ի միջոյ խռովարարութեն Իսխասլաւայ ։ Իսկ միւսն գնացեալ 'ի Նովկորոտ պատիր նշանօք մոլորեցուցանէր զժողովուրդն՝ հայհոյելով զՔն, և գրգռելով զամբոխն ընդդէմ Թէոդորի արհիեպիսկոպոսի քաղաքին ։

Յայնժամ իշխանն Նովկորոտայ Գլեբ որդի Սվեաթոսլաւայ խիթացեալ 'ի հերձուածոց ժողովրդեան, կոչեաց ըզ-

մարգարէն զատաջեաւ , և բազում ինչ հարցեալ , և պատ 'ի պատ առեալ 'ի նմանէ պատասխանիս , յաւել հարցանել եթէ գիտիցէ արդեօք որ ինչ դէպք պատահելոց իցեն յայնմ աւուր . և յառել նորա թէ ինքն հանդերձեալ է մեծամեծ սքանչելիս կատարել , Խաբիս՝ ասաց իշխանն , և անդէն եհար կորեաց զգլուխն վաղակաւորաւն զոր ունէր 'ի ծածուկ :

Ցայս վայր համամիտք էին իշխանքն երեքեան . այլ աստ և անդր ոգի փառասիրութե ընդ մէջ մտեալ վէր 'ի վայր յեղաշրջեաց զամենայն : Քանզի Սվեաթոսլաւ կամեցեալ ընդարձակել զՉերնիկով զերկիր իշխանութեան իւրոյ , 'ի նոյն յորդորեաց և զեղբայր իւր զՎսեվոլոտ . և խաղացին երկոքին միանգամայն 'ի վերայ Իզիասլաւայ . որոյ ոչ ևս վստահացեալ 'ի հաւատարմութի ժողովրդեան իւրոյ , անձապարեաց կազմեցաւ փախչել կնաւ և որդւովք իւրովք առ Պոլեսլաւ արքայ Լեհաց , և խնդրել միւսանգամ զձեռն օգնականութեան :

Այլ Պոլեսլաւայ մարտ սաստիկ էր յայնժամ ընդ Մաձառս , և չկարաց օգնական լինել Իզիասլաւայ : Ապա դիմեաց առ Ենրիկոս Դ , կայսր գերմանացւոց . սակայն և նա յաղմուկս իւրոյ աշխարհին ոչինչ նուազ չուառագոյն քան զԻզիասլաւ , հրեշտակս եւեթ կարաց արձակել առ Սվեաթոսլաւ , զի

տեղի տացէ յաթոռոյն. բայց նա ոչինչ լուաւ բանիցն :

Յանհնարս մնեալ Իզիասլաւայ՝ արձակեաց զորդի իւր զՄստիսլաւ ՚ի Հռոմ առ քահանայապետն Գրիգոր Է. այլ և նա յիւրմէ կողմանէ զարքայորդին ծանուցեալ ևեթ օրինաւոր ժառանգ աթոռոյն Ռուսիոյ, արդեամբք ոչ ինչ կարաց վճարել :

Ի դէպ ժամուն մեռաւ Սվեաթոսլաւ, և կալաւ զաթոռն Վսեվոլոդ : Բայց Պոլեսլաւայ յաղթանակաւ դարձ արարեալ ՚ի պատերազմէն Մաձառաց, եկն ամենայն բանակաւն հանդերձ ՚ի հաստատել յաթոռն զԻզիասլաւ : Եւ երկու բնակիչքն Քիեւայ անդրդուեցեալք իմն զմիտս արքային՝ զդրունսն ընդդէմ եղին, պատնէշ պաշարմամբ առ արկ ՚ի քաղաքն. և յանձնառու լինել նոցա՝ ներողամիտ մեծանձնութեամբ եմուտ ՚ի քաղաքն. զԻզիասլաւ կարգեաց եդ անդրէն յաթոռն, և ինքն եւ դնաց յաշխարհ իւր. և Վսեվոլոդ մեկնեցաւ ՚ի Չերնիկով :

Յետ սակաւ ժամանակի Պորիս և Օլեգ որդիքն Սվեաթոսլաւայ ՚ի վարձու կալեալ զՓոլովցիսն՝ արշաւեցին յերկիր հօրեղբօրն իւրեանց Վսեվոլոդայ. և նա անկաւ առ եղբայր իւր Իզիասլաւ. որոյ ընկալեալ զնա անյիշաչար մարդասիրութեամբ, գնաց ընդ նմա և էառ զՉերնիկով, և պաշարեաց զմիջնաբերդն :

Իսկ Բորիս և Օլեկ 'ի բացեայ գոլով յայնժամ, անձապարեցին գալ մարտ գնել ընդ Իզիասլաւայ և Վսեվոլոդայ. այլ Բորիս անկաւ 'ի սկզբան անդ կըռուոյն, և Օլեկ 'ի փախուստ դարձաւ ապրեցելովք զօրօքն ։

Իզիասլաւ կալեալ զյաղթանակն՝ մինչդեռ գնայր գայր ընդ մէջ դիականցն անկելոց, յորոց միջի էին և որք կիսամեռ և խոց կային, Փոլովցի ոմն՝ որ մեռեալ թուէր, իբրև ետես զԻզիասլաւ՝ զի 'ի մօտոյ անցանէր, արձակեաց զնետ մի և անդէն զգետնեաց զԻզիասլաւ ։

Այսպէս զրաւեցաւ 'ի կենաց վատաբաղդ արքայն՝ ամաց յիսուն և երից, թողեալ զերիս որդիս, որոց անուանք էին Մսթիսլաւ, Սվեաթոփոլք, և Եարոփոլք ։

Այլ անմահ յիշատակ կանգնեցին առաքինույ իշխանիս՝ օրէնքն իւր սակաւաթիւք, այլ այնչափ անպաճոյճք և ճշդք և յայտնիք, և պատուհասքն ըստ յանցանաց այնպէս արդարակարգ կշռեալք, զի և ոչ այլք 'ի պետութեանցն Եւրոպայ ունէին արդեօք յաւուրս ժամանակացն այնոցիկ հանդուճնաւորս օրէնս, թէպէտ և առաւել քան զՌուսս բարգաւաճէին 'ի քաղաքականութեան ։

## ՎՍԵՎՈԼՈԴ Ա. ԵԱՐՈՍԼԱՒԻՉ.

ՎՍԵՎՈԼՈԴ յաղթանակաւ դարձեալ 'ի Քիեւ՝ անց բազմեցաւ յաթոռ թագաւորութեան. ոչ ինչ թողեալ եղբօրորդւոյն իւրոյ՝ որում անկ էր թագաւորութիւն, բայց զՉեռնիկով, և այն բաւ մասամբն:

Յաւել անձին և զնոր իմն մականուն առեալ 'ի հայրենի անուանէն. և այս սովորութի հասարակ եղև ապա թագաւորացն Ռուսաց: Զի կոչեաց զանձն իւր Վսեվոլոդ Եարոսլաւիչ, այն իսկ է Եարոսլաւեան:

Որդիքն Իսիասլաւայ Եարոփոլք և Սվեատոփոլք առ ժամանակ մի խաղաղութեամբ էին ընդ Վսեվոլոդայ. և յամին 1084 յապստամբել թշնամեաց յերկիր իշխանութեան Եարոփոլքայ, արձակեաց Վսեվոլոդ ընդդէմ նոցա զորդին իւր զՎլատիմիր, և եհան անդրէն 'ի ձեռաց նոցա զքաղաքսն Եարոփոլքայ:

Սակայն նա 'ի գալ ամին միւսոյ 'ի վրէժ զրկանացն Վսեվոլոդայ, կամ թէ ոչ շատացեալ իւրով մասամբն, ամբարձ զձեռն իւր ընդդէմ հօրեղբօրն. և ոչ հանդարտեալ բուռն զօրութեանն Վսեվոլոդայ, եթող զընտանիս իւր և փախեաւ 'ի Լեհս: Այլ և անդ ևս ոչ

գտեալ զկարծեցեալ օգնականութիւն՝ և իմացեալ զխուրոցն բանսարկելութեն 'ի Քիեվ, դարձաւ անդրէն առ Վսեվոլոտ՝ ապաւինեալ 'ի գթութիւն նորա. որ և ներեաց նմա զամենայն, և դարձոյց 'ի նա վերստին զաշխարհն նորա: Բայց յետ սակաւ ժամանակի սպանաւ Եարոփոլք 'ի ճանապարհորդութեն իւրում յաւազակաց:

Եւ Վսեվոլոտ մեռաւ յամին 1093, լեալ ամաց վաթսուն և չորից, և թագաւորեալ ամս հնգետասան:

Ի սորա աւուրս գիտաւ 'ի Քիեվ սրածութեն ահագին, և կոտորեաց զբազմունս 'ի բնակչաց քաղաքին:

Դարձեալ և Ուրբանոս Բ. քահանայապետ Հռովմայ առաքեաց, ասեն, առ Վսեվոլոտ զեպիսկոպոս ոմն, և ընդ նմա նշխարս սրբոց բազմաց:

Այլ թագաւորութի Վսեվոլոտայ առաւել համբաւեալ է փոփոխմամբ կարգի յաջորդութե թագաւորացն Ռուսաց, զոր սա առաջին սկսաւ: Զի ուր 'ի սկզբանէ հետէ անդրանիկն յարքայորդիս ժառանգէր զթագաւորութիւն, ապա և անդր սովորութեն եղև եղբարց թագաւորել մի ըստ միոջէ, և 'ի սպառել նոցա ապա առնուլ զթագն անդրանիկ որդի երիցագոյն եղբարցն վախճանելոց, և յետ նորա եղբարք իւր ըստ կարգի: Եւ այս փոփոխումն թուի հաստատեալ հաւանութեն Իսիասլաւայ՝ մինչ

չև մեռեալ էր. կամ թէ առանց այնր իսկ՝ ինքնին հաստատեցաւ սովորութիւն այն անփութութեան Ռուսաց, որոց շատ էր զի յազգէ Ռիւրիկեայ ո՛ ոք և լիցէ թագաւորեսցէ ինքեանց։

Այլ թէ քանի քանի աղէտից Ռուսիոյ պատճառ եղեւ այս փոփոխութիւն, որպէս և բաժանումն աշխարհին ՚ի մասունս մասունս, վաղ տեսցի յառաջիկայդ։

## ՍՎԵԱԹՈՓՈԼՔ Բ. ԵԱՐՈՍԼԱՒԻՉ

ՋՀԵՑ Վսեվոլոդայ անցեալ յաթոռն եղբայր նորին Սվեաթոփոլք՝ առաջին յայտնեաց և զթերութիւն խոհականութեան իւրոյ, բանտեալ զպատգամաւորս Փոլովցեաց առաքեալս ՚ի հաստատել զդաշինսն՝ զոր ունէին ընդ Ռուսս։ Վասն որոյ և նոցա հեղեղաբար արշաւեալ ՚ի Ռուսիա՝ պաշարեցին զԹոռժղք քաղաք ՚ի գաւառին Թվերայ։

Անագանի զգաստացեալ Սվեաթոփոլք՝ արձակեաց զպատգամաւորսն, և խնդրէր զհաշտութիւն. այլ ոչ ևս հաւատացին խուժքն բանից նորա։ Եւ զի ոչ ինչ աւելի քան զութհարիւր զօրականս ունէր նա յայնժամ յոտին, թիկունս խնդրեաց ՚ի Վլատիմիրայ. և նա վաղվաղակի յարուցեալ եկն զօրօք իւրովք,

տանել ընդ իւր և զեղբայրն իւր զՌոս-Թիսլաւ ։

Իբրև հասին գումարեցան եղբարքն երեքեան 'ի դաշտ անդր Քիեվայ, ոչ ևս հանդուրժեալ Վլատիմիրայ՝ յանդիմանեաց զՍվեաթոփոլք սակս անխորհուրդ գործոյն ։ Ի զայրոյթ ցասման գրգռեցաւ Սվեաթոփոլք, և փոքր միւս ևս կողմանքն երկոքին ընդ միմեանս անկանէին՝ Թէ չէր Վլատիմիրայ հանդարտեալ զվէճն ։

Վլատիմիր խրատ տայր՝ զէն 'ի ձեռին խնդրել 'ի Թշնամեացն զխաղաղութիւն · այլ 'ի խիզախել Սվեաթոփոլքեանց՝ խառնուրդք եղեն մարտին, և Փոլովցիք յաղթող գտեալք՝ հալածական վարեցին զՌուսս ։ Ահա 'ի լուղ անցին ընդ գետն գարնանային, և Ռոսթիսլաւ գետամոյն եղև · հազիւ հազ զերծաւ 'ի վտանգէն և Վլատիմիր, որ ձեռն տալ կամէր եղբօրն ընկղմեցելոյ · և տեսեալ զկոտորած իւրոցն՝ մեկնեցաւ 'ի Չերնիկով ։

Իբրև տեսին Փոլովցիք՝ եԹէ դարձեալ տակաւաձեռն գնդաւ մնաց Սվեաթոփոլք մաղապուր ճողոպրեալն 'ի մահուանէ, պնդեցին զպաշարումն Թուռժոքայ, և առեալ զայն՝ հուր հարին այրեցին զքաղաքն, և զբնակիչսն 'ի գերութեան վարեցին · որք և գոդցես առ հասարակ մեռան սովու և ծարաւով և սառամանեօք ճանապարհին ։

Յայնժամ 'ի խնդրել Սվեաթոփոլ-
քայ զհաշտութիւն, զիջան Թշնամիք. և
'ի հաստատութեն դաշինն էառ՝ իւր Սվեա-
թոփոլք 'ի կնութիւն զդուստր խանին
նոցա՝ որում անուն էր Թըննըղըր:

Օլեկ որդի Սվեաթոսլաւայ կամե-
ցեալ յինքն կորզել զՉեռնիկով 'ի ձե-
ռաց հօրեղբօր իւրոյ Վլատիմիրայ, գըր-
գռեաց զփոլովցիսն յարձակել ընդ իւր
յանկարծակի 'ի սահմանս նորա: Եւ
նոքա յանձին կալեալ՝ դիմեցին 'ի Չեռ-
նիկով. յաւարի առին զքաղաքն, և զա-
րուարձանեայսն հրձիգ արարին. և 'ի
դառնալ անդրէն յաշխարհն իւրեանց՝
առնակոծ արարին և զաշխարհն Օլեկայ.
իբր 'ի վճար ծախուց պատերազմին՝
յոր հրաւիրեաց զնոսա:

Վլատիմիր թողեալ զՉեռնիկով ամ-
րացեալ էր 'ի Փերեսլաւ. այլ ընդ
հուպ հաւանեցան գալ 'ի հաշտութիւն
ընդ Վլատիմիրայ Փոլովցիք, և յամին
1095 առաքեցին առ նա զերկուս ոմանս
'ի գլխաւորաց անտի իւրեանց, զԻթլար
և զՔիթան:

Ի մտանել Իթլարայ 'ի քաղաքն՝
Վլատիմիր առաքեաց 'ի բանակ դեսպա-
նացն 'ի պատանդութեն զորդին իւր: Անդ-
դաւաճանք ոմանք սադրեցին Վլատիմի-
րայ սպանանել զԻթլար. և մի ոմն 'ի
նոցանէ Սլաւաթա անուն, որ եկեալ
էր 'ի Սվեաթոփոլքայ, դիմագրաւ եղև
անձամբ երթալ զերծուցանել զպա-

տանգն զորդին Վլատիմիրայ․ եւ Վլատիմիր, չգիտեմ որպէս, զերծաւ հրապուրանաց նոցին։

Յայնժամ գիշերայն գնաց Սլաւաթա 'ի բանակ Թշնամեացն, եւ գտեալ 'ի քուն զՓոլովցիս՝ յափշտակեաց զարքայորդին, եւ արար 'ի նոսա իւրովքն կոտորած մեծ․ անդ սպանաւ եւ Քիթան․ եւ Իթլար խողխողեցաւ առ Վլատիմիրայ։

Ապա դիմեաց Վլատիմիր անյապաղ 'ի վերայ Փոլովցեաց․ որում զճանապարհայն յօգնութի հասեալ եւ Սվեաթոփոլքայ՝ կանգնեցին յաղթանակ մեծ, եւ ածին աւար եւ գերի բազում։

Այլ բազմաթիւ ազգ նետողացն վաղ գումարեցան դարձեալ 'ի վերայ Ռուսաց, եւ գնացեալ յանձինս դարձուցին զքաղաքն Եուրեվ․ եւ 'ի միւսում տարւոջ սաստկագոյն բանակաւ արշաւեցին 'ի Ռուսիա յերկիրս առաջս, յորոց միումն առաջնորդէր ինքնին Թուղըր խան աներ Սվեաթոփոլքայ։ Սակայն յանկանել նորա 'ի պատերազմին՝ ցրուեցան եւ զօրք իւր։ Եւ իբր 'ի տեղի նոցա փոխանակեցին նորանշան հարուածք մարախոյ՝ այն առաջին անգամ եկեալք 'ի Ռուսիա 'ի կողմանցն Թաթարաց, եւ կերան սպառեցին զամենայն դ.եղ դալար․ որոց զհետ եկին ախտք եւ հիւանդութիք մահաբերք։

Յամին 1096 ժողով արարին 'ի Քիեվ

Սվեաթոփոլք և Վլատիմիր հանդերձ եպիսկոպոսօք և վարդապետօք և պատուականօք քաղաքին՝ 'ի կարգաւորել զերս հասարակաց և զխաղաղութիւն աշխարհին իւրեանց ։

Կոչեցին և զՕլեկ, և յանդգնել նորա՝ խաղացին եղբարքն երկոքեան ընդդէմ նորա. որոյ փախուցեալ 'ի Չերնիկովայ՝ անկաւ 'ի Սթարոտուպ. այլ իբրև հարկեցաւ նա խնդրել զհաշտութիւն, հրամայեաց նմա Սվեաթոփոլք երթալ 'ի Սմոլենսք առ եղբայրն իւր Դաւիթ, և ածել զնա եւ ընդ իւր 'ի Գիեվ։ Երդմնի եղև Օլեկ առնել զբանն, և գնաց 'ի Սմոլենսք. և քանզի յայնժամ Դաւիթ 'ի բացեայ գտանէր, քաղաքացիքն զդուրս ընդդէմ եգին։ Օլեկ առ ժամանակ մի աստանդական լեալ՝ ապա գնաց սակաւաձեռն գնդաւ 'ի վերայ Մուրոմ քաղաքի, զոր ունէր Իզիասլաւ որդի Վլատիմիրայ։ Բայց իբրև նա ոչ էառ յանձն զառաջարկութիւս Օլեկայ՝ 'ի զէն ընթացան երկոքեան. և 'ի մարտի անդ մեռաւ Իզիասլաւ, և Օլեկ էառ զՄուրոմ։

Մսթիսլաւ միւս որդի Վլատիմիրայ իբրև զգաց զդէպս եղբօրն և զյափշտակութիւնն Օլեկայ, առաքեաց առ նա պատգամաւորս խօսել 'ի հաշտութիւն, խոստացեալ բարեխօսել վասն նորա առ հայր իւր։ Եւ իբրև արհամարհեաց Օլեկ զպատգամաւորս Մսթիսլաւայ, այն

զի 'ի մահ եղեալ էր յարձակել և 'ի սահմանս նորին, խաղաց Մսթիսլաւ 'ի վերայ նորա մարտիւ պատերազմի. և յանձնուկս ուրեք փակեալ զնա՝ կապտեաց 'ի նմանէ զամենայն զքաղաքսն. և ապա խօսեցաւ ընդ նմա 'ի խաղաղութի։

Ի դարման երկպառակութեանց իշխանացն՝ ժողով գումարեաց Սվեաթոփոլք 'ի Լիւպեց քաղաք մերձ 'ի Չեռնիկով. ուր միաբան հաւանութ͞բ ամենեցուն նորա բաշխեցան իւրաքանչիւր իշխանութիւնք, և իշխանքն երդուան 'ի խաչն՝ հաստատուն կալ 'ի բանս ուխտին. և զի թէ ոք վրդովեսցէ զխաղաղութիւն, ամենեքեան միանգամայն խնդրեսցեն 'ի նմանէ զվրէժ դրժանացն։

Նախկին դրժիչ ուխտին եկաց Դաւիթ որդի Իգորայ, թոռն մեծին Վլատիմիրայ. զի կապեաց 'ի շղթայս զՎասիլքօ զորդի Ռոստիսլաւայ զթոռնորդի Եարոսլաւայ օրէնսդրի. կուրացոյց և զաչս նորա, և անողորմ տանջանօք գելոցեաց չարչարեաց զնա։

Յայնժամ Վոլոտար եղբայր կուրացելոյ իշխանին Վասիլքոյի դիմեալ 'ի վերայ Դաւթի՝ պաշարեաց զնա յանձուկ քաղաքի ուրեք. և նորա 'ի նեղ անկեալ՝ արձակեաց զՎասիլքօ, և կապտեցաւ յիւրմէ իշխանութէն։

Յետ սակաւուց և Սվեաթոփոլք ինքնին ուխտադրուժ լեալ յարեաւ 'ի վերայ Վասիլքայ և Վոլոտարայ, եղբօ-

թէ կալուածք իշխանութեան նոցա՝ իւրոյ հօրն իցեն լեալ կանխաւ։ Եւ միաբանեալ երկուցն եղբարց՝ ելին ընդդէմ նորա։ Վասիլքօ քանզի կոյր էր՝ անց ընդ մէջ զօրացն իւրոյ առաջնորդաւ, և ձախու ձեռամբն բարձեալ զխաչ՝ աղաղակէր առ զօրսն. «Ի զօրութին սրբոյ խաչիս երդուաւ, ասէր, Սվեաթոփոլք՝ պաշտպան կալ մեզ իբրև հարազատաց. նորին խորհրդով բրեաց Դաւիթ զաչս իմ. և նա ինքն խնդրէ արդ բառնալ զկեանս իմ. այլ արդար է Աստուած. դատ արասցէ ընդ մեզ և ընդ նա»։

Ի բանից աստի յեռանդն վրէժխնդրութեան վառեալ զօրականին՝ հարին խորտակեցին զՍվեաթոփոլք. և նա խնդրեալ ընկալաւ յարքայէն Մաճառաց զօրս ՚ի խաղալ անդրէն ՚ի վերայ երկուցունց եղբարցն։

Յայնժամ անագորոյնն Դաւիթ անցեալ ՚ի կողմն Վասիլքայ, զոր ինքն իսկ կուրացուցեալ էր, եդ զկին իւր ՚ի պատանդի առ Վոլոտարայ, և գնաց անձամբ առ Փոլովցիս, որոց առաջնորդէր յայնժամ Պոնեաք ոմն անուն՝ որ բազում չարիս անցուցեալ էր ընդ աշխարհն Ռուսաց։ Սա յանձն առեալ զխնդիրն՝ խաղաց ընդ Դաւթի ընդդէմ Մաճառաց, և խորտակեաց զնոսա ՚ի սպառ։

Ուր ուրեմն ՚ի խաղաղել զքաղաքական պատերազմունս՝ նոր ժողով կարգեցին իշխանաց. յորում զԴաւիթ զըր-

կեալ յիշխանութենէն Վոլոտիմիրայ՝ ետուն նմա այլուր քաղաքս հինգ, և արծաթ բազում, և եղև խաղաղութիւն 'ի մէջ իշխանացն Ռուսաց։

Դարձուցին ապա զզէնս իւրեանց ընդդէմ Լեհաց. բայց 'ի նոցանէ հալածականն եղեալ՝ յարձակեցան 'ի Փոլովցիս, և թափեցին 'ի նոցանէ աւար բազում։

Եւ յամին 1113 մեռաւ Սվեաթոպոլք՝ թագաւորեալ ամս քսան։

Ի սորա աւուրս թոյլտուութեամբ իւրով բազմացեալ էին 'ի Քիեվ Հրեայք ճարտարք 'ի վաճառաշահութիւն, որք և հետազհետէ մեծանային ճոխութեամբ. այլ ատելի եղեալ Ռուսաց ըստ այլ և այլ պատճառաց, անդէն ընդ մեռանել Սվեաթոփոլքայ՝ յարձակեցան Ռուսք և յանխնայ կոտորեցին զնոսա։

## ՎԼԱՏԻՄԻՐ Բ. ՎՍԵՎՈԼՈՏՈՎԻՉ ՄՈՆՈՄԱԽ

ԱՒԱԳԵԱՆԻՆ Քիեվայ փութացեալ զառաջս առնուլ չարեաց անիշխանութեան՝ ընտրեցին 'ի թագաւոր զՎլատիմիր զորդի Վսեվոլոտայ. որոյ զառաջինն հրաժարեալ, ապա իբրև ետես զյաճախել խռովութեանցն Քիեվայ՝ հաւանեցաւ իշխանացն։ Եւ իբրև եմուտ 'ի քա-

ղայքն՝ դադարեաց ամենայն աղմուկ ամբոխին. այլ նա 'ի զերծուցանել զՀրեայսն յոխակալութէ Ռուսաց՝ եհան արձակեաց զնոսա 'ի Ռուսիոյ, հագացեալ անդրժելի պահել զինչս և զստացուածս նոցա զամենայն զճանապարհայն, և խոստացաւ հովանի լինել նոցա նաև արտաքոյ առ սահմանօք իւրոյ աշխարհին:

Յայնմ հետէ 'ի խոր խաղաղութեան վայելեցին Ռուսք խոհական և անյողդողդ առաջնորդութեն Վլատիմիրայ: Եւ որդիքն նորա գամ քան զգամ ընդարձակէին զպետութիւն նորա: Մսթիսլաւ իշխան Նովկորոդայ յաղթութիս տարաւ 'ի Լիվոնիա, և ընդարձակեաց զպարիսպս քաղաքին իւրոյ. Եարոփոլք խորտակեաց 'ի սպառ զՓոլովցիս առ Տոն գետով. Եուրի, որ և Գէորգ լսի, կալաւ յաղթութի մեծ 'ի վերայ Բուլղարաց՝. և Անդրէաս էառ զքաղաքս ինչ 'ի Լեհաց:

Եւ ինքն Վլատիմիր խաղաղասէր և առաքինասէր բարուքն յամենայնի ճըգնեալ 'ի բարգաւաճել զժողովուրդս իւր, ցանկալի եղև շրջակայ ազգաց անգամ:

Ինքնակալն Ալեքս Կոմնենոս առաքեաց նմա 'ի պարգև զարգս կայսերականս իւր 'ի դիմաց Կոստանդնի Մոնոմախ կայսեր, որ էր հաւ Վլատիմիրայ 'ի մօրէ. և վասն այսորիկ՝ որպէս Թաւի՝

անուանեցաւ Մոնոմախ և Վլատիմիր ինքն ։

Սա այս Վլատիմիր առաջին 'ի Թագաւորս Ռուսաց՝ կոչեցաւ և Ձար, որ է Արքայ, կամ Տէր, ևս և Սամոփէրժէց, այսինքն է Ինքնակալ, որպէս յայտ է 'ի դրամոց նորա ։

Եւ Թագաւորեալ ամս մետասան՝ մեռաւ յամին 1125 'ի հասակի վաթսուն և երկուց ամաց. և էին նորա որդիք ութ. Մսթիսլաւ, Իսիասլաւ, Սվեաթոսլաւ, Եարոփոլք, Վեաչեսլաւ, Ռոման, Եուրի, և Անդրէաս. և կալաւ զաթոռն Մսթիսլաւ ։

## ՄՍԹԻՍԼԱՒ ՎԼԱՏԻՄԻՐՈՎԻՉ

ԶՀԵՏ խաղաղական աւուրց Թագաւորութեան Վլատիմիրայ դարձեալ յաղմուկս անընդհատս պաշարեցաւ Ռուսիա ընդ ամս ոչ սակաւս. զի ահա անդէն 'ի սկզբան Թագաւորութեան Մսթիսլաւայ արշաւեցին Փոլովցիք յաշխարհն, և յաւարի առին զբազում տեղիս ։

Եւ Թէպէտ Եարոփոլք եղբայրն Մսթիսլաւայ վանեաց զնոսա քաջութ̅, սակայն ոչ նուազ չարաղէտ գտաւ քան զբարբարոսաց արշաւանսն՝ յափշտակելն Վսեվոլոդայ որդւոյ Օլեկայ զՉեր-

նիկով 'ի ձեռաց Եարոսլաւայ հօրեղբօր իւրոյ :

Ի զայրոյթ բարկութեան վառեալ Մսթիսլաւ ընդ յանդգնութիւն անիրաւութեան, երդուաւ 'ի խաչն Տր՝ վրէժխնդիր լինել Վսեվոլոդայ : Այլ նա կանխեաց հրաւիրեաց զՓոլովցիսն իւր 'ի թիկունս, խոստացեալ 'ի մասն աւարին հասարակել զնոսա :

Եւ մինչդեռ պատրաստամաւորք երկուստեք երթային և գային, Ռուսք ամենք կալեալ զճանապարհայն զպատրաստաւորս Փոլովցեաց՝ 'ի գերութիւն վարեցին. ընդ որ ցասուցեալ նոցա, առ ժամն շատ համարեցան պահանջել յետս զգերիսն. և Վսեվոլոդ հարկեցաւ խնդրել 'ի Մսթիսլաւայ զհաշտութիւն, դարձուցեալ 'ի նա անդրէն զՉերնիկով :

Մսթիսլաւ ըստ ընդաբոյս գթութեան՝ ներողամիտ կամէր լինել և յայս նուագ. այլ երկնչէր 'ի լուծանելոյ զերդումնն. և թէպէտ ըստ վճռոյ արքեպիսկոպոսին կարաց շնորհել նմա զկեանսն, սակայն մինչև ցմահ իւր տարապարտ խղճիւ տագնապէր զանձն. և մեռաւ յամին 1132, թագաւորեալ եօթն ամ ևեթ. և եթող ուստերս վեց, աւանդեալ զնոսին 'ի ձեռս եղբօր իւրոյ Եարոփոլքայ :

## ԵԱՐՈՓՈԼՔ Բ. ՎԼԱՑԻՄԻՐՈՎԻՉ

ԱՆՑԵԱԼ սորա յաթոռ եղբօրն իւրոյ՝ նախ առաջին հոգացաւ բաշխել յեղբօրորդիս իւր որչափ ինչ արժան էր պատուոյ նոցա. այլ քանզի անմարթ էր կատարել զայն առանց խռովելոյ զբաժինս իւրոյն եղբարց, ամին իրի անհնարին չփոթք և խռովութիւք ծագեցան 'ի մէջ իշխանացն, մինչև տեւոյն զբռնանալ Լեհաց 'ի կողմանս ինչ աշխարհին իւրեանց, և անդէն միաբանեալ ընդ միմեանս՝ յարձակեցան ընդդէմ հասարակաց թշնամւոյն։

Զարհուրեալ Պոլեսլաւ Դ. արքայ Լեհաց 'ի միաբանութենէն Ռուսաց, մինչդեռ վարանէր ելս գտանել իրացն, մի ոմն 'ի խորհրդականաց նորա Վլոսթովիչ անուն յառաջ մատուցեալ ձեռն յանձին հարկանէր՝ երթալ անձամբ դաւաճանել զարքայն Ռուսաց. և եկն առ Եարոփոլք սակաւ արամբք՝ բողոքելով զմի նենգաւ ընդդէմ իւրոյ արքային, որ յետ կողոպտելոյ ասէր՝ զինչս իմ, խնդրէ բառնալ և զկեանս։ Եւ իբրև ընկալաւ զնա Եարոփոլք, և հարցանէր գիտել 'ի նմանէ զպատրաստութեն Լեհաց և զզօրութիւն Պոլեսլաւայ, Վլոսթովիչ զամենայնէ ոճով պատմեալ ըստ

կամի՝ բազում չարախօսութիւս յաւե-լուր զԹագաւորէն, և ասէր՝ եթէ Լեհք ևս տաղտկացեալ 'ի նմանէ՝ մատգիւ-րագոյնս արդեօք տացեն զաշխարհն 'ի ձեռս Եարոփոլքայ : Եւ այսպիսի դողորկ բանիւք որսացեալ զիխտա Նորին՝ եղև մի 'ի խորհրդակցացն սիրելեաց, և անմեկ-նելի էր 'ի նմանէ ուր և երթայր :

Ապա 'ի միում աւուր մինչ առանձին ուրեք արտաքոյ քաղաքին ելեալ էր ընդ Եարոփոլքայ, յանկարծակի կալ և կապ արարեալ զնա 'ի վերայ երիվարին՝ յա-փշտակեաց տարաւ 'ի Կրակովիա, և արգել 'ի դիպահող : Եւ ոչ կարաց Եա-րոփոլք զերծանել անտի՝ մինչև հատոյց արծաթ յոլով, և երդուաւ հարկատու և ստրուկ լինել արքային Լեհաց :

Եարոփոլք 'ի մոխ կալեալ զգաւն, եգիտ խորամանկ զոմն Մաճառ յազգէ, և իրատեալ զնա որպէս կամէրն՝ արձա-կեաց 'ի Կրակովիա . ուր իբրև այր ա-զատազգի դիւրամատոյց գտեալ Նորա զարքայն Լեհաց՝ ամբաստան եղև զար-քայէն Մաճառաց, իբրու եթէ Նա-խանձու պատճառաւ զրկեալ իցէ զինքն յինչիցն, և սրտասահման արարեալ : Գթացեալ Պոլեսլաւայ յայրն, կար-գեաց զնա քաղաքապետ Վիսլիցա քա-ղաքի մերձ 'ի Կրակովիա :

Ընդ այն ժամանակս դէպ եղև ար-քային Լեհաց գնալ 'ի սահմանս իւրոյ աշխարհին առ Գերմանացւովք . և Մա-

Ճառին զայն պատեհ առեալ՝ համբաւեաց շուրջանակի՝ եթէ Ռուսք մեծաւ կազմութ̃բ յարձակեալ գան 'ի Լեհս. վասն որոյ ամենայն ճոխք և աւագանին Քրաքովիոյ ապաստան եղեն ընչիւք և ընտանեօք իւրեանց 'ի Վիսլիցա իբրև 'ի քաղաք ամուր՝ զի կառուցեալ էր յապառաժի:

Զայս ամենայն 'ի դէպ ժամու զգացեալ Եարոփոլքայ՝ էառ ընդ իւր գունդ մեծ ընտիր զօրականաց, և յարձակեցաւ գիշերայն 'ի վերայ ամրականացն. և հնարիւք մատնչին 'ի բաց դատեալ ըզդրունսն՝ եմուտ գերեաց զամենայն աւագանին, զինչսն յափշտակեաց, և ըզքաղաքն քանդեալ աւերեաց. և որպէս պատմեն Լեհք, սպան և զմատնիչն գաւաճան:

Ոչ շատացան Ռուսք վրէժխնդրութ̃բս, և ստիպէին զԵարոփոլք խաղալ 'ի վերայ նորին ինքեան Պոլեսլաւայ: Եւ առ 'ի դաւով իմն ձգելոյ զնա յաշխարհն իւրեանց, ոմանք յիշխանացն Ռուսաց՝ հրամանաւն Եարոփոլքայ յարձակեցան առին զԿալիշ քաղաք, զոր ունէր Եարոսլաւ խորթ որդի Վլատիմիրայ Մոնոմախին. և նա փախեաւ առ Պոլեսլաւ առ մտերիմ բարեկամ իւր, և գրգռեաց զնա 'ի խնդրել զվրէժ զրկանացն: Ի նոյն և գլխաւոր բնակիչքն Կալիշայ 'ի յորդորելոյ Եարոփոլքայ երթեալ խնդրեցին 'ի Պոլեսլաւայ՝ զի

անցէ զիշխանն կիւրեանց զԵարոսլաւ , և վանեսցէ զբռնացեալսն 'ի մասին ժառանգութեան նորա . զի և Եարոփոլքայ կամացն հակառակ էին , ասեն , որպէս իշխանացն ։ Պոլեսլաւ հաւատա ընծայեալ նոցա՝ սակաւաձեռն զընդաւ եկն մերձ 'ի Կալիչ . և ահա յանկարծակի պաշարեցին զնա երկուսեանք բնակիչքն Կալիչայ և զօրք Եարոփոլքայ ։

Եւ մինչդեռ Պոլեսլաւ անյողդողդ արիութբ փութայր ճակատել վանել ըզդաւաճանսն՝ Վսեպոր զօրապետ նորին զարհուրեալ 'ի փախուստ դարձաւ , և 'ի խառն անդ մարտին խոց վիրաւոր անկեալ որքայրին յերիվարէն՝ հազիւ ճողոպրեցաւ յերկիր իւր 'ի ձեռն միոյ ուրուք յիւրոցն . և հասեալ 'ի Քրաքովիա՝ առաքեաց առ Վսեպոր մորթ մի նապաստակի և վուշ և աղեկատ . և նա առ անհնարին ամօթանացն անձնասպան եղև ։

Յետ սակաւուց մեռաւ և Եարոփոլք՝ թագաւորեալ ամս ութ . և թագաւորեաց եղբայր նորա խաղաղասէրն Վեաչեսլաւ ։ Այլ զկնի երկոտասան աւուրց եկն եհաս 'ի դրունս Քիեվայ Վսեվոլոտ որդի Օլեկայ , և պահանջէր 'ի նմանէ զթագաւորութիւն . և Վեաչեսլաւ տեղի ետ գնաց անդրէն յառաջին տեղի իշխանութեան իւրոյ ։

## ՎՍԵՎՈԼՈՏ Բ. ՕԼԿՈՎԻՉ

ՅԱՂՄԿԱԼԻՑ ժամանակս պետութեանն Ռուսաց թագաւորեալ առնս ճարտարի 'ի հնարս դաւաճանութե̃ց, եւ քան զեւս բորբոքեաց զաղէտս աշխարհին :

Յանդգն հնարս նիւթեալ յընդարձակել զսահմանս իւր՝ ամփոփմամբ սահմանաց իշխանացն իւրոց, բարեկամացաւ ընդ արքային Լեհաց, եւ օգնական եղեւ նմա զօրօք 'ի մարտս նորին, զի եւ նա ինքեան օգնեսցէ 'ի դէպ ժամանակի :

Այլ արքայն Լեհաց 'ի պարտութե̃ մատնեցաւ, եւ Վսեվոլոտ յետ երկուց ամաց մեռաւ յամին 1146, եւ արարին ժողովուրդքն խնջոյս մեծի ուրախութե̃ 'ի յուղարկաւորութե̃ նորա :

## ԻԿՈՐ Բ. ՕԼԿՈՎԻՉ

ՎՍԵՎՈԼՈՏ որ խոստացեալ էր Իզիասլաւայ որդւոյ Մսթիսլաւայ զաթոռն, 'ի մեռանելն ետ զայն եղբօր իւրում Իկորայ : Սա այր խիստ եւ ամբարտաւան՝ փութով ատելի եղեւ իւրոցն, ժխտեալ

զխոստումն իւր Թեթեւացուցանելոյ ըզ-ծանրութիւն հարկացն՝ զոր հարկէին Վսեվոլոդայ, և տուեալ զանձն 'ի դատաւորութիւն և յամենայն ախտս զարշութեց. և շողոմարար իշխանքն իւր լցին զպետութիւն ամենայն անիրաւութեամբ և զրկանօք: Սմին իրի Քիեւացիքն ետուն զաթոռն՝ Իսիասլաւայ:

Յայնժամ և Իկոր տուեալ ընդ իւրսն և զզօրս միոյ ուրուք յեղբարց իւրոց՝ խաղաց 'ի վերայ նոցա. և 'ի չկամել Քիեւացւոց մարտ դնել՝ անկաւ խռովութ մեծ 'ի բանակին Իկորայ, և սկսան կոտորել այր զընկեր, մինչ զի և Իկոր ինքնին 'ի փախուստ անձապարեալ՝ աւուրս չորս Թագեաւ 'ի ճահիճս ուրեք. և ապա 'ի յայտ եկեալ ածաւ առաջի Իսիասլաւայ, և նա չկամեցաւ արգել զնա 'ի բանտ խաւարչուտ:

Ի գալ ամին միւսոյ խնդրեաց Իկոր յԻսիասլաւայ հրաման կրօնաւորելոյ, և եմուտ 'ի մենաստան մի 'ի Քիեւ. այլ Սվեաթոսլաւ եղբայր նորին յարեաւ 'ի վերայ Իսիասլաւայ 'ի խնդրել զվրէժ եղբօրն: Եւ իբրև 'ի պարտութ մատնեցաւ նա առաջի Իսիասլաւայ, և խնդրէր զհաշտութիւն առանց յետս կալոյ 'ի պահանջմանացն, Իսիասլաւ հրձիգ արար զամենայն տունս և զագարակս նորա, և էառ զքաղաքս նորա, և հալածական արար զնա յաշխարհէն:

Իսկ Իկոր յետ վեցամսեայ Թագա-

ւորութեն և միամտեայ միանձնութեան՝ անդէն 'ի նմին 'ի վանս իւրում խաղխաղեցաւ 'ի ժողովրդենէն Քիեվայ. և մարմին նորա մերկ քարշեալ ընդ փողոցս քաղաքին՝ ապա թաղեցաւ 'ի չերիմս թագաւորացն ։

## ԻՍԻԱՍԼԱՒ Բ. ՄՍԹԻՍԼԱՒԻՉ

Եւ արին Իսիասլաւ հաստատեալ 'ի թագաւորութե՛ իւրում՝ անդրէն յինքն դարձոյց զքաղաքն առեալ յօտարաց ։ Միաբանեցին ընդ նմա և ոմանք յիշխանացն, որոց ձեռնտուութե՛ նուաճեաց և զայլսն. և Սվեաթոսլաւայ եւս 'ի կընութի զթոռն իւր՝ զի մոռացօնք եղիցին նմա արկածք եղբօրն ։

Եուրի որդի Վլատիմիրայ երկրորդի քանզի ոխս ունէր ընդ Սվեաթոսլաւայ՝ թշնամացաւ և ընդ Իսիասլաւայ, և միաբանեալ ընդ իւր զփոլովցիս՝ խաղաց ընդդէմ նորա, և եղև պատերազմ մեծ հուպ 'ի Փերեսլաւ քաղաք ։ Անդ խորտակեցան զօրքն Իսիասլաւայ, և ինքն կնաւ և որդւովք իւրովք փախուցեալ ամրացաւ 'ի Վլատիմիր ։

Եւ զի անէր էր Իսիասլաւ արքային Մաճառաց, և ազգակից արքային Լեհաց, խնդրեաց 'ի նոցանէ զօրս յօգնա-

կանուէ, և նոքօք հանդերձ ել ընդդէմ Եուրեայ : Այլ Մաճառք և Լեհք 'ի տեսիլ ևեթ թշնամեացն բազմութեան՝ յետս ընդ կրունկն դարձան. և Իսիասլաւ հարկեցաւ խնդրել զհաշտութի̃, և թողուլ Եուրեայ զթագաւորութի̃ն Քիեվայ :

Սակայն աւագանին Ռուսաց գաղտ միաբանեալ՝ կոչեցին զԻսիասլաւ անդրէն յաթոռն. և նա եկն 'ի Քիեվ ոչ բազում զօրօք : Իսկ Եուրի նիզակակցութե̃ իշխանին Կալիչայ յարձակեալ 'ի Քիեվ վերստին կալաւ զաթոռն. և մինչդեռ անարգել անձնատուր լեալ 'ի փափկութի̃ս և 'ի թուլութիւնս կայր յանհոգս, Իսիասլաւ ստուար բանակաւ անկեալ 'ի վերայ բռնաւորին՝ հալածեաց վանեաց զնա 'ի Քիեվայ, և եմուտ անդր մեծաշուք յաղթանակաւ՝ և ծափաձայն ցնծութե̃ քաղաքացեայն :

Այլ յանդադարելի պատերազմաց և 'ի խռովութեց աշխարհին զերծոյց զնա մահն յամին 1156, թագաւորեալ ամս ութ : Եւ հրաւիրեցաւ 'ի թագաւորել վերստին խաղաղասէրն Վեաչեսլաւ. այլ նա ետ զաթոռն ցՌոսթիսլաւ եղբայր Իսիասլաւայ :

Իսկ նորա կասկածեալ եթէ Իսիասլաւ Դաւթեան՝ իշխան Չէրնիկովայ ակն եդեալ իցէ թագաւորութեանն, յարեաւ 'ի վերայ նորա անխորհրդաբար, և 'ի պարտութիւն մատնեալ փա-

խրատական եղև, և եԹող զաԹոռն՝ Իզիասլաւայ ։

Սակայն և նա սախալեցաւ Թողուլ զայն անհանգարտին Եւուրեայ անուանելոյ Տոլկորուքի, այսինքն Երկայնաձեռն, որ զօրու ծանու եկեալ եմուտ 'ի Քիեվ, և Թագաւորեաց ։

## ԵՈՒՐԻ Ա. ՎԼԱՏԻՄԻՐՈՎԻՉ ԵՐԿԱՅՆԱՁԵՌՆ

Ի ՎԱԹՍՈՒՆ և երից ամաց հասակին անցեալ յաԹոռ, յանգուլ պատերազմունս ծախեաց և զմնացորդս կենացն ընդդէմ արշաւանաց Փոլովցեաց. և յաղթահարել Նովկորոտացւոց՝ երդուանկուն առնել զխռովասէր ժողովուրդն. այլ կանխեալ խուռոյ օրհասին՝ մեռաւ յամին 1158, զհետ երից ամաց Թագաւորութեն. և եԹող մետասան որդիս ։

Սա շինեաց զՄօսքուա (որ և Մոսկով կամ Մոսքա) քաղաք՝ հաւանեալ ընդ դիրս տեղւոյն, և անիրաւուԹբ յափշտակեալ զայն 'ի ձեռաց տեառնն՝ որում անուն էր Քուչքօ. և զբազումս 'ի բնակչացն Վլատիմիրայ անդր առաքեաց 'ի բնակել ։ Շինեաց և այլ քաղաքս 'ի տէրութե իւրում, և գաղթականս ածեալ բնակեցոյց 'ի նոսա ։

Այլ քանզի բազում բռնութեամբք

տաղակալն լեալ էր Քիեվացւոց, ընդ-մեռանել նորա յաւարի առին զապա-րանս նորա, և զմնացորդս նորա ընդ սուր անցուցին։ Եւ մինչ նոքա դեռ զաղմկաւն էին՝ Իսխասլաւ իշխան Չեռնիկովայ եկն եմուտ 'ի քաղաքն անդր, և կալաւ զա-թոռն։

Զհետ նորա իշխանք ինն հետ զհետէ առին 'ի միմեանց զաթոռն, և ոչ ինչ արժանի յիշատակի թողին՝ բայց յան-արժան ոգւոյ փառասիրութիւն։

Իսկ բնակիչքն Վոլոտիմիրայ թագա-ւորեցուցին իւրեանց զանդրանիկն Եու-րեայ զԱնդրէաս Պոհոլիւպսքի, այսինքն է Աստուածասէր, զայր բարեպաշտօն և խոհական և արիասիրտ, և նա սկսաւ վանել զԹշնամիս Ռուսիոյ զԲուլղարս և զԹաթարս ապստամբեալս յաշ-խարհն։

ԱՆԴՐԷԱՍ ԵՈՒՐԵՎԻՉ
ՊՈՀՈԼԻՒՊՍՔԻ

ՏԵՍԵԱԼ Անդրէի զչփոթս աշխար-հին յերեսաց բազմիշխանութեան, և մա-նաւանդ զանդադար խռովութիւնս Նով-կորոտայ, զոր գումարեաց 'ի ձեռս որ-դւոյ իւրոյ Մսթիսլաւայ. միաբանեցոյց

ընդ նմա և զմետասան իշխանս, և առաքեաց նախ 'ի վերայ Քիեվայ։

Ռոստիսլաւ որ թագաւորէրն անդ յայնժամ, յետ ընդդէմ կալոյ ժամս ինչ՝ ապա եթող զկին իւր և զորդին՝ և փախեաւ 'ի քաղաքէն. և թշնամեացն մտեալ աւար հարին զՔիեվ զերիս աւուրս. և յայնմ հետէ փոխադրեցաւ աթոռ թագաւորութեն 'ի Վօլօտիմիր։

Յետ այնորիկ նուաճեաց Անդրէաս և զՆովկորոտացիս՝ կարգեալ նոցա ըստ խնդրոյ նոցին իշխան զորդի իւր զԵուրի։

Եւ մինչև սկիզբն արարեալ 'ի վայելել յարգասիս արութեցն իւրոց՝ զրաւեցաւ 'ի կենաց բռնական մահուամբ։

Քանզի Անդրէաս ունէր 'ի կնութե զդուստր Քուչքայ՝ զտեառն Մոսքուա քաղաքին. և սիրէր յոյժ զմի յորդւոց աներոյն իւրոյ՝ որում անուն էր Յովակիմ։ Ապա 'ի պատժապարտ գտանիլ միոյ յեղբարցն Յովակիմայ՝ Անդրէաս ետ զնա 'ի մահ, և Յովակիմ եդ 'ի մտի վրէժխնդիր լինել մահու եղբօրն. և 'ի գիշերի միում յարձակեալ 'ի վերայ արքային դաւակցօք իւրովք՝ սպան զնա, և զտուն նորա էառ յաւարի։

Եւ նա թագաւորեաց ամս երեքտասան. և կալաւ զաթոռն Միքայէլ Եուրեվիչ զամ մի, և մեռաւ՝ թողեալ որդի մի Կլեպ անուն։

## ՎՍԵՎՈԼՈԴ Գ. ՅՈՒՐԵՎԻՉ

ԶՀԵՏ Միքայէլի մեռանելոյ հաւանու_թեամբ ժողովրդեան ամբարձաւ յաթոռն Վսեվոլոդ կրտսերագոյնն յորդիս Եու_րեայ: Որոյ կալեալ արդարապէս զպապա_նողն Անդրէի՝ ընկղմեաց 'ի ծովակ մի մերձ 'ի Վլատիմիր. և զկին նորա, որ_պէս ասեն ոմանք, կախեալ 'ի գրուանս ապարանիցն արքունի՝ նետահար ետ սպանանել, իբրև զհամախոհ սպանողաց առնն իւրոյ:

Յետ այնորիկ փոյթ յանձին կալեալ զխաղաղութենէ աշխարհին՝ նուաճեաց զբազումս յիշխանաց գաւառացն և եդ_ զնոսա 'ի բանտի. և խաղաղացաւ եր_կիրն ամս երկուս:

Այս յամին 1184 արշաւեցին Բուլ_ղարք 'ի Ռուսիա, և Վսեվոլոդ յետ մի անգամ մարտ գնելոյն ընդ նոսա՝ հաշ_տութիւն խնդրեաց 'ի նոցանէ:

Եւ թագաւորեալ ամս երեսուն և հինգ՝ մեռաւ յամին 1212. և 'ի բազ_մամեայ թագաւորութեան սորա է իմա_նալ՝ թէ ոչ ինչ արժանի յիշատակաց դէպք վրդովմունք խաղաղութեան պատա_հեցին 'ի Ռուսիա յաւուրս իւր:

Վսեվոլոդ ունէր որդիս եօթն, որք էին Կոստանդին, Գորիս, Եուրի, Եա_

րոսլաւ, Վլատիմիր, Սվեաթոսլաւ, և Իւան. և 'ի մեռանել իւրում բաժանեաց նոցա զգլխաւոր քաղաքս տէրութեն, Եուրեայ պահեալ զթագաւորութին Վլատիմիրայ։ Այլ վաղ խանգացեալ նոցա ընդ բաժինս իւրեանց՝ սկսան անկանել ընդ միմեանս։

## ԵՈՒՐԻ Բ. ՎՍԵՎՈԼՈԴՈՎԻՉ

ՄՍԹԻՍԼԱՒ զօրացեալ յաւուրս սորա տիրեաց Նովկորոդայ, և որ ըստ օրէ բազմացուցեալ զզօրս իւր՝ ոռացաւ յիւր կողմն և զԿոստանդին զեղբայրն Եուրեայ, և յարեաւ 'ի վերայ նորա։ Եւ Եուրեայ կազմեալ բանակ ահագին բազմութեամբ զօրաց խաղաց ընդդէմ Մսթիսլաւայ, և խրոխտանօք իմն քարոզ կարդաց 'ի բանակին, զի թէ ոք խնայեսցէ յոսոխ իւր, և կամ գերի վարեսցէ զնա և ոչ սպանանիցէ, մահապարտ լիցի։

Այլ 'ի խառնել պատերազմին խորտակեցան զօրք իւր. քնն հազարք 'ի նոցանէ անկան 'ի մարտի անդ, և մեծ մասն նոցա 'ի փախչել իւրեանց զետամոյն եղեն. և ինքն Եուրի մերկացեալ զսպառազինութենէ իւր՝ շապկով եւեթ փախուցեալ գայր 'ի Վլատիմիր։ Հասին զկնի նորա և Մսթիսլաւ և Կոս-

տանդին, և Եուրի անձնատուր եղև 'ի նոսա ։ Կոստանդին կալաւ զաթոռն, և զԵուրի արձակեաց յազատութիւն կարգեալ նմա կալուածս իշխանութեան ։

Այլ անդէն յառաջնում ամի թագաւորութեան իւրոյ անկեալ յախտ ծիւրականն, իբրև եսես զանձն 'ի դուրս մահու հասեալ՝ կոչեաց զԵուրի, և ետ 'ի նա անդրէն զթագաւորութիւնն. 'ի խնամս նորին յանձն արարեալ և զերեսին որդիսն իւր զՎասիլ, զՎսեւոլոդ, և զՎլադիմիր ։

Իսկ Մսթիսլաւ ոչ շատացեալ իշխանութեամբ Նովկորոտայ՝ գնաց 'ի Կալիչ, և կործանեալ յաղթանակաւ էառ զայն 'ի Մաճառաց, յերկրորդումն ձերբակալ արարեալ և զարքայն նոցա զՔոլոման ։

Ընդ այն ժամանակս յարձակեցան Բուլղարք 'ի սահմանս Վոլատիմիրայ, և Եուրի դիւրաւ խոնարհեցոյց զնոսա 'ի խնդրել զհաշտութիւն, զի անտի և Թաթարք յաշխարհն Բուլղարաց արշաւէին ։

Քանզի աշխարհակալն Չինկիզ խան զկնի արշաւանին 'ի Պարսս և 'ի Կասպս, խաղայր գայր ընդ դուռն Ալանաց յաշխարհն Փոլովցեաց ։ Ընդ որ զահի հարեալ Ռուսաց՝ պատրաստեցան զդէմ ունել նոցա՝ հարիւր հազարօք, առաջնորդութեամբ Մսթիսլաւայ. և ոչ հաւանեալ պատգամաւորաց Թաթարացն՝ որք յորդոր լինէին նոցա հանդարտ կալ.

զի չէք ինչ՝ աւելին՝ մեր և ձեր. այլ և սպանեալ ևս զպատգամաւորսն՝ դրդուեցին զԹաթարս 'ի պատերազմ:

Որոց զառաջինն պարտութիւն կերպարանեալ 'ի փախուստ դարձան. և հետամուտ եղեն նոցա Ռուսք աւուրս տասն, մինչև անցին երկաքանչիւր բանակքն ըստ գետն Ղալղա՝ որ Թափի 'ի Սեաւ ծով. յայնժամ ընդ կրունկն դարձեալ Թաթարաց՝ ահագին կատաղած հասուցին 'ի վերայ չփոթելոցն Ռուսաց, և Փոլովցեաց նիզակակցացն նոցա. մանաւանդ 'ի փախչել անդ Մըսթիսլաւայ սակաւաձեւն գնդաւ՝ հրձիգ արարեալ անմտութ՟բ զայլ անցս նաւակս իւրոյ բանակին. որով 'ի սպառ խորտակեցան Ռուսք, և զերծեալքն ոչ ինչ աւելի եղեն քան զոգիս տասն հազար:

Ապա յերկուս առաջս բաժանեալ Թաթարաց՝ դիմեցին առին զՔիեվ, և զիշխան քաղաքին՝ որ աւուրս երկուս զդէմ կալեալ էր պաշարմանն, և զայլ ևս երկուս յիշխանակցաց նորին պընդեալ առանձինն յերկուս երկուս տախտակս, և նստեալ 'ի վերայ նոցա՝ խնջոյս յաղթութե՟ն կազմեցին, և այնպէս չարամահ արարին զնոսա: Եւ ինքեանք խաղացեալ ևս յառաջ, 'ի հուր և 'ի սուր ծախեցին զքաղաքս և զգիւղս, և լցեալք աւարաւ՝ դարձան անդրէն առ Չինկիզ, որ դեռ ևս 'ի Պուխարա էր:

Որ ուրեմն խլրտեցաւ Եուրի յառա_
ներ ընդդէմ Թշնամեաց. այլ 'ի լնել
զդարձ Թաթարացն յետս, և ինքն գար_
ձաւ 'ի տեղի իւր:

Յետ այսորիկ ընդ ամս երեքտասան
ցամն 1236, յանդգագար աղէտս տկլու
և սաստանութեց, պատերազմաց և յա_
փրշտակութեանց մաանեցաւ Ռուսուդա.
մինչև լցին զչափ աղէտից աշխարհին.
Թաթարք արշաւեալք անդր անթիւ
բազմութեք 'ի 1237:

Ի խնդրել կուսակալ իշխանացն զօգ_
նականութիւն Եուրեայ, նա զլացաւ նո_
ցա. և Թաթարաց անխափան շրջան ա_
ռեալ ընդ ամենայն կողմանս աշխար_
հին՝ կոտորեցին զդիմակացս, և ընդ
որս հաճէին՝ 'ի գերութե վարեցին.
առին և զՄոզքուա, և զեշխան քաղա_
քին զորդի Եուրեայ չարաչար մահուամբ
խողխողեցին:

Ի լուր եղելոցս փախեաւ Եուրի, և
անկաւ առ Թոռոմս և ազգակիցս իւր
յայնկոյս Վոլկա գետոյ. այլ 'ի ժխտել
նոցա զձեռնտուութիւն իւրեանց նմա,
որպէս արար նա ինքն այլոց իշխանաց
իւրոց, եդ 'ի մտի յուսահատ համար_
ձակութեամբ մարտ դնել վանել զԹըշ_
նամիս:

Վառեցան և իւրքն նովին ոգւով և
խաղացին ընդդէմ Թաթարաց, որք ա_
հա ընդ առաջ նորա գային՝ առեալ
զՎոլոտիմիր քաղաք, և հրկէզ արարեալ.

և զկանայս և զորդիս Եուրեայ՝ զապաւինեալս յեկեղեցին՝ 'ի սուր սուսերի կոտորեալ:

Բազում արուեստս գործեցին Ռուսք 'ի պատերազմին. այլ իբրև անկաւ անդ Եուրի՝ լքան պարտասեցան և իւրքն, և ցիր և ցան եղեն: Եւ Թաթարք շատ համարեալ առ ժամն զյաղթանակն՝ դարձան 'ի բուն բանակն իւրեանց:

Քառասուն և ինն ամաց էր Եուրի 'ի մեռանել իւրում, անուամբ չափ զօգցես թագաւորեալ նախ յամին 1212, և 'ի 1217 անկեալ յաթոռոյն, և 'ի միւսում ամին անդրէն հաստատեալ, և ոչ ինչ գործ թագաւորի ցուցեալ մինչև ցմահ իւր:



# ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

## 1237=1460



## ԵԱՐՈՍԼԱՒ Բ. ՎՍԵՎՈԼՈՏՈՎԻՉ

Իբրեւ ազդ եղև Եարոսլաւայ որդւոյ Վսեվոլոտայ նահանջն Թաթարաց, փութացաւ հաստատեաց զորդին իւր զԱղեքսանդր յիշխանութեան Նովկորոդայ, և գնաց 'ի կանգնել զաւերակս Վոլոտիմիրայ. Ժողովեաց անդր զբնակիչս քաղաքին զցրուեալս, և բաժանեաց 'ի տոհմակից իւր իշխանսն զգաւառս անառաջնորդս: Ապա խաղաց 'ի Կալէչ, և գերի տարաւ զիշխան նորին հանդերձ կնաւն:

Ընդ այն աւուրս Մանգու զօրավար Պադու խանին հրեշտակս արձակեալ առ Միքայէլ որդի Եարոսլաւայ իշխան Քիեվայ՝ խնդրէր զքաղաքն. այլ նա հրամայեաց սպանանել զհրեշտակսն. և յաւելեալ վտանգին 'ի նենգն՝ փախստական թաքթաքուր շրջէր 'ի Մաճառս:

Ի դէպ ժամուն տիրեաց Քիեվայ Ռոսթիսլաւ իշխանն Չերնիկովայ. սակայն և զնա վանեաց անտի այլ ոմն իշ-

խան . և յետքն իսկ խոյս տուեալ յահէ Թաթարաց՝ յանձն արար զքաղաքն Դեմետրի ումեմն իշխանի ։

Իսկ Պատու խան իրազեկ լեալ սպանման դեսպանացն, եկն անձամբ և պաշարար 'ի Քիեվ տալ զքաղաքն՝ խաղաղութեան պայմանօք. և 'ի չառնուլ յանձն Դեմետրի, սկսաւ քանդել զորմունսն քաղաքին. և մինչև խրամատեցաւ մի կողմն պարսպին, քաղաքացիքն այլ պարիսպ կանգնեցին 'ի ներքուստ, և քաջութեամբ մարտ դնէին ։

Այլ երբև Դեմետր կարեվէր խոցեցաւ, զեղան 'ի ներքս Թաթարքն և սկսան յանխնայ կոտորել զՔիեվացիս. բայց Պատու արգել զնոսա, մեծարեաց զԴեմետր, և ներեաց քաղաքացւոցն վասն քաջութեան զդէմ ունելոյ նոցա պաշարմանն. և կարգեալ նոցա իշխան զմի ոմն յիւրոցն՝ մեկնեցաւ անտի, և ըստ Դեմետրի խրատուցն դէմ եդ խաղալ 'ի Լեհս և 'ի Մաճառս՝ յուսով յոլովագոյն աւարի ։

Սակայն սուղն այն խաղաղութի Ռուսիոյ վաղ վրդովեցաւ անդրէն ներքին և արտաքին պատերազմօք ։

Զի տեսեալ զհարուածս աշխարհին Ռուսաց՝ Խաչակիրքն Լիվոնիացիք և սահմանակիցք նոցա՝ օգնականութե Թագաւորացն Դանեաց և Շվէտաց խաղացին 'ի Ռուսիա, և ստիպէին զՆովկորոտացիս անձնատուր լինել ։

Եւ ընդդէմ նորա Աղեքսանդր որդի Եարոսլաւայ, և ճակատ տուեալ յափն Նեւա գետոյ՝ հոյակապ յաղթանակ կանգնեաց 'ի տեղւոջն. վասն որոյ և կոչեցաւ Նեւսքի, այսինքն է Նեւացի :

Մինչդեռ ոգի առեալ հանդարտեալ կային Ռուսք 'ի Վղատիմիր և 'ի Նովկորոտ, առաքեաց կոչեաց Պաթու խան զԵարոսլաւ 'ի բանակ իւր, զի յայտ արասցէ նա զնշանակս հնազանդութեան իւրոյ և զհպատակութիւն. և իբրև եկն՝ հաստատեաց զնա 'ի Թագաւորութեան. զնոյն արարին և այլք յիշխանացն Ռուսաց : Եւ Եարոսլաւ մեռաւ ամաց յիսուն և եօթանց, Թագաւորեալ ամս եօթն :

Լուեալ Միքայէլի զմեկնել Թաթարաց՝ դարձեալ երևեցաւ 'ի մէջ, և կալաւ զՉէրնիկով : Սմին իրի փոխանորդն Պաթու խանին հարկեցոյց զնա գնալ առ Պաթու, զի խոստացեալ նմին զհպատակութիւն իւր՝ առցէ անդրէն զիշխանութիւն : Եւ նորա վստահացեալ ընդ խոստումն օրինակաւ այլոց իշխանաց՝ գնաց 'ի մեծ բանակն :

Սովորութիւն էր առ Թաթարս, զի օտարազգի որ եկեալ յայց խանին՝ անցանէր նախ ընդ հուրն՝ որ վառեալ կայր առաջի և անտի դրանց խորանին, իբր 'ի սրբել զանձն և զնուէրսն, և ապա երկրպագեալ առաջի խորանի խանին՝ մտանէր 'ի ներքս : Արդ կարծեալ

Միքայէլ՝ եթէ դիք ոմանք իցեն 'ի ներքս 'ի խորանի անդ, պնդեցաւ և ոչ կամէր երկիր պագանել:

Ընդ որ ցասուցեալ խանին՝ յիշեաց և զառաջին դաւաճանութիւն դեսպանացն, և սպան զնա. այլ անմիտս արձակեաց զիշխանն Գորիս՝ որ եկեալն էր ընդ Միքայէլի:

## ԱՆԴՐԷԱՍ Բ. ՅԱՐՈՍԼԱՒԻՉ

ՊԱՏՈՒ խան իբրև տէր համօրէն Ռուսիոյ՝ պահանջեաց և յԱղէքսանդրէ Նեւսքեայ զհպատակութիւն. և նորա առեալ ընդ իւր զեղբայր իւր զԱնդրէաս՝ գնաց առ նա. և սակս բարձրահասակ և գեղադիտակ և ազնուական կերպարանացն, և արիական համարձակութեան մեծապէս պատուեցաւ 'ի խանէն, և կարգեցաւ 'ի նմանէ իշխան հիւսիսային կողմանցն Ռուսիոյ:

Իսկ զԱնդրէաս կացոյց խանն իշխան Վոլոտիմիրայ, և ետ նմա զօրս 'ի Թիկունս, որովք վանեաց նա յաթոռոյն Վոլոտիմիրայ զՍվեաթոսլաւ զեղբայրն Միքայէլի, որ այն ինչ դեռ ևս բռնացեալ կալեալ էր զաթոռն:

Ընդ այն ժամանակս մինչդեռ տակաւին Թաթարք ունէին զՔիեւ Դանիէլ որ իրաւացի ժառանգորդ համա-

րեալ իշխանութեն քաղաքին՝ ընկալաւ զհռոմէական դաւանութիւն, և գտեալ շնորհս առաջի քահանայապետին Հռովմայ՝ կոչեցաւ և թագաւոր Ռուսիոյ։ Արդ ընդ սմա մտերմացեալ Անդրէի՝ յանձն իւր ևս ձգեաց զատելութիւն Ռուսաց և զԹաթարաց՝ իբրև բարեկամ ազգաց օտարաց հեռաւորաց. և զխմեալ Թաթարաց զօրու ծանու անպատակեցին յաշխարհ նորա, և զնա փախուցին կնաւն հանդերձ 'ի Լիվոնիա, և ետուն զիշխանութիւն նորին Աղեքսանդրի։

## ԱՂԵՔՍԱՆԴՐ Ա. ՅԱՐՈՍԼԱՒԻՉ ՆԵՒՍԿԻ

ՍԱ այր անձնանուէր յօգուտ հայրենի աշխարհին, 'ի բազմավրդով ժամանակին ամենայն ոգւով ջգնեալ 'ի հանդարտել ըստ կարի զշփոթս, էր զի զյանցուածս իւրոցն ինքնին պատուհասէր, և էր զի անձամբ երթեալ առ խանն՝ ներումն վասն իւրոցն հայցէր։

Այլ առ կենդանութեան նորա ոչ ծանեան Ռուսք զյարգ առաքինւոյ առնն։ Եւ Նովկորոտացիք ձեռն տուեալ եղբօր նորին Եարոսլաւայ՝ վանեցին 'ի քաղաքէն իւրեանց զՎասիլ զորդի Աղեքսանդրի։ Սակայն Աղեքսանդր վերստին հաստատեաց զորդի իւր յիշխանութեան.

ապա խաղաց և յաշխարհն Շվէտաց, և էած գերի և աւար բազում ։

Իբրև մեռաւ Գադու խան, կարգեցաւ 'ի մեծէ խանէն փոխանակ նորա զօրավար Գուրղա ոմն. որոյ արձակեալ ընդ ամենայն Ռուսիա հարկահանս, առաքեաց զմի ոմն և 'ի Նովկորոտ. այլ Նովկորոտացիք չառնուին յանձն, մինչև եկն Աղեքսանդր, և զխռովարարսն պատուհասակոծ արարեալ, և 'ի տեղի Վասլի կարգեալ զմիւս որդի իւր զԴեմետր, հաւանեցոյց զՆովկորոտացիսն անխափան հարկել Թաթարաց՝ անուամբ ընծայաբեր լինելոյ ։

Մեռաւ 'ի ժամանակին յայնմիկ Գիուգ մեծ խանն Թաթարաց Թոռն Չինկիզ խանին, և յետ բազում շփոթից՝ զօրացեալ տիրեաց Քուպլայ խան ։ Եւ Ռուսաց պատեհ առեալ զաղմուկս նոցա՝ միաբանեցան 'ի ծածուկ քաղաքք բազումք, և 'ի ժամադիր պահու յարձակեալ կոտորեցին զամենայն ըզհարկահանս Թաթարաց ։

Ի տագնապ անհնարին պաշարեալ Աղեքսանդրի ընդ այն՝ մինչդեռ վարանէր ելս իրացն գտանել, պատուէր հրամանի ընկալաւ 'ի Գուրղայէ՝ զօրաժողով լինել և պատրաստիլ 'ի պատերազմ ։

Յայնժամ արին այն զանձն 'ի կշիռ եդեալ փոխանակ ընդ ազգին՝ գնաց միայնակ առ Գուրղա, և յայտ արարեալ թէ ոչ մի ինչ յեղելոցն յիւր գի-

տութն եկեալ էր, յաւելլ առաւելս զնեղել աղերսիւ զապաշաւ Ռուսաց ընդ եզեալսն, և խոստացաւ տուժիւք հարկաց վճարել զյանցուածն. և զօրավարին սքանչացեալ ընդ արիական վստահութն և ընդ հաւատարմութեն Աղեքսանդրի, շնորհեաց Ռուսաց զյանցանս:

Այլ Աղեքսանդրի խօթացեալ զճանապարհայն և մերձեալ 'ի մահ՝ եմուտ 'ի կարգ կրօնաւորութեան և կոչեցաւ Ալեքս. և դասեաց զնա ազգն իւր 'ի դաս սրբոց. այլ յետ ժամանակաց և մեծն Պետրոս կառոյց 'ի պատիւ նորա մենաստան 'ի տեղւոջն ուր յաղթեալ էր Աղեքսանդր Շվէտաց, և կարգեաց յանուն նորա զկարգ մի ասպետաց:

Եւ մեռաւ Աղեքսանդր Նեւսքի յամին 1264, լեալ ամաց քառասուն և չորից, և թագաւորեալ ամս երկոտասան. և եթող որդիս չորս, զՎասիլ, զԴեմետր, զԱնդրէաս և զԴանիէլ:

## ԵԱՐՈՍԼԱՒ Գ. ԵԱՐՈՍԼԱՒԻՉ

Ի ԳՆԱԼ Աղեքսանդրի առ զօրավարն Թաթարաց՝ Նովկորոտացիք բանս եդեալ ընդ եղբօր նորին Եարոսլաւայ՝ պատրաստեցան 'ի բաց վարել զԴեմետր զորդի Աղեքսանդրի, և զնա կացուցանել իւրեանց իշխան՝ յուսով մեծամեծ աղա-

տութեանց և բարեաց, զորս խոստանայր նա նոցա: Այլ 'ի մեռանել Աղեքսանդրի կալաւ նա զաթոռ թագաւորութեան Ռուսաց, և խաղաց 'ի վերայ Տոմանդեայ ուրումն Լիթուանիացւոյ՝ որ բռնացեալ էր 'ի Փսքով. բայց ոչ ինչ կարաց վճարել, զի և Նովկորոտացիք յետս կացին 'ի նմանէ:

Այս օգնականութ̃բ Թաթարաց յաղթանակ կանգնեալ 'ի վերայ Գերմանացւոց արշաւելոց 'ի կողմանս Նովկորոտայ՝ վստահութ̃բ եմուտ 'ի Նովկորոտ. այլ քաղաքացիքն անգոսնեալ վանեցին զնա անտի իբրև երդմնազանց և ստախօս: Եւ նորա լի ցասմամբ դարձ արարեալ 'ի Վլոտիմիր՝ դունդ կազմեաց ելանել ընդդէմ Նովկորոտացւոց, և խնդրեաց զօրս 'ի Մանգու խանէն՝ ասելով եթէ ոչ վասն այլոյ իրիք անգոսնեցին զնա Նովկորոտացիք, բայց զի ատելի է նոցա նախանձ հաւատարմութեան իւրոյ առ Թաթարս:

Մինչդեռ նա յայտնի էր՝ Վասիլ եղբայր նորա իշխան Քոստրոմայ որսացաւ զՆովկորոտացիս յիւր կողմն, և գնացեալ ինքնին առ Մանգու՝ յայտնեաց նմա զբուն պատճառս թշնամութեան Նովկորոտացւոց ընդդէմ Եարոսլաւայ. և խանն յետս կոչեաց անդրէն զզօրսն՝ զորս առաքեալ էր յօգնութիւն նմա:

Սակայն Եարոսլաւ խաղաց ուղղուղքն

իւրովք և Նիզակակից իշխանաւն Սմոլենսքայ 'ի Նովկորոտ. և տեսեալ զդիմադարութիւն հզօր քաղաքացւոցն, բարեխօս կալաւ զմետրապօլիտն Կիւեղայ. և նորա ընդ մէջ մտեալ հաւանեցոյց զժողովուրդն՝ բառնալ զդրօշս քաղաքին՝ յայտ առնելով եթէ սարջացեալ է Եարոսլաւ ընդ եղբաւրն, և խոստանայ անշուշտ կատարել զխոստմունս իւր:

Այլ Եարոսլաւ յերկրորդ ամի հաշտութեան մեռանի՝ Թագաւորեալ ամս եօթն, և թողեալ որդի մի անուն Միքայել:

## ՎԱՍԻԼ Ա. ԵԱՐՈՍԼԱՒԻՉ

ՎԱՍԻԼ եղբայր Եարոսլաւայ Թագաւորեալ 'ի Վոլոտիմիր Նիզակակցութե̅ հարկահանին Թաթարաց՝ դիմեաց 'ի վերայ բնակչաց Նովկորոտայ, որոց առանձին իշխան կացուցեալ էր իւրեանց զԴեմետր. և նորա տեսեալ զվտանգ աշխարհին յերեսաց զօրացն Վասլի և Թաթարաց, հաւանեցոյց զՆովկորոտացիս անձնատուր լինել Վասլի, և ինքն մեկնեցաւ 'ի Փերեսլաւ:

Եւ 'ի մեռանել Վասլի յետ ամաց հնգից, Դեմետր անդրէն կալաւ զիշխա֊

նութիւն Նովկորոտայ և զՎոլոտիմիրայ միանգամայն ։

## ԴԵՄԵՏՐ Ա. ԱԼԵՔՍԱՆՏՐՈՎԻՉ

Եւ սա ըստ օրինակի առաջնոցն անուամբ չափ ևեթ թագաւորեաց. ոչ միայն վասն զի թաթարք էին բնիկ տեարք աշխարհին, և ըստ կամս ասպատակ սփռէին ընդ ամենայն կողմն Ռուսիոյ, այլ և վասն երկպառակութեանց նոցին իսկ Ռուսաց ։

Զի Անդրէաս կրսեր եղբայր նորա ակն եդեալ աթոռոյն՝ գրգռեաց զթաթարս ընդդէմ Դեմետրի, և ընկալաւ 'ի մեծէ խանէն զիշխանութիւն Վոլոտիմիրայ. և եկեալ ազդ արար այլ և այլ իշխանաց, թէ կամք այս են Մանգուխանին՝ զի միաբանեսցին նոքա ընդ իւր ընդդէմ Դեմետրի. և նոքա յանձին կալան ։

Յայնժամ Դեմետր սակաւուք ոմամբք խորհրդակցօք անկաւ 'ի Նովկորոտ, զի թերևս ձեռն տացեն ինքեան ։ Այլ բնակիչք քաղաքին ոչէն առեալ հալածեցին զնա մինչև յափն Իլմեն լճին, և զերկուս դստերս նորա և զկանայս իշխանացն որ ընդ նմա՝ 'ի դիպահոջ արգելին, և ապա հրաւիրեցին զԱնդրէաս գալ տիրել քաղաքին իւրեանց ։

Իբրև ետես Դեմետր զմեկնելն Թաթարացն՝ գունդ կազմեալ գայր վանել զյափշտակողն ’ի Նովկորոտայ. այլ նորա տագնապարեալ անկեալ ’ի մեծ բանակն Թաթարաց, դարձաւ եկն բազմութեամբ զօրաց, և ոտնակոխ արար զամենայն սահմանս Դեմետրի. որոյ ոչ կարացեալ հանդարտել կալ ընդդէմ Անդրէի, ապաստան եղև առ Նողայ Թաթարս, որք ինքնագլուխք էին. և նեղակակցութեամբ նոցա եկն ’ի Վլատիմիր. և Անդրէաս խոնարհեցաւ խնդրել զխաղաղութիւն:

Ի մեռանել Մանգու խանին և ’ի յաջորդել Թուդագարայ՝ Անդրէաս գնացեալ նմա յայցելութիւն չարախօսեաց և զԴեմետրէ, զի բարեկամութեամբ էր ընդ Նողայս. և նա ետ ’ի ձեռս եղբօր իւրոյ զօր բազում և արձակեաց ընդ Անդրէի ’ի Ռուսիա, զի հաստատեսցեն յաթոռն Վլատիմիրայ զԱնդրէաս:

Եւ քանզի վաղագոյն խոյս տուեալ էր Դեմետր ’ի Փսքով յաւարի առին Թաթարք զՎլատիմիր և զմերձակայ քաղաքսն, և Անդրէաս ժառանգեաց զամայացեալ աթոռ թագաւորութեան. այլ ’ի գալ ամին միւսոյ գաշն ուխտի հաստատեցին ընդ միմեանս եղբարքն երկոքեան, և Անդրէաս դարձոյց անդրէն առ Դեմետր զՎլատիմիր և զամենայն երկիր նորա:

Սակայն և նորա ոչ ընդ երկար վայե-

լեալ 'ի կարծեցեալ Թագաւորութենն մեռաւ յամին 1294, Թագաւորեալ ամս հինգ. և եԹող զորդի մի Լևոն անուն :

## ԱՆԴՐԷԱՍ Գ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻՉ

ՄԱՀՈՒԱՄԲՆ Դևմետրի միայն մնացեալ Անդրէաս օրինաւոր ժառանգ աԹոռոյն Վլոտիմիրայ, և տեսեալ զի Մոսքուա միայն զերծ մնացեալ էր յարշաւանաց Թաթարացն և գամ քան ըզգամ պայծառանայր, զհետ եղև յափշտակել զայն յեղբօրորդւոյն իւրմէ Եուրեայ :

Այլ մինչդեռ դառնայր զօրօք 'ի մեծ քանակէն Թաթարաց՝ մեռաւ յամին 1304, և տարեցաւ Ռոստովա 'ի Նորանոր հարուածոց :

## ՄԻՔԱՅԷԼ Բ. ԵԱՐՈՍԼԱՒԻՉ

ՅԵՐԻՑ իշխանաց ձգտելոց 'ի ժառանգութիւն աԹոռոյն Անդրէի, որք էին Դևմետր իշխան Թվերայ, Եուրի իշխան Մոսքուայի. և Միքայէլ որդի Եարոսլաւայ եղբօրորդի, ուխտիւք ժողովրդեանն ընտրեցաւ Միքայէլ, և հաստա-

տեցաւ 'ի խանէն Թաթարաց, և զամս հինգ խաղաղութեամբ վարեաց զԹագաւորութիւն :

Ապա 'ի մեռանել Թուղքադարայ, և 'ի յաջորդել որդւոյ նորին Իւզպէքայ՝ գնացեալ Միքայէլի յայց նորոյ խանին՝ մեծապէս պատուեցաւ 'ի նմանէ ինքն և մետրապօլիտն Պետրոս, զոր ընդ իւր ածեալ էր :

Այլ մինչդեռ նա անդ էր՝ սով սաստիկ անկաւ 'ի Նովկորոտ, և Եուրի իշխան Մոսքուայի համբաւեաց չարամտութեամբ, իբրու եթէ անխորհուրդ տեսչութեան Միքայէլի արդարև իցեն հարուածքն, և ինքն կալաւ զիշխանութիւն քաղաքին :

Իբրև ազդ եղեն իրքն առ Իւզպէք. ծանրացասութեամբ եղեալ՝ առաքեաց կոչեաց զԵուրի յառնել գալ անյապաղ առ ինքն, և զՄիքայէլ դարձոյց զօրօք հանդերձ 'ի տեղի իւր. յորոյ 'ի հասանելն 'ի Նովկորոտ, քաղաքացիքն խնդրեցին զխաղաղութիւն :

Իսկ Եուրի իւրով կեղծուպատիր բանիւք ընդ մտո մտեալ խանին՝ այնպէս իմն յինքն յանկոյց զսիրտ նորա, զի էառ 'ի կնութիւն զքոյր խանին՝ որ յետ մկրտութեան անուանեցաւ Ագաթա : Ապա յամին 1317 ընկալաւ և զանուն Թագաւորութեան, և դարձաւ 'ի Ռուսիա :

Զայն զգացեալ Միքայէլի՝ գունդ կազմեաց և ել ընդդէմ Եուրեայ. որոյ

տեսեալ զանբաւականութիւն ձեռին իւրոյ՝ առաքեաց խնդրեաց զխաղաղութիւն հրաժարելով 'ի թագաւորութէն Վոլոտիմիրայ. և Միքայէլ հաւատաց նմա:

Իսկ նորա 'ի ծածուկ զիւրև ածեալ զոմանս յիշխանաց, և զնովկորոտացիս, խաղաց պաշարեաց զՄիքայէլ 'ի Թվեր քաղաքի. այլ նա իւրովքն հաւատարիմ զօրօք հալածեաց զնա 'ի բաց, և զկին նորին զԱգաթա կալեալ ած 'ի Թվեր, որ և յետ սակաւուց հիւանդացեալ մեռաւ անդէն:

Զայս պատճառս առեալ Ննդժոտն Եուրի՝ համբաւեաց՝ եթէ Միքայէլ աթշնամութեն դեղ մահու արբոյց կնոջ իւրում քեռ մեծի խանին. և թէպէտ նա 'ի ցոյց անմեղութեն իւրոյ առաքեաց առ խանն զորդի իւր զԿոստանդին պատանի չորեքտասանամեայ, սակայն Եուրի անձամբ երթեալ զայրացոյց զոգին Իւզպէքայ ընդդէմ Միքայէլի բազմապատիկ զրպարտութեամբք. մինչև դեսպան առաքեաց առ նա խանն, զի փութանակի եկեալ յանդիման լիցի ինքեան: Իսկ նորա յառաջ քան զժամանել դեսպանին յուղի անկեալ գայր առ խանն. և զճանապարհայն դիւրաւ հաւանեցոյց զդեսպան խանին զայր լաւաբարոյ ընդ անմեղութի իւր. և 'ի պատմել առնն զամենայն դաւաճանութիւս Եուրեայ, և թէ հանդերձեալ է խանն 'ի դիպահող արկանել զՄիքայէլ, բազում թա-

խանձեցին զնա որդիքն իւր և բարեկամքն, զի մի՛ երթիցէ անձամբ առ խանն, այլ նա ոչ անսաց նոցա։

Եւ իբրև եհաս առ Իւզպէգ՝ նա զառաջինն բարեկամաբար ընկալեալ զՄիքայէլ, ապա 'ի նորոգել զրպարտութեանն՝ արգել զՄիքայէլ 'ի գիտապահոջ առ 'ի դատաստանաւ քննել զնա. և որչափ ջանացաւ Իւզպէգ արդարապէս առնել զվճիռն, սակայն պարտեալ 'ի դատախազիցն սուտ ամբաստանութեանց՝ արկ զՄիքայէլ 'ի կապանս, և մատնեաց զնա 'ի ձեռս կուսակցին Եուրեայ Ղարզանի իշխանին։ Եւ նորա եդեալ 'ի մտի դառն մահուամբ վճարել զՄիքայէլ 'ի կենաց՝ ամիս մի ինչ պնդեաց զպարանոց նորա 'ի կոճեղս ծանունս, և ապա դատապարտեալ 'ի մահ՝ ած զնա 'ի քաղանիս, զգեցոյց հանդերձս ոսկեդիպակս, և արար նմա խնջոյս բազմածախս, զի յուշ լիցին նմա նախնիք պերճութիւնքն։ Եւ իբրև յաղեցան Եուրի և Ղարզանի ընդ ողորմ տեսիլ վատաբախտ արքային՝ առին զնա դահիճքն, և ծայրակտուր արարեալ յոտից և 'ի ձեռաց, կախեցին զնա ընդ որմ ինչ խարխուլ զպարանոցէն, և յանկանել որմոյն մինչդեռ այսր անդր շարժէին զնա դահիճքն, մի ոմն 'ի Ռուսաց առ գութ աղեացն խոցեաց դանակաւ ընդ սնակուշան Միքայէլի, և զերծոյց զնա 'ի դառն տանջանաց անտի։ Ի տեսիլ դիականն յու-

ծանոյց նմին զբռնութիւն Յուրեայ. և քանզի խանն կանխաւ եւս 'ի կասկածոտ միտս էր զնենգաւորէն, եւ Դեմետրի զթագաւորութիւն Վլոտիմիրայ, և արձակեաց զնա 'ի Ռուսիա:

Զայն զգացեալ Յուրեայ՝ անձապարեաց երթալ առ խանն և ամբաստան լինել զԴեմետրէ. այլ զճանապարհայն եհաս 'ի վերայ նորա Աղեքսանդր եղբայր Դեմետրի, և զուղեկից բարեկամս նորին ցրուեալ՝ հալածեաց զնա 'ի Փսկով:

Ի միւսում ամին գնաց Յուրի առ խանն. գնաց և Դեմետր զկնի նորա, և նա շնորհս գտեալ առաջի Իւզպէքայ՝ հանդարտեցոյց զնա, և ապա 'ի վրէժ արեան հօր իւրոյ՝ սպան և զՅուրի:

Սակայն և ինքն չև լցեալ զքսան և եօթն ամ հասակին՝ սպանաւ յերկրորդէն Յուրեայ յԱղեքսանդրէ, որ էառ զթագաւորութիւն Վլոտիմիրայ:

## ԱՂԵՔՍԱՆԴՐ Բ. ՄԻՔԱՅԼՈՎԻՉ

ԱՂԵՔՍԱՆԴՐ փոխանակ տարակուսելոյ ընդ աթոռն՝ որ ծխէր տակաւին յարեան հօր իւրոյ, և եղբօրն, և հօրեղբօր, գնաց առ Իւզպէք, և ընկալեալ զթագաւորութիւնն՝ եկն բնակեցաւ 'ի

Թվեր. զի Վոլոտիմիր աւերեալ և ամայի մնացեալ էր ։

Խորհեցեալ Իւզպէքայ, որպէս աւանդեն պատմագիրք Ռուսաց, յիւրմէ ազգէն կացուցանել զոք Թագաւոր Վոլոտիմիրայ և Նովկորոտայ, առաքեաց առ Աղեքսանդր զՍեւչէլ խան. որում և պատուէր ետ սպանանել զԱղեքսանդր և զիշխանս նորա. և զամենայն աւագանին Թվերայ ։ Աղեքսանդր մեծապէս սիրով հիւրընկալաւ և հանդոյց զՍեւչէլ և զիշխանս նորին յապարանս իւր. այլ երբև զգաց զդաւն՝ 'ի նմին գիշերի կոտորեաց զամենայն զԹաթարս որ գտան 'ի Թվեր, և զապարանսն ուր փախուցեալ էր Սեւչէլ խան իւրովքն հանդերձ՝ այրեաց 'ի վերայ նոցա ։

Ցայնժամ Իւան եղբայր Եւրեայ՝ առ անհաշտական ոխութեանն զոր ունէր ընդ իշխանս Թվերայ՝ ազդ արար Իւզպէքայ զեղելոցն, և ընկալեալ զԹագաւորութիւն Վոլոտիմիրայ՝ եկն բազմութե՛ զօրաց Թաթարաց և այրեաց աւեր արար զԹվեր և զամենայն նորին. և Աղեքսանդր ամրացաւ 'ի Փսկով ։

Ապա տիրեաց Իւան և Նովկորոտայ, և եդեալ անդ զոմն տեղակալ իւր՝ ինքն դարձաւ անդրէն առ խանն ։

Իսկ Աղեքսանդր յետ տասն ամաց կոտորածի Թաթարացն՝ այն է յամին 1338 'ի մեծի բանակի անդ նոցա հատոյց զվրէժն մահուամբ իւրով ։

Եւ էին նորա ուստերք երեք. Ֆէտոր կամ Թէոդոր, Վսեվոլոդ և Միքայէլ. յորոց առաջինն սպանեալ ընդ հօր իւրում: Եւ դստերք երկու, Մարիամ և Յուլիանէ. և յերկրորդս յայսմանէ՝ որ ամուսնացաւ ընդ արքային Ըոլկեռդայ՝ իշխանէ առհմին Պետրոսի Գ., կայսեր Ռուսիոյ, և Պօղոսի Ա., և Աղեքսանդրի, և այժմու ՆԻԿՈՂԱՅՈՍԻ Ա., ինքնակալին:

## ԻՒԱՆ Ա. ՏԱՆԻԼԱՎԻՉ
## ՔԱԼԻԹԱ

ՊԱՅՄԱՆ Թագաւորելոյն Իւանայ էր տալ ՚ի ձեռս Իւզպէքայ զԱղեքսանդր, կամ կորուսանել զնա. վասն որոյ ընդ Թագաւորելն հրամայեաց Աղեքսանդրի երթալ անյապաղ առ խանն. և ՚ի չանսալ նորին՝ առաքեաց զամենայն իշխանս Ռուսաց յառնել ընդդէմ նորա: Այլ առ ժամն հարկեալ դդէմ ունել Գերմանացւոցն արշաւելոց դէպ ՚ի Նովկորոդ՝ եւս մետրապօլտին խրատուն ընդ բանադրանօք արկանել զԱղեքսանդր և զհաւատակիցս նորին. և նա մեկնեցաւ ՚ի Լիվոնիա:

Ինքն եւս Իւան՝ զի նիզակակիցք էին ջրուեցան յՈւրդէ, և կուսակիցք Աղեքսանդրի որ ընդ սա որէ յաւելուն, գնաց առ Իւզպէկ, և ՚ի շքեղս եղև

ընդ ոչ յաղթողել խորհրդոց իւրոց՝ որ վասն Աղեքսանդրի. և խանին ներողամիտ գտեալ առ Իւան՝ յաւել հրաման եւս տալ, զի թէ կամի հաշտեսցի ընդ Աղեքսանդրի:

Ընդ այս ներողամտութիւն խանին վստահացեալ Աղեքսանդրի՝ առաքեաց առ նա զորդին իւր զՓէտրոս. զոր սիրով ընկալեալ Իւզպէքայ՝ ազդ արար Աղեքսանդրի անձամբ գալ առ ինքն և տալ պատասխանի վասն կոտորածի Թաթարացն: Եւ Աղեքսանդր ոչ դանդաղեցաւ գնալ առ նա 'ի պատեհ ժամուն՝ յորում պատրաստէր խանն խաղալ պատերազմաւ 'ի Պարսս: Եւ խանին շնորհեալ նմա զյանցանսն, եւս և զիշխանութիւն Թվերայ 'ի պարգեւս:

Յանկայն այլք յիշխանացն Ռուսաց, և մանաւանդ Իւան՝ մերձաւորին նախանձու և ատելութեամբ վառեալ ընդդէմ Աղեքսանդրի, սկսան շարախօսել զնմանէ առ Իւզպէքայ. և մինչդեռ Աղեքսանդր առաքէր առ խանն զորդի իւր զՓէտրոս, Իւան կանխեալ յառաջ քան զնա՝ զարթոյց 'ի սիրտ Իւզպէքայ զառաւելին զայրոյցն. և նորա կոչեցեալ զԱղեքսանդր՝ գլխատեաց զնա և զորդի նորուն, յամին 1338:

Չհեա երից ամաց մեռաւ և Իւան ծերացեալն 'ի չարիս ամենայն, թագաւորեալ ամս երեքտասան: Սա մականուանեցաւ Քալիթա, այսինքն է Քսակ,

իբր զի սովոր էր կրել զգօտւոյն քսակ դրամոց 'ի բաշխոյս ողորմութեան. և սա ինքն միացոյց զիշխանութիւն Մոսքուայի և Ռոսթովայ: Ի մեռանել իւրում ե- թող երիս որդիս, որոց անուանք էին Սիմէոն, Իւան և Անդրէաս:

## ՍԻՄԷՈՆ ԻՒԱՆՈՎԻՉ
## ԳՈՌՈԶ

Ի ՎԻՃԱԿ որդւոց և եղբարցն Իւա- նայ զալթառւոյն՝ Իւզպէկք որոշեաց տալ զայն որդւոցն, 'ի նոսին առապաստան ա- րարեալ զընտրութիւն միոյ 'ի նոցանէ. և Իւան և Անդրէաս ետուն Սիմէոնի զա- թոռն հանդերձ կիսով մասամբ հասից պետութեանն: Սակայն և սա ոչ կարաց խաղաղութեամբ վարել ընդ երկար զթա- գաւորութիւն 'ի պատճառս ապստամ- բութեան բնակչացն Թորժոք քաղաքի, և արշաւանացն Լիթուանեայ, Լիվոնիացւոց և Շվէտաց 'ի սահմանս Նովկորոտայ:

Իսկ յամին 1343 ճարակեցաւ ընդ Ռուսիա և սև ժանտ՝ որով ըմբռ- նեալքն մեռանէին յերկուս և յերիս աւուրս. մեռաւ և Սիմէոն 'ի նմին ամա- մէ, թագաւորեալ ամս երեքտասան. և եթող երկուս որդիս, զԻւան և զՍի- մէոն:

## ԻՒԱՆ Բ. ԻՒԱՆՈՎԻՉ

ՎԱՂ քան զՍիմէոն մեռեալ էր Իւզպէք խան, և պայազատեալ էր որդի նորին Ճանիպէկ. առ սա գնացին եղբարքն Սիմէոնի Իւան և Անդրէաս, և Իւան ժառանգեաց զաթոռն. և թագաւորեալ ամս վեց՝ ոչ ինչ եցոյց գործ արժանի յիշատակի, և մեռաւ յամին 1358:

## ԴԵՄԵՏՐ Գ. ԿՈՍՏԱՆԴԻՆՈՎԻՉ

ԸՆԴ այն աւուրս և զօրութիւն թաթարաց սկսաւ թուլանալ 'ի պատճառս անմիաբանութեան խանիցն. զի Ճանիպէկ վաղամեռիկ լինէր, և յաջորդք նորա կոտորածովք իւրեանց 'ի բազում մասունս հերձին զաւէրութիւն բերեանց. և Խոդր խան տիրեաց կողմանցն Վոլկայի: Առ սա գնացեալ Դեմետր որդի Կոստանդինի, և էառ զթագաւորութիւն Մոսքուայի:

Այլ 'ի մեռանել Խոդրայ, և 'ի զօրանալ Մամայեա խանին՝ որ նստէր 'ի Սարայ, Դեմետր որդի Իւանայ երկրորդի խնդրեաց ընկալաւ 'ի նմանէ զաթոռ թագաւորութեանն, զոր յերկուց ամաց

հետէ ունէր Դեմետր կոստանդեան. որ և եթող երիս ուստերս, որոց անուանք էին Վասիլ, Սիմէոն, և Իւան:

## ԴԵՄԵՏՐ Գ. ԻՒԱՆՈՎԻՉ ՏՕՆՍԿԻ

ԴԵՄԵՏՐ եղբայր Անդրէի մանուկ երկոտասան ամաց թագաւորելով՝ ածաւ 'ի Մոսկուա 'ի ձեռն հօրեղբօր իւրոյ Վլատիմիրայ իշխանին Սերփուխովայ: Այլ քանզի հրամանաւն Մուրատայ անցեալ էր սա յաթոռն, Մամայ խան հզօրագոյն 'ի խանս ժամանակին՝ ետ և ինքն հրովարտակս և հաստատեաց զնա 'ի թագաւորութեան. ընդ որ դժուարեալ յոյժ Մուրատայ՝ յարուցէ կողմանէ եւ զթագաւորութիւն Դեմետրի կոստանդեան՝ իշխանին Սուզդալայ. և ահա նոր պատճառք աղետից Ռուսաց:

Անտի և Միքայէլ Ալէքսանդրեան իշխան Թվերայ՝ նիզակակցութեամբ աներոյն իւրոյ արքային Լիթուանիոյ յարձակեալ ոտնակոխ առնէր զՌուսիա, կամեցեալ ինքն թագաւորել փոխանակ երկուցն ևս Դեմետրեանց: Եւ այս շփոթք ոչ դադարեցին 'ի Ռուսիոյ ընդ ամս ութուտասն:

Ցորում ժամանակի Մամայ խան և ևս հզօրացեալ 'ի վերայ այլոց խանից,

և անդ եդեալ աթոռոյն Մոսկուայի՝ վեցհարիւր հազար զօրաց անցանէ ընդ գետն Վոլգա։ Համաձայնակից նմա և Օլեգ իշխան Րեազանայ, և գայ յօգնականութիւն երկաքանչիւրոցն արքայն Լեհաց Վլատիսլաւ Ե, ակն ունելով մասն բաժնի առնուլ 'ի թագաւորութէն Ռուսաց։

Յայնժամ և Դիմիտր միաբանելոց ընդ իւր զամենայն իշխանս Ռուսաց՝ և անց ընդ Տոն կամ Տօնայիս գետ չորեքհարիւր հազար զօրաց, որպէս ասեն։ Եւ եղև պատերազմ մեծ յոյժ, յորում Դիմիտր ինքնին անհաղթին քաջութիւնս ցուցեալ 'ի փախուստ դարձոյց զԹաթարս. և Ռուսք ձիգ զհետ մտեալ նոցա վարեցին ընդ մղոնս քառան՝ և ծածկեցին զամենայն զճանապարհայն դիակամբք Թաթարաց։

Մինչդեռ Մամայ վերստին զօրաժողով լինէր 'ի վերայ Ռուսաց, եւ ընդդէմ նորա Թոխթամըշ խան ամբոխիւ արևելեան Թաթարաց. յորմէ զարհուրեալ զօրավարաց Մամայինն՝ թողին զնա և միացան ընդ Թոխթամըշ խանին, և Մամայ ապաստանեալ 'ի Քէֆէ՝ սպանաւ անդէն։

Իսկ Թոխթամըշ տիրեաց Սարայի և Վոլկայ, և առաքեաց ազդ առ իշխանացն Ռուսաց զկամս իւր՝ խաղաղութեն կալոյ ընդ նոսին. և նոքա մեծաւ ուրախութեամբ շնորհս կալեալ, ընծայաբերք լինէին նմա։

Սակայն զհետ երկուց ամաց կատարեաց՚նա զխոստումն՝ որք վաճառաշահ լինէին ընդ Թաթարս Խաղանայ, և ՚ի նաւակս նոցին լցեալ զզօրս իւր՝ եկն ընդ Վոլկա ՚ի վերայ Մոսքուայի:

Դեմետր խնդրեաց զձեռնտուութիւն իշխանացն Ռուսաց. այլ ոչ ոք իշխեաց միաբանել ընդ նմա ընդդէմ ահագին թշնամւոյն. նա զի և իշխանքն Ռեազանայ և Սուզդալայ ուղեցոյցք եղեն խանին Թաթարաց. վասն որոյ և Դեմետր անօգնական մնացեալ՝ ամրացաւ ՚ի Քոսթրոմա:

Իսկ բնակիչքն Մոսքուայի անիշխանք և անսանձք ՚ի խռովս խռովս բաժանեցան, և մխեցան յամենայն անօրէնութիս. և մինչև եկեալ Թաթարաց՝ հիմն ՚ի վեր տապալէին զքաղաքն, թէ ոչ հասեալ տիրէր նոցա Օստէոս իշխան Լիթուանիոյ:

Հասին և Թաթարքն ՚ի վերայ, և Օստէոս պատրաստեցաւ ընդդէմ նոցա ՚ի պատերազմ: Այլ Թոխթամիշ խօսեցաւ ընդ քաղաքացիսն և ասէ. «Չեն ինձ կամք չարիս ինչ հասուցանել ձեզ. իմ միտք էին վրէժ խնդրել ՚ի Թագաւորէ անտի որ վատութեամբ եթող զաթոռ իւր և փախեաւ. արդ ՚ի ձէնջ ոչ այլ ինչ պահանջեմ, բայց զի տուք ինչ ընծայից յայտ առնիցէք զբարեկամութիւն ձեր ընդ մեզ»:

Յայնժամ բացեալ Մոսքովաց ըղ-

դրունան, ելին ընդ առաջ խանին ընծայիւք՝ բազմութիւն իշխանաց և ազնուականաց, հանդերձ պաշտօնէիւք եկեղեցւոյն՝ որք բարձեալ բերէին Թափօրիւ մեծաւ խաչս և պատկերս սրբոց, և մտին 'ի բանակ անդր Թաթարաց, մինչև եկին հասին 'ի միջավայր բանակին։ Յայնժամ Թաթարքն անկեալ 'ի վերայ՝ կոտորեցին զնոսա յանխնայ, ընդ որս և զՕստէոս, և ապա խուժեալ 'ի Մոսքուա՝ 'ի հուր և 'ի սուր գատեցին զամենայն, և զապրեալսն 'ի կոտորածէն 'ի գերութիւն վարեցին։

Զնոյն անցս անցուցին և ընդ մօտակայ քաղաքս ինչ, և ապա դարձան 'ի տեղիս իւրեանց։

Սակայն Թոխթամիշ իբրև արդամորանէր ոք չէառ յանձն կապակցել 'ի Դեմետրէ և զԹագաւորութիւնն, այլ և զայն իշխանին Թվէրայ, որպէս հայցէր նա։ Իսկ Դեմետրի լուեալ զնրան՝ առաքեաց առ խանն զանդրանիկ իւր զՎասիլ իբրև 'ի պատանդ հաւատարմութեան իւրոյ առ նա։ Ընդ ամս քանի մի առ իւր կալաւ խանն զպատանին, մինչև ձանձրացեալ նորա՝ փախեաւ 'ի Լիվանիա։

Այս ամենայն եղև յամին 1382, և յետ եօթն ամաց մեռաւ Դեմետր Տոնսքի քառասնամեայ, թագաւորեալ ամս քսան. և եթող եօթն որդիս, որք էին Տանիլօ կամ Դանիէլ, Վասիլ, Եուրի, Անդրէաս, Պետրոս, Իւան և Կոս-

առանձինն : Իսկ զնա պայազատեաց որդի նորա Վասիլ, և հաստատեցաւ ՚ի Թոխ- Թամիշ խանէն :

## ՎԱՍԻԼ Բ. ՏՄԻԹՐՈՎԻՉ

Ընդ Թագաւորելն զառաջնութեամբ հարեալ սորա, դիմեաց անպատճառ յերկիր իշխանութեան Բորիսայ ՚ի Սուզ- տալ և ՚ի Նիժնի Նովկորոտ, և զեր- կրորդս զայս քաղաք յաւարի առեալ՝ խաղաց գնաց առ խանն, և կաշառաբեկ արարեալ զնա՝ ընկալաւ ՚ի նմանէ հրա- մանն միացուցանելոյ զերկիրն ընդ իւ- րում Թագաւորութեան : Եւ մինչդեռ դառնայր դայր ՚ի Ռուսիա հանդերձ պատուադամանաւորաւ խանին, Բորիս խոր- հուրդ առեալ ընդ իւրում աւագա- նւոյն՝ յուշ առնէր նոցա զերդումն հա- ւատարմութեան զոր երդուեալ էին՝ չթո- ղուլ զնա երբէք ՚ի ձեռաց. և երեցա- գոյնն ՚ի նոցա վկայեաց՝ թէ ամենե- քեան պատրաստ եմք ՚ի մեռանել փո- խանակ անձին քո : Յայնժամ Բորիս եդ ՚ի մտի չտալ մուտ պատուադամանաւորին և պաշտօնէիցն Վասիլի ՚ի քաղաք իւր :

Իբրև եհաս անդր պատուադամանաւոր խանին, իշխանք Վասիլի որ ընդ նմա՝ հնչեցուցին զզանգակսն ՚ի ժողովել զամբոխն. և մինչդեռ Բորիս սպա-

ցեալ առաքել նմա զօրս յօգնականու-թիւն, մնայր տկարանալոյ երկպառակչիւք իշխանացն՝ ընդ իրեարս մարտնչելով: Եւ իբրեւ ետես զի նոքա խմացեալ զզաւան՝ ոչ եւս յարեան ՚ի վերայ միմեանց, դար-ձոյց զզօրն ՚ի Մոսքուա, եւ պաշարեաց զնա, այլ ոչ կարաց առնուլ զայն առ ՚ի չգոյէ բաբանաց: Ղասա համարեցաւ զվճար գանձուն զոր հատուցին նմա քաղաքացիքն, եւ ասպատակեալ զամե-նայն շրջակայ վայրս՝ դարձաւ առ Պու-լադ, որ ՚ի վտանգի կայր յերեսաց այլոց թաթարաց. եւ ընդ ամս քսան եւ չորս ոչ կոխեցին թաթարք ՚ի Ռուսիա:

Իսկ Վասիլ՝ որ ՚ի պաշարման անդ Մոսքուայի ամրացեալ էր ՚ի Կոսթրո-մա հանդերձ ընտանեօք եւ աւագա-նւովն, ՚ի մեկնել թաթարաց յաշխար-հէն իւրմէ՝ ոչ ինչ պիտանի գործման կա-րացեալ մատուցանել աւերածոյ եւ ա-ղետից թագաւորութեան իւրոյ՝ մեռաւ յամին 1425, թագաւորեալ ամս երե-սուն եւ վեց: Եւ էր ինքն ամաց յիսուն եւ չորից. եւ եթող երկուս ուստերս՝ զՎասիլ եւ զԻւան, եւ զերիս դստերս՝ յորոց մին ամուսնացաւ ընդ Յովհան-նու Պալէոլոգ կայսեր յունաց:

## ՎԱՍԻԼ Գ. ՎԱՍԻԼԵՎԻՉ

ԵՒՈՒՐԻ իշխան կալիչայ՝ եղբայր Վասիլի երկրորդի տեսեալ զի եղբօրորդին իւր Վասիլ Գ., մանուկ էր տասնամեայ, յինքն ջանայր կորզել զաթոռն: Եւ թէպէտ խոհական մայր արքայորդւոյն Սոփիա՝ իմաստուն հնարիւքն և ճարտար բանիւք հպատակեցոյց որդւոյ իւրում զաւագանին Մոսքուայի, սակայն Եուրեայ ոչ կացեալ յետս 'ի խորհրդոցն, և ոչ խրատուց մետրապօլտին երես ինչ արար: Այլ 'ի հասանել 'ի վերայ քաղաքին իւրոյ արածունն՝ ընթացաւ ինքնին զհետ մետրապօլտին և խոստացաւ այլ ոչ ևս անհանգիստ առնել զեղբօրորդին իւր:

Զհետ ամաց հնգից տեսեալ զի էանց 'ի նմանէ արածութիւն, գունդ կազմեաց՝ անկանել յանկարծ 'ի վերայ Մոսքուայի. և եթէ անյաջողեսցէ, 'ի յայտնի պատերազմ ձեռն արկանել: Խորհուրդեառ հանճարեղն Սոփիա Եուրեայ երթալ յառեան խանին՝ և վճռոյ նորուն հպատակել. և խանն հաստատեաց ըղթագաւորութիւնն Վասլի՝ յաւել ևս պատուէր, զի Եուրի կալեալ զանձ երիվարին Վասլի՝ յածեսցուսցէ զնա. այլ Վասիլ խոհական համեստութբ արգա-

հաստեաց 'ի հօրեղբայր իւր, և ոչ իշխոյց զնա յայնչափ նուաստութեան ։

Մի ոմն յաւագանւոյն կամեցեալ ատել զդուստր իւր 'ի կնութիւն Վասիլի՝ իբրև չեղև լսելի, գրգռեաց զԵուրի մերատին ընդդէմ եղբօրորդւոյն ։ որք և 'ի մի հաւաքեալ զերկպառակիչսն իւր զօրս՝ խաղացին դէպ ուղիղ 'ի Մոսքուա, և մերժեալ զդեսպանս Վասիլի՝ որ գային 'ի խնդրել զխաղաղութիւն, հալածեցին զնա ինքն զՎասիլ մինչև 'ի Քոսթրոմա, և Եուրի արկ զնա 'ի կալանս ։ այլ ապա ետ նմա 'ի բաժին զՔոլոմնա, և 'ի պատուի ունէր զնա՝ ըստ խրատու խորհրդականցին իւրոյ Մորոզովայ անուն լաւի ։

Եւ քանզի Վասիլ ցանգ սիրելի էր ամենեցուն, այնուհետև առ նա ընթանային ամենայն իշխանք և մեծամեծք Մոսքուայի, և Քոլոմնա եղև գոգցես բնիկ քաղաք թագաւորութեան ։ Ընդ որ դժուարեալ յոյժ որդւոցն Եուրեայ՝ սպանին զՄորոզով իբրև զաւիթ մեծարանացն Վասիլի ։ և ապա երկուցեալ 'ի ցասմանէ հօրն իւրեանց՝ անկան 'ի Քոլոմնա ։ Իսկ Եուրեայ ամայի մնացեալ յիշխանաց և յաւագաց և յորդւոց իւրոց անգամ, եթող ելիք զաթոռն եղբօրորդւոյ իւրում, և մեկնեցաւ 'ի Գալիչ ։

Վասիլ զերծեալ բարեբախտութեամբ՝ ընդ մտանելն 'ի Մոսքուա զօրաժողով եղև յառնել 'ի վերայ հօրեղբօր իւրոյ,

որ կային յանկարծակածի. և հալածեալ զնա 'ի Կալիչայ՝ յաւարի էառ զքաղաքն և դարձաւ 'ի Մոսքուա. կարծէր իմն այնուհետև եթէ 'ի սպառ ընկճեաց զՅու-րի, այլ խաբեցաւ: Զի նա միաբանեաց ընդ իւր զժողովուրդն զայրացեալ ընդ գնացսն Վասլի, և դիմեալ 'ի վերայ նո-րա՝ խորտակեաց զզօրս նորին. և զնոցա էառ երկրորդ անգամ զՄոսքուա, այլ ոչ ինչ յերկարեալ անդէն մեռաւ, թո-ղեալ երիս որդիս, որք էին Վասիլ Քո-սոյ, Դեմետր Շեմեաքա, և Դեմետր Քրասնոյ:

Եւ կալաւ զաթոռն անդրանիկն. ընդ որ խանդացեալ երկուցն եղբարց, ասեն ցնա. «Աստուծոյ չեղեն կամք թագա-ւորել հօր մերում, և մեք չկամիմք ե-թէ դու թագաւորեսցես»: Եւ եկեալ 'ի Նիժնի Նովկորոտ՝ առին զՎասիլ Գ., և ածին հաշակաւ 'ի Մոսքուա: Քո-սոյ փախեաւ 'ի Նովկորոտ. և 'ի փակել ընդդէմ նորա քաղաքացւոց զդրունսն՝ ասկաւանձեան զօրօք զորս գումարեաց աստի և անտի՝ արշաւ 'ի վերայ զօրացն Վասլի յաղթութիւնս ինչ մանունս, մինչև հասեալ Վասլի առաւար բանա-կաւ՝ ձերբակալ արար զնա և կուրացոյց:

Անագորոյն լեալ առ ազգականսն՝ ա-պերախտ գտաւ և առ Ուլու Մահմէտ խանն՝ որոյ կարգեալ էր զնա թագա-ւոր. զի 'ի դալ ապաւինել նորա առ Վասիլ յերեսաց թշնամեաց՝ մինչև գու-

մարտուցէ իւր ձեռն բաւական, առ նեն-գաւ կարեկցեալ նմա զառաջինն, ապա արձակեաց 'ի վերայ արս քառասուն հազար : Իսկ Մահմէտ որ ոչ աւելի քան զհազար սպառազէնս ունէր ընդ իւր՝ 'ի յուսահատ ժամուն անպարտելի քա-ջութ̅ը նախճիրս բազումս գործեալ 'ի Ռուսս՝ փախստական արար զզօրավարս նոցա, և ինքն անցեալ ընդ գետն Վոլ-կա՝ յաւել զթիւ զօրաց իւրոց, և գի-մեալ անդէն հրկէզ արար զՄոսքուա, և զբնակիչս գիւղից և աւանաց նորին 'ի սուր սուսերի կոտորեաց . յաղթեաց և զօրացն Վասիլի որ եկեալ էին 'ի վերայ իւր, և զնա ինքն հանդերձ այլովք իշ-խանօք ձերբակալ արար : Այլ 'ի ցոյց իւրում մեծանձնութե՝ ներեաց նմա, և արձակեաց զնա վերստին յաշխարհ իւր :

Մինչդեռ առաջի կայր իշխանացն Ռուսաց այսպիսի օրինակ առաքինի ո-գւոյ թաթար իշխանին, Շեմեաքա թըշ-նամացեալ ընդ Վասիլի՝ համբաւ սուտ եհան զնմանէ՝ իբրու թէ վաճառեալ իցէ զազգն 'ի ձեռս Թաթարաց . և միան-գամայն յորդորեաց զՎասիլ գնալ 'ի մենաստան սրբոյ Երրորդութեն 'ի գո-հանալ զԱստուծոյ սակս ազատութեան իւրոյ . և ինքն յարձակեցաւ եմուտ 'ի Մոսքուա ձեռնտուութ̅ը կաշառաբեկ իշ-խանացն, և անդ բանտարգել արար ըզ-թագուհին և զիշխանսն՝ զորս ոչ կարաց պատրել :

Այպա մի ոմն 'ի բարեկամաց անտի նորա յանձին կալեալ յափշտակել զՎասիլ 'ի մենաստանէն՝ գնաց անդր, և խաբկանօք առեալ ած զնա 'ի Մոսքուա, ուր Շեմեաքա կուրացոյց զնա, և առաքեաց յՈւգլիչ: Անդր ածան և մայրն Վասլի և բարեկամք նորա և արկան 'ի բանտ: Այլ իշխանքն Ռեափոլովսքի զերծուցին զերկուս որդիս նորա զԻւան և զԵուրի 'ի Մուրոմ, և միաբանեալ ընդ ամանս յիշխանաց՝ եդին 'ի մտի զերծուցանել և զՎասիլ և զամենայն ընտանիս նորա: Զայն զգացեալ Շեմեաքայ՝ փութացաւ ազատեաց ինքնին զՎասիլ, և կարգեաց նմա 'ի կալուած զքաղաքն Վոլոկտա:

Իսկ Ռեափոլովսքեանց յուղի անկեալ հանդերձ մեծաւ մասամբ ազատանւոյն՝ պատահեցին զՃանապարհայն որդւոց Մահմէտ խանին, որ և նոքա իւրեանց զօրականօք երթային յազատել զՎասիլ: Սոցա ամենեցուն 'ի մի վայր եկեալ՝ իբրև լուան թէ Շեմեաքա ոչ է 'ի Մոսքուա, առաքեցին անդր զմի ոմն 'ի քաջ զօրավարաց իւրով գնդաւն, և ինքեանք հետամուտ լեալ Շեմեաքայ՝ հալածեցին զնա 'ի Նովկորոտ, ուր յետ երկուց ամաց դեղով մահու սպանաւ: Իսկ Վասլի թագաւորեալ խաղաղութ՟այլ ևս ամս վեց. մեռաւ յամին 1462, թագաւորեալ ամս երեսուն և եօթն. և լացին զնա ամենայն ժողովուրդք իւր: Եւ էին նորա որդիք վեց. Եուրի,

իւանն, միւս Եսուրի, Անդրէաս, Գորիս, և միւս Անդրէաս։

Ի սոցանէ Իւանն պայազատեալ զա-թոռն քաւուն և երկուց ամաց՝ փախ-ճան առնէ աղետիցն Ռուսիոյ, որ 'ի պատճառս ներքին և արտաքին թշնա-մեաց ողողէին զՌուսիա զամս երեք-հարիւր։



# ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

## 1462=1613



### ԻՒԱՆ Գ. ՎԱՍԻԼԵՎԻՉ

ՄԵԾՆ այս Իւան անդատին 'ի մանկական տիոց յանձին բերեալ զոգի վեհանձն, զարիութիւն անմեղկելի, զեռանդն պատերազմականն, զխոհականութիւն հանճարեղ և զսէր ուրոյ ազգին, յառաջ քան զամենայն վառեցաւ 'ի խորտակել զլուծ Թաթարաց: Եւ ամենայն ուժով գուն գործեալ 'ի նորոգել ըզխաթարեալ կարգս աշխարհին, և զմիտս ամենայն իշխանաց ուրոյ յինքն յանկուցեալ՝ դէմ եդ առնուլ զԽաղան, և վանել անտի զԹաթարս:

Արձակեաց անդր զմասն մի զօրաց ուրոց. և 'ի կոտորել նոցա 'ի ցրտոյ և 'ի սովէ, արձակեաց և այլ զօրս, որք ոչ ինչ թողին ողջ զկնի ուրեանց՝ 'ի սուր և 'ի հուր դատեալ զարս և զկանայս, զծերս և զմանկունս, զանասունս և զվրանս և զծառատունկս անգամ, և պաշարեցին զԽաղան Անգրէաս և Պոլիս

եղբարքն Իւանայ։ Որք և 'ի նեղ արկին զքաղաքն սաստկապէս յամենայն կողմանց, մինչև ստիպեցաւ Իպրահիմ խան խաղաղանայ խնդրել զհաշտութիւն, և խոստացաւ հարկատու լինել Թագաւորին Ռուսաց՝ ստրուկ նորա զանձն խոստովանեալ։

Ի նոյն աւուրս խնդրեցին Նովկորոտացիք, զի հաստատեսցէ նոցա յարքեպիսկոպոսութիւն զԹէոփիլոս միանձն, զոր ընտրեալ էր նոցա փոխանակ առաջնոյն վախճանելոյ։ Զիջաւ նոցա Իւան, և յաւել ասել ցպատգամաւորսն. "Գիտասցէ ընկերհաշտութիւնդ Նովկորոտայ, զոր սեպհական ժառանգութիւն համարիմ ինձ հայրենի, զի եւ ցանկամ պատրաստ եմ զգութ և զսէր իմ յայտ առնել առ ձեզ"։

Այս բան խէթ եղև սրտի աւագորերոյն Նովկորոտացւոց, և ըմբռնեցան 'ի լուր բանին՝ թէ Իւան համարիցի զՆովկորոտ իւր սեպհական ժառանգութիւն. Նմին իրի 'ի ծածուկ խորհուրդ 'ի մէջ առեալ՝ լաւ համարեցան միանալ ընդ ծառայութե̄ արքային Լեհաց Քազիմիրայ չորրորդի. և առ այս յորդորեցին նա և զայլս 'ի քաղաքացւոց 'ի ձեռն կրօնաւորի ուրումն Պիմէն անուն, ասելով թէ Իւան կամի բռնանալ 'ի վերայ նոցա 'ի սպառ։ Իսկ ընդ Լեհս բանագնաց լինէին 'ի ձեռն Մարթայի ուրումն այրւոյ 'ի տոհմէ ազատանւոյն Նովկորոտ-

տայ, որ ունէր ամուսնանալ ընդ իշխանի միոյ լիթուանացւոյ:

Եւ 'ի սաստկանալ ամբոխի ապստամբացն՝ մինչև 'ի ձայն բարձր կարդալ իւրեանց Թագաւոր զՔազիմիր, եհաս 'ի վերայ Իւան երիւք բանակօք. և միով 'ի նոցանէ խորտակեալ զմեծ մասն երեսուն հազար զօրաց Նովկորոտացւոց, զերկուս հազարսն ձերբակալ արար:

Ի մերկացուցանել զդիակունս անկելոցն Նովկորոտացւոց դտան առ միոյ միոյ 'ի նոցանէ յետկարք ուխտի՝ որով նուիրէին զանձինս 'ի ստրկութիւն Քազիմիրայ. և զօրավարացն Իւանայ զնոյն գտեալ առ այլս 'ի մեծամեծաց ձերբակալ եղելոց՝ սպանին զնոսա, և մնացելոցն հրամայեցին հատանել զմիմեանց զունչս և զշրթունս և զականջս, և առաքեցին զնոսա անդրէն 'ի քաղաքն:

Ի ձախողել այսպէս իրաց իւրեանց զգօնացան փոքր մի Նովկորոտացիք, և 'ի ձեռն միջնորդութեան քահանայից և աւագորերոյն իւրեանց և մետրապօլտին Մոսքուայի՝ եթող նոցա Իւան ըզյանցանսն՝ պահանջելով զհարկսն զոր ժխտեալ էին, և 'ի վերայ այնր այլ ևս դրամս 'ի պատիժ վատաբանջութեան:

Սակայն զհետ ամաց դարձեալ ապստամբեցին նովին խորհրդով, և զդիմակացս խորհրդոյն իւրեանց սպանին: Յայնժամ Իւան անձամբ խաղացեալ 'ի վերայ նոցա, ոչ ինչ երեսս արար ապա-

Խաղաց Ահմէտ զօրօք բազմօք 'ի Ռու-սիա՝ ասպատակեալ 'ի բազում տեղիս. այլ երբեւ եհաս առաջի զօրաւորագոյն բանակ Ռուսաց պատրաստեալ 'ի յար-ձակել՝ 'ի փախուստ խուճապեցաւ իւ-րովքն հանդերձ, և կորոյս զբազումս 'ի նոցանէ:

Զհետ ամաց ինչ վերստին արշաւեալ 'ի սահմանս Ռուսաց՝ 'ի նոյն խորտա-կեցաւ 'ի նոցանէ, և ինքն իսկ անկաւ 'ի վերջնում ճակատուն:

Խորտակմամբ մեծի գնդին Թաթա-րաց խրախուսեալ Իւանայ ևս քան զևս զարթոյց 'ի նախանձ զԿազիմիր արքայն Լեհաց. որ առաքեաց զիշխանն Լիւ-քոմսքի 'ի Մոսքուա՝ զի բարեկամացեալ ընդ Իւանայ՝ սպանցէ զնա: Այլ գաւն 'ի վեր ել, և Լիւքոմսքի կենդանւոյն այ-րեցաւ յերկաթի վանդակի. և զամե-նայն պատերազմ էր Ռուսաց ընդ Լեհս, և միաբանութեամբ ընդ Լիվոնիացիս. որոց ամենեցուն յաղթական գտաւ Իւ-ան. այլ որ առաւել պայծառացոյց զնա՝ եղև յաղթութիւնն Ալի խանին Խազանայ:

Վասն զի գտեալ ժամանակ համարձակել Ալեայ զզբաղանալ Իւանայ 'ի պատերազ-մունս Լեհաց՝ խաղաց զօրօք 'ի Ռուսիա: Եւ և Իւան ընդդէմ նորա, և եղև պա-տերազմ սաստիկ յոյժ առ Սվեակա գետով. խորտակեցան Թաթարքն, և խան նոցա ձերբակալ եղև: Իւ Ռուսք

զհետ պնդեալ փախստէիցն՝ մտին ընդ նոսա 'ի Խաղան, և կալան զմայր և զկին և զորդիս խանին և ածին 'ի Մոսքուա :

Ի մեռանել խանին՝ որդի նորա կրսեր մկրտեցաւ, և եղբայրն Մահմետ էմին՝ որ կանխաւ ևս մտեալ էր 'ի ծառայութիւն Ռուսաց՝ կարգեցաւ իշխան Խաղանայ : Այլ քաղաքացւոցն ոչ հանդուրժեալ բռնութեանց նորին, ընտրեցին փոխանակ նորա զՄանուկ ոմն անուն (հայկազուն, որպէս թուի), այլ և զնա բռնադոյն գտեալ քան զՄահմետ, խնդրեցին յԻւանայ զայլ ոք, և նա կացոյց նոցա իշխան զԱպտուլլատիփ ոմն. և ապա դարձեալ զՄահմետ էմին՝ տուեալ նմա 'ի կնութիւն զայրին Ալեայ :

Եւ թէպէտ Մահմետ յայսմ յերկրորդում նուագի խոնարհականագոյնս վարել սկսաւ զիշխանութիւն իւր, այլ կին նորա անմոռաց ունելով զաղէտս առաջնոյ առն իւրոյ՝ գրգռեաց զՄահմետ ընդդէմ Իւանայ : Եւ նորա յետ բազում ժամանակաց ոչ ևս կարացեալ զդէմ ունել սադրանացն, եդ 'ի մտի զի 'ի ժամադրեալ աւուր հանդիսի վաճառուց՝ յորում ժողովէին 'ի Խաղան Ռուսք յամենայն կողմանց աշխարհին՝ կոտորեսցէ յանխնայ զամենայն զՌուսս : Եւ իբրև զայն արար՝ գումարեաց զամենայն զօրս իւր, և ընդ նոսա քսան և հինգ հազար Նողայս, յարձակեցաւ 'ի

հարաւային կողմանս Ռուսիոյ, և պաշարեաց զՆիժնի Նովկորոտ ։

Այլ 'ի մարտնչել քաղաքացւոցն՝ անկաւ ընդ այս 'ի Թաթարաց և Մրզա Իցխան Նողայից. ընդ որ զայրացեալ Նողայեցն յոյժ՝ դարձուցին զզէնս իւրեանց 'ի վերայ զօրացն Մահմէտի, և արարին առ պարապօք քաղաքին կոտորած մեծ ։

Այսմ ամենայնի իրազեկ լեալ Իւան արձակեաց 'ի վերայ նոցա արս հարիւր հազար, և Թաթարաց տեսեալ զբազմութիւն ամբոխին՝ փախեան 'ի տեղիս իւրեանց ։

Այլ Իւան որ յառաջագոյն ես խօթացեալ էր, ընդ այն աւուրս յամին 1505 մեռաւ ամաց եօթանասուն և հնգից, թագաւորեալ ամս 43 ։ Եւ էին նորա որդիք հինգ. Վասիլ, Գէորգ, Դմիտր, Սիմէոն և Անդրէաս, զորս ծնաւ նմա Սոփիա դուստր Թովմայի Պալէոլոգայ Թոռին Մանուէլի կայսեր Յունաց, որ յայնժամ՝ ապաստանեալ էր 'ի Հռովմ յերեսաց Տաճկաց ։

Իւան 'ի մեռանել իւրում կարգեաց իւր յաջորդ զՎասիլ ։

Երկուք ոմանք 'ի զօրապետացն Իւանայ առաւել սաստր եղեն յընդարձակել զտէրութի նորա, Յակոբ (Եաքով), և Եուրի Զաքարեան Ռոմանով. յորոյ 'ի տոհմէն տեսցին զկնի թագաւորք 'ի Ռուսիա ։ Սոքա երկոքեան նուաճեալ նախ զընակիչս ծովեզերեայց Սաաու-

ցեալ ծովուն, 'ի նոցանէ ուսան վարել բալխիրս (խըզախս) ձգեալս յեղջերուաց և 'ի շանց. և Ռուսք 'ի սորա ժամանակս մտին 'ի Սիպիր, որ կանխաւ անծանօթ էր նոցա :

Առ Թագաւորութեամբ Իւանայ ակնկալուոյց եղեն և Եւրոպացիք 'ի Ռուսիա, և յաճախեցին 'ի Մոսքուա նուիրակք ինքնակալին Գերմանացւոց, քահանայապետին Հռովմայ, Թագաւորին Տաճկաց, Թագաւորացն Լեհաց և Դանեաց, և հասարակապետութեան Վենետկոյ, ընդ որս այլ և այլ դաշինս ուխտի հաստատեաց Իւան : Եկին 'ի Յունաստանէ և յիտալիոյ և արուեստագէտք բազումք, ճարտարապետք, պարսպաշէնք, ձուլիչք հրազինուց և այլք, զորս առատապէս վարձատրեալ Իւանայ բնակեցոյց 'ի Մոսքուա, և ճոխացոյց զպետութիւն իւր կարեւոր կարգօք քաղաքականութե՛ :

Նա ինքն արար և ժողով մեծ 'ի բարեկարգել զիրս եկեղեցւոյն Ռուսաց . բաժանեաց զկուսաստանս 'ի մենաստանաց արանց, և կարգեաց կանանցն մայրպետս, և արանց վանահարս. և արգել երիցանց և սարկաւագաց այրիացելոց զմատակարարութի՛ն սբ խորհրդոց :

Եւ նշան դրօշուցն Ռուսաց՝ որ էր սուրբն Գէորգ զօրավար, զկնի ամուսնանալոյն Իւանայ ընդ Սոփիայ՝ եղև երկգլխի արծուի սեաւ :

## ՎԱՍԻԼ Դ. ԻՒԱՆՈՎԻՉ

Ի ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ընդարձակ պե-տութե հօր իւրոյ ուշ եդեալ Վասիլի, դաշինս խաղաղութե կնքեաց ընդ Աղեք-սանդրի արքային Լեհաց, և ընդ Մէն-կլի Քէրէյի խանին Խրիմու :

Այլ 'ի պատճառս թշնամութեանց Մահմէտ խանին Խազանայ՝ առիթեցաւ տարածել ընդդէմ նորա զեղբայր իւր զԴեմետր հարիւր հազարաւ․ զորս յան-կարծակի պաշարեալ Թաթարաց՝ արա-րին 'ի նոսա կոտորած մեծ, և զմնա-ցեալսն վանեցին, և ինքեանք խնջոյս յաղթանակի կազմեալ 'ի բացի արտա-քոյ Խազանայ՝ կանանօք և մանկաւոք հանդերձ ուտէին և ըմպէին անհոգա-բար :

Եւ ահա դարձեալ Ռուսաց նորոգ կազմութը̃, և հասեալ 'ի վերայ Թմբե-լոցն Թաթարաց՝ ընդ սուր անցուցին զմեծ մասն նոցա, և փախստեակ մնացե-լքն 'ի քաղաքն անդր՝ հարկան անմաութը̃ 'ի կերակուրս և յըմպելիս Թաթարացն, արբեցան և զինեցան :

Յայնժամ յարձակեցաւ խանն 'ի վե-րայ նոցա, և եհար զնոսա 'ի հարուածս մեծամեծս, մինչև 'ի հարիւր հազարացն՝

եօթն հազարք եւեթ տարեցան, որպէս ասեն:

Սակայն Մահմէտ ոչ յերկարեաց 'ի վայելս յաղթութեանն՝ անկաւ յախտ մահու, և զղջացեալ ընդ ապերախտութիւն իւր առ Իւան, համարձակեցաւ առաքեաց առ որդի նորա Վասիլ 'ի պարգեւ երկերիւր երիվարս ընտրանաւ, և խընդրեաց 'ի նմանէ զներումն յանցանացն: Եւ Վասիլ ներողամիտ գտեալ՝ յղեաց նմա 'ի փոխարէն այլ պարգեւս: Իսկ Մահմէտ մեռաւ 'ի նմին ամի. և կին նորա էառ զդեղ մահու՝ խիթացեալ 'ի վրէժխնդրութենէ Ռուսաց:

Ընդ այն աւուրս Թագաւորեաց Լեհաց Սիգիսմունդ փոխանակ Աղեքսանդրի եղբօր իւրոյ, և յետս պահանջէր 'ի Վասլէ զքանի մի քաղաքս՝ որք կանխաւ Լեհաց անկ էին: Եւ 'ի չտալն Վասլի՝ գրգռեցաւ պատերազմն, և Լեհք 'ի պարտութեան մատնեցան՝ առաւել 'ի պատճառս անցանելոյ բազմաց յաւագորերոյն նոցա 'ի կողմն Ռուսաց: Որպիսիք ոմանք էին և երեք եղբարքն Կլինսքի՝ 'ի տոհմէն Միքայէլի իշխանին սպանելոյ 'ի Թաթարաց յամին 1245:

Ի սոցանէ ականաւորն Միքայէլ Կլինսքի կամեցաւ անդրէն մտանել 'ի ծառայութիւն արքային Լեհաց. և Սիգիսմունդ ուրախութ̃ մեծաւ առաքեաց հրաւիրել զնա 'ի ձեռն Թրեսկքայի ուրումն լեհացւոյ: Թրեսկքա ձերբակալ եղեւ

'ի Ռուսաց որպէս լրտես, և 'ի տանջանս մատնեալ՝ զի յայտնեսցէ զխորհուրդ դաւաճանացն, նա անմեղկելի մնաց 'ի լռութեան մինչև առ սակաւ սակաւ հրակէզ եղեալ ծախեցաւ խորովեալ շամփրով:

Այս յամին 1509 խաղաղութիւն արարին ընդ միմեանս Վասիլ և Սիգիսմունդ: Այլ սա ոչ կացեալ յուխտին գրգռեաց և յարոյց 'ի ծածուկ 'ի վերայ Վասլի զՄէնկլի Քէրէյ խան Խրիմու. որում յաղթեցին Ռուսք, և բռնադատեցին խնդրել զհաշտութիւն:

Յետ սակաւուց Կլինսքի իւրով խոհականութեամբ նուաճեաց ընդ ձեռամբ Վասլի զքաղաքն Սմոլենսք, զոր ոչ կարացեալ էին առնուլ Յակոբ և Եուրի Զաքարեան զօրավարք Իւանայ. և իբրև ետես՝ զի Վասլի մոռացօնք իմն եղեն տալ ինքեան զՍմոլենսք 'ի կալուած, որպէս խոստացեալն էր, բանադնեաց եղև ընդ Սիգիսմունդայ, և մինչչև գնացեալ առ նա՝ խորհուրդ ետ առաքել յափն Ցնեբերայ զօրս՝ որովք ինքն յարձակեսցի 'ի Ռուսս:

Հաւանեցաւ արքայն խորհրդոյն. և եղև 'ի տեղւոջ անդ պատերազմ արիւնռուշտ, յորում կորեան բազումք յազատանւոյն Ռուսաց: Այլ իբրև 'ի վեր եղ դաւն Կլինսքեայ՝ արկաւ 'ի կալանս ընդ դաւակցին իւրում եպիսկոպոսին Սմոլենսքայ:

Եւ պատերազմն Լեհաց ընդ Ռուսս

տեւեաց զամս ինն. յորում ժամանակի Վասիլ դաշինս բարեկամութեան հաստատեաց ընդ Մաքսիմիլիանոսի Ա., կայսերն Գերմանացւոց, և ընդ Լեհս դաշն առար զինուց ամս վեց, զի 'ի խաղաղն հարկ էր դարձուցանել զզէնսն:

Ըստ Ալի խանն յաջորդեալ Մահմէտայ 'ի խաղաղն՝ նողկալի լեալ էր Թաթարաց՝ եթէ վասն ձաղապէմ կերպարանացն, զի կարճ էր հասակաւ և քաղըրթեղ յոյժ, և ականջքն տարապայման երկայնք, և եթէ վասն հաւատամուեն առ Ռուսս. վասն որոյ հալածեցաւ 'ի նոցանէ 'ի ձեռն Սաֆա քէրէյի խանին Խրիմու:

Արձակեաց Վասիլ կրկին բանակս զօրաց 'ի վերայ խաղանայ. յորոց միոյ նաւարկեալ ընդ Վոլկա՝ մեծաւ մասամբ 'ի կորուստ մատնեցաւ, իսկ միւսն խաղացեալ ընդ ցամաք վանեաց զԹաթարս, այլ ոչ համարձակեալ ընդերկար պաշարել զԽաղան՝ դարձաւ յետս:

Վասիլ Թելադրութ՟ն իւրոյ աւագանւորոյն վերստին զօրաժողով եղև՝ երեսուն զօրավարս կարգեալ 'ի բանակին՝ և սպարապետ ամենեցուն զԻւան Պելսքի: Զայն իբրև զգաց Սաֆա քէրէյ՝ տասն հազար Նողայս կոչեաց իւր 'ի Թիկունս, և պատնիշապահ արարեալ զքաղաքն՝ ամրացաւ 'ի ներքս:

Ռուսք բազում անգամ վայրապար յարձակեալ 'ի պատնէշսն, տարս իբրև

տեսին զի Թաթարք յանհոգս և յանկասկածելի զակասեալ են յուտել և յըմպել՝ յարձակեցան գիշերի հուր հարին 'ի ցցապատնէշս անդր, և արարին կոտորած մեծ 'ի Թաթարս: Եւ Սաֆա Քէրէյ յուսահատեալ 'ի տեսել բաւել այլ ևս յամրոցին՝ առ ընդ իւր երիս հազար հեծեալս, և քաջութ͞բ պատառեալ զբանակն Ռուսաց՝ անց գնաց հանդերձ կնաւն և որդւովք 'ի տեղի իւր 'ի Խրիմ:

Իսկ զօրավարք Ռուսաց փոխանակ առնլոյ զխազան՝ խաղաղութ͞ն արարին ընդ քաղաքացիս՝ եդեալ 'ի վերայ նոցա հարկս ծանունս, և զերից ամաց ըղհարկսն կանխիկ պահանջեալ. և դարձան առ Վասիլ հարիւր հազար զօրօք:

Ընդ այս գործ զօրավարացն զայրացեալ Վասիլ՝ կամէր սպանանել զապարապետն Գեղաքի, որ կաշառաքեալն լեալ էր 'ի Թաթարաց. բայց յորդահաւալոյ մետրապօլտին շատ համարեցաւ մերկացուցանել յընչից զԳեղաքի և արկանել 'ի բանտ:

Ի խնդրել այսր Թաթարաց 'ի Վասիլէ խան զոմն, ետ նոցա զՉին Ալի զեղբայր Ըէնս Ալէայ, և խորհրդակից նմա զռուս ոմն. այլ Խազանցիք 'ի միւսումն ամի խողխողեցին զնա և զռուսն, և կոչեցին անդրէն զՍաֆա Քէրէյ:

Իսկ Վասիլի ոչ ժամանեալ խնդրել զվրէժ դաւանեացն՝ մեռաւ յամին 1534,

թագաւորեալ ամս քսան և ութ ։ Եր-կու կանայք եղեն սորա. Սողոմէ, և Հեղինէ դուստր Վասլի Կլինսքեայ, որ ծնաւ նմա երկուս որդիս՝ զԻւան և զԵու-րի ։ Զի զՍողոմէ վասն ամլութեանն 'ի բաց արձակեաց՝ բռնադատեալ զնա մտանել 'ի մենաստան ուրեք 'ի Քար-կոփոլ. ընդ որ զայրացեալ բազումք յաւագանւոյն, և ոչ կարացեալ 'ի ծա-ծուկ ունել զդայրոյթս իւրեանց ընդ-դէմ Վասլի, կէսք աքսորեցան, և կէսք 'ի մահ մատնեցան ։ Յորմէ յայտ է և խստութեն բարուցն Վասլի ։

Այլ խստագոյն և հզօրագոյն գտաւ-քան զնա որդի նորին Իւան Դ., որպէս տեսցի 'ի գործոց նորա ։

## ԻՒԱՆ Դ. ՎԱՍԻԼԵՎԻՉ

ՔԱՆԶԻ 'ի մեռանել հօրն մանուկ էր եռամեայ Իւան, մայր նորա Հեղինէ կալաւ զխնամ աշխարհին՝ խորհրդակ-ցութեամբ Կլինսքեայ ։ Սորա տեսեալ զգայ-թակղական բերումն Հեղինեայ առ իշ-խանն Օպոլենսքի, որով նշաւակ նա-խանձու և երգիծանաց լեալ էր իւրոց ժողովրդոց, խստիւ յանդիմանեաց զնա. և Հեղինէ զրպարտեալ զԿլինսքի՝ որ-պէս թէ միայն կամիցի թագաւորել, արկ զնա 'ի կալանս, և անդ կորա-

ցուցեալ զաչսն՝ արգել զնա 'ի վանս ուրեք :

Յարկածից աստի Կլինսքեայ սոսկացեալ բազմաց յաւագորերոյն՝ անցին 'ի Լեհս. և Սիմէոն Բելսքի շնորհս գտեալ առաջի Սիգիսմունդայ արքային Լեհաց՝ ապա յարոյց 'ի վերայ Ռուսիոյ զԼեհս և զԹաթարս և զՏաճիկս :

Յայնժամ Օպոլենսքի յարձակեալ բազմութեամբ զօրաց 'ի Լիվոնիա՝ եհար աւերեաց զամենայն երկիրն մինչև 'ի Վիլնա : Եւ ընդդէմ նորա Սիգիսմունդ և պաշարեաց զոստխն 'ի Սթարոտուպ քաղաքի. և հուր հարեալ 'ի փայտաշէն պարիսպն՝ բորբոքեցոյց հրդեհ մեծ ընդ ամենայն քաղաքն. և որք միանգամ 'ի քաղաքացւոց անտի ոչ կարացին փըրկանաւորել զանձինս գլխովք՝ վարեցան 'ի գերութիւն : Եւ Օպոլենսքի առաջին գտաւ 'ի զերծեալսն այսու պայմանաւ :

Երկու եղբարք էին Վասլի չորրորդի, Եուրի և Անդրէաս, որք զառաջինն երդուեալ զհաւատարմութիւն եղբօրորդին իւրեանց՝ ապա դրժեցին երդմանն. Եուրի մեռաւ 'ի բանտի. իսկ Անդրէաս ապստամբեալ 'ի Նովկորոտ՝ գրեաց առ աւագանին Մոսքուայի բանս անարգանաց զտղոյ արքայէն և զմօրէ նորա, և յաւել առաջի առնել նոցա զանձն իւր որպէս օրինաւոր ժառանգ աթոռոյ եղբօրն՝ փոքր և հմուտ 'ի խորհրդս և 'ի

րեանս և եկն եմուտ 'ի Մոսքուա 'ի շուք յաղթանակի. առեալ զաւամարեաց, և դատապարտեաց զՊելուքի յաքսորս՝ եդեալ 'ի մահ զայլս բանտեալ 'ի նմանէ զկեանսն :

Որք միանգամ հաւատարիմ պաշտօնեայք Թագաւորին էին՝ անդուստ իսկ յապարանից նորա ըմբռնեալք՝ ոմանք աքսորեցան և այլք սպանան. և մեծորապօլեան իշխն բարեկամ Պելուքեայ աքսորեցաւ և նա 'ի Պելօօզերօ, ուր աքսորեալ և մեռեալ էր Պելուքի : Վորոնցով ևեթ թուէր զերծեալ՝ հեռանալով 'ի Մոսքուայէ հրամանաւն արքայի. այլ և նա յետ սակաւուց բարձաւ 'ի կենաց :

Մինչ այս մինչ այն՝ Սիմէոն Պելուքի գնացեալ առ Սաֆա քերէյ խան Խրիմու՝ յորդոր զնա 'ի վերայ Ռուսիոյ. նորա ժողովեալ զամենայն զօրութիւն իւր, էառ և 'ի Թագաւորէն Օսմանեանց զօրս և զէնս յօգնութիւն, և խաղաց 'ի Ռուսիա :

Յայնժամ առ մերձ վտանգին 'ի բաց թողեալ Ռուսաց զերկպառակութիւնս՝ միաբան դիմեցին ընդ առաջ մեծի բանակին Թաթարաց : Իբրև ետես Սաֆա քերէյ զամբոխն Ռուսաց՝ համարեցաւ թէ խաբեալ իցէ 'ի Պելուքեայ, և զաւան բանիւք կշտամբեալ զնա՝ դարձաւ յետս յերկիր իւր : Եւ Ռուսաց հետամուտ լեալ փախստէիցն՝ թափեցին 'ի նոցանէ ամբարս և երիվարս և այլս բազումս :

Այս անպատերազմ յաղթութիւն Ռուսաց զարթոյց զոգին Իւանայ, որ չորեքտասան ամաց էր յայնժամ, խի-զախել 'ի զօրութի իւր ։ Զի և մարմնով յաղթանդամ էր և բուռն, և մտօք հան-ճարեղ և շոյտ, ախորժ կարգի և կրթա-նաց, անյողդողդ և անմեկնելի յարու-թենէ ։ Սակայն 'ի տղայ տիոց թուլեալ լքեալ 'ի բռնութի իւրոց աներասանակ կրից և ախտից, զկամս իւր եւեթ գիտէր օրէնս և պարտս յամենայնի ։

Արդ ժողովեալ նորա զաւագանին իւր համօրէն, ասէ ցնոսա. «Արիւն եմ ես Ռիւրիքայ՝ մի միայն ժառանգորդ ա-թոռոյ նախնեացն իմոց. և դուք եր-դուարուք ինձ զհաւատարմութի ծա-ռայութե ։ Այլ արք անօրէնք զեղծան իմովս մանկութբ, և վեր 'ի վայր հա-րեալ կործանեցին զպարտս թագաւորի և զհպատակաց, և զստացուածս իմ և զիւրեանց խառն 'ի խուռն արարին, և զրկեցին զիս յարի արանց՝ որք էին նե-ցուկք հաստատութե թագաւորութե իմոյ ։ Ցաւուր յայսմիկ ես եմ տէր. և թագաւորեցից 'ի կազդուրումն ակա-րաց, 'ի պատուհաս յանցաւորաց և յօ-րինակ բարի ամենեցուն» ։

Զարհուրեցաւ Ռուսաքի յահեղ բար-բառոյ արքային և 'ի հրացայտ աչացն, և յապուշ կրթեցան խորհրդակիցք նո-րա ։ Հրամայեաց Իւան 'ի մահ տալ զան-օրէնսն անյապաղ. և զգաստացան ա-

մենայն ժողովուրդքն 'ի տեսիլ արդար պատուհասին ։

Բայց գեղեցիկ սկզբանն զհետ յարեալ Իւանայ զարգասիս անկիրթ բարուցն՝ ետ զանձն իւր 'ի Թուլութի անչափ, և յամենայն չարիս անկղխտացաւ ։ Անառակագոյնքն 'ի մարդկանէ եղեն նորա սեղանակիցք, և ոչ Թողին զչարիս զոր չանցուցին ընդ ժողովուրդն, յափշտակութե̃, խորամանկութե̃, մարդասպանութե̃ և ամենայն բռնութեք ։ Եւ Իւան խցեալ էր զականջս իւր առ 'ի չլսելոյ զբողոք և զհեծութիւնս անմեղաց ։

Ընդ ամս երկուս տեւեցին ցնորք Իւանայ. յորում ժամանակի պսակեցաւ հանդիսիւ 'ի մետրապօլտէն Թագաւն Կոստանդնի Մոնոմախ կայսեր Յունաց, և հրամայեաց՝ զի յայնմ հետէ անփոփոխելի կոչեսցեն զնա Զար ։

Յետ սակաւուց ա՛ռ 'ի կնութի̃ զԱնաստասիա զդուստր Ռոմանայ Ռոմանով. և նա իւրով խոհականն և ազնիւ բարուքն խրատ բարի եղեալ առն իւրում բանիւք և արգեամբք՝ զգօնացոյց զնա և դարձոյց 'ի ճանապարհն ուղղութեան ։

Հալածեաց այնուհետև Իւան յարքունեացն զծաղրածուս և զհացկատակս և զչողոմարարս. և փոխանակ նոցին ած կարգեաց զիւրև որս առաքինիս և խորհրդականս ։

Տեսեալ Իւանայ զանընդհատ երկպառակութիւն Թաթարացն Խազանայ եւ Աժտերխանու, ուր եւ հանդերձանաց մեծի պատերազմի, եւ առ 'ի կարգի ունելոյ ընդ միով գլխով զամենայն ըզզօրսն՝ որք յառաջին խառն 'ի խուռն գնային 'ի պատերազմ ընդ վարչութե̃ այլ եւ այլ իշխօրէն զօրագլխաց՝ եհան նոր խումբ զինուորաց Սթրելեց կոչեցելոց, այս է Աղեղնաւորք. զինեաց զնոսա հրացինուք, եւ զմի մասն նոցա կարգեաց իւր յանձնապահս, զայլս ցրուեաց ընդ այլ զօրսն 'ի մարզել եւ զնոսա 'ի կարգս զինուորութե̃ն ։

Ընդ այն ժամանակս բնակիչքն Խազանայ 'ի բաց վանեալ զխան իւրեանց՝ խնդրեցին յԻւանայ զՇիկխ Ալի, որ յաքսորս էր կանխաւ 'ի Պելօօզերօ, եւ մայրն Իւանայ Հեղինէ արձակեալ էր զնա յազատութ̃ի ։ Իւան առաքեաց նոցա զԱլի բազմութ̃բ Ռուսաց եւ Թաթարաց ։ Ընդ առաջ ելեն նոցա Խազանցիք եւ ընկալան 'ի ներքս մեծաւ պատուով. այլ յանկարծակի կալեալ զամենայն զմրզայս՝ այսինքն զազատանին Ալեայ՝ բանտարգել արարին, եւ զայլ ուղեկիցս նորուն 'ի բացի ընդ սուր անցուցին. եւ զնա ինքն զԱլի հալածեալ 'ի բաց՝ կոչեցին անդրէն զառաջին զխանն իւրեանց ։

Իւան խռովեալ լեալ եղելոցն՝ արձակեաց 'ի կողմանս Խազանայ խումբ

ձի Սթրելցաց, որք հալէին 'ի Թաթարաց ոգիս քան հազար, և երեսուն հազար գերեցին: Ի միւսում ամի որ էր 1550, մեռաւ խանն Խազանայ՝ թողեալ որդի մի մանուկ հասակաւ, և կին նորա Սիւմ-պէքի անուն կալաւ զտէրութիւն աշ-խարհին:

Իսկ Իւան յետ վայրապար առաքե-լոյ անդր զօրս յայլ և յայլ խումբս, խաղաց ինքնին զօրօք բազմօք, և զճա-նապարհայն 'ի վերայ սառուցեալ լերին միոյ կառուցց դղեակ՝ քան վերստիւք հեռի 'ի Խազանայ, զի դիւրին լիցի նմա յարձակել անդ 'ի Խազան:

Մինչդեռ Ռուսք զգործսն էին՝ Խա-զանցիք բանադատեցին սպանանել զՍիւմպէքի՝ ամուսնանալ ընդ Շեխ Ա-լեայ, որ հզօրացեալ 'ի ժամանակին՝ կարող էր զդէմ ունել Ռուսաց օգնութ. Խազանցւոց: Եւ նորա կեղծեալ զհաւա-նութի՝ առաքեաց առ նա խորտիկս և գա-համանս: Բերկրեցաւ Ալի յանձն իւր ընդ առաջարկութիւն. այլ իւրքն 'ի կաս-կածի եղեալ՝ իբրև ետուն շան միում ճաշակել 'ի գահամանց անտի, անդէն առ ետեղ սատակեցաւ շունն. և պատ-գամաւորքն ականատեսք եղելոցն՝ վը-կայեցին յանուն համօրէն ազգին, զի Սիւմպէքեայ էր դաւն:

Յայնժամ Ալի եմուտ 'ի Խազան ե-րեսուն հազար արամբք. զՍիւմպէքի որդւովն հանդերձ առաքեաց 'ի Մոս-

քուա, և զորոց միանգամ կարծիս ինչ կալեալ՝ թէ չիցեն հաւան ընդ ընտրութիւն իւր, յանխնայ սուր 'ի վերայ եդեալ կոտորեաց:

Ոչ ևս հանդուրժեալ Թաթարաց՝ միաբանեցին գալեւել զնա. այլ ընդ յայտնիլ գալոյն՝ նա 'ի միում աւուր երեսուն հազար ազգիս ընդ սուր անցոյց:

Զայս ամենայն իբրև լուաւ Չաֆիրըն անուն ումն իշխան Խազանայ՝ որ յարքունիսն Իւանայ կայր, խնդրեաց 'ի նմանէ զհրաման՝ որպէս թէ երթալ հանել 'ի Խազանայ զընտանիս իւր. այլ նորա կամք էին վանել անտի զԱլի, և գտանել զաթոռն: Վասն որոյ իբրև եհաս անդր, գրեաց ամբաստանութիւն զնմանէ առ Իւան՝ իբրու եթէ դաւ ինչ խորհիցի ընդդէմ Ռուսաց, և Իւան վաղվաղակի կոչեաց զԱլի 'ի Մոսքուա:

Շեխ Ալի ոչ ինչ զգացուցեալ ումեք զհրամանէն Իւանայ՝ այլ արար աւագորերոյն Խազանայ, թէ կամիմ երթալ 'ի Մոսքուա. այլ նախ խնջոյս կազմել ձեզ ամենեցուն 'ի Սվեաժեաք, այն էր նորակառոյց դղեակն Ռուսաց: Եւ իբրև եկին ժողովեցան անդր արք իբր հինգհարիւր, էառ Ալի զպրուննս, և զչորեքհարիւրսն գլխատեալ՝ զմնացեալ հարիւրն շղթայակապս առաքեաց 'ի Մոսքուա, զի յայտ արասցէ զստութի ամբաստանութեանցն գրելոց զանձնէ

իւրմէ, և Իւան ոչ ևս երկմտեաց զհաւատարմութենէ առնն։

Իսկ Զափիլըն պատեհ առեալ զզայրոյթ Թաթարաց ընդ արարս Ալեայ, ընտրեաց նոր զօրավարս, և երդմնի արար զնոսա յանհաշտ թշնամութեան ընդդէմ Ռուսաց, յուսով ունելոյ զաթոռն Խազանայ։ Այլ նոքա ամբոխ մեծ արարեալ ետուն զաթոռն՝ Ետիկերայ որդւոյ խանին Աժտէրխանու. որ և եկեալ եմուտ 'ի Խազան երեսուն հազար զօրօք։

Ի նմին ժամանակի և Ռուսք առաջնորդութեամբ թագաւորին իւրեանց Իւանայ եկին պաշարեցին զԽազան. կանգնեցին շուրջ զնովաւ պատնէշս հաւասար պարսպացն, և կարգեալ 'ի վերայ նոցա թնդանօթս՝ ական հատին ընդ պարսպօքն, և փլուցին զնոսա, և խուժեցին ընդ խրամատսն 'ի ներքս։ Սակայն և Թաթարք 'ի յուսահատութիւն ըմբռնեալ վանէին զնոսա յետս կոյս. որ ինչ և գայր 'ի ձեռս՝ փոխանակ զինու վարէին, զնետ, զսուր, զջուր եռացեալ, զքարինս, զգերանս և զխանձողս։ Եւ էր պատերազմն ցրուեալ ընդ քաղաքն ամենայն 'ի փողոցս 'ի տանիս և 'ի պարտէզս. ամենայն ուրեք հուր սուր և կոտորած, և աղաղակ և ձայնք ողբոց և յուսահատութեան. և կանայք անգամ 'ի տանց իւրեանց յարձակեալք մարտ դնէին։ Հալին ապա Ռուսք յա-

պարանս խանին, ուր ամրացեալ էր Եափկէր սակաւուք ոմամբք ընտիր զօրականօք, որ և յերկար զդէմ կալեալ Ռուսաց արիաբար՝ առեալ յանձն իւր վէրս բազումս, մինչև եկն եհաս 'ի տեղին ինքնին Թագաւորն. և 'ի գութ և 'ի զարմանս հարեալ ընդ քաջութե̃ն խանին՝ ազատեցոյց զնա 'ի ձեռաց իւրոցն:

Յայնժամ Իւան գոհացեալ զԱստուծոյ վասն յաղթութե̃ն մեծի, առէ ցիշխանս իւր և ցզօրավարս. “Ահա այժմ ամրացոյց զիս Աստուած ընդդէմ ձեր”:

Կարգ եդ ապա 'ի քաղաքին և 'ի սահմանս նորա, և դարձաւ 'ի Մոսքուա: Եւ տամամբն խաղաղանայ վախճան եղև պատերազմաց Ռուսաց ընդ Թաթարս մինչ 'ի սպառ: Զի և խանն Աժտէրխանու Ապտուլ ինքնին անձնատուր եղև Իւանայ, և բարձաւ անտի աթոռն Խրփչախ Թաթարաց յաջորդացն Չինկիզայ: Ի յառնել ընդդէմ Ռուսաց այլոյ խանի՝ որ կոչէր Իմիւրկէյ կամ Իմթիւրչէյ, խաղաց 'ի վերայ նորա Իւան, և հալածեալ զնա 'ի կողմանս Ազախու, առ զքաղաքն, և եդեալ 'ի վերայ բնակչաց նորա տարեկան հարկս չորեքհազար րուպլի, դարձ արար յաղթանակաւ 'ի Մոսքուա:

Ընդ այն ժամանակս Անգղիացիք սկսան վաճառաշահ լինել ընդ Ռուսս՝ մտեալ 'ի հիւսիսային ծովէ անտի 'ի բե-

րան Տվինա գետոյ, և անտի 'ի Մոսքուա. և Իւան մեծաւ մարդասիրութ̃բ ընկալաւ զնոսա իբրև դեսպանս առաւել քան վաճառականս ոմանս:

Զայնու ժամանակաւ Թագաւորեաց Շվէտաց Կուստաւոս Վազա, և սադրանօք Լիվոնիացւոց խաղացեալ յաշխարհն Ռուսաց՝ տուժիւք հանդերձ վանեցաւ յԻւանայ. որոյ իմացեալ յետոյ զնենգութին Լիվոնիացւոց՝ պատճառս իմն հնարեցաւ, և պահանջէր 'ի խաչակրաց բնակելոց 'ի Լիվոնիա զհարկ յիսուն ամաց՝ զոր պարտէին հատուցանել Ռուսաց, որպէս ասէր նա. և 'ի ժխտել նոցա՝ ասպատակեաց 'ի Լիվոնիա, և առեալ աւար և գերի բազում՝ վաճառեաց զնոսա Թաթարաց:

Ապա զիջաւ Իւան աղաչանաց Լիվոնիացւոց, և արար դադարումն զինուց վեցամեայ. յորում ժամանակի թշնամութի իմն ծագէր վասն պահոց ընդ բնակիչս Նարվա քաղաքին Լիվոնիոյ՝ Լուտերականս, և ընդ բնակիչս Իւանկորոտ քաղաքին Ռուսաց, վասն որոյ հարկ եղև 'ի պատերազմ ձեռն արկանել: Առին Ռուսք զՆարվա, ապա և զՏերբեդ, և դարձան 'ի ձմերել յաշխարհին իւրեանց: Եւ մագիստրոս կարգին խաչակրաց յարձակեալ 'ի քաղաք մի մերձ 'ի Փսքով՝ յորում էին երեքհարիւր արք պատերազմի, ընդ սուր անցոյց զամենեսեան:

Անտի և խանն Խրիմու կարծեալ եթէ Իւան դեռ ևս արտաքոյ աշխարհէն իւրոյ դեգերի՝ յարձակեցաւ 'ի սահմանս Ռուսաց. այլ երբև լուաւ՝ զի նա 'ի Մոսքուա է զօրօք իւրովք, դարձաւ անդրէն յերկիր իւր:

Իսկ զօրքն Իւանու դարձան 'ի վերայ Լիվոնիացւոց, և ձերբակալ արարեալ զմագիստրոսն խաչակրաց՝ եկին 'ի Մոսքուա:

Իբրև կալաւ զտեղի նորա այլ ոմն մագիստրոս Քեթլէր անուն, կոչեաց իւր 'ի թիկունս զարքայն Լեհաց. որոյ ընդ առաջ գնաց իշխանն Իւան. և զառաջինն 'ի գլուխ տարեալ զքանի մի յաղթութիւնս, սակայն և 'ի պարտութիւն մատնեցաւ յայլ պատերազմունս: Ցորմէ պատճառս առեալ Ռուսաց, զօտարազգի զօրավարօք իւրեանց արկանէին զմեղսն, և չարախօս լինէին զնոցանէ առ Իւան. այլ նա որ քաջ գիտէր զմախանս իւրոցն, և զվաստակս հմուտ զօրավարացն, անաչառ խստութեամբ պատուհասեաց զչարախօսսն:

Մեռաւ 'ի ժամանակին յայնմիկ ամոքիչն խստութեան Իւանայ դշխոյն Անաստասիա. զոր լուեալ Իւանայ՝ կոչեաց 'ի մի վայր զաւագորեարն ամենայն և ասէ ցնոսա. “Տաղտուկ է ինձ այսուհետև 'ի մարդկանէ, և 'ի մեծութէ և 'ի գործոց. և ահա հրաժարիմ

յաթոռոյս , և անձին կենաց ուշ ու-
նիմ»: Եւ արար այնպէս:

Եւ զի Դեմետր անդրանիկն իւր գեռ-
ես մանուկ էր, աւանդեաց զղեկավա-
րութիւն աշխարհին 'ի ձեռս Եոփկերայ
իշխանին Խազանայ , զորոյ քաջիկ անդե-
կացեալ գիտէր զհանճարն և զհաւա-
տարմութիւն: Եոփկէր ոչ կալաւ յան-
ձին. այլ Իւան թոնադատեաց զնա՝ և
խոստացաւ նմա զխորհրդակցութիւն իւր
'ի գործս կարեւորս. ետ նմա զանուանն
Զար , և անձին պահեաց զկոչումն Վէ-
լիքիյ քնէազ , այսինքն է իշխան մեծ , և
ինքն մեկնեցաւ 'ի քաղաք մի փոքրիկ՝
որ կոչէր Ալեքսանդրովա սլոպոտա մերձ
'ի Մոսքուա :

Մինչդեռ Եոփկէր առաջնորդէր աշ-
խարհին խոհական տեսչութբ , աւագա-
նին Ռուսաց հարեալ զագահութբ՝
սկսան խուել զժողովուրդն , և զոր-
ծէին զամենայն ըստ կամս անձանց:

Ոչ հանդուրժեաց Իւան անկարեկիր
կալ միայն ընդ աղէտս իւրոյ պետու-
թեն , յարեաւ կազմեաց գունդ մի զօ-
րաց Օփրիչնիք անուանելոց , 'ի սոսկա-
կան ամբոխէն և ելթ ընտրեալ զնոսա ,
որպէս զի և՛ ըստ ախորժակաց իւրոց
վարեսցէ զնոսին , և զազատորէայն պատ-
կառեցուսցէ և 'ի խոնարհուն կափես-
ցէ: Եւ առեալ զնոսա 'ի գործիս իւ-
րումն վրէժխնդրութե՝ ել շուրջ յա-
ծեցաւ ընդ ամենայն աշխարհ իւր , և

զմեծատունեան բռնացեալսն՝ էր զոր ընդ սուր անցոյց, էր զորս յաքսորս տարաքեաց, և էր զորս կապուտ կողոպուտ արար յընչից նոցին ։

Ի վերայ հասեալ 'ի ձեռն արքանեկաց Իւրոց՝ եթէ արքեպիսկոպոսն Նովկորոտայ բանադնաց է մատնութեան ընդ արքային Լեհաց, խաղաց 'ի Նովկորոտ․ և յընդառաջել նմա արքեպիսկոպոսին՝ առաւել ևս 'ի սրտմտութիւն բարկութեան բորբոքեալ Իւանայ՝ ասէ ցնա․ «Մանիչ գաւազան, որպէս ժպրհեցար դու և ժողովուրդ քո մատնել զքաղաքս զայս 'ի ձեռս ոսոխին իմոյ Սիգիսմոնդայ ։ Ո՞չ խաչ տեառն է այդ 'ի ձեռին քում․ արդ զէն է այդ՝ զոր դարձուցանես յիմ վերայ․ և միթէ իցես դու հովիւ՝ դայլդ անագորոյնդ ։ Հրամայեաց նմա երթալ յեկեղեցի իւր և մատուցանել զպատարագն․ և ճաշեալ 'ի տան արքեպիսկոպոսարանին, ապա հրամայեաց արկանել 'ի կալանս զարքեպիսկոպոսն, և ընդ սուր անցուցանել զամենայն զմեծամեծս քաղաքին, և գետավէժ առնել ։ Իսկ զարքեպիսկոպոսն փոկեաց 'ի վանս ուրեք, ուր և մեռաւ նա յետ սակաւուց ։

Զնոյն անցս Նովկորոտայ կրեցին և քաղաքացիքն Փսքովայ և Թվերայ ամբաստանեալք վասն բարեկամութեան իւրեանց ընդ Լեհս ։

Եւ դարձաւ Իւան 'ի Մոսկուա, ո-

րոյ բնակիչքն զահի հարեալ դողային 'ի լուր աղետից Նովկորոտայ և Թվերայ. այլ նա շուրջ եկեալ երիվարաւ ընդ փողոցս քաղաքին աղաղակէր և ասէր. «Աներկիւղ լիցի ժողովուրդն իմ, և միայն դաւաճանքն իմ զդողանի հարցին»: Ապա 'ի մահ մատնեաց արս երեքհարիւր յաւագաց անտի, յորս էին և յազգականաց Թագաւորին:

Թուէր իմն խստութի նորա անցեալ ըստ չափ. այլ ոչ սուտ էին և ամբաստանութիւնքն. և իշխանն Քուրպսքի, որ փախուցեալ յԻւանայ ապաւինեալ էր յարքայն Լեհաց, անդ գրեաց զպատմութի Իւանայ, և առաքեաց առ նա ինքն. սակայն Իւան զարմանալի մեծանձնութբ գրեաց առ նա պատասխանի, և արդարացոյց զանձն յանաչառ անգըթութէ՝ որով կշտամբիչքն յանցելեաց իւրոց. յայտ արար անժխտելի փաստիւք՝ եթէ Ռուսք ինքնին հարկ արարին նմա հովուել զնոսա գաւազանաւ երկաթեաւ:

Ի յոյժ ներքին շփոթիցն Ռուսիոյ յաւելան և պատերազմունք Լեհաց և Սվէոնիացւոց, որովք տագնապեցաւ յոյժ Իւան, մինչև Եղիսաբեթի դըշխոյին Անգղիոյ արգահատել նմա, և հրաւիրել զնա յերկիր իւր:

Ընդ այն ժամանակս Ենրիկոս եղբայր Կուսգաւոսի Վազայ Թագաւորեալ Շվէտաց՝ ոխերիմ թշնամի հանդիսա-

ցաւ Ռուսաց, և զդեսպանս նոցա բանտա-
արգել տարար ամս երկուս. ապա զի մի՛
առցեն Ռուսք զքաղաքն Լիվոնիոյ՝ որ
ընդ իւրով ձեռամբ էին, եհան զդես-
պանսն ՚ի բանտէն, և առատ պարգևօք
մեծարեալ զնոսա՝ դարձոյց յերկիր իւ-
րեանց, և ընդ նոսա առաքեաց զայլ
ոմն դեսպան՝ զի ուխտ խաղաղութեան
հաստատեսցի ընդ երկուս պետութիւնս
փոխանակ զինադադարմանն:

Իսկ Իւան կալաւ զդեսպանն և եդ ՚ի
բանտի նոյնչափ ամս և ամիսս և աւուրս
և ժամս, որչափ կացեալ էր իւրոցն ՚ի
Շվէտս. և ապա մերժեալ զառաջար-
կութիւնն՝ նորոգեաց զպատերազմն: Սա-
կայն իբրև ետես թէ ծանր է ինքեան
պատերազմել այլ ևս, և Լիվոնեացիք
ցանգ ատելութ̃ք էն ընդ Ռուսս, յոր-
դորեաց զնոսա մտանել ընդ տէրութ̃ք
Մագնոսի դքսին Ոլսացիոյ՝ և խոստա-
ցաւ նոցա զպաշտպանութիւն իւր: Եւ
յընդդէմ կալ բնակչացն Րէվէլայ և ՚ի
չհնազանդել Մագնոսի, յանօգուտ
առաքեալ նախ Իւանայ ՚ի վերայ նոցա
զօրս, ապա յերկրորդում նուագին
պատրաստեցաւ անձամբ խաղալ ՚ի վե-
րայ նոցա ամենայն զօրութ̃ք իւրով:

Յայնժամ Մէնկլի Գէրէյ խան Խրի-
մու սադրանօք արքային Լեհաց յար-
ձակեալ զօրօք բազմօք ՚ի Ռուսիա, եկն
եհաս մինչև ՚ի Մոսքուա, և հրդեհեաց
զամենայն արուարձանս այս քաղաքին.

և եղև 'ի Ռուսաց կոտորած մեծ՝ իբրև հարիւր հազար ոգւոց, որք անկան 'ի հուր և 'ի սուր Թաթարաց:

Դարձ արարեալ այս խանին 'ի Խրիմ, արձակեաց առ Իւան երեքհարիւր դեսպանս, և պահանջէր զհարկս: Փոքր միւս ևս և ընդ սուր անցուցանէր Իւան զամենեսին զնոսա. այլ շատ համարեցաւ զգլխաւորացն 'ի նոցանէ հատանել զունչս և զականջս, և տուեալ 'ի ձեռս նոցա զվաղակաւոր մի՝ դարձոյց յետս զնոսա առ խանն և ասէ. «Այս ևեթ հարկ է, զոր հատուցից ես խանիդ»:

Զայրացաւ խանն, և սաստկագոյնս յարձակեցաւ 'ի Ռուսիա, մինչև մեկնել Իւանայ 'ի Նովկորոտ՝ յանձն արարեալ զզօրսն յիշխանն Վոռոթինսքի. որ աջողակի խորտակեաց զԹաթարսն, ձերբակալ արար զմի յորդւոց խանին, և զմիւսն եգիտ անկեալ 'ի տեղւոջ ճակատուն, և լցան Ռուսք աւարաւ Թշնամեաց:

Ի նմին ժամանակի մեռաւ և Սիգիսմունդ արքայ Լեհաց, և Իւան ոգի առեալ 'ի ձեռաց երկուց ահեղ Թշնամեացն, դուն գործեաց նկուն առնել և զերրորդն՝ զարքայն Շվէտաց: Զմասն մի զօրաց իւրոց յարձակեցոյց 'ի Ֆինլանտիա, որք բազում նախճիրս գործեցին անդէն. և ինքն երկոքումբք որդւովք իւրովք ապաստակեալ 'ի Լիվոնիա, էառ քաղաքս քանի մի, և դար-

Յաւ ինքն 'ի Նովկորոտ՝ զայլ զօրականս առաքեաց յԷսթօնիա, զոր ծայր 'ի ծայր աւերեալ ապականեցին Ռուսք :

Սակայն Աքենասն զօրավար Շվէտաց ելեալ 'ի Րէվէլայ, արար 'ի Ռուսս կոտորած մեծ : Զոր իբրև լուաւ Իւան՝ թուղթս խոնարհականս գրեալ առ արքայն Շվէտաց Յովհաննէս՝ յորդորեաց զնա 'ի հաշտութիւն խաղաղութեն. այլ քանզի կամէր 'ի Նովկորոտ կատարել զդաշինս ուխտին և ոչ 'ի սահմանագլուխս երկոցունց աշխարհացն. Յովհաննէս ոչ կալաւ յանձին. և պատերազմ էր անընդհատ 'ի մէջ նոցա՝ առաժիւք հանդերձ երկաքանչիւր կողմանն. մինչև զիջաւ Իւան, և արձակեաց զդեսպանս իւր 'ի սահմանագլուխս Շվէտաց. և պայմանեցաւ եռամեայ ևեթ զինադարութիւն յամին 1575 :

Ի կատարած ամացն երից եկն Իւան և պաշարեաց զՐէվէլ յիսուն հազար զօրօք. այլ յետ երկուց ամաց մեկնեալ անտի եկն 'ի Փոլքով. ուր կոչեաց զՄագնոս, և բաժանեցաւ ընդ նմա զԼիվոնիա :

Այլ կամեցեալ Իւանայ մտանել 'ի քաղաքն Քոքէնհաւզէն՝ որ էր 'ի բաժնին Մագնոսի՝, չետուն նմա մուտ քաղաքացիքն յանուն Մագնոսի. ընդ որ անհնարինս զայրացեալ Իւանայ՝ գնաց պաշարեաց զՎէնտէն, յորում էր Մագնոս. որ և անսպասելի մտօք ել ընդ ա-

առաջ Իւանայ՝ մեծաւ յարգանօք, որպէս սովորն էր ։

Դէպ եղև զի մինչդեռ յանդիմանէր զնա Իւան, ռումբ երկաթի արձակեալ ուստեք հարաւ 'ի գլուխ իւր ։ Ի ցասումն բարկութեան բորբոքեցաւ Թագաւորն, և զՄագնոս 'ի կալանս արկեալ՝ երդուաւ չարաչար սատակել զամենայն զբնակիչս քաղաքին ։ Որոց ապաստան եղեալ 'ի միջնաբերդն, առաս հուր հարին 'ի վառօդսն, և ծածկեցան ընդ փլատակօք քաղաքին, և զապրեալսն խեղդամահ արարին Ռուսք ։

Յետ այնորիկ կոտորեաց Իւան և զբնակիչս Վոլմար քաղաքի, և տիրեաց բովանդակ հիւսիսային կողման Տվինա գետոյ՝ բայց 'ի Րէվէլայ ։ Անտի անցեալ 'ի Տերբատ՝ Ջանայր յանցաւոր ցուցանել զՄագնոս, կամ սատակել զնա 'ի խընդրել զներումն ․ այլ նա աղաչէր, զի իրքն իրաւամբք դատապարտանի 'ի յայտ եկեսցեն, և ապա թէ յանձն առից ասէր՝ առնուլ զինե զանուն վատութեան ։

Ապա եղև Իւանայ յարձակումն թաթարաց 'ի Ռուսիա, և հարկեալ դառնալ յաշխարհ իւր՝ արձակեաց զՄագնոս 'ի Քողքենհաւզէն ։

Ընդ մեկնել Իւանայ՝ միաբանեցին Շվէտք և Լեհք, և առին զբազում տեղիս Լիվոնիոյ 'ի ձեռաց Ռուսաց՝ կոտորեալ 'ի նոցանէ եօթն հազար ոգիս ։

Զայն իբրեւ լուաւ Իւան, փութացաւ խօսել 'ի հաշտութիւն ընդ Թաթարս, եւ եկն դարձեալ 'ի Փոքուն հարիւր հազար զօրօք, զորս տարահեալ 'ի խումբս խումբս՝ կամէր յարձակել գիշերախառն 'ի վերայ Թշնամեաց եւ առնուլ՝ բաց 'ի Լիվոնիոյ եւ զՔուրլանտիա եւ զԲրուսիա Լեհաց. այլ Շվէտք ընդ այլ կողմանս խռովեցուցին զզօրս նորա, եւ Մագնոսի խիթացեալ յԻւանայ՝ եմուտ ընդ պաշտպանութեամբ Ստեփաննոսի Բաթթորի արքային Լեհաց:

Սա այս Բաթթորի ուխտ քաջակամութեան հաստատեալ ընդ Թագաւորին Օսմանեանց եւ ընդ խանին Խրիմու, պահանջէր յԻւանայ՝ զի տացէ 'ի բաց որչափ ինչ քաղաքս հաստատեալ էր 'ի Լիթուանիոյ եւ 'ի Լիվոնիոյ. իսկ Իւան պատահանջեաց 'ի նմանէ 'ի վերայ այնր ամենայնի եւ զՔուրլանտիա: Եւ 'ի պնդել Բաթթորեայ, Իւան առաք զԹղթաբերն 'ի բանս:

Յայնժամ Բաթթորի պաշարեաց զՓոլոցք եւ էառ զայն, եւ յաղթեաց նմա յամենայնի. եւ յարոյց վերստին զԹաթարս Խրիմու 'ի վերայ Ռուսաց:

Իբրեւ ետես Իւան զայս եւ զաւեր երկրոյ աշխարհին, 'ի խնդիր եղեւ խաղաղութեան. եւ միջնորդ պատրաստելի կալաւ զքահանայապետն Հռովմայ զԳրիգոր ԺԳ, աղաչելով զնա՝ զի հաւանեցուսցէ զԲաթթորի 'ի խաղաղութիւն եւ

'ի չափաւորութիւն ըստ պատուիրանաց կրօնին զոր դաւանէրն ։

Առաքեաց քահանայապետն 'ի Լեհս զՓոսսեւինոս յիսուսեան. որում եւ պատասխանի Պաթթորի՝ թէ ոչ այլազգ հնար է ինձ զիջանել 'ի հաշտութիւն, բայց եթէ դարձուսցէ առ իս Իւան զբովանդակ Լիվոնիա, եւ հատուսցէ զծախս պատերազմին ։

Անդ գնաց Փոսսեւինոս առ Իւան, որոյ մեծաւ պատուասիրութեամբ հիւրընկալեալ զնա՝ յանձն էառ չապահանջել 'ի Լեհաց զՔուրլանտիա, եւ անդի առնուլ 'ի մասնէ Լիվոնիոյ ։ Այլ արքայն Լեհաց ոչ ինչ հաճեցաւ ընդ պայմանսն, մինչեւ զիջեալ Իւանայ՝ եթող զԼիվոնիա եւ զայլ քաղաքս զորս առեալ էր 'ի նմանէ, եւ եղեւ խաղաղութիւն յամին 1583 ։

Հաշտեցաւ Իւան եւ ընդ խանին Խրիմու, եւ ընդ Շվէտս հաստատեաց զինադադարութիւն եռամեայ, եւ ժամ էր այնուհետեւ պատել զվէրս Ռուսիոյ. այլ յաղթահարէր ոգին Իւանայ այլում պահեաց զայն ժամանակի ։

Սակայն 'ի սպառ ընկճեցաւ այն ոգի յաղիողորմ արկածիցն որ դիպաւ նմա ընդ նոյն ժամանակս ։

Քանզի չեւ հաշտեալ Ռուսաց ընդ Պաթթորեայ՝ հատուած զօրացն Լեհաց արշաւեցին հասին մինչեւ 'ի Վոլկա, որպէս պատմեն ոմանք ; եւ Իւան չիմանալըն արար՝ զի ակն ունէր ինք-

նեն կատարել նոցա 'ի սաստկասաստութեանց ձմերայնոյ անօտի վայրացն ։ Իսկ աւագանին ոչ ինչ հաւատացեալ 'ի վերայ եկաց, ասեն, խորհրդոց նորա. և համարեալ այնպէս եթէ առ ծերութեն գանդաղեցի, թախանձ արկէին նմա եղանել անձամբ ընդդէմ Լեհաց, կամ գէթ արձակել զանդրանիկն որդին իւր զօր արէր զԴմետր 'ի վերայ նոցա ։

Իւան նախատինս իւր համարեալ զխորհուրդն, թերևս և համախոհութիւն ընդ որդւոյ իւրում՝ հակառակ անձինն, գլխաւորաց զաւագանին. և այն ինչ արքայորդին Դմետր անկեալ առ ոտս հօրն՝ կամէր քերել աղերսիւ յանձնէ զխէթ կասկածանացն, Իւան զեռ եռ յեռանդան բարկութենն՝ եհար գաւազանաւ 'ի գլուխ որդւոյն, որ յերկրորդ և 'ի չորրորդում աւուրն մեռաւ ։

Փոստեւինոս, որ յայնժամ 'ի Լեհս էր, ոչ պատճառս այս մահուն Դմետրի. այլ այն որպէս և իցէ՝ Իւան ըմբռնեցաւ յանհնարին սուգ թախծութեն ։ Սկսաւ բաշխել դրամս յոլովս մենաստանեաց և աղքատաց, մինչև եպիսկոպոսացն յուշեաց անգամ, զի թերևս թողցէ նմա տէր զահագին ոճիրս յանցանացն ։ Սակայն և այնու ոչ զերծեալ 'ի բողոքոյ և 'ի տագնապանաց խղճին, եդ 'ի մտի կրօնաւորել. և մետրապօլիտն Դիոնեսիոս խուզեալ զնա՝ անուանեաց Յովնան ։

Ի մանկութեան խուռամ ոչ ինչ շահեալ 'ի դաստիարակութենէ, մինչև ցժամ անմեկնելի կալեալ ընդ անդունելի թերութեանց բնութեանն և զընտիր ընտիր ձիրս նորին, որովք ճոխացեալն էր: Մահու չափ ձգնեալ 'ի հաստատութիւն և յաճեցումն պետութեան իւրոյ, զոյգ նմին խնամ կալեալ և պայծառութեան աշխարհին 'ի դպրութիւնս և յարուեստս:

Սա առաջին կոչեաց ժողովեաց 'ի Մոսկուա օրէնսգէտս, ճարտարապետս, նկարիչս, քանդակագործս, ոսկերիչս, թղթաբարս, ձուլիչս, բժիշկս, ևս և տպարանս: Եւ յամին 1563 տպագրեցան 'ի Մոսկուա այն առաջին անգամ Գործք և Թուղթք առաքելոցն 'ի սարկաւագէ ումեմնէ:

Նորին Իւանայ խնամովք եմուտ 'ի Ռուսիա կարգ և մարզք Եւրոպացի զինուորութեան, որպէս ասացաք, և նա յաւել օրէնս կարևորս 'ի մատեանն Եարոսլաւեան: Ի սահմանեալ ժամս ընդունէր զաղերսագիրս, և ամենեցուն անընդմէջ համարձակէր մատչել առ ինքն: Զդատաւորս և զպաշտօնեայս պետութեան անիրաւեալս 'ի դատաստանի' 'ի մահ պատուհասէր. իսկ 'ի թեթևագոյն յանցանս նոցա' մերկացուցեալ զնոսին յիշխանական զգեստուցն, տայր յածեցուցանել զնոսա քրձազգածս ընդ փողոցս քաղաքին 'ի ձեռն մեռելաթաղ

արանց արբելոց. և ապա խրատէր ըզնոսա զգաստանալ առ յապայս: Իսկ զարբեցողս միշտ բանտիւ պատուհասէր:

Նովին անաչառ խստութբ վարեցաւ Իւան և ընդ պաշտօնեայս եկեղեցւոյն իւրոյ. փոփոխէր ըստ կամս զմետրապօլիտս իւր՝ առանց ինչ հարցանելոյ զՅոյնս, որպէս կանխաւն. և զանձամբ իսկ էառ զարդս եպիսկոպոսականս:

Առ Թագաւորութեամբ Իւանայ սկսան պեղել Ռուսք և զհանս երկաթոյ, և վաճառաշահ լինել ընդ ծով և ընդ ցամաք յաճախապէս:

Համառօտ ասել, Իւան այր մեծ էր 'ի քաջութիս և 'ի վատթարութիս միանգամայն. և թէ բազում անգամ անցնա ըստ չափ արդարութե, թերևս՝ որպէս ասէ Քարամզին, այնպէս պահանջէին հանգամանք ազգին իւրոյ յայնժամ: Որք և սկիզբն առարեալ սիրել զնա, ապա պատկառել, հպատակել, երկնչել և նողկալ, 'ի վախճանի խանդաղատեցան 'ի տեսիլ վերջին աղետից նորա:

Եւ մեռաւ Իւան Դ, յամին 1584, 'ի հասակի յիսուն և չորից ամաց: Կանայք հինգ լեալ էին նորա. առաջինն Անաստասիա, որ ծնաւ նմա երիս որդիս, զԴեմետր, զԻւան և զՖէոտոր. Մարիամ դուստր Թանաուգ իշխանին Չէրքէզաց, որ ծնաւ զմիւս Դեմետր. Մարթա և Տարիա, որք արգելան 'ի

վանս կանանց. և Մարիամ Ֆէօտա-րեան:

## ՖԷՕՏՈՐ Ա.

ԳԻՏԵԼՈՎ չար Իւանայ, որպէս ասեն, զապիկար զօրութն երեց որդւոյն իւրոյ Ֆէօտորայ՝ աւանդեաց զառեւշութն պետութեն 'ի ձեռս երից զօրավարաց իւրոց քաջաց, որք էին Իւան Շույսքի, Իւան Մսթիսլավսքի, և Նիքիթ Եուրեվ եղբայր Անաստասիայ դշխոյին. և զկրսերն զԴիմիտր յանձնեաց 'ի խնամս Բոգտանայ Բելսքի:

Ընդ մեռանել հզօր ինքնակալին՝ յաճախեցին ամբաստանութիւնք զԲելսքեայ, որպէս թէ կամիցի թագաւորեցուցանել փոխանակ Ֆէօտորայ զսան իւր զԴիմիտր, և նա ինքն Բելսքի դեղով մահասպանեալ իցէ զարքայն Իւան. և արդելաւ նա 'ի Նիժնի Նովկորոտ:

Ահեղագոյն ասոխ Ֆէօտորայ ամբարձաւ Բորիս Գոտունով եղբայր կնոջ նորին. որ առաւել քան 'ի Ֆէօտորայ՝ 'ի Դիմիտրէ խիթացեալ, հնարեցաւ նախ հեռացուցանել զնա մարբն հանդերձ յարքունեացն 'ի քաղաք կալուածոց նորին յՈւկլիչ:

Ապա ուշ եդեալ 'ի բարձումն երից իշխանացն՝ հաւանեցոյց զՖէօտոր զդու-

շանող անձին 'ի նոցանէ, իբր զի զամե-նայն ժողովուրդն յեւրոպեանց կողմն ու-ներով նոցա՝ կամին առնել յինքեանս կոր-զել զԹագաւորուԹիւն։ Եւ զիւրահա-ւանն Փէոտոր յղեաց զՄսԹիսլաւսքի 'ի Պելօզերօ, և բանադատեաց զնա մտանել 'ի կարգ միանձնուԹե. Եւ ուրեմն մեռաւ ինքնին. և յամին երրորդի նաև Ռույսքի ամբաստանեալ 'ի ծառայէն իւրմէ կաշառելոյ 'ի Կոստանդնեայ եղե մատնիչ, առանց քննուԹե դատաստա-նի աքսորեցաւ յաքսորս, և անդ գաղտ խողխողեցաւ։

Բողոք կալան զանիրաւ վճռոյն ե-պիսկոպոսք երկու, և անկան յաստի-ճանէ պատուոյն իւրեանց. և փոխա-նակ միոյ 'ի նոցանէ, որ էր մետրապօլիտ Մոսքուայի, կարգեցաւ Յոբ եպիսկո-պոս ՌոսԹովայ՝ մտերիմ Կոստանդնեայ։

Դէպ եղև զի ընդ այն աւուրս անդ գտաւ Երեմիա պատրիարգ Կոստանդ-նուպօլսի, որ անկեալ յաԹոռոյն և անդր եկեալ էր 'ի խնդիր դրամոց՝ ո-րովք մարԹասցի անդրէն 'ի ձեռս բե-րել զաԹոռն՝ զոր կալեալ էր Մետրո-փանէս։ Կոստանդին խոստացաւ նմա դրամս՝ եԹէ տացէ Յովբայ զիշխանու-Թի պատրիարգուԹեան հաւասար պա-տրիարգուԹեան Յունաց, զի մի այլ ևս հարկ լինիցի հրամանի պատրիարգին Կոստանդնուպօլսոյ հաստատել զնա եկեղեցւոյն Ռուսաց։ Եւ նա փոխա-

նակեալ զիրաւունս աթոռոյն ընդ իւրում փառաւորութե՟, կարգեաց հանդիսիւ զՅոբ 'ի պատրիարգ հաւասար իշխանութե՟ պատրիարգացն Կոստանդնուպօլսոյ, Աղեքսանդրու, Անտիոքայ, և Երուսաղէմի: Եւ յայնմհետէ պատրիարգն Ռուսաց լեալ իշխանութե՟ խնամէր զեկեղեցին իւր մինչև ցմեծն Պետրոս, որ եբարձ 'ի սպառ զպատրիարգութիւն:

Մինչդեռ նոր պատրիարգն խրատուք իւրովք որսայր զսիրտ ժողովրդեանն, Կոտունով առատաձեռնութե՟ զնոյն գործէր՝ տիրեալ արքունի գանձուն: Դիւրին էր նմա անցանել 'ի տեղի ապիկարն Ֆէոտորայ. այլ կեալն Դեմետրի եղբօր Ֆէոտորայ՝ խէթ էր սրտին իւրոյ. վասն որոյ կաշառեալ զարս անօրէնս և զիշխանն Պաթեակովայքն՝ յանձն առար նոցա կորուսանել զԴեմետր:

Գնաց Պաթեակովայքն յՈւկլիչ, և որսացաւ զդայեակն Դեմետրի 'ի դաւակցութե՟ իւր. և դայեկին առեալ 'ի գործ անզգամութեն զորդի իւր զհասակակից և զընկեր Դեմետրի 'ի զբօսանս մանկութեան, 'ի ձեռն նորա ած զարքայորդին 'ի վայր անդր՝ ուր մնային դաւաճանքն: Եւ անդէն խողխողեցին զանմեղ մանուկն զվերջին շառաւիղ տոհմին Ռուրիկեայ յամին 1591:

Այլ միանգամ 'ի վերայ հասին ան-

օրէն սպանութեն, հնչեցուցին վաղվաղակի զզանգակսն, և ամբոխն գիմեալ 'ի վերայ՝ ընդ սուր անցուցին զԳաթեակովսքի գործակցօքն հանդերձ, և Կոստունով միայն վայելեաց յարգասիս եղեռանն: Որոյ գուն գործեալ ամենևին 'ի ծածուկ ունել զնրան 'ի Ֆէոդորայ, ուր ամենայն Ռուսք գիտակ էին, այնպէս իմն համբաւեաց՝ եթէ 'ի ցնորից իմն ազմկեալ պատանւոյն, և անխնամ մնացեալ՝ անձամբ զանձն փողոտեալ իցէ. որով յանցաւորս եցոյց և զմայր նորին և զազգականսն. վասն որոյ և Ֆէոդոր աքսորեաց զՄարիամ 'ի վանս կանանց, և զեղբարս նորին յաքսորս:

Չմնայր ինչ այլ խափան ըղձիցն Կոստունովայ. զի և Ֆէոդոր հիւանդագին անձամբն զօր ամենայն 'ի դրունս մահու դեգերէր: Սակայն գիտաց Կոստունով և զայն միջոց ժամանակի վարել 'ի պէտս իւրոյ չարամտութեան, և հարկեցոյց զՖէոդոր խաղալ պատերազմաւ 'ի Լիվոնիա ընդդէմ Շվէտաց հարիւր հազար արամբք. և նորա գնացեալ էառ 'ի Շվէտաց զԻւանկորոտ և զՆարվա, և ապա յամին 1592 խաղաղութի արար ընդ նոսա:

Ի վեցամեայ ժամանակին՝ որ զհետ եկին խաղաղութեն՝ ոչ ինչ գործ արժանի յիշատակի թուի արարեալ Ռուսաց, բայց յառամանէն Սիպիրայ, զոր

'ի բազմաց հետէ վաստակ լինէին խա-ղախքն Տոնաքի անուանեալքն, այսինքն բնակեալքն առ Տոն գետով. (զի էին և Զափորոժացի խաղախք առ Տնեպրու, և այլք բազումք. որք առ հասարակ էին խառնուրդք իմն Լեհաց, Ռուսաց և Թաթարաց.) որք և յոլովումն ամաց հետէ աշխատ առնէին զՌուսս՝ հասա առնելով ճանապարհաց, և երբեք եր-բեք ասպատակելով յաշխարհն։

Այդ յամին 1577, Երմաք գլուխ Տոնաքի խաղախաց 'ի պարտութեն մատ-նեալ առաջի զօրացն Իւանայ չորրորդի, խաղաց գնաց մեց հազար ընկերակցօք 'ի կողմանս Սիբերիոյ, յորում տիրէին յայնժամ այլ և այլ խանք զանազան ազգաց Թաթարաց. և 'ի նոսա հզօ-րագոյն էր 'ի ժամանակին Քուչում խան։ Երմաք եդ 'ի մտի յարձակել 'ի բնակիչս Սիբերիոյ 'ի թշնամիս Ռուսաց, յուսով շնորհս գտանելոյ առաջի թա-գաւորին. և նախ 'ի մարզս խալըմըկս կրթեալ զզօրս իւր՝ ապա յամին 1579 անց գնաց ևս յառաջ մինչև եհաս 'ի գետն Սերեպրեանկա անհնարին տա-ժանմամբք, և կորոյս զկէս զօրացն յաշ-խատութենէն և 'ի սովէ և 'ի ցրտոյ։ Զմիւս կէս զօրացն յառաջ վարեալ մարտեաւ ընդ խանին Վոկուլից, և յաղթեաց նմա հրազինուքն՝ զոր չունէին Թա-թարք։

Զերբաքեալ արար և զմի 'ի զօրագըլ-

խացն Քուչումայ ; և դարձոյց զնա առ-
խանն ընծայիւք հանդերձ ողջունել զնա
յիւր անուն : Այլ Քուչում զարհու-
րեալ յարշաւանէն Երմաքայ՝ առա-
քեաց ընդդէմ նորա զօրս, որոց պա-
տահեալ Երմաք մերձ 'ի Թոպոլ՝ մա-
ղապուր զերծաւ 'ի յարձակմանէ նոցին
այսպիսի իմն հնարիւք : Ելից զնաւակս
իւր ցցովք պատեալովք սպառազինութե̃
Խազախաց՝ սակաւս ոմանս եդեալ 'ի
նաւս պահապանս, և ինքն աներևութա-
ցեալ պաշարեաց իւրովքն զԹաթարս 'ի
թիկանց կուսէ. և նոցա համարեալ թէ
շուրջ փակեալ իցեն 'ի Խազախաց՝ 'ի
փախուստ դարձան :

Յետ այնորիկ յաղթեաց Երմաք և
Խարաճա խանին Թոպոլայ, և էառ
զքաղաքս նորին լի ոսկւով և արծաթով
և ակամբք պատուականօք՝ զորս հասա-
քեալ էր անդր յաջորդացն Չինկիզայ.
և անդ հաստատեալ զբանակ իւր՝ հան-
դէս յաղթանակի արար քառասնօրեայ
պահօք նախ քան զվերափոխումն սր-
բոյ կուսին. զի եռանդն յոյժ էր նորա
'ի գործս բարեպաշտութե̃. վասն որոյ
և ունէր ընդ իւր երիցունս երկու, և
միանձն մի փախստական, և զօր ամե-
նայն ածղան շարժական ուղղեալ յա-
նուն սրբոյն Նիկողայոսի՝ տայր երի-
ցանցն մատուցանել զպատարագ :

Այլ Խազախքն ոչ ինչ աւելի մնա-
ցեալք քան զվեցհարիւր այր, յորդո-

րէին զԵռմաք դառնալ 'ի Ռուսիա , և առաջի առնել Թագաւորին զաշխարհակալութիւն իւրեանց . զորս հաւանեցոյց նա՝ թէ պարտ է 'ի դէպն վարել անհարեկութիւն Թաթարացն . և խաղաց 'ի վերայ Սիպիր քաղաքին Քուչումայ : Եւ ընդդէմ նորա Մէհէմմէտ ղուլ ազգականից խանին , և կատաղաբար մարտուցեալ՝ եհար 'ի Խազախաց առս հարիւր և եօթն , այլ ապա 'ի փախուստ դարձաւ , և Եռմաք տիրեաց Սիպիրայ :

Յայնժամ բազումք 'ի մերձակայ ժողովրդոց եկեալ անձնատուր եղեն Եռմաքայ . սակայն նորա ոչ վստահացեալ ընդ ձեռամբ ունել զանդ զնոսա առնուազելոյ իւրոցն , առաքեաց 'ի Մոսքուա յամին 1581 զաթամանն կամ զհեթմանն , այս է զգնդապետն Իւան Քոլցոք անուն՝ յիւրուն Խազախօք , առնել ցԹագաւորն . «Կալաք յաղթանակաւ յանուն քո զՍիպիր , և խորտակեցաք 'ի սպառ զՔուչում . Նուաճեցան և Օսթեաքքն և Վօկուլք , և եղեն հարկատուք Ռուսաց . արդ հաճեսջիր յղել այսր իշխան զօրն տեսուչ լայնատարած աշխարհիս , և թող մեզ զառաջին ստահակութիւնս մեր » : Եւ եբեր Քոլցոք իւրև երախայրիս հարկացն վաթսուն քուրձս սամուրեննեաց , քառասուն սամուրենի 'ի մի քուրձ : Իւան Դ , որ Թագաւորէրն յայնժամ , մեծաւ ուրախութեամբ ներեաց Եռմաքայ և Խազախաց ,

գրեաց առ նա թուղթ սիրոյ, և առաքեաց 'ի պարգև նմին զմուշտակ մի սամուրենի՝ զոր ինքն ագանէր, և զանաչութիւն աշխարհացն 'ի նա յանձն արար. մինչև առաքեսցէ ասէ զայլ ոք :

Իսկ Քուչում վերստին զօրաժողով լեալ ընդ Մէհհէմմէտայ՝ գնայր 'ի վերայ Խաղախաց. և Եռմաք վաթսուն Խաղախօք 'ի պատրաստութեան մնացեալ ըննոսա, ձերբակալ արար զՄէհհէմմէտաղուլ և զորդի նորա, և առաքեաց 'ի Մոսքուա. որք և հասին անդր յամին 1588, և արքայն Թէոդոր պատուիւ մեծ արար նոցա :

Հասին և առաքեալքն 'ի Ռուսաց 'ի Սիպիր Գոլքովսքի և Կլուհով հինգ հարիւր զօրականօք. այլ 'ի դառն ժամու. զի Եռմաք խորու պաշարեալ կայէր 'ի Սիպիր 'ի զօրացն Քուչումայ, և յանհնարին մեծաւ սովու մաշեալ, մինչև ուտել Խաղախաց զգեղեցկունս ընկերացն իւրեանց մեռելոց. և նորոգ ժամանեալքն յաւելին զթշուառութիւն նոցա և զիւրեանցն, և Գոլքովսքի մեռաւ :

Դարձեալ և այլ աղէտք պատահեցին Խաղախաց. զի Խարամձա սադրանօքն Քուչումայ եկն էառ յԵռմաքայ Խաղախս քառասուն, և զաթամանն Քոլցոք, որպէս թէ 'ի վանել զթշնամիսն, և բերել համբարս կերակրոց. և խոտորեցուցեալ զնոսա՝ խողխողեաց.

զամենեսեան . և այսպ ամբոխիւ զօրաց յարձակեցաւ 'ի Սիւնիս : Այլ Եռամաք հալածեաց զնոս գիշերայն , և զզօրս նորա՝ էր զոր սպան , և էր զոր 'ի գերութիւն վարեաց . և դարձեալ անձնատուր եղեն նմա Թամթարք բազումք . յորոց մի ումն իշխան մատոյց նմա պդուստր իւր , այլ նա ոչ առ , և արգել իւրոցն չխօսել անգամ ընդ աղջկանն :

Ի դառնալ իւրում անդրէն 'ի Սիւնիս՝ առ սաստկութիւն անձրևաց զկայեան 'ի կղզի ուրեք յԵրթիչ գետ . և մինչդեռ յանկարծակի զքնով անկանէր իւրովքն համբերձ , եհաս 'ի վերայ Քուչում , և սպան զրեթէ զամենայն զխաղախսն : Սակաւք ոմանք հերձեալ զամբոխ թշնամեացն՝ անկան 'ի նաւակս իւրեանց , և Եռամաք յառնուլ իւրում 'ի մի 'ի նաւակացն՝ անկաւ 'ի գետ անդր , և առ ծանրութիւն սպառազինութեցն ընկղմեցաւ : Յետ սակաւուց գըտաւ մարմին քաջի առնն յԵրթիչ , և խուժադուժն Քուչում մատնեաց զայն յայպն իւրոցն նախատանաց : Այլ նոքին իսկ Թամթարք կշտամբեալ սպա զխանն վասն անիրաւելոյն 'ի մարմին այնպիսւոյ մեհապետին՝ թաղեցին զնա հռչակաւ , և զոհս քաւութեան մատուցին նմա . և յայնմ հետէ կարդային զանուն նորա 'ի թիկունս 'ի պատերազմի և յորս էրէոց : Ցարդ ևս համարին թէ ոսկերք նորա և համբերձքն են 'ի բժշ-

կութեան ամենայն ախտաժետաց հաւատով մերձեցելոց 'ի գերեզման նորա :

Ի լուր մահուն Եռմաքայ եթող Կլուհով զՍիպիր և դարձաւ 'ի Մոսկուա հարիւր և յիսուն արամբքն ապրեցելովք, այլ Ռուսք առ սակաւ սակաւ տիրեցին դարձեալ Սիպիրայ, և շինեցին 'ի նմա քաղաքս բազումս . կալան և զորդին Քուչումայ և առաքեցին 'ի Մոսկուա . և ինքն Քուչում անկեալ առ խալմուխս՝ սպանաւ 'ի նոցանէ : Բազմացան ապա 'ի Սիպիր հատուածք Ռուսաց, և տիրեցին բովանդակ աշխարհին . և այժմ է մի 'ի մեծամեծ նահանգաց Ռուսիոյ՝ որ լատ օրէ բարգաւաճեալ յարուեստս և 'ի կենցաղօգուտ գիտութիւնս :

Եւ Ֆէոդոր յետ այնր գեղեցիկ և անաշխատ երկրակալութեան մեռաւ յամին 1598, 'ի հասակի քառասուն և մի ամաց . և զի ոչ ունէր որդիս, 'ի նմա սպառեցաւ և ազգն Ռիւրիքայ, յորմէ յիսուն և երկու թագաւորք տուան Ռուսիոյ ընդ ամս եօթն հարիւր երեսուն և վեց :

## ԳՈՐԻՍ ԿՈՏՈՒՆՈՎ

ԽՈՐԱԳԷՏ գտեալ առաւ 'ի լռութեն ըղձից փառաւորեր ոգւոյն, խորագիտագոյն ևս գոլով 'ի ծածկել յամենեցուն զփառասիրութիւն իւր. և մինչդեռ յամենայն կողմանց Ռուսիոյ գային ժողովքեան 'ի Մոսքուա այրք աւագք, իշխանաւորք, զօրավարք և կուսակալք յընտրութիւն նորոյ արքայի, կատուեալ մեկնեցաւ 'ի վանս ուրեք առ քեռն իւրում այրւոյն Ֆէոդորայ:

Գիտէր այրն խորամանկ՝ զի ոչք ամենեցուն յինքն էին, և ոչ խաբեցաւ. այլ իբրև առաջին արարին նմա զթագն, 'ի վեր քան զիւրն չափաւորութեն ասէր լինել զբեռն թագաւորութեն. և « Ո՛ր ինչ միանգամ մինչև ցարդ գործեալ իցէ իմ գործս ոչ անօգուտս պետութեն, և ոչ անհաճոյս այլ և այլ անձանց երևելեաց որ 'ի նմա, այլ այն զի՞նչ իցէ, ասէր, առ պարտուք թագաւորի »:

Նոյն բան հաստատեցաւ և յերկրորդում ժողովքի ընտրականաց, և պատգամաւորք հանդերձ բովանդակ ամբոխիւ քաղաքին դիմեալ 'ի վանսն՝ յայտ առնէին զվճիռ ժողովոյն, և 'ի ձայն

կութ̃ե ամենայն անհրաժեշտաց հաւատով մերձեցելոց 'ի գերեզման նորա ։

Ի լուր մահուն Եռմաքայ եթող Կլուհով զՍիպիր և դարձաւ 'ի Մոսքուա հարիւր և յիսուն արամբքն ապրեցելովք, այլ Ռուսք առ սակաւ սակաւ տիրեցին դարձեալ Սիպիրայ, և շինեցին 'ի նմա քաղաքս բազումս. կալան և զորդիս Քուչումայ և առաքեցին 'ի Մոսքուա. և ինքն Քուչում անկեալ առ Խալմուխս՝ սպանաւ 'ի նոցանէ ։ Բազմացան ապա 'ի Սիպիր հատուածք Ռուսաց, և տիրեցին բովանդակ աշխարհին. և այժմ է մի 'ի մեծամեծ նահանգաց Ռուսիոյ՝ որ ըստ օրէ բարգաւաճեալ յարուեստս և 'ի կենցաղօգուտ գիտութիս ։

Եւ Ֆէոդոր յետ այնր գեղեցիկ և անաշխատ երկրակալութ̃ե մեռաւ յամին 1598, 'ի հասակի քառասուն և մի ամաց. և զի ոչ ունէր որդիս, 'ի նմա սպառեցաւ և ազգն Ռիւրիքայ, յորմէ յիսուն և երկու թագաւորք տուան Ռուսիոյ ընդ ամս եօթն հարիւր երեսուն և վեց ։

## ՊՈՐԻՍ ԿՈՏՈՒՆՈՎ

ԽՈՐԱԳԷՏ գտեալ սորա 'ի լրումն ըղձից փառասէր ոգւոյն, խորագիտագոյն եւս գտաւ 'ի ծածկել յամենեցուն զփառասիրութիւն իւր. եւ մինչդեռ յամենայն կողմանց Ռուսիոյ գային ժողովքն 'ի Մոսքուա արք աւագք, իշխանաւորք, զօրավարք եւ կուսակալք յընտրութիւն նորոյ արքայի, Կոտունով մեկնեցաւ 'ի վանս ուրեք առ քեռն իւրում այրւոյն Փէոտորայ:

Գիտէր այրն խորամանկ՝ զի աչք ամենեցուն յինքն էին, եւ ոչ խաբեցաւ. այլ երբեւ առաջի արարին նմա զթագն, 'ի վեր քան զիւրն չափաւորութիւն ասէր լինել զբեռն թագաւորութեան. եւ « Ո՛ր ինչ միանգամ մինչեւ ցարդ գործեալ իցէ իմ գործս ոչ անօգուտս պետութեան, եւ ոչ անհաճոյս այլ եւ այլ անձանց երեւելեաց որ 'ի նմա, այլ այն զի՛նչ իցէ, ասէր, առ պարտուք թագաւորի »:

Նոյն բան հաստատեցաւ եւ յերկրորդում ժողովքի ընտրականաց, եւ պատգամաւորք հանդերձ բովանդակ ամբոխիւ քաղաքին դիմեալ 'ի վանսն՝ յայտ առնէին զվճիռ ժողովոյն, եւ 'ի ձայն

բարձր Թախանձ արկանէին առնել նոցա զշնորհն զայն: Եկն և պատրիարգն հանդերձ ամենայն ուխտիւ եկեղեցւոյն, և զնոյն աղէրս մատուցանէին. մինչև հուսկ ուրեմն զիջաւ նոցա. և օրն այն կարգեցաւ 'ի պահս ամ ըստ ամէ: Ապա աղաչեաց զաւագանին' զի մի' պատկեսցեն զնա ընդ ամ մի ողջոյն' մինչև հաձեսցին ընդ ընտրութեն իւր և համօրէն պաշտօնէայք և կարգք պետութեն. և ինքն նուաճեցոյց զհարկս, առատաձեռնեաց զդրամս, առաքեաց դեսպանս 'ի Լեհաստան, 'ի Շվէտս, 'ի Կոստանդնուպօլիս, 'ի Խրիմ և 'ի Պարսս, և նորոգեաց ընդ նոսա զդաշինս խաղաղութեան:

Կոչեաց 'ի Ռուսիա և արս հմուտս իրաց պատերազմի և տեղեակս ուսումնական գիտութեց, և յորդորեաց զաղատանին առաքել զորդիս իւրեանց 'ի վարժս իմաստից և 'ի կրթութի բարուց 'ի Շվէտս և' յայլ սահմանակից քաղաքս, և ոչ ինչ եթող 'ի հնարից առ յինքն յանկուցանելոյ զսիրտ ժողովրդեանն:

Ի սկզբան թագաւորութեան նորա կրկին աղէտք հասին 'ի վերայ Ռուսաց: Առաջին' սով սաստիկ անկեալ 'ի Մոսքուա, յորմէ մեռան առաւել քան զողլիս վեցհարիւր հազար: Եւ երկրորդ' խուժան աւազակաց զՄոսքուայիւ, որք աւազակապետաւն իւրեանց երկիցս և

երեցս զդէմ կալեալ ամբոխի զօրուց առձակելոց 'ի վերայ նոցա, մինչև առ սակաւ սակաւ ցրուեալ՝ կէս մի պատժեցան. և կէս մի զերծան արտաքոյ աշխարհին :

Իսկ Գորիս 'ի դարման չարեացն եղելոց ծաղկեցոյց զվաճառականութիւն ներքին և զարտաքին, թողեալ զմաքս բազմաց 'ի սահմանակից քաղաքաց : Եւ 'ի խնդրել 'ի նմանէ պապին Հռովմայ և Թագաւորին Անգղիոյ, զի թոյլ տացէ Իտալացւոց և Անգղիացւոց վաճառաշահ լինել ընդ Ռուսս, ոչ միայն զիջաւ նոցա, այլ և մեծապարգև մեծարեալ դարձոյց անդրէն զառաքեալսն : Շինեաց ապա բերդս և ամրոցս ընդդէմ արշաւանաց Նողայից և Չերքեզաց և այլոց Թաթարաց :

Ընդ ամս հինգ այնպէս երջանկաբար թագաւորեալ, յետ այնորիկ սոդբուռ առաջնոց անիրաւութեացն արկ զնա 'ի ծուփս կասկածանաց ամենայն ուստեք. յաճախեաց լրտեսս մինչև 'ի տունս անգամ՝ առ 'ի գիտել զինչ բանք իցեն զանձնէ խորհէ 'ի ժողովրդեանն : Այլ և ոչ այնու շատացեալ՝ որսացաւ գլխամոլք առս զզրպարտիչս, և սկսաւ բանիւք նոցին դատապարտ առնել զգլխաւորս քաղաքին :

Յայնժամ լցաւ Մոսկուա անիրաւ ամբաստանութեամբ . այր զընկեր զրպարտէր, ծառայ զտէր, եղբայր զեղբայր,

ամուսինք զամուսինս , և որդիք անգամ զհարս :

Ածաւ յատեան ծերունի ոմն պատկառելի ալեօքն կաշկանդեալ 'ի շղթայս : Խնդրեցաւ ամբաստանողն , և եղեկաց 'ի մէջ որդի նորին : Եկաց հայրն առ վայր մի ակնևոր 'ի լռութեան . և ապա շարժեալ զշղթայսն՝ ամբարձ զաչս իւր յերկինս և ասէ ցորդին . «Տո՛ւր պատասխանի որդեակ իմ առ այս բարբառ՝ թէ կարող իցես» : Քամահեցան դատաւորքն ընդ ասելն . և Պորիս ինքնին զամօթի հարեալ՝ արգել զհողկալին զայն դատաստան :

Քան զամենայն աւագորեարն ահագին էր յաչս Պորիսայ թագաւորազն տոհմ Ռոմանովեանց . վասն որոյ ամբաստանեցան՝ թէ կամին նոքա դեղ մահու արբուցանել թագաւորին : Մի ոմն յազգականացն Պորիսայ կաշառեաց զծառայս Աղէքսանդրի Ռոմանովի , և ետ դնել յարկեղս նորա արմատս թունաւորս : Այսպէս նոքին իսկ ծառայք դատախազք և վկայք՝ ամբաստանեցին զտէրն իւրեանց . և առանց իսկ քննութեան յաքսորս առաքեալ սպանաւ Աղէքսանդր , և եղբայր նորա Ֆէոտոր Նիքիթիչ բռնադատեցաւ մտանել 'ի վանս ուրեք յԱրքանկէլ , և կոչեցաւ Փիլարետ . և կին նորա Արսենիա մուծաւ 'ի վանս կանանց հանդերձ վեցամեայ մանկամբն՝ որ կոչէր Միքայէլ :

Աստի է 'ի մէջ առնուլ և զանցս այլոց մեծամեծաց. և միանգամայն զկուրութին Թագաւորին՝ որ եղեալ 'ի մօտ անքոյթ լինել յաթոռ իւրում, ինքնին յաւելոյր զթշնամիս իւր՝ ատելի լեալ ամենեցուն առ հասարակ:

Կրօնաւոր ոմն 'ի Կալիչայ Օթրեփիէվ անուն պատանի ատենադպիր էր պատրիարքին Յովբայ: Սա գիտելով ճշգրտիւ զանցս մահուն Դեմետրի մանկանն որդւոյ Իւանայ չորրորդի, որում և նըմանն իմն թուէր կերպարանօքն, գիտէր ևս եթէ խաժամուժն անգէտ էին անցիցն, և սակայն ատէին յոյժ զԳորիս, և պատրաստ էին վտարանջել 'ի նմանէ՝ թէ գտանէր ոմն 'ի միջի այր յազգէն Ռուրիքայ: Եդ 'ի մտի կարծեցուցանել զանձն իւր թէ Դեմետրն այն իցէ. այլ նախ հոգացաւ կեղծել զպատմութին ինչ սուտանուն Դեմետրի սպանելոյ յՈւկլիչ, և պատմել այսր անդր զբօսանաց ազդագաւ: Բայց քանզի երբէք երբէք սպրդէցին 'ի բերանոյ նորա և բանք ինչ, որովք ցուցանէր թէ թագաւորելոց է նա երբեմն, կասկած կալաւ զնմանէ արքեպիսկոպոսն Ռոստովայ, և ազդ արար Գորիսայ. և նա հրամայեաց առաքել զկրօնաւորն 'ի. վանս ուրեք 'ի հեռաստան, պատուիրեալ առաջնորդի տեղւոյն՝ զգուշանալ նմա:

Օթրեփիէվ փախեաւ անտի 'ի Քիեվ որ էր յայնժամ ընդ իշխանութե Լե-

հայց, և եղև տասն երեց իշխանի ումեմն լեհացւոյ։ Անդ ևս ոչ ըստ արժանի խարոյ կարգին գնացեալ գնացս, և կշտամբեալ յիշխանէն, եթող զմիաբանութիւն, և անցեալ 'ի Լեհաստան՝ եմուտ 'ի ծառայութիւն Վիշնեւեցքի իշխանին. այլ ոչ եթող զխորհուրդ Թագաւորելոյն. և 'ի գլխ ևս գործեաց զաւաղակեալ խարոյ ծագմանն. ասէ. «Որ արքայնեկեն 'ի տան Վիշնեւեցքեայ գերեակն Կրեչքա (զի Գրիգոր էր անուն նորա), Դեմետր է նա որդի մեծի Թագաւորին Իւանայ։ Որդի երիցու ուրումն էր սպանեալն յՈւկլէչ հրամանաւ բռնաւորին Կոտունովայ, և ոչ Դեմետրս ես, որպէս կարծի։ Իշխանն այն խորհրդական՝ որ խնամովքն նոյ ապրեցոյց զկեանս իմ, յերկար 'ի Թաքստեան կալաւ զիս. և ապա առ ահի բռնաւորին անցոյց զիս այսր 'ի Լեհս. և ես յարհամարհ վիճակիս իմում յուսամ թէ հայեսցի երբեք Աճ 'ի տառապանս իմ, և տացէ ինձ ըզվայելս իրաւանց իմոց։ Իսկ եթէ ըստ դաղտնածածուկ խորհրդոցն Այ վիճակեսցի ինձ այսպէս մեռանել, այն շատ է ինձ՝ զի սովին զերկուցմամբ ծանիցի թէ ո՛ և ոպիսի ոք անցեալ կայ յաթոռն Թագաւորաց»։ Եւ եդեալ ըզթուղթն ընդ անարիւք՝ ընկողմնեցաւ 'ի մահիճս. և պատճառեալ զխօթութիւն՝ կոչեաց զերեց մի զի խոստովանեսցի նմա զմեղս իւր. որում և պատմեաց

զՆենհս ընդունել 'ի Ռուսիա. այլ 'ի զուր. զի Ռուսք որ ըստ օրէ գային ժողովէին առ աւստանութիւնն Դեմետր. և տուանել ևս հաստատեցան թէ Ճշմարիտ էցեն էրքն՝ յորժամ տեսին խաչ մի առ նմա ընդ ձորձովն, զոր ասէր առեալ յիւանայ Մսթիսլաւսքի, որ մի էր յերից զօրավարացն կարգելոց յիւանայ չորրորդէ։

Այսպ առ և ևս ամրապնդելոյ զանէրութի իւր, պատճառանօք նպաստ լինելոյ ուղղափառ հաւատոյ՝ ապաւինեցաւ առ Ցիսուսեանսն հզօրս յայնժամ յարքունիս Եւրոպայ. նոքա միջնորդ եղեն առ Կղեմէս Ը, քահանայապետ Հռովմայ, և նա առաքեաց առ Դեմետր դրամս, և զարքայն Լեհաց յորդորեաց խնամ ունել իրացն Դեմետրի։

Հրապարակեցաւ և հրովարտակ մի թշնամանօք ընդդէմ Պորիսայ, յորում խոստանայր Դեմետր Ռուսաց՝ որք կամիցին զիւր կողմն ունել՝ թողութիւն և վարձս առատութեան. և այնուհետև աղաւաղք և ռամիկք առ հասարակ դէպ ժամու միայն անցանել առ Դեմետր։ Եւ եհաս ժամն։

Զի կուսակալն Սենդոմիրայ և Վիշնեվեցքի և Դեմետր եկին մտին 'ի Ռուսիա զօրօք և վեց հազար խաղախօք, և առին զՉէրնիկով, և այլ ևս եօթն քաղաքս։ Խաղաց ընդդէմ նոցա Պորիս ամենայն զօրութեամբ իւրով, և զառաջինն

'ի պատրաստութե մատնեալ առաջի Դմետրի, յերկրորդումն խորտակեաց զզօրս նորին: Այլ Դմետր գործեալ խրդախեաց մնացելովքն հինգ հազարօք. և թէպէտ բազում յոյժ էին զօրք Ռուսաց, բայց անդէն 'ի սկզբան մարտին մեծաւ մասամբ անցին 'ի կողմն Դմետրի, և մնացեալքն վանեցան առաջի յաղթականին:

Զարհուրեալ Պօրիսայ յերեսաց Դմետրի՝ գուն գործէր հնարէր զերուրև ածել զխաղաղան. խոստանայր նոցա թողութիւն և վարձս, տայր պատրիարգին բանադրել զապստամբսն, այլ 'ի զուր և յանօգուտ: Իւ մինչդեռ առ թագաւորս Դանեաց և Շվէտաց բանագնաց լինէր, խիթք 'ի փոր անկան նմա և մեռաւ յամին 1605, թագաւորեալ ամս եօթն:

Զսկիզբն և զկատարած թագաւորութեն ծայրագոյն անգթութիւք լցեալ տրա, թերևս ոչ ինչ տարադէպ կարծեցաւ յոմանց՝ թէ որ բազմաց 'ի պիտանի արանց գահիժ լեալ էր Պօրիս, և անձին զնոյն սպաս հարեալ լցէ դեղով մահու:

Այլ այն որպէս և իցէ, Պօրիս թէ ոչ արդարանայ անագորոյն ցնայիւքն, գէթ կարեկիցս գտանէ թշուառ մահուն՝ սակս փութաջան խնամոցն զոր կալաւ 'ի կեանս իւր 'ի պայծառութե Ռուսիոյ: Նմին իրի և մեծն Պետրոս 'ի նորոգել

իւրում յետ ժամանակաց զաշտարակն Մուսքուայի, երբև եգիտ անդ արձանագիր եդեալ'ի պատիւ Գորիսայ, և առաս ծեփեալ բանիւ, հրամայեաց բառնալ զայն և պարզել:

## ՓԷՈՏՈՐ Բ. ԳՈՐԻՍՈՎԻՉ

Ի ԼՈՒՐ մահուն Գորիսայ ընթացեալ ամենայն ժողովուրդն յարքունիսն՝ աղաղակեցին. կեցցէ արքայ Փէոտոր որդի Գորիսայ, և մայր նորա խնամակալեա: Զի 'ի սորա կողմն էին պատրիարգն և մեծամեծք Մուսքուայի. այլ ազատանին արտաքին գաւառաց և զինուորականքն ամենայն կուսակիցք էին Դեմետրի, որ գամ քան զգամ գայր մերձենայր 'ի Մուսքուա. և յանուանէ անձնատուր եղեն նմա Գասմանով քաղաքապետ հիւսիսային Նովկորոտայ, և երկու իշխանքն Կոլիցին:

Իսկ ինքն Դեմետր առաքեաց լրտեսս 'ի Մուսքուա. որք երբև 'ի յայտ եկին անդանօր, ամբոխն յարեցաւ 'ի նոսա, և հնչեաց անունն Դեմետրի ընդ քաղաքն ամենայն: Ընդվայր ձգնեցան և խնամակալ դշխոյն և պատրիարգն Յովբ 'ի սանձել զամբոխն. նոքա դիմեցին 'ի Քրեմլին, և առ հասարակ սպանին զաւագս և զսոսկականս զբարեկամս Թա_

գաւորին · ձերբակալ արարին և զՖէոդոր հանդերձ մարբն և քերբն, և զեսպանս առաքեալ առ Դեմետր շառաւիղ Ռուրիկեայ՝ որպէս կարծէին, հրաւիրեցին զնա ունել զաթոռ նախնեաց իւրոց :

Հրամայեաց Դեմետր Կոլիցինեանց և Մոսալսքեայ և Գասմանովայ 'ի մահ տալ նախ զՖէոդոր և զմայր նորին · և զպատրիարգն մերկացուցեալ 'ի շքոյն՝ արգելուլ 'ի վանս ուրեք միանձանց հեռի 'ի Մոսքուայէ · ապա և տոհմն Բորիսայ ջնջեցաւ : Այլ ամբոխն զաշացու և ոչ զայն շատ գրեալ, պեղեաց և զդիակունս տոհմի նորին 'ի գերեզմանաց իւրեանց, և թշնամանեաց զնոսա :

## ԴԻՄԻՏՐ Ի. ԻՒԱՆՈՎԻՉ ՍՈՒՏԱՆՈՒՆ

ՄԻՆՉԴԵՌ Դեմետր զայր հուպ մերձենայր 'ի Մոսքուա՝ եկին ընդ առաջ նորա եկեղեցականք և ժողովրդականք և ընկալան 'ի ներքս 'ի ձայն ցնծութեան՝ կարդալով զնա Արուսեակ առաւօտու ծագեալ 'ի Ռուսիա : Այլ Դեմետր զի հաստատեսցի և ևս յաթոռն՝ կամեցաւ առնուլ զթագ արքայիցն Ռուսիոյ · վասն որոյ ետ զպատրիարգութիւն Ռու-

սաց արքեպիսկոպոսին Բեաղանայ, և պսակեցաւ 'ի նմանէ ։

Մի միայն խոչ խափանարար երացն Դեմեարի մնայր այրին Իւանայ չորրորդի Մարիամ՝ արգելական 'ի վանս ուրեք 'ի Պելօօզերօ ։ Թողուլ զնա անդէն չէր 'ի դէպ, և ածել 'ի Մոսքուա կարի խիթալի. այլ խորոխան Դեմեար համարձակեցաւ առաքեաց պատգամաւորս առ դշխոյն և կոչէր զնա իբրև զիւր մայր 'ի վայելս արքունի շքոյ ։ Եւ 'ի գալ նորին՝ ել նմա ընդ առաջ Դեմեար, էջ յերիվարէն, և անկեալ առ ոտն՝ ոչ ինչ եթող 'ի գործականս բանից որդւոյ զոր չէարկ առաջի նորա. փարեցաւ ապա 'ի գիրկս սուտ մօրն, և անէծս ցասագինս կարդայր Գոդունովայ. երդմնահար լինէր և խոստանայր մօրն, եւ ջնջեցից, ասէր, 'ի մտաց քոց զպիղճատակ աղետիցն զորս կրեցեր անդստին 'ի մահուանէ հօրն իմոյ Իւանայ ։ Ծանեաւ և Մարիամ զԴեմեար իւր յորդի, և եցոյց նմա բերկրութիւն յոյժ. և ապաչէր ելանել բաղմել ընդ իւր 'ի կառսն՝ որով ինքն եկեալ էր. այլ Դեմեար հետի և բացաւ գլխով գնայր 'ի կողմանէ՝ մինչև ած զնա 'ի վանս վերափոխման, ուր 'ի բազում ամաց հետէ սովորութիւն էր բնականալ այրեաց թագաւորացն ։

Այնչափ գժուարահաւատալի աստանօր թուեցաւ ոմանց այսպիսի աներկեան վստահութիւն 'ի Դեմեար, և այս-

գուժակ աներկմիտ հաւանութեն յայրին Խանայ, մինչև տարակոյս 'ի մէջ արկանել՝ թէ գուցէ արդարև վրիպակ ինչ լեալ իցէ 'ի մահուն Դեմետրի։ Որք նոյնպէս զարմանան և ընդ թողուլն Դեմետրի ողջ զիշխանն Շույսքի զգլխաւորն 'ի կուսակիցս Բորիսայ։ Այլ մեք 'ի պատմութեն անդր ուշ կալցուք։

Ծանր էր աւագանւոյն Ռուսաց տեսանել առ նորոյ արքային Թիկնապահս լեհացիս և օտարազգիս. վասն որոյ սկսան ատել զնա՝ զի արձակեսցէ զնոսա 'ի տեղիս իւրաքանչիւր. զի Թագաւորի արդարոյ սէր ժողովրդեանն պարիսպ է ասէին՝ քան զամենայն պահապանս ամրոցին։ Խաբեցաւ Դեմետր, և արար ըստ նոցա բանիցն. և անդէն 'ի վեր երևեցաւ խումբ դաւադրաց, և իշխանն Շույսքի հազիւ ճողոպրեցաւ 'ի ներքուստ ձեռին գահճի՝ շնորհելոյն Դեմետրի. իսկ այլք 'ի մահ վարեցան։

Այնուհետև յապահովացեալ Դեմետրի՝ առաքեաց խնդրեաց զխօսեցեալն իւր զդուստր կուսակալին Սենտոմիրայ, և եղեն հարսանիքն մեծաշուք հանդերձանօք 'ի Կրակով և 'ի Մոսքուա։

Այլ Ռուսք 'ի բնէ ատեցողք Լեհաց՝ կարի իմն գժգմեցան, զի օրիորդ լեհացի ածաւ իւրեանց 'ի գլխոյ։ Թող զայն, 'ի մեծ ևս զայրոյթ բորբոքեցան 'ի լսել՝ թէ Յիսուսեանք ունին հաստատել դըպրոցս 'ի Մոսքուա, և ուսուցանել ըզ-

դաւանութեն հռովմէական հաւատոյ, նորոգեցաւ յամբոխին և յիշատակ Գրիգ-քայի միանձին Օթրեմիքեվայ, և կակած զԴեմետր է. և վասն այսր ամենայնի հաստատեցին բառնալ զկեանս Թագաւորին. և այն առաւել 'ի Թելադրութե Վասլի Շույսքեայ առաջնորդի դաւոյն, որ ցայնժամ երկոտասան հազար ոգիս զիւրև ածեալ 'ի մերձակայս Մոսքուայի շուրջ գայր:

Իբրև զգաց Դեմետր զդաւն՝ պատուիրեաց Սթրելցացն 'ի պատրաստասի կալ. և ինքն հրատարակեաց յամբոխին թէ 'ի 15 աւուր մայիսի հանդէս զինուորական հանդերձեալ է առնել 'ի մեծի հրապարակին. և էր հանդէսն փորձ պաշարման և առման փայտաշէն ամրոցի միոյ: Այլ 'ի ծածուկ հրամայեաց կարգել շուրջանակի զամբոցաւն և Թնդանօթս, որպէս զի յարձակեալ Սթրելցացն և Լեհաց 'ի կոտորել զդաւադիրսն եկեալս 'ի տեսիլ հանդիսին, ունիցին և զերդն 'ի տեղի պատուհասի: Սակայն 'ի կորուստ նմին դարձաւ խորհուրդ իւր:

Զի Շույսքի 'ի վերայ հասեալ հնարիցն՝ պատուէր ետ զաղտ իւրոցն դաւակցաց՝ 'ի նախընթաց գիշերի հանդիսին գալ ժողովել 'ի Մոսքուա: Մինչդեռ ամենեքին խոր 'ի քուն ննջէին, հնչեցուցին տոքս զանգակացն, և ամբոխն յամենայն կողմանց 'ի մի վայր

խուժեալ արարքին աղմուկ խռովութե̃ մեծի: Կալան դաւադիրքն զամենայն երեւելի տեղիս քաղաքին, և Շույսքի առեալ 'ի ձեռս զխաչն և զսուր՝ ընթա-նայր ընդ ամենայն հրապարակն, աղա-ղակէր և ասէր. « Լեհք նզովեալ են զանձինս 'ի կորուստ Ռուսաց, և ահա վազ ընդ փոյթ ելանեն՝ ընդ սուր ան-ցուցանել զնոսա »: Ընդ որ 'ի խռով մեծ հարեալ քաղաքացւոցն, առ հա-սարակ 'ի զէն ընթացան ծերք և ման-կունք, արք և կանայք. յարձակեցան 'ի տունս Լեհաց և կոտորեցին զնոսա, և դիմեցին 'ի վերայ պահանորդաց ար-քունեացն:

Յաղմկէ անտի ահագին շփոթից հար-թուցեալ արքային 'ի քնոյ՝ արձակեաց զզօրագլուխն 'ի գիտել թէ զինչ իրք իցեն: Սակայն մինչչև դարձեալ նորա՝ եհաս ամբոխ 'ի Կրեմլին Շույսքի, և մուտ բռնութե̃ 'ի դաւիթն արքունի հանդերձ իւրովքն խորխասադոյն ընկե-րօք, և գոչէր առ Դեմետր իջանել տալ զհամար կենաց և վարուց իւրոց առ ժողովուրդն: Այն ինչ Պասմանով կա-մէր զդէմ ունել նոցա, Թաթիշչեւ ընկերակից Շույսքեայ եհար կործա-նեաց զնա, և ապա զպահապանսն:

Դեմետր 'ի ներքս անդ յարքունիսն խուճապեալ շտապ տագնապաւ խըն-դրէր ելս փախստի, և չգտեալ՝ հան-ցաւ ընդ պատուհան սենեկին իւրոյ 'ի

վայր, որով խորտակեցաւ մի 'ի բարձից, և գլուխն վիրաւորեցաւ չարաչար. և մինչդեռ հոսէր արիւնն գունդագունդ ընդ ունգունսն և ընդ ականջսն, հասին անդր ոմանք յիւրոցն 'ի ձայն աղաղակին, և բարձեալ տարան զնա յօթեւանս Ստրելցաց: Սոքա զառաջինն երդուան մինչև ցմահ մարտ դնել վասն նորա. այլ 'ի խուժել անդր դաւադրացն և 'ի սպառնալ հուր հարկանել 'ի տունս անդր, տեղի ետուն նոցա Ստրելեցիքն:

Յայնժամ յարձակեցան ժողովուրդքն 'ի վերայ Օթրեպիէվայ անհնարին թըշնամանօք: Աղաղակեաց նա բնիկ համարձակութեամբ. «Ա՞յդպէս անհնար լինիք ինձ, ասէ, գիտելով չափ թէ որդի եմ ես հարազատ Իւանեայ, և ձեր Թագաւոր օրինաւոր պսակեալ առաջի ամենայն Ռուսաց: Եթէ ինձ ոչ հաւատայք, աղէ ծն թող ասասցէ ձեզ մայր իմ զճշմարիտն»: Ի խեղախ բանից անտի քաջալերեցան Ստրելեցիքն, և 'ի բաց վանեցին զխուժանն:

Արձակեցան ապա այլք ոմանք, որոց գլուխ էր Շույսքի, առ դշխոյն Իւանայ, և աղաչէր զնա Շույսքի յանուն համօրէն ազգին ասել թէ արդարև որդի՞ նորա իցէ թագաւորն, եթէ նենգաւոր ոք չարամիտ, որ բռնացեալ և պըղծեալ է զաթոռ մեծին Իւանայ: Եւ զայս պատասխանի ետ, ասեն, դշխոյն.

«Չէ իմ որդի թագաւորդ այդ, և ես առ ահի ևեթ Դեմետր զնա վարկայ. զի դուք այնպէս ընկալարուք. և դու Շույսքի, դու առաջին էիր որ ապառնալիս մահու 'ի վերայ կապէիր որոց իբրև 'ի դաւաճան ակնարկեցեն 'ի դա: Դուք ձեռն տուեալ 'ի Կրիշքա՝ վրէժխնդիր յառնէիք ընդդէմ Կոտունովայ. և ես համարելով զնա իմ որդի, պահէի ըզկեանս իմ, և զվրէժ խնդրէի զճշմարտին Դեմետրի: Այսպէս ես և նա երկաքանչիւր 'ի նոյն ձգեցաք վախճան»:

Թէ զայս արդարև պատասխանի տուեալ իցէ դշխոյն, կամ թէ այլ ինչ, սակայն Շույսքի իբրև պատմեաց զայս ամբոխին, Ստրելեցքն մատնեցին զարքայն 'ի մոլեգնութի նոցա. և նոքա առժամայն պատառեցին զեղկելին, և զդիականն կապեցին ընդ դիոյն Պասմանովայ, ընդ քարշ ածին զնոսա ընդ քաղաքն ամենայն, և աւուրս երկուս 'ի բացի թողեալ՝ ապա այրեցին:

Մինչդեռ ամբոխն յայսոսիկ էր, դաւադիրքն յարձակեալ կոտորէին զամենայն զԼեհս, և կողոպտէին զնոսա. այլ աւագանին զդէմ կալաւ նոցա զօրօք: Եւ եղեն սպանեալքն յաւուր յայնմիկ Լեհացիք հազար և երկերիւր, և Ռուսք չորեքհարիւր:

## ՎԱՍԻԼ Ե. ԻՒԱՆՈՎԻՉ
## ՇՈՒՅՍՔԻ

ՇՈՒՅՍՔԻ տեսեալ զանձն իւր մերձ 'ի լքումն իւրոյ փառաւորութեան, որում 'ի բազում ժամանակաց զհետ անկեալ էր, ժողովեաց զաւագանին, և ասէ ցնոսա. «Ահա զերծաք մեք 'ի բռնութէ. զգոյշ լիցուք մի ևս անձամբ զանձինս արկանել ընդ նովաւ։ Ընտրեսցուք արդ զայր մի հասեալ յարս, յազնուական տոհմէ, հմուտ օգտի պետութեանն, ճոխ գործովք արութեան և խոհականութեան, անդապահ օրինաց և սովորութեանց նախնեաց, և որ տայցէ Ռուսաց 'ի մտաւցոնս արկանել զաղէտս՝ որք հասին 'ի վերայ 'ի վերջնոցս թագաւորաց»։

Խորհուրդ տուին, վիճակս արկանէին, և մնայր ընտրութիւն ընդ նա և ընդ Կոլիցին. և իբրև եղին երկոքեան նոքա առ ատեան, իշխանն Վոռոթինսքի յետ առաջին առնելոյ զկարևոր պայմանս ընտրութեան նորոյ թագաւորին՝ դրդուեաց զԿոլիցին, այլ կարի հզօր է ասէ տոհմ նորա, որ խիթալի ինձ թուի. և եցոյց զանձն իւր հաւանի ընդ Շույսքի։ Յարեաւ այլ ոմն կուսակից Կոլիցինայ, և ասէ. «Ժողովս եկից զիւր պարտս՝ ընտրեալ զերկաքին իշխանանս զուգապես

արժանաւորս. արդ ՚ի դէպ Թուի ՚ի ժողովուրդ անդր ապաստան առնել զընտրութիւն միոյ ՚ի նոցանէ »: Եւ հաճոյ եղև խորհուրդն:

Այլ կուսակիցքն Շույսքեայ վաղ որսացեալ զժողովուրդն, համբաւեալ ևս էին՝ թէ Շույսքի ընտրեցաւ ՚ի Թագաւոր. և ընդ բանալ դրանց ժողովարանին, մի ոմն ՚ի կուսակցացն Շույսքեայ խառնեալ ընդ ամբոխին գոչեաց, կեցցէ արքայ Վասիլ Շույսքի. և ամբոխն զնոյն բարբառ անդրէն կրկնեաց: Յայնժամ մնային աւագորեարն և հաստատեցին զՇույսքի, և ապա տարեալ զնա ՚ի մայր եկեղեցին՝ երդմնեցուցին ըստ պայմանացն առաջարկելոց ՚ի Վոռոթինսքեայ, և Թագ եդեալ նմա՚ի ձեռն պատրիարգին, ածին յարքունիս, յամին 1606:

Յառաջ քան զամենայն խնամ կալաւ Շույսքի խաղաղութիւն առնել ընդ Լեհս, և առաքեաց առ Թագաւոր նոցա հրեշտակութեամբ զիշխանն Վոլքոնսքի՝ ազդ առնել զերրացն պատահելոց ՚ի Մոսքուա. այլ անպատասխանի արձակեցաւ յետս պատգամաւորն:

Մի ՚ի պայմանաց Թագաւորելոյն Շույսքեայ էր անյիշաչար լինել առանձինն մարդկան ձեռնտու եղելոց ՚ի Դեմետր. այլ նա ոչ եկաց յերդմանն, և մերկացոյց զպատուիրարդն յիշխանութենէն՝ զոր տուեալ էր նմա առատանութենն Դեմետր, և կացոյց փոխանակ նորա զՄե-

տրտապօղեան խաղանայ ։ Աքսորեաց և զկուսակիցս Կոլեցինայ . որք և բորբոքեցին զհուր ապստամբութեան 'ի զանազան գաւառս, մանաւանդ յՌեզանիա, ուր համբաւէր՝ իբրու թէ Դմիտր զերծեալ իցէ, և փոխանակ նորա զայլ ոք զդերմանացի սպանեալ իցէ Ռուսաց. զնոյն արարին և 'ի քաղաքսն 'ի Փութիվլա, 'ի Ռեազան, 'ի Թուլա, և յԱժտէրխան ։

Ի դարման չարեացն հրամայեաց Շույսքի հանել 'ի գերեզմանէ զմարմին ճշմարտին Դմիտրի, և տանել կատարել 'ի պատիւ նորին իբրև սրբոյ վկայի. սակայն ոչ եթէ զԴմիտր խնդրէին ապստամբքն, այլ զայլ ոք թագաւոր փոխանակ Շույսքեայ ։ Գունդ կազմեաց Բոլոթնիքով ոմն 'ի Սեվերեցւոց, 'ի Խաղախաց և 'ի գերեաց փախստականաց, որք յետ անբաւ յափշտակութեանց և սպանութեանց՝ զոր գործեցին, խնդրէին կոտորել և զաւագանին ամենայն, մինչև ազատարեալ Սմոլենսքայ զօրք բազմօք յարուցեալ 'ի վերայ ցրուեաց զխուժան ապստամբացն ։

Ի նմին ժամանակի և Տոնայքի Խազախք համբաւեցին՝ թէ սա նաա իցէ որդին Փէտորայ Իւանեան զերծեալ 'ի կոտորածէն Կոտունովայ . և առեալ յանուն նորա զպատանի մի՝ որում անուն էր Իլիա Վասիլեվիչ՝ ծառայ փախստական 'ի տեառնէ իւրմէ, մոլին 'ի

Ռուսիա , և որ բնաւ օրէ բաղձացան ։ Եւ իշխանն Թեքլեալժեւսքի , որ համագերձ այլովք միաբանեալ էր ընդ Խազախան , խորտակեաց զզօրսն Շույսքեայ արձակեալս 'ի վերայ իւր , և էառ զՔալու-կա . այլ 'ի պաշարել զօրացն Շույսքեայ զԹուլա և 'ի խցանել զաղբիւր ջրոյ քաղաքին արտաքուստ , քաղաքացիքն անձնատուր եղեն , և ետուն 'ի ձեռս արքային զպատանին և զգլխաւորս ապստամբութեան ։

Ցետ այնորիկ յամին 1608 յարեան 'ի Սթարոտուպ երկուք ոմանք արք յանդգունք , Նակի և Ռուզքին . յորոց առաջինն ասէր՝ թէ Դեմետրն իցէ ինքն ապրեալ առանձին խնամովքն Աստուծոյ . և խաղացին սոքա 'ի քաղաքէն իւրեանց ամբոխիւն , և զամ քան զզամ բազմացեալ՝ առին զՊրիանց քաղաքս , և ապա զՔոզելսք 'ի ձեռաց Մոսալսքեայ իշխանին ։

Իսկ Շույսքի քանզի գիտէր եթէ Լեհք են չարեացապարտք աղէտիցն , յարեաւ ամենայն զօրութեամբ իւրով 'ի վերայ դաւաճանացն , և հալածեաց զնոսա 'ի Նովկորոտ հիւսիսոյ . անդր եկին յօգնութիւն երկրորդի սուտանուն Դեմետրի լեհացի ամն Ռուսիայի անուն զօրօք իւրովք , և ոչ առկաւ դունդք 'ի Լիթուանեաց , 'ի Ցոնաքի Խազախաց և յայլոց սիկարեանց ։ Զօրաժողով եղև Քուռասքին զօրավար Շույսքեայ և խա-

ղաց 'ի Գրիանց. զառաջինն յաղթեալ խուժադուժացն՝ յերկրորդումն 'ի պարտութեն մատնեցաւ. և տապաստամբքն յառաջ խաղացեալ եկին մերձեցան 'ի Մոսքուա. մինչև երկնչել ոմանց յաւագ որերոյն և չերթալ ընդդէմ: Շույսքի 'ի մահ եառ զայնպիսիսն, և ածնցոյց զչարն: Ապա կարգեաց սպարապետ զօրաց զՄիքայէլ Շույսքի, և զԻւան Ռոմանով, որք յաղթեցին և յաղթեցան երկիցս և երիցս:

Խորհուրդ կալան ապա պատրիարգն և աւագանին՝ թողուլ յազատութիւն զԼեհս ամենայն, և զկին առաջնոյն սուտանուն Դեմետրի զՄարինէ, զի թերևս հաւանեսցի արքայն Լեհաց յետս կոչել զզօրսն իւր: Եւ Շույսքի արար այնպէս:

Այլ մինչդեռ իշխանն Տոլկորուքի ածէր տանէր զամբոխն 'ի սահմանս կոյս Լեհաց, Նակի առաքեաց 'ի վերայ նորա Խազախս երկու հազար, որք և յափշտակեալ 'ի ձեռաց նորա զկինն Օթրեպիեվայ և զհայր նորին, արձակեցին զպատգամաւորսն:

Ընդ անողանազան պատահումն Նակեայ և Մարինեայ կնոջն Դեմետրի ընդ միմեանս՝ խռովեցան զօրքն, և փոքր միւս եւս և կորուսանէին զնա. այլ կուսակիցք Նակեայ յորդորեցին զՄարիանէ և զհայր նորա՝ գէթ առ երեսս կեղծել՝ որպէս թէ արդարև գիտեն զնա

Դեմետրն լինել: Եւ նոքա կուրացեալք 'ի սէր փառաց և պատուոյ՝ յանձն առին զանօրէն խորհուրդն, և Մարինէ ընթացեալ 'ի խորանն Նալեայ՝ փարեցաւ խնդալից զպարանոցաւն առաջի բովանդակ զօրուն: Յայնմհետէ առաւել ևս բազմացան զօրք Նալեայ, և Լեհք առաքեցին առ նա զայլ ումն զօրավար քաջ՝ Սափիէհա անուն, որ կոտորած մեծ հասոյց 'ի զօրս Թագաւորին Ռուսաց, մինչև չմնալոյ ընդ ձեռամբ նորա. այլ ևս քաղաքաց. բայց Նովկորոտ, Սմոլենսք, Րեազան, Գոլոմնա և քաղաքքն Սիպիրայ:

Շույսքի 'ի տագնապ ժամուն առաքեաց խնդրեաց զօրս 'ի Նովկորոտայ, և Թիկունս օգնականութեան յարքայէն Շվետաց: Նա առաքեաց նմա արս հինգ հազար, և այլս ևս խոստացաւ առաքել՝ եթէ Շույսքի գրամովք նպաստ լինիցի նմա. և միաբանեցան երկոքին յառնել ընդդէմ արքային Լեհաց: Այն ինչ Թշնամիք եկեալ պաշարէին զՄոսքուա, հասին անդր Կառաւի սպարապետ Շվետաց և Միքայէլ Շույսքի, և հզօրացաւ կողմն Թագաւորին:

Յայնժամ աւթամանն Խաղախաց Եւքովպքի խորհուրդ ետ զօրավարացն Նալեայ՝ Թողուլ զպաշարումն Մոսքուայի, և քան վտանգաւ անձանց յընդ վայր ձգունս մնել վասն միոյ առն՝ որոյ անստոյգ յայտ է օրինաւոր ժառանգն լի-

նել աթոռոյն Ռուսիոյ, տալ զնա 'ի ձեռս արքային Լեհաց, որ յայնժամ պաշարէր զՍմոլենսկ. և մեզ օգուտ աւելի քան վնաս ծնցի, ասէր, զի Սիգիսմունդ զորդի իւր զՎլատիսլաւ կացուսցէ 'ի թագաւոր Ռուսաց: Հաւանեցան զօրավարքն, և 'ի նա ապաստան արարին ունել զՆակի և տալ 'ի ձեռս Սիգիսմունդայ, և խնդրել զորդի նորին զՎլատիսլաւ: Այլ աւուրբ յառաջ իմացաւ Նակի զդաւն, և փախեաւ. և 'ի շփոթել բանակին՝ ելին պաշարեալքն, և ցիր և ցան արարին զնոսա:

Մեքայէլ Շույսքի՝ մականուանեալն Սքոփին՝ նա էր որ զայս ևս քաջութիւնս արար 'ի վերայ այլոց բազմաց. և ժողովուրդն կարգային զնա հայր հայրենեաց, և ազատարար թագաւորին: Զկծեցաւ նախանձու թագաւորն, և պաշտօնեայք նորին եդին 'ի մտի կորուսանել զՍքոփին և շնորհս գտանել առ արքայի: Վասն որոյ յարմարեցին յօդեցին թուղթ մի յանուն Լեափունովայ քաղաքապետին Րեազանայ, ուր էր յայնժամ շշունջ ապստամբութե, իբրու թէ յորդորէր Լեափունով զՍքոփին յափշտակել զաթոռն՝ որպէս մի միայն արժանաւոր, և թշնամանէր զՇույսքի: Առեալ Շույսքեայ զթուղթն՝ պաշարեցաւ 'ի տագնապ անհնարին, և փութայր գանել զՍքոփին: Իբրև զգաց զայն Կարտի զօրավար Շվետաց մտերիմ Սքոփի-

Լեհաց Սափեհա, և հաւանեցուցին զնա լքանել զկողմն Նաւկեայ, որպէս և ինքեանք մերժեն յաթոռոյ զՇույսքի, և ընտրել միաբան հաւանութեամբ զայլ ոմն նոր թագաւոր ։ Հաճեցաւ զօրավարն իւրովքն հանդերձ ընդ առաջարկութեն ։ Եւ աւագանին ընդ Լեափունովայ եկեալք 'ի Մոսկուա՝ յարձակեցան յապարանս Շույսքեայ, և ձերբակալ արարին զնա հանդերձ կնաւն ։ Ազդ արարին այնուհետև 'ի բանակն Լեհաց՝ մերժել զՆաւկի և գալ 'ի Մոսկուա յընտրութեան նորոյ թագաւորի ։ Ետուն պատասխանի ապստամբքն խոստանօք և ասեն. « Չեմք մեք իբրև զձեզ ուխտադրուժք առ 'ի մերժել մեղէն զիշխանն մեր » ։ Սակայն աւագանին անյեղլի միացեալ 'ի խորհուրդս իւրեանց՝ ածին զՇույսքին 'ի վանսն Չուտով, և ստիպէին 'ի բաց դնել զծիրանին, և առնուլ զանձամբ զկարգն միանձնակաց. և 'ի չկամել նորա՝ իշխանն Թուրֆեաքին բռնի ագոյց զսքեմն նմա և կնոջ նորին, և երկուց եղբարցն ։

Ի նմին պահու զօրավարն Լեհաց Ժոլքեւսքի խորտակեաց զՍուէս, և էառ խաբանօք զՄոսկուա. յափշտակեաց և զՇույսքի իւրովքն հանդերձ, և ած տարաւ կացոյց առաջի Սիգիսմունդայ արքային ։

Իբրև ետես թագաւորն զխրոխտ և զաներկիւղ կերպարանն Շույսքեայ,

արտամնեցաւ և հրամայեաց նմա երկիր պագանել ոտաջի իւր։ Եւ պատասխանի Վասիլ. «Թշուառութիւն իմ ոչ մոռացոյց ինձ եթէ թագաւոր եմ ես, և չպարտիմ պագանել ումեք երկիր։ Եւ ոչ զօրութիւն քո է որ գերեաց զիս, այլ նենգութիւն իմոցն հպատակաց. արդ 'ի տեսիլ իմոյ անկածութեանս՝ զարհուրեցիր դու որ չամբարձարդ երբեք յաստիճան բարձրութեանս իմոյ»։ Սիգիսմունդ առաքեաց զնա ընտանեօքն 'ի Վարշաւ, և յետ ոչ սակաւուց մեռաւ անդ Շույսքի և եղբարքն իւր։ Իսկ Զոլքեւսքեայ կողոպտեալ զգանձն Մոսքուայի, և մատնեալ զքաղաքն յաւար իւրոցն, եկք և զկողմն Նաւկեայ, որ և փոխուցեալ առ խանն Թաթարաց՝ սպանաւ 'ի նոցանէ։

Եւ աթամանն Խոզախաց էառ իւր 'ի կնութիւն զՄարինէ, որոյ ծնեալ էր մանուկ մի 'ի Նաւկեայ, և Խազախքն հաստատեցին 'ի միջի իւրեանց թագաւորեցուցանել զմանուկն. այլ ձերբակալ եղեն 'ի Ռուսաց. աթամանն ցցահար սպանաւ, և մանուկն խեղխեղեցաւ, և Մարինէ արկաւ 'ի բանտ խաւարին և մեռաւ անդէն։

Բնակիչքն Մոսքուայի յայնչափ անմոռութիւն ժամանեցին, մինչև ոչ ինչ ունեկն մատուցեալ բանիցն Երմոգենեայ պատրիարգի, և Փիլարետեայ մետրապօլտի, դեսպանս առաքեցին առ Սի-

դիմամունդ և խնդրեցին իւրեանց 'ի Թագաւոր զորդի նորա զՎլատիսլաւ. այլ պայմանաւ, զի մկրտեսցի նա կրկին ըստ արարողութե իւրեանց եկեղեցւոյն, և երդուիցէ պահել զօրէնս իւրեանց։ Եւ կացին դեսպանքն առաջի Սիգիսմունդայ առ Սմոլենսքաւ յամին 1610. և էին մետրապօլիտն Փիլարետ, Վասիլ Կոլիցին, ոմանք 'ի միջակային ազատաց, և ոմանք 'ի տուկականաց։

Զառաջինն պատուատրեաց զնոսա Թագաւորն. և 'ի վաղիւ անդր ասաց նոցա բանալ առաջի իւր զդրունս Սմոլենսքայ՝ զոր իւր պաշարեալն էր։ Պատասխանի ետ արխաքար Փիլարետ, և ասէ. «Մեզ չէն կամք և ոչ իշխանութիւն՝ տալ քեզ զՍմոլենսք։ Որդի քո ժառանգեսցէ և զայս քաղաքս և զայլս, յորժամ բազմեսցի յաթոռն Ռուսիոյ»։ Բարկացաւ Սիգիսմունդ ընդ պատասխանին, և չէառ յանձն առաքել նոցա զորդին իւր։

Յայնժամ հաւաստեաւ գիտացին Ռուսք՝ զի Սիգիսմունդայ կամք էին անձամբ տիրել Ռուսիոյ. այդ. առաւելին վաղվաղակի Լեափունովայ, և նա խաղաց գալ յօգնութիւն քաղաքին եօթանասուն հազար արամբք։

Երկեաւ Սիգիսմունդ՝ թէ չարիք ինչ անցցեն ընդ Լէհսն զանեալս 'ի Մոսքուա, և կոչեալ զդեսպանսն՝ ստիպեաց զնոսա գրել առ Լեափունով,

զի զզօրսն իւր յետս ընկրկեսցէ, և հրամայեսցէ պաշարելոցն 'ի Սմոլէնսք բանալ զդրունս քաղաքին. և 'ի չանսալ զեսպանացն՝ խաղացոյց զնոսա 'ի Լեհաստան, և եդ յայլ և այլ բանտս: Խստագոյնս վարեցաւ ընդ մետրապօլտին՝ հացիւ և ջրով ևեթ արգելեալ զնա յանհերևոյթ անդւոջ ուրեք. և նա ընդ ամս ինն անտրտունջ տարաւ տառապանացն: Նոյնպիսի խստութք վարեցան և Լեհք որ 'ի Մոսկուա՝ ընդ պատրիարգին. և երբև ոչ կարացին խոնարհեցուցանել զնա 'ի կամս իւրեանց՝ հուր հարին 'ի քաղաքն, և բորբոքեցին հրդեհ մեծ յամին 1611: Կապանեցին և զիշխանութեն պատրիարգին, և արգելին զնա 'ի մենաստանն Չուտով, ուր և մեռաւ իսկ 'ի սովոյ:

Մինչդեռ այսպէս 'ի ծուփս ներքին և արտաքին աղետից անգլուխ և անղեկավար ծփէին Ռուսք առ հասարակ, և Լեհք և Շվէտք ակն եդեալ միայն դէպ ժամու բաժանել յիւրեանս զՌուսիա, վառեցաւ ոգի հայրենասիրութե յայր ոմն մսագործ Կոզմա Մինին անուն 'ի Նիժնի Նովկորոտ, և վառեաց զքաղաքակիցս իւր 'ի փոյթ ազատութե հայրենեացն: Գործ էր գտանել զոք առաջնորդ մեծի գործոյն. և յետ բազում խորհրդոց և քննութեց 'ի վերայ երեցուն գլխաւոր կուսակալացն Ռուսաց՝ Լեափունովայ, Զարուցքեայ և

Թրուպեցքեայ, ոչ հանձնեալ ժողովականացն և ոչ ընդ մի 'ի նոցանէ՝ ընտրեցին զիշխանն Փոժարսքի, որ վիրաւորեալ էր 'ի մարտին Լեհաց առ Մոսքուայիւ: Փոժարսքի գովեալ զնախանձ նոցա՝ խոստացաւ իւրովսանն մեռանել ընդ նոսա վասն հայրենի աշխարհին. և պատգամաւորքն դարձեալք 'ի Նիժնէ խնդութ̃ք՝ խրախուսեցին ածին զանձամբք և զընակիչս Տորահոպուժ և Վեազմա քաղաքաց, և նոքա առաքեցին զդրամս և մարդիկ 'ի նպաստ Նիժնի Նովկորոդացւոց: Մինին բաշխեաց զդրամսն 'ի զօրական անդր, և նոքա յառաջ խաղացեալ 'ի քաղաքէն իւրեանց՝ որ ըստ օրէ աճեցին 'ի բազմութի, և Փոժարսքի 'ի ձեռն նոցա վանեաց 'ի բաց զԼեհս և զՇվէդս, և եբարձ 'ի միջոյ զարս անօրէնս և ընդունայնասէրս և զերկողս ժողովրդեանն: Եւ զերծաւ Ռուսիա 'ի հարուածոց արտաքին և ներքին թշնամեաց:

Սակայն հարկ էր ընտրել դարձեալ զայր ազնուատոհմ 'ի բնէ, քաջ խորհրրդական պետութեան, հմուտ իրաց պատերազմի, և սիրող օգտի հայրենեաց: Այսպիսի ոք էր Ֆէոտոր Նիքիթիչ Ռոմանով, ազգական թագաւորացն Ռուսիոյ 'ի մօրէ. նա ինքն է Փիլարետ մետրապօլիտ Ռոստովայ, զորմէ կանխեցաք ասացաք: Այլ քանզի նա կապեալ էր անլուծանելի յուխտ ե-

կեղեցական աստիճանի, Ռուսք 'ի մի բերան կարդացին իւրեանց թագաւոր զորդին Փէոդորայ զՄիքայէլ Փէոդորովիչ Ռոմանով, որ ընդ մօրն իւրում Արտեմեայ կայր 'ի վանս ուրեք արգելեալ։ Եւ եղեն այս դէպք երևելիք 'ի 21 աւուր փետրուարի, յամին 1613։

Յայնմ աւուր սկիզբն եղև նոր իմն պետութեան 'ի պարծանս և 'ի մխիթարութիւն Ռուսիոյ, որ ցայնժամ 'ի ներքոյ ձեռաց Ռիւրիքեանց ունել ունէր իշխանս և օրէնս, այլ երկաքանչիւր թերի, միանգամայն և կարի իմն աղաւաս և արձակս։ Իսկ աստի և անդր ոտն առ ոտն ամենայնի չափ և սահման 'ի վեր ելանէ. և երջանկութիւն ևեթ Ռուսիոյ երևեցի անցեալ ըստ չափ և ըստ պայմանն կարծեաց օտարաց։



# ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## 1613=1762

## ՄԻՔԱՅԷԼ ՓԷՈԴՈՐՈՎԻՉ ՌՈՄԱՆՈՎ

ՏՈՀՄՆ Ռոմանովեանց երեւեցաւ 'ի Ռուսիա, որպէս կարծի, անդստին առ թագաւորութեամբ առաջնոյն Իւանայ 'ի հօրէ Բրուսացւոյ, և պայծառացաւ գործովք արութեան անընդհատ մինչև ցաւուրս Գորիսայ, որ զՖէոտոր Նիկի-թիչ Ռոմանով և զկին նորա որդւովն հանդերձ Միքայէլիւ աքսորեալ եդեալ էր 'ի վանս միանձանց:

Էր յայնժամ Միքայէլ ամաց վեշ-տասանից. և 'ի խնդրել զնա նուիրա-կացն 'ի մօրէն՝ շնորհս կալաւ Աստե-նիա, և յաւել առաջի տանել նոցա պարզ մտօք զդեռափթիթ հասակ որ-դւոյն իւրոյ, և զարգելական մտունդ նորին 'ի կրօնաւորական կեանս՝ անդէտ ընաւին քաղաքական ուսուցութեն, թող թէ թագաւորելոյ լայնածաւալ աշ-խարհին Ռուսաց. աղաչէր արտասուա-լից՝ զայլ ոք արժանաւոր ամբառնալ

յայն պաշտօն ։ Այլ Նուիրակացն 'ի մէջ բերեալ զսէր ազգին առ տոհմն Ռոմանովեանց՝ հարկ 'ի վերայ կայ աւելին զիջանել իրաւացի թախանձանացն . և զթերութն հասակի և հմտութն թագաւորազնին՝ լցցէ անթերի իմաստութն հօրն նորա ։ Եւ անց Միքայէլ 'ի վանաց յաթոռ արքունի ։

Բայց քանզի չև էր շիջեալ յոգիս Լեհաց և Շուէտաց խիղճ տիրելոյ աթոռոյն Ռուսաց , դեսպանք Միքայէլի առաքեալք առ նոսա 'ի խնդրել զհաշտութն՝ 'ի բաց մերժեցան ։ Յայնժամ միջնորդ կալաւ Միքայէլ զթագաւորն Գաղղիոյ և զԱնգղիոյ և զԴանեաց , և ուր ուրեմն հաւանեցոյց զարքայն Շուէտաց զԿուստաւոս 'ի խաղաղութիւն , և հաստատեցաւ դաշն 'ի Սթոլպով քաղաք 'ի 26 աւուր յունուարի յամին 1616 . և ըստ պայմանի դաշանցն Միքայէլ խոստացաւ հատուցանել Շուէտաց զծախս պատերազմին , չպահանջել այլ ևս ինչ 'ի մասնէ Լիվոնիոյ և Եսթոնիոյ , և թողուլ ընդ իշխանութե Շուէտաց զԻնկրիա , զՔարելիա , և զամենայն երկիրն որ ընդ Ինկրիա և ընդ Նովկորոտ ։ Անտի մինչև ցժամանակ պատերազմին Պետրոսի մեծի ընդ Կարոլոսի ԺԲ , արքային Շուէտաց՝ գետն Լավա սահման էր Շուէտաց և Ռուսիոյ ։

Զերծեալ Միքայէլի 'ի միոյ ստախէն , ջանայր և 'ի միւսմէն զերծանել . այլ

այն ոչ նոյնպէս դիւրաւ յաջողեաց. զի Լեհք առեալ Սմոլենսքայ՝ մեր 'ի վայր առնէին զամենայն սահմանս նորին՝ օգնականութեամբ Տոնայքի խազախաց: Վանեցին հալածեցին զՌուսս եկեալս 'ի պաշարումն Սմոլենսքայ, և Վլատիսլաւ որ ակն եդեալ էր գահին Ռուսիոյ՝ խաղաց եկն մինչև մերձ 'ի Մոսքուա, նուաճեալ զճանապարհայն զՏորոհոպուժ, զՎեազմա, զՄոժայսք և զայլ քաղաքս: Այլ իբրև ետես Վլատիսլաւ զանհեզ պատրաստութիւն պաշարելոցն, դարձաւ 'ի վերայ այլոց քաղաքաց. սակայն և 'ի նոցանէ 'ի միում նուագի 'ի պարտութիւն մատնեալ, եդ 'ի մտի թողուլ լքանել զխորհուրդն թագաւորելոյ 'ի վերայ Ռուսաց, և խնդրեաց զխաղաղութիւն:

Ի պայմանս այնր դաշին հաստատեցաւ մնալ Սմոլենսք և Տորոհոպուժ քաղաքացն 'ի ձեռս Լեհաց, և Փիլարետեայ և ընկերաց նորա բանտարկելոց 'ի Լեհս յանիրաւի յինն ամաց հետէ՝ արձակիլ յաշխարհն իւրեանց:

Անպատմելի էր ցնծութիւն՝ որով մեծարեցաւ Միքայէլ զհայրն. և քանզի չէր այլ ոք 'ի ժամանակին պատրիարգ, Փիլարետեայ տուաւ իշխանութիւն, որով և գլուխ խորհրդականաց արքայի կարգեցաւ:

Ի նմին ժամանակի և սուլթան Մուրատ Թագաւոր Օսմանեանց առաքեաց

առ Միքայէլ դեսպանս, և խնդակից եղև նմա վասն յաջողութե̃ցն. հաստատելով ընդ նմա ուխտ բարեկամութե̃։ Եւ Միքայէլ պատուասիրեալ զնոսա մեծապէս՝ առաքեաց և ինքն դեսպանս 'ի Կոստանդնուպօլիս 'ի հաստատութի̃ ուխտի դաշանցն. և խաղաղացաւ երկիրն Ռուսաց զամս քանի մի։

Միքայէլ զկնի առաջնոյ կնոջն՝ ընդ որում ամուսնացաւ յամին 1625, որ և մեռաւ յետ սակաւուց, առ 'ի կնութի̃ զառաքինին Եւդոքսիա զդուստր Սթրեշենեվայ առն ազնուականի, այլ աղքատի։ Կամեցեալ Միքայէլի կարգել զաներ իւր զՍթրեշենեվ ընդ աւագանին՝ առաքեաց զսենեկապետ իւր հրաւիրել զնա յարքունիս։ Իբրև եկն առ նա սենեկապետն՝ ետես զի մշակէր զերկիր ընդ ընտանիս իւր. ասէ ցնա. «Արքայ և դշխոյն առաքեալ զիս՝ կոչեն զքեզ 'ի Մոսքուա. արդ իմ զամենայն պէտս Ճանապարհին պատրաստեալ է, առջիր զընտանիս քո և եկ ընդ իս»։ Սթրեշենեվ ոչ գիտելով զանցս դըստերն իւրոյ՝ որ 'ի մանկութե̃ 'ի տան Շերեմեթովայ կայր 'ի Մոսքուա, ետ պատասխանի սենեկապետին և ասէ. «Ես ոչ ճանաչեմ զքեզ։ Տարազ զգեստուցդ և կերպարանք քո յայտ առնեն՝ զի այր գործոյ ես դու. և կամիս ինձ խաղ առնել զինև, որ աղքատ ոմն եմ կարօտ ձեռինս վաստակոյ. Թոյլ տուր

աղաչեմ, զի մի ընդ վայր անցցէ ժամանակն իմ»։ Յայնժամ սենեկապետն ետ 'ի նա զԹուղթն Եւդոքսեայ. եւ նա յուղի անկեալ գնաց 'ի Մոսքուա։

Տեսեալ Ռուսաց՝ զի Եւդոքսիա յերկուց ամաց միջոցի դստերս եւեթ ծնաւ, տրտնջէին յոյժ. եւ փոքր մի եւս եւ արգելուին զնա 'ի վանս. այլ մայրն Միքայէլի ընդդէմ եկաց նոցա. եւ յամին 1627 'ի մարտի 17 ծնաւ Եւդոքսիա ուստր մի, որ մկրտեցաւ 'ի հաւուրն իւրեմէ կոչեցաւ Աղեքս, նա է հայր մեծին Պետրոսի։

Մինչդեռ 'ի խոր խաղաղութեան վայելէր Ռուսիա, արքայն Շվեդաց հրաւիրեաց զՄիքայէլ գալ ընդ իւր ընդդէմ Լեհաց. այլ նա խոհականն եւ խաղաղասէր բանիւք հրաժարեցաւ 'ի պատերազմէն։

Աշխատէր այնուհետեւ զեւրոպական ազգս հեռաստանեայս, եւ զուղին վաճառաշահութեան բանայր ընդ նոսա ազգին իւրում. ամրացուցանէր զքաղաքս իւր, եւ կոչէր յայլոց քաղաքաց Եւրոպայ արս հմուտս քաղաքականութեան, կենցաղակիրթ գիտութեանց, եւ ամենատեսակ կարգաց։ Սահմանեաց այլ եւ այլ կարգս հեծելոց, եւ սպայս կարգեաց նոցա զերմանացիս, գաղղիացիս եւ շվէտս. յօրինեաց եւ հետեւակս կանոնաւորեալս ըստ օրինակի այլոց Եւրոպականաց։

Այլ կորուստ մեծ եղեւ Միքայէլի

մահ հօրն իւրոյ Փիլառետեայ պատրիարգի, առն գովելւոյ ըստ ամենայն հանգամանաց :

Մեռաւ ընդ նոյն ժամանակս և Սիգիսմոնդ արքայ Լեհաց, և որդիք նորա վիճէին զաթոռոյն : Ի դէպ ժամուն արձակեաւ Միքայէլի զօրս հարիւր հազար՝ պաշարելոց զՍմոլենսք, և համարէր դիւրաւ առնուլ զնա . այլ անխոհեմութիւն իւրոյ սպարապետին յետ յերկարաձգելոյ ընդ ամս երկուս զպաշարումն քաղաքին՝ պակասեցոյց և զառումն նորա . զի ոչ միայն ոչ լուաւ խրատուց հմուտ զօրավարացն օտարազգեաց, որ էին 'ի բանակին, այլ և 'ի բաց հալածեաց զնոսա : Եւ հասեալ 'ի վերայ Վլատիսլաւ Թագաւորին Լեհաց զօրու ծանու՝ պաշարեաց զպաշարիչսն, և հարկեցոյց զնոսա անձնատուր լինել . այլ առ 'ի ձեռաց նոցա զամենայն զէնս և զմեքենայս պատերազմի և արձակեաց, և ինքն մնացական Սմոլենսքայ և մերձակայ քաղաքացն :

Իսկ Միքայէլ որ 'ի բնէ հեզն էր և ներողամիտ՝ այն անգամ երկուացի խստութե՛ պատուհասեաց զզօրավարս իւր . զոմանս 'ի նոցանէ՝ ընդ որս էր և սպարապետն Շէյն՝ գլխատեաց ; և զայլս աքսորեաց 'ի Սիպիր :

Եւ յամին 1645 'ի յուլիսի 12 յանկարծամահ եղև Միքայէլ 'ի կաթուածոյ . և եղեալ զնա գահակալս ամենայն

ժողովուրդ իւր ։ Եղեն նմա յԵւդոքսիայ ուստերք երեք. Ալեքս, Վասիլ, և Իւան. և դստերք եօթն. Իրենէ, Պեղագիա, Մարթա, Սոփիա, Եւդոքսիա և Տատիանէ ։

## ԱԼԵՔՍ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ

ՎԵՇՏԱՍԱՆ ամաց էր Ալեքս 'ի մտանել հօրն, և դաստիարակ նորա Բորիս Իւանովիչ Մորոզով ունէր զիշխանապետութեն, ըստ յանձնելոյն Միքայելի. այլ Մորոզով այր էր փառամոլ և արծաթասէր, որով մթացուցանէր զփառս բազմապատիկ լաւութեանց իւրոց ։ Հեռացոյց յարքայէ զամենայն հաւատարիմ պաշտօնեայս նորա, և զհամամիտս իւր կարգեաց 'ի հաս նոցին. և զԱլեքս զբօսեցոյց յորս և 'ի դատարկութիւն, զի ինքն ըստ կամի անօրինեսցէ զամենայն ։

Զհետ երկուց ամաց կամեցեալ կին առնել արքային՝ ընտրեաց զդուստր ուրումն 'ի միջակային ազատաց, որ կոչէր Եղիա Միլոսլաւսքի. բայց Ալեքսի ոչ հաւանեալ նմա այս անդամ, հրամայեաց ըստ օրինակի նախնեաց իւրոց ժողովել աղջկունս կոյսս՝ զի ընտրեսցէ զոր անձին հաճոյ թուեսցի. և ընտրեաց զումն ։ Մորոզով ոչ հաճեալ ընդ ըն-

տրութեն՝ որոտացաւ զկանանցն զդեցու-ցիչս գշխոյին, զի մեռանեցեն աղջկանն. և նոքա 'ի յօրինել անդ զգացուցս վար-ուց նոցա՝ այնպէս խմն բուռն ձգեցին զհերացն, զի առ ցաւոցն թալացեալ անկաւ աղջիկն. և կանայքն գաւա-ռեցք Մոսկովայ զաղաղակ բարձին՝ ե-թէ լուսնոտ է սա : Ամբաստանեցաւ հայր աղջկանն որպէս թշնամի արքայի, և աքսորեցաւ հրամանաւն Մոսկովայ 'ի Սիպիր : Եւ թագաւորն 'ի պատիւ ընտրեալ ամուսնացաւ ընդ Մարիա-մու դստերն Միլոսլաւսքեայ. և Մոսկո-վով յետ ութ աւուր առ 'ի կնութիւն ըղ-քոյրն Մարիամու :

Այլ ընդ չափու փառամոլութեն և ագահ ևս էր Մոսկով, և զպատիւս և զիշխանութիւնս ընդ արծաթոյ վաճա-ռէր : Այսպէս ծանրութիւնք հարկապա-հանջութեց և յափշտակութեք յաճա-խեալ՝ գրգռեցին զժողովուրդն բողոք-ունել զքրնուէ աւագանւոյն. և քան-զի Մոսկով արգելեալ փակեալ էր զամենայն մուտս ժողովրդեանն առ ար-քայ, դէպ ժամու սպասեալ մնային նոքա :

Արդ յամին 1648 'ի յուլիսի 7, 'ի գնալ Աղէքսի 'ի վանս սրբոյ Երրորդու-թեանն, կուտեցաւ ժողովուրդն հան-դէպ Քրեմլինայ, և ցրուեալ զնոսա՝ որք պար առեալ գնային զարքայիւ, կացուցին զնա, և աղաչէին անսալ բո-

զօրքոյն զոր հարկանէին ընդդէմ իշխանաց նորա ։ Յապուշ հարաւ Ալեքս ընդ ժտութիւն ամբոխին . այլ առ ժամն անյեղլի դիմօք՝ ունկն մատուցեալ ամբաստանութեանցն՝ խոստացաւ քննել զիրսն , և խրատուսս առնել նոցա ։

Մինչդեռ ժողովուրդն գոհացեալք զարքայէ մեկնէին անտի , ոմանք յաւագանւոյն կշտամբեցին զմի ոմն 'ի նոցանէ ։ Յայնժամ 'ի զայրոյթ սրտմտութեան բորբոքեալ ամբոխին՝ քարանձիգ լինելով վանեցին զնոսա մինչև յապարանսն . և ևս դիմացեալ 'ի բազմութիւն՝ սպառնային հուր հարկանել 'ի պալատն՝ թէ ոչ տացին 'ի ձեռս իշխանքն Մուրծուփլ, Փլեչչէլ, Թորոքանեօթով և Ձիսթով ։

Յայսմ խռովութեան եւ Թագաւորն ամբոխին , և համարէր ցածուցանել զարտամտութիւն նոցա՝ մատնեալ 'ի ձեռս նոցին զՓլեչչէլ . այլ նոքա ոչ շատացեալ արեամբ նորա՝ դիմեցին 'ի տուն Ձիսթովայ , և մատնութեամբ ընտանեաց նորին գտեալ զնա թագուցեալ ուրեք 'ի տանն՝ քարշեցին 'ի գաւիթ անդր և Թօպամահ արարին , և զտուն նորա հիմնայատակ կորուսին ։ Անտի յարձակեցան յապարանս Մուրծուփլայ . և յաւարի առին զամենայն , և զպատկերս անգամ սրբոց . զնոյն անցուցին և ընդ ամենայն կուսակիցս Մուրծուփլայ , և հրդեհ մեծ բորբոքեցին 'ի քաղաքին . և այնչափ էր կապուտ կողոպուտ յա-

փրկչականելոց տանցն, զի անարգ գնով 'ի վաճառ ելանէին մարգարիտք և ակունք պատուականք, սամոյրենիք, և գիպականք ոսկեթելք:

Երկուցեալ Ալեքսի՝ դուցէ դարձցին խռովարարքն յարքունիս իւր, ժողովեաց առ իւր գունդս զօրաց բազմաց, և ապա առաքեաց առ ամբոխն զմի յաւագաց անտի որք հաճոյ էին նոցա, զի զզօնացուսցէ զնոսա: Ետուն նմա պատասխանի ժողովուրդքն, և ասեն. «Չիք մեր տրտունջ զԹագաւորէն, և քաւ զի խնդրեմք զմեր առ նա զպարտս. այլ բաղձեմք զպատուհաս այնոցիկ՝ որք յանուն նորա խուեն և տառապեցուցանեն զմեզ. Թող տացին 'ի ձեռս մեր Մուռոզով և Թրաքանեօթով, և ահա խաղաղութիւն»: Ասէ ցնոսա իշխանն. «Առաժամայս չէ հնար տալ զնոսա 'ի ձեռս, զի փախուցեալ են. այլ անշուշտ հաճեսցէ զձեզ արքայ ըստ կարին»:

Ալեքս խնայեալ 'ի կեանս առաջնոյն, ետ ունել զերկրորդն 'ի փախուցելոց անտի, և գլխատել հրապարակաւ: Նուաղեաց այնուհետև զհարկս, և ետ բաշխել ժողովրդեանն աւուրս ինչ մեղրաջուր և օղի: Կարգեաց 'ի տեղի սպանելոցն արս արժանաւորս, և ապա 'ի հանդիսի ուրեք հրապարակախօս եղև առ ժողովուրդն, և ասէ. «Մեծասարջանօք լուեալ զանիրաւութիւն խնոց պաշտօնէից, ահա պատուհասեցի զնո-

սա քաղ արժանեացն, և կարգեցի փո-
խանակ նոցա արս աներկբայելիս 'ի լա-
ւութիւս իւրեանց. յայսմհետէ հսկե-
ցից աչալրջութ՟ 'ի վերայ նոցա. և հարկք
այնչափ ևեթ առցին 'ի ձէնջ՝ առանց
որոց անհնար իցէ յառաջ կալ պետու-
թեան ։։ Հնչեաց քաղաքն ամենայն 'ի
ձայնէ ցնծութեան ամբոխին, և առ հասա-
րակ անկեալ 'ի վերայ երեսաց իւրեանց
երկիր պագին թագաւորին. և զայն պա-
տեհ առեալ Աղեքսի յապրեցուցանել
զգաստութեան իւր՝ ասէ ցնոսա քաղցր
բարբառով և կարեկիր դիմօք. « Ժողո-
վուրդ իմ, խոստացայ ես, այո, տալ 'ի
ձեռս ձեր զՄտաողզով. այլ չիշխեմ
մատնել 'ի սանձահս զայր մի՝ որ հայր-
օրէն խնամովք ակն կալաւ 'ի վերայ իմ
'ի մանկութեան իմում։ Զունիմ անբաւոր
զնա տանել. գիտեմ զի յանցեաւ. այլ
յուշ լիցի ձեզ, աղաչեմ, զի դաստիա-
րակ իմ է նա, բարեկամ իմ, և ազգա-
կից և պաշտօնեայ. երդնում 'ի թագ
իմ, զի յայսմհետէ ուղղեսցին գնացք
նորա։ Եթէ ձեզ չեցեն կամք այլ ես
ունել նմա տեղի 'ի խորհրդեան իմում,
ոչ ես կոչեցից զնա. այլ զոր ինչ նմայն
տանիցէք՝ այն հաւաստիք լինիցին ձե-
րումդ առ իս մտերմութեան ։։ Ոչ ևս
հանդուրժեալ ամբոխին 'ի լսել զսիրա-
լիր աղերս թագաւորին, ձայն բար-
ձեալ 'ի մի բերան աղաղակեցին. « Ե-
ղիցին կամք Տեառն և թագաւորին ։։

Եւ Ալեքս առ խնդրին յարատատուս հա-րաւ։

Յետ սակաւ աւուրց գնաց արքայն 'ի վանս սրբոյ երրորդութեան՝ գոհանալ զԱստուծոյ վասն հանդարտելոյ ծփա-նաց խռովութ̃ն. և Մոռոզով խնդրեաց գնալ ընդ նմա, զի տեսցէ թէ յինչ միտս էր զինքենէ ժողովուրդն։ Անց շըր-ջեցաւ նա ընդ Մոսքուա՝ կալեալ զգլ-խարկն 'ի ձեռին, և ողջունէր երկուս-տեք զամբոխն, խօսէր ընդ ոմանս քաղ-ցրութ̃, և զուարթ ակնարկէր 'ի դէմս այլոց. և խնդացին ամենեքեան. և յոր-ժամ ձեռն էարկ յառաջին պաշտա-մունս իւր՝ նախկին արժանաւոր ատե-լութ̃ն ամբոխին առ նա 'ի սէր փոխե-ցաւ. և մի 'ի պիտանի գործոց նորա ե-ղև նոր մատեանն օրինաց, որ և հաստա-տեալ յԱլեքսէ՝ մեծապէս նպաստ ե-ղև 'ի բարեկարգութ̃ն աշխարհին։

Ընդ այն ժամանակս Թագաւորեալ Շվետաց Քրիստինէ դուստր Գուստա-ւոսի՝ գանգատ կալաւ առ Ալեքս վասն իւրոցն, որք Թողեալ զհայրենի աշ-խարհն՝ անցանէին 'ի Ռուսիա 'ի խնդիր բախտի, և օգտելով Ռուսաց՝ վնասէին աշխարհին իւրոյ։ Եւ Ալեքս դաշն ուխ-տի հաստատեաց ընդ նմա, զի երկուս-տեք եւս մի պահանջեսցին անցեալքն յայս կամ յայն աշխարհն. և յայնմհե-տէ թէ ոք անցանիցէ ընդ սահմանս աշ-խարհին իւրոյ առանց մուրհակի, ան-

դրէն յետս արձակեցի: Եւ քանզի բազմադոյն յոյժ էին Շվէտքն անցեալք ցայնժամ 'ի Ռուսիա քան զՌուսս անցեալս յաշխարհն Շվէտաց, խոստացաւ Ալեքս հատուցանել Շվէտաց հարիւր և յիսուն հազար ռուպլիս, կէս մի դրամովք, և կէս մի ցորենով յամին 1650:

Զդրամն հատոյց անթերի, և զցորենոյն հատուցումն յանձն առեալ վաճառականի ումեմն Փսքովացւոյ: Իսկ նա 'ի շահ անձին միայնոյ ուշ կալեալ զամենայն ցորեանս առ իւր ամբարեաց մենավաճառ լինելով: Զնոյն անիրաւութիւն արար և Վոլք անուն ոմն 'ի Նովկորոդ. և եղև 'ի մէջ առատութեան ժամանակին սով հացի, մինչև բողոք ունել ամբոխին 'ի Մոսքուա: Ալեքս պատուիրեաց բառնալ 'ի միջոյ զանօրէնութիւն զայն. այլ իբրև գանգատեց մենավաճառն Փսքովայ, յարձակեցաւ ամբոխն յամբարանոցս նորին, և ալափեաց զցորեանն. և զնա ոչ գտեալ 'ի տանն` պատուհասեցին յանպարտս ըն-կին նորա և զորդիս: Հազիւ ուրեմն եհաս իշխանն Քամանսքի առաքեալ յԱլեքսէ, և ցածոյց զաղմուկն Փսքովայ:

Իսկ անդադրոյն Վոլք կաշառաբեկ արար զՍթրիելեցան և զԽաղախս, և նոքա պատճառանօք խաղաղելոյ զխռովութիւն ամբոխին` խուեցին մերկացուցին նուաղականաբար զՆովկորոդացիս առ հասարակ, և զբազումս ևս յանխնայ կո-

տորեցին : Նիկոն արքեպիսկոպոս քաղաքին այր իմաստուն և հմուտ ամենայն ուսման գիտութեան՝ կամեցեալ զդէմ ունել խառնակարարացն քարկոծ եղև 'ի նոցանէ, և անկեալ կայր կիսամեռ. զոր մեռեալ կարծելով թողին ապստամբքն. և նա կազդուրեալ կարեւոր դարմանօք՝ դարձաւ եւ արիաբար առաջի խառնամբոխ աւազակացն, և ճարտար հրապարակախօսութեամբ ած յապաշաւ զնոսա, որք և անկեալ առ ոտս նորա ներումն խնդրեցին յանցանացն : Յայնժամ Նիկոն հրամանաւն Ալեքսեայ 'ի մահ դատապարտեաց զՎլուք, և զընկերս նորա խարանաւ դրոշմեալս աքսորեաց 'ի Սիղեր :

Ընդ այն աւուրս յարեաւ և այլ ոմն նենգամժոտ՝ ասել զանձնէ թէ իցէ Դեմետր որդի Դեմետրի չորրորդի. այլ ձերբակալ եղեալ՝ չարաչար մահուամբ սատակեցաւ 'ի Մոպքուա յահ և 'ի դողումն որոց այլ ևս յանդգնիցին յայսպիսի դաւաճանութիւն մտաբերել :

Այլ աստանօր պատմի գործ ինչ Ալեքսեայ, որ ոչ սակաւ ստուեր արկ զպատուով նորին : Քանզի 'ի մեռանել Վլատիսլաւայ արքային Լեհաց՝ վտարանջեցին 'ի նոցանէ Խազախքն, և Ալեքս սպառնացաւ Լեհաց գալ մտանել 'ի Լեհաստան հարիւր յիսուն հազար արամբք՝ եթէ ոչ անձապարեսցեն կարգել զոք իշխանից 'ի թագաւոր :

Իմացան Լեհք զմիտս Ալեքսի, այլ գիտելով չափ զտկարութիւն իւրեանց՝ փութացան եդին իւրեանց թագաւոր զՅովհաննէս Գազիմիր ծիրանաւոր յիսուսեան՝ առեալ վասն նորա տնօրինութեամբ 'ի պապէն ։ Իսկ Խազախք յետ բազում աշխատ առնելոյ զԼեհսն՝ յամին 1654 անցին միւսն ընդ պաշտպանութեամբ Ռուսաց ։

Նշքիմբք և եւս զօրացեալ Ալեքսի՝ պատճառս խնդրէր յարձակել 'ի Լեհաստան. և հրեշտակութիւն արարեալ առ Գազիմիր՝ մեղադիր եղև նմա, զի 'ի թղթին որում զեկուցանէր Ալեքսի զթագաւորելն իւր՝ ոչ ըստ արժանի պատուոյն պատուեալ էր զնա Գազիմիրայ. և զի 'ի համալսարանին Վիլնա քաղաքի տպագրեալ էին մատեանք ինչ, յորս կային իմն գրուածօք հռչակէին յաղթութիւնսն Վլադիսլաւայ արքայի իւր 'ի նախատինս թագաւորին Ռուսաց և զօրավարաց նորա. և վասն այսր ամենայնի պահանջէր 'ի Գազիմիրայ զՍմոլենսք հանդերձ նահանգաւն ։ Գազիմիր իմաստուն բանիւք հերքեաց զբողոքաղայն. և իբրև ետես զի տակաւին պնդէր դեսպանն Ալեքսի, արձակեաց զնա Գազիմիր 'ի Մոսկուա. և Ալեքս ետ պատասխանի, զի թէ ոչ ներեսցեն Լեհք Խազախաց, հարիւր հազար զօրօք խաղացից 'ի Լեհաստան ; և զինու զօրութեամբ յայտ արարից զիրաւունս

իմ։ Խորհուրդ արարին Լեհք, և ոչ կամեցեալ նեղել Խաղախաց՝ պատրաստեցան 'ի պատերազմ։

Յայնժամ Ալեքս եկաց ընդ իւր զխաղախան, և պաշարեալ զՍմոլենսք՝ կալաւ զայն. և զԼիթուանիա, և զՄոհիլև. և զՓոլոցք. և յամին երկրորդի յարձակեալ 'ի Լիթուանիա՝ առիւր զգլխաւոր քաղաքս գաւառին։

Տեսեալ Քազիմիրայ՝ զի ոչ կարէ զդէմ ունել Ալեքսի, որ և 'ի Շվեդաց նեղէր պատերազմաւ, միջնորդ կալաւ զկայսրն Գերմանացւոց զՖերտինանտոս Գ, զի ուխտ խաղաղութեան հաստատեսցի ընդ իւր և ընդ Ալեքս։ Եւ Ալեքս զիջաւ 'ի հաշտութիւն, և յիւր ձեռս մնացին Սմոլենսք, Քիէվ և Սեւերիա, և ամենայն քաղաքք և գաւառք՝ զորս Վլատիսլաւ առեալ էր 'ի Ռուսաց։

Խորախոյս առեալ յաջողութեամբ բախտին՝ խաղաց Ալեքս և ընդդէմ Շվեդաց, և էառ քաղաքս բազումս. այլ ոչ կարաց առնուլ և զՐիկա, և մեկնեցաւ յերկիր իւր։

Ի պատերազմաց անտի նորա ապաուեցան գանձք արքունի, և աղքատացան հպատակքն իւր։ Խորհուրդ ետուն նմա իշխանքն փոխել զարծաթի դրամն, որովք ցայնժամ վարէին, 'ի պղնձիս. և հաճոյ թուեցաւ Ալեքսի. զի այնու հետև վաթսուներորդ մասամբ ևեթ առաջնոյ ծախուցն պահէր զմի զօրականն։

Յանկայն հարկաւ բարձրացան դիզք ար- ծաթոյ և ոսկւոյ յոյժ յոյժ, և եղև խափան առուրևառից և սով: Միաբա- նեալ ապա ժողովուրդն 'ի դէմ ընթա- ցան առ հասարակ. տասն հազարք 'ի նո- ցանէ գիմեցին առ Թագաւորն, և տասն հազարք մնացին 'ի քաղաքին 'ի յափշտա- կել զտունս իշխանաց և զմեծատանց: Առաջինքն բողոք կալան առ Ալէքս՝ զի պատուհասեսցին աներն արքայի և Մոսա- ղով՝ զորս համարէին պատճառս աղե- տիցն իւրեանց: Ալէքս խնայեալ յերկ- կէ զպատրաստութիւն ապստամբութեան՝ ժողովեալ էր առ ինքն գունդս բազումս, որ թէ չկարասցէ քաղցրութեամբ շահել զամբոխն, ահիւ սանձեսցէ:

Այդ նախ բազում ինչ քաղցրութեամբ խօսեցեալ ընդ նոսա՝ խոստանալով քննել զկարծեցեալ յանցանս իշխա- նացն ամբաստանելոց և հանել զժողո- վուրդն, իբրև ետես զի նոքա ոչ դադա- րէին 'ի թշնամանելոյ զաներ նորին և զթագուհին ինքնին, ձայն ետ Սթրել- ցացն և ասէ. «Հանեալ 'ի բաց վանեսջիք յինէն զշունս կատաղեալս»: Եւ եղև 'ի անեղուոջն երկուստեք կոտորած մեծ, մինչև լքաւ խաժամուժն զդէմ ունել զօրականացն, և խնդրեաց զներումն: Ալէքս ներեաց նոցա վաղվաղակի և ար- գել զկոտորածն:

Իսկ որք 'ի քաղաքին էին՝ դեռ ևս ա- ւար հարկանէին 'ի տունս ազատա-

րոյն . այլ հաստեալ 'ի վերայ զօրակա-
նաց՝ նկուն արարին և գնդոսս . անձինք 'ի
գլխաւոր խռովարարաց անկան կալանե-
ցան , և այլք աքսորեցան 'ի Սխակր , և
դադարեաց խռովութիւն : Յետ սակա-
ւուց և Մուռզուֆլ անկեալ 'ի խօթու-
թիւն մեռաւ , և եղև սուգ մեծ Ալեքսի :

Դէպք կրկին հեռացեալքնիւք ապստամբին
լեալ ընդ այն ժամանակս 'ի Մոլդուա ,
որովք է խմանեալ զայն ժամու Բուլղարացն
զպատրաստութիւն բարուց :

Ց . խօթացեալ եղբայրն Ալեքսի՝ վարձ
մեծ խոստացաւ բժշկաց իւրոց , թէ ոք
առողջացուսցէ զնա . և ամենեքեան յա-
ռաջ մատուցին զիւրեանց դեղս , այլ 'ի
զուր : Զնոյն հրաման եհան առաջ Ա-
լեքս յնդհանուրս՝ մեծամեծ վարձուց
խոստմամբք . և կին միոյ ուրուք յաւա-
գաց անուն որ տապալեցեալ էր 'ի դառն
և դժնեայ բարոյից առն իւրոյ՝ գնաց
առ Եղիա անուն Ալեքսի , և ասէ ցնա՝
թէ կայ առ առն իւրում դեղ օգտա-
կար արքայի , և նա չկամի յայտնել :
Կոչեցաւ վաղվաղակի իշխանն . և 'ի զար-
մանալ նորա ընդ հարցուած զաղանի
դեղոյ՝ զոր խնդրեին 'ի նմանէ , համա-
րէին թէ կեղծիցէ ինչ . և 'ի ժխտել նո-
րա և ս անգիտութիւն , զան հարին զնա և
արկին 'ի բանտ . ուր իմացեալ նորա զչա-
րութիւն կնոջ իւրոյ , կատարեալ 'ի
սրտմտութիւն բարկութեան նզովս արձա-
կէր զինեա նորա , և սպառնայր հատու-

ցանել նմա զմտադրութիւն յորժամ զերծ-ցի 'ի բանտէն : Երբև պատմեցան բանքն առ արքայի, վերստին հրամայեցաւ ձաղկել զայրն իբրև զթշնամի արքայի : Երդնոյր և նզովէր այրն զանձն իւր թէ ես ընաւ և գիտեմ իսկ ոչ զարուեստ բժըշկութեն և ոչ զդեղպարարութեն. և իբրև ետես զի մեռանել ունէր ընդ գաւազանաւ, և անյոյս եղև յարդարանալոյ այնու, յանձին կալաւ և ասէ. «Գիտէի արդարև զդեղ մի. այլ ոչ հաւաստեաւ հմուտ գոլով զօրութեն նորին, ոչ ժտէի 'ի վեր հանել. արդ տուք ինձ աւուրս հնգետասան և կազմեցից զդեղն» : Եւ ընկալեալ զխնդիրն, առաքեաց ժողվեաց յափանցն Ովսա գետոյ խոտս անուշահոտս բազումս, և պատրաստեաց 'ի բաղանիս արքային 'ի լողանալ զոլորշեօք խոտոցն : Ըստ գիտաց իւրն բժշկութին եղև Ալեքսի 'ի դեղոյն. և ամենեքեան հաստատեցան 'ի միտս իւրեանց՝ թէ արդարև գիտէր այրն զդեղն, և յամառէր պնդէր առ չարութե սրտին. Յայնժամ հրամայեաց թագաւորն ձաղկել զնա չարագոյն քան զառաջինն և զերկրորդն, և ապա տուեալ նմա 'ի պարգևի մասին դրամս բազումս, և զերիս տասն, արձակեաց գնալ 'ի տուն իւր. այլ և պատուիրեաց սպառնալեօք՝ մի՛ և մի՛ իւիք գաւանանալ այնուհետև առ կինն իւր :

Բ. Գանձապետ դքսին Լիթուանիոյ՝

որ ընդ այլս 'ի բանտարկելոց կայր յարքունիսն Ալեքսի՛ խօթացաւ երբեմն, և խնդրեաց զբժիշկ, և Ալեքս առաքեաց առ նա բժիշկ զոմն Իտալացի. որ և հարցաքննեալ զհիւանդն՝ պատուէր ետ առնուլ 'ի մաղձադեղ զփրէնձօր փի Բարբարօ, այն է զառեալ մրուր գինւոյ : Անդ մերձ գոլով մի ոմն 'ի ռուս աղայից՝ ուշի ուշով ունկն դնէր խօսից երկոցունցն . առ 'ի լսել անդ զանուն դեղոյն՝ համարեցաւ եթէ զխորհմու թունաւորացն իցեն բանք կալանաւորին և բժշկին . և անյապաղ գնացեալ առ աներն Ալեքսի պատմեաց զիրսն : Իսկ նորա գիտելով զի յայնժամ դաշնակից էին Լեհք ընդ Թաթարս Խրիմու, և զի ախտացեալն իշխանին լեհացի էր, աներկբայ եդ 'ի մտի թէ գու. ինչ նիւթէր նա ընդ բժշկին ընդդէմ պետութեան Ռուսաց . կոչեաց Եղիա զբժիշկն, և սկսաւ յանդիմանել զնա որպէս դաւաճան զդք և մատնիչ . և մինչ նա զամօթի հարեալ կայր 'ի լռութեան՝ ոչ գիտելով ինչ զանձնէ խիղճ այնպիսի, առ ևս քան զևս բորբոքեալ 'ի զայրոյթ բարկութեան, աղաղակէ ցնա . « Այլ ասա՛ ո՛վ դու, զի՞նչ այն ինչ էր զոր խօսէյար զխորհմու Թաթարացն զթշնամեաց Ռուսիոյ» : Յայնժամ անկաւ 'ի միտս բժշկին անուն դեղոյն զոր պատուիրեալ էր ախտացելոյն . և յայտ արարեալ զթանձր պատրանս տղայոյն՝ հազիւ ուրեմն զեր-

ծաւ 'ի մեծէ պատուհասէ. մինչև զի արգելաւ նմա ոչ ևս խնամ տանել հիւանդի ումեք օտարազգւոյ :

Իսկ պատերազմին Ռուսաց ընդ Լեհս և ընդ Թաթարս Նոգայականս Լեհաց վերստին բորբոքեցաւ. էր զի սոքա յաղթէին, և էր զի նոքա. մինչև կայսրն Գերմանացւոց Լէոպոլդ միջնորդ եղև ընդ նոսա՝ առաքելով 'ի Մոսկուա պատգամաւոր զոմն. և Ալեքս ուր ուրեմն զիջաւ 'ի հաշտութիւն խաղաղութեան :

Ընդ այն ժամանակս յամին 1667 ժողով կարգեաց Ալեքս 'ի դատել զպատրիարքն Նիկոն : Սա 'ի մանկութենէ անկեալ 'ի խիստ վարս միանձնութեան՝ խստագոյն գտաւ և 'ի բարս իւր, և առ գժգմնութեն իւրք ընդ ընկերս իւր արտաքսեալ 'ի վանաց անտի՝ եմուտ յայլ վանս, և անդ խըստակրօն վարուքն օրինակ բարի լեալ ամենեցուն ընտրեցաւ առաջնորդ վանիցն. և յերթալ իւրում երբեմն վասն գործոց կրօնին իւրոյ առ Թագաւորն 'ի Մոսկուա, այնպէս իմն հաճոյ եղև Թագաւորին իւրով պերճ խօսիւքն և ճարտարաբանութեամբ, զի յամին 1649 կարգեաց նա զՆիկոն մետրապօլիտ Նովկորոդայ, և յամին 1652 պատրիարգ : Որչափ խիստ էր Նիկոն առ անձն իւր, նոյնչափ գոռոզագոյն լեալ առ այլս. մանաւանդ առ կարօտեալս, բազում նախանձորդս և ատելիս ստացաւ, որոց

գլուխք էին Թագուհին և հայր նորա. և ամբաստանիչք՝ որպէս թէ զհետ պնդեալ նորոգումն կարգաց եկեղեցւոյն՝ աղմուկ և խռովութիւն յարուցանիցէ ։

Զի նա հաւանեալ արքային 'ի սպառ զատոյց զիշխանութիւն պատրիարգին Ռուսաց 'ի յունականէն, ծանուցեալ զայն գրով և առ պատրիարգն Յունաց ։ Բազմացոյց զարքեպիսկոպոսս, զեպիսկոպոսունս, զվարդապետս և զայլ պաշտօնեայս եկեղեցւոյն, և կառոյց չորս մենաստանս մեծամեծս ։ Կարգեաց դպրոցս յուսումն յոյն և լատին լեզուաց, յորոց զընտիր մատեանս ետ թարգմանել 'ի ռուս բարբառ. եմոյծ յեկեղեցիս Ռուսաց զեղանակաւոր երգս լատ այժմու օրինին, և եբարձ 'ի միջոյ զբազում նանրահաւատ կրօնս արմատացեալս յազգին ։ Յայտ է յայսմ ամենայնէ խուռն ծանրութիւն ամբաստանութեանցն զնիկոնէ. զի յայնժամ ծնաւ և աղանդն հերձելոց, որ կոչին Ռասքոլնիկք, ընդդապահք նախնի սովորութեանց եկեղեցւոյն իւրեանց, և բազմապատիկ թանձրամիտ կարգաց ։

Նիկոն հրաժարեցաւ կամովին 'ի պատրիարգութենէ, և մեկնեցաւ 'ի վանս Յարութեան. այլ քանզի դեռ ևս պատրիարգ անուանէր նա, և սիրելի էր Ալեքսի, ամբաստանեցաւ և անդ որպէս բանակցեաց ընդ Լեհս, յորոց առեալ իցէ դրամս յոլովս ։

Յայնժամ կարգեաց Ալէքս ժողով ընդհանուր՝ բերեալ իւրովք ծախուքն 'ի Յունաստանէ երիս պատրիարգունս, քան և եօթն արքեպիսկոպոսունս, և հարիւր եօթնուտասն եպիսկոպոսունս և վանահայրս. և գլխաւորք յեկեղեցւոյն Ռուսաց էին հարիւր և յիսուն: Եւ սահմանեցաւ 'ի ժողովն անդ. ա, Զի Նիկոն արկցի յաթոռոյն և արգելցի 'ի վանս ուրեք մինչև ցմահ. բ, Զի առաջի Թագաւորին և աւագանւոյն ընտրեսցի այնուհետև պատրիարգն, և հաւանութիւն նոցա զօրեսցէ հաւասար կարծեաց արքեպիսկոպոսաց և եպիսկոպոսաց և վանահարց ժողովոյն. գ, Զի մի պատրիարգն Կոստանդնուպօլսոյ ևեթ համարեսցի գլուխ եկեղեցւոյն Յունաց, և մի ևս տացի նմա համար զհասից և զծախուց եկեղեցւոյն Ռուսաց. դ, Զի մի ոք 'ի սոսկականաց իշխեսցէ վաճառել ինչ կամ պարգևել միանձանց և այլոց եկեղեցականաց. ե, Զի պատրիարգն ոչ ունիցի զիրաւունս ձեռնադրելոյ զոք յեպիսկոպոս, կամ կառուցանելոյ մենաստանս և եկեղեցիս առանց հաւանութեան Թագաւորին և աւագանւոյն:

Մինչդեռ այս իրք գործէին 'ի Մոսքուա՝ մի ոմն 'ի Տոնիքի Խազախաց Սթենքօ անուն սկսեալ յելուզակել հինարար 'ի վերայ Վոլկա գետոյ մերձ յԱժտերխան, էառ ապա և քաղաքս

քանի մի, և ապա զպատրաստութիւնս քաղաքապետին Աժտէրխանու, որք եկեալ էին 'ի խորտակել զնա, և խորտակեաց զզօրսն առաքեալս յերկրորդում նուագին 'ի վերայ իւր: Միաբանեալ ընդ իւր և զայլ ոմն աւազակապետ Սէրկէյ կամ Սարգիս անուն, յափշտակեաց նաւակս բազումս 'ի Վոլկայ, և խաղացեալ նոքօք 'ի ծովն Կասպից արեաց ամենայն նաւաց ծովուն, և յաւարի էառ զծովեզերեայսն. այլ և կորոյս զկէս իւրոյ ամբոխին:

Իսկ և ապա եղեն խռովք 'ի Մոսքուա, արձակեցաւ 'ի վերայ Սթենքայ և ընկերաց նորա քաջ զօրավարն Փրոզորովսքի, որ հրամայեաց նմա յանուն Թագաւորին՝ մեկնել 'ի Պարսից և դալ յաշխարհն իւր. և Սթենքօ հնազանդեալ՝ առաքեաց 'ի Մոսքուա յիւրոց անտի արս ութ 'ի խնդրել զթողութիւն: Այլ պատրաստութիւնք նորա դարձուցին յԱժտէրխան ընդ առաջնորդութեամբ զօրավարի ուրումն. զոր զճանապարհայն սպանեալ Խազախայն՝ եկին դարձեալ առ ընկերս իւրեանց. և Սթենքօ նոքօք հանդերձ յարձակեցաւ 'ի Խալմուխս և 'ի Թաթարս, էառ և զքաղաքն Ցարիցին, և յափշտակեաց զամենայն արքունի համբարս և զնաւս որ էին 'ի նմա: Էառ ապա և զԱժտէրխան, սպան զքաղաքապետն, և յաւարի էառ զամենայն ճոխութիւնս քաղաքին. և Թօ-

զեւալ անդ զերկուս յիւրոց սպայից , ինքն դիմեաց վերստին յեղանակել 'ի Բորուսիա · և սպայքն 'ի վերայ այլոց աղետից զոր հասուցին բնակչացն Աժտէրխանու , անհնարին տանջանօք սպանին և զարքեպիսկոպոսն նոցին :

Լուեալ Ալեքսի զաղէտս քաղաքին՝ առաքեաց ընդդէմ ապստամբացն զիշխան Գողոտանովիչ Միխայլովիչի , և նա խորտակեալ միանգամ և երկիցս զզօրս Սթենքայ , պաշարեաց և զԱժտէրխան , և էառ զայն մատնութեամբ ուրումն Չերքեզի , որ խոստանօք ածեալ զապստամբն Սթենքայ 'ի տուն իւր՝ կապեալ ետ զնոսա 'ի ձեռս Միխայլովիչեայ : Անդ և իշխանն Տոլկորուքի հետամուտ էր Սթենքայ · զոր և ձերբակալ արար , և ած 'ի Մոսքուա , և հատոյց անդ Սթենքոյ զվրէժ չարեացն գործելոց :

Յամին 1669 մեռաւ Թագուհին Մարիամ , և Ալեքս առ 'ի կնութեան զՆատալիա դուստր սպայի ուրումն՝ որ կոչէր Նարիշքին , այր խոհական , անաչառ , անկեղծ և հաւատարիմ · որում ետ տղայ և զպաշտօնն Եգիպտի աներոյն իւրոյ առաջնոյ : Նարիշքին մեծապէս նպաստ եղև 'ի նորոգութեան քաղաքավարութեանց յարքունիս և արտաքոյ , և ծաղկեցոյց զարուեստս և զուսումնական վաճառաշահութիւն :

Կարևոր ընծայեցան կարգադրութիւնք Նարիշքինայ և 'ի պատերազմին ընդ-

ծովս։ Բարեկարգեաց և զբանագնա_ցութիւնս քաղաքականս ընդ արտաքին պետութեանց՝ կարգեալ վասն այնորիկ ատեան առանձին։

Կարի աշխոյժ էր Ալէքս, և միանգա_մայն մարդասէր յոյժ և գթոտ և քաղ_ցրաբարոյ. այլ խռովասէր բարք ամ_բոխին հարկեցոյց զնա կարգել գաղտնի ատեան հարցափորձի, յոր յանկարծա_կի ձգեալ ամբաստանողն և ամբաստա_նեալն՝ պատուհաս կրէին ձաղկանաց։ Սակայն ինքն Ալէքս բազում անգամ յայց ելանէր կալանաւորացն 'ի բանտս ատենին, և գութ առնէր նոցա ներո_ղամտութ̃ե։

Պատուիրեալ էր և պատրիարգին՝ զի տացէ ինքեան համառօտ զհամար բազ_մազգունակ անուանեալց կարօտելոց, և ընդոյր առատապէս զկարիս նոցա։ Այլ և զգերիս և զկալանաւորս որ 'ի Լեհաց, 'ի Շվեդաց, և 'ի Թաթարաց՝ կարգեաց 'ի մշակել զանգործ երկիրս Ռուսիոյ, սահմանեալ նոցա ռոճիկ բաւական 'ի կեանս։ Փորձ փորձեաց և բրածոյս հա_նել 'ի Սիբերիոյ, յՈւրալ լերանց, յա_փանց Թուպոլայ և յայլոց տեղեաց. այլ առ 'ի չգոյէ արանց հմտացելոց յայն արուեստ՝ ոչ յաջողեցաւ այն որպէս կամէր, և որպէս այժմ զինի նոքաւ ար_դիւնաւորեցին։

Անդստին յամին 1653 զհետ եղև բարեկամութիւն ընդ Չինս, և առաքեաց

անդր զինչխան ունի 'ի Թագաւորութեան պա-տուական սահմանքնեօք, որ և դարձա-անուհի ոսկւով և արծաթով, և ականմբք և գիպակօք: Այս առաքեցաւ անդր հրեշտակութիւն Պարսքով խաղաղի, այլ 'ի պատճառս իւրոյ ամբարտաւանութեան և յամառութեան՝ որով ոչ կամեցաւ հպա-տակել արարողութեան իրիք յառաջունեան Չինաց 'ի Փէքին, դարձուցաւ յետս յաշխարհն իւր հանդերձ պարգեօքն իւ-րովք:

Եւ մեռաւ Ալէքս ամաց քառասուն և ութից՝ թողեալ ուստերս հինգ և դստերս ութ 'ի Մարեմայ թագուհւոյ. և 'ի Նատալիայ դուստր մի և զդուստր:

## ՓԷՈՏՈՐ Գ. ԱԼԵՔՍԵՑԵՎԻՉ

ԹԱԳԱՒՈՐԵԱԼ Փէոդորայ յինն և տասն ամաց հասակին լի և ճոխ ամենայն կարեւոր հանգամանօք 'ի բարգաւաճել ևս քան զևս զԹագաւորութեան հօրն իւրոյ Ալէքսի, ուխտիւք փափաքելի արար Ռուսաց զերկարժամանակեայ Թագա-ւորութիւն իւր, այլ խառնուած նորա տկար՝ խափան եղև ըղձից ժողովրդեան իւրոյ:

Այլ և յերկրորդ ամի Թագաւորու-թեան նորա փոքր մի ևս և վրդովէր ընդ երկար խաղաղութեան Ռուսիոյ: Զի

նաւաստահմութեն: Եւ զկնի պատերազմին գրուատեալ զխորհուրդ Թագաւորին, զնոյն բանս նորա ձոխագոյն մեկնաբանեաց. մինչև 'ի մի բերան գոչել ժողովականացն. «Եղիցի ըստ բանի սրբազան պատրիարգին»: Գոհացաւ զայս Թագաւորն վասն յօժարամիտ ունկնդրութեն նոցա, և հրամայեաց ջնջել 'ի միջոյ զամենայն ազգահամարս, յանձին զարձուցեալ զամենայն զմուրհակսն 'ի մէջ հրապարակին. և այսպէս նզովս կարդաց պատրիարգն որոց միանգամ իշխեսցեն պարսաւել զգործելին զայն մեծի հրամանի:

Մի 'ի կարևոր բարեկարգութեանցն Ֆէոդորայ եղև փակելն 'ի գիշերի զփողոցս Մոսքուայի, և կարգել 'ի նոսա գիշերապահ զօրս: Բազմացոյց 'ի Ռուսիա երիվարս ընտիրս, և կոչեցեալ ձիավարժս հմուտս յօտար աշխարհաց՝ ետ ուսուցանել պատանեացն Ռուսաց զհեծելութիւն:

Քակեաց զփայտաշէն տունս հասարակաց, և կանգնեաց քարեայս և աղիւսեայս: Գեղեցկացոյց զՄոսքուա, և զայլ քաղաքս բազումս. և որոց չէին ձեռնհաս կառուցանել զտունս իւրեանց ըստ վայելչութե՛ զոր խնդրն կամէր՝ առատաձեռնէր նոցա դրամս և ատաղձս:

Սա նախ փոխեաց և զտարազ լայն զգեստուցն Ռուսաց 'ի ձև լեհացի, առաջին ինքն զգեցեալ զնոյն, և այս իւրոյ աւագորերոյն զգեցուցեալ:

խնամ կալաւ 'ի մեղմել ըստ կարի և զանիրաւ դատապարտութին Նիկոնի, և ազատութին շնորհեալ նմա՝ հրաման ետ գալ 'ի Մոսքուա. և Թերևս 'ի պատրիարքութին ևս հաստուցանէր զնա, այլ նա զճանապարհայն վախճանեցաւ յամին 1681։

Եւ ինքն Ֆէոտոր ախտացեալ տենդիւ՝ իբրև ետես Թէ մերձ է 'ի վախճանել, կարգեաց իւր յաջորդ 'ի Թագաւորութե զեղբայր իւր զՊետրոս, որ էր յայնժամ մանուկ տասնամեայ. զի Թէպէտ և երիցագոյն քան զնա էր Իւան, այլ միօք մանկագոյն էր, և ապուշ, և ըստ խառնուածին տկար։ Եւ մեռաւ Ֆէոտոր յամին 1682, Թագաւորեալ ամս հինգ, փոքր ինչ աւելի. և սուգ մեծ եղև ժողովրդեան իւրոյ։

Եթէ մինչև ցամբառնալ Ռոմանովեանց յաԹոռն Ռուսիոյ՝ գիշեր աղջամուղջին էր տեսանել 'ի մեծի աշխարհին, և վաղվաղնցուկ նշոյլք ինչ երբեք երբեք փայլատակեալք 'ի նմա՝ առաւել ևս աշախիլ զխաւարն որ զկնի՝ գործէին, ժամանակ Թագաւորութեն Միքայելի, Ալէքսի, և Ֆէոտորայ երրորդի արդարև այգալոյս էր զուարԹարար։ Այդ ժամ է տեսանել զարեգակն պայծառ ծագեալ 'ի Ռուսիա Թագաւորութբն Պետրոսի մեծի. որով և անուն պետութե Ռուսաց կալաւ զգերագոյն տեղի յարձանագրութիս աշխարհի։

Այլ աստանօր յակամայս հարկինք ստորագրել համառօտիւ զմրրիկ խռովութիւն որ կանխեաց քան զԹագաւորելն Պետրոսի բացարձակ իշխանութբ̅, 'ի 1682 ամէ մինչև ցամն 1696 :

## ԻՒԱՆ Ե. ԵՒ ՊԵՏՐՈՍ Ա. ԱԼԵՔՍԵՅԵՎԻՉՔ

ՍՈՓԻԱ կին փառասէր՝ քոյր Իւանայ 'ի մօրէ, դժուարեալ ընդ զրկումն եղբօրն իւրոյ յիրաւանց Թագաւորութե՝ գուն գործեաց ոգւով չափ կորուսանել զմայրն Պետրոսի զՆատալիա և զՆարիշքինեանս. և Միլոսլաւսքի եղբայր մօրն Սոփիայ և այլք ոմանք յաւագաբերոյն համբաւեցին՝ եթէ կուսակիցքն Պետրոսի դեղ մահու արբուցեալ են Ֆէոտորայ, և զհետ են զնոյն անցս և ընդ Իւան անցուցանել :

Այսու պատճառանօք որսացան և զյանդգնագոյնս 'ի Սթրելցաց առս իբրև քսան հազար, որք խուռն դիմեալ 'ի Քրեմլին՝ բողոք կալան զինն սպայից՝ կուսակցաց Պետրոսի՝ որպէս թէ պակաս արարեալ իցէ նոցա զհատուցումն ռոճկաց իւրեանց, և սպանին զնոսա :

Կոչեաց Սոփիա զգլխաւորս 'ի զօրապետաց և յաւագանւոյն հանդերձ պատրիարգաւ և եպիսկոպոսօք և վաճառա-

անդր՝ եթէ ոչ տայցեն նոքա 'ի դուրս ։ Զարհուրեալ քերցն Փէտորայ գնացին հանդերձ պատրիարգաւն 'ի տեղի Թաքըստեան Նարիշքինեանց․ ուր պատրիարգն եւ նոցա զարձակուհին 'ի մեղաց, հաղորդեցոյց սբյ խորհրդոյն, և ետ զօծումն վերջին․ և առեալ 'ի մի ձեռս ըզհրաշագործ պատկեր սբյ կուսին, և միւսումն կալեալ զձեռանէ պատանւոյն Նարիշքինայ՝ ել ընդ առաջ Ստրելցացն ։ Այլ նոքա յափշտակեցին զհայրն և զորդին, քարշեցին ընդ սանդուղս 'ի վայր, և խորհուրդ արարեալ՝ յօշոտեցին զպատանին և զՎանկատ, և զգլուխս և ըզձեռս և զոտս նոցա անցուցին 'ի ծայրս վանդակաց տպարանիցն․ իսկ զծերունին Նարիշքին ածեալ բռնութբ 'ի մենաստան ուրեք՝ հարկեցուցին կրօնաւորել անդէն ։

Այս արկածք ամենայն գուշակք էին դեռ ևս հանդերձելոց աղետիցն․ և Սոփիա այնպէս իմն կեղծէր, իբրու թէ ինքն ատիցէ զարարս Ստրելցացն, և զանգթութին նոցա․ որպէս զի եթէ երբէք ձախողեսցին իրք նորա՝ պատճառս խուսափելոյ գտանիցէ ։ Իսկ Ստրելեցքն կարդացին Թագաւորս զԻւան և զՊետրոս միանգամայն, և խնամակալ պետութեն զՍոփիա ըստ փառամոլ ըղձից նորին ։

Նախկին գործ տնտեսութե իւրոյ արար նա՝ զվարձահատոյցն լինել գաւակ-

նութի զդաւաճ Զօլթիքովսկոյ ստրե-լացւոյ յամին 1684 :

Մինչդեռ պալատականքն ամենայն 'ի խնջոյս հարստանեացն էին, դարձեալ աղ-մուկ մեծ յարուցին Ստրելեցքն . զի Քավանսքի զօրագլուխ նոցա նախանձու սրտմտութեն վառեալ ընդդէմ Կոլեցի-նայ՝ որոյ իշխանութեցն ինքն ակն ու-նէր հասանել, իբրև առաւել երախտա-ւոր առ Սոփիա, եդ 'ի միտ սպանանել և զթագաւորսն և զՍոփիա և զեղբարս նո-րա և զամենայն կուսակիցս արքունի տոհմին :

Զահի հարեալ Սոփիա յամենայն աղա-ղակէ անտի, և աճապարեաց խոյս ետ ընդ թագաւորացն և ընդ այլոց պալա-տականաց 'ի մենաստան մի երրորդու-թեանն . և անդր ձայնեալ զՔավանսքի՝ որպէս թէ 'ի խօսել ընդ նմա, ձերբա-կալ արար զնա 'ի ձեռն դարանակալաց՝ զորս եդեալ էր մերձ 'ի պարիսպ անդր մենաստանին, և անյապաղ գլխատեաց զնա և զորդի նորա :

Զայն լուեալ Ստրելցեաց՝ յարձակե-ցան առ հասարակ 'ի մենաստան անդր՝ և սպառնային 'ի հուր և 'ի սուր մաշել զամենեսեան : Իբրև ազդ եղև աւագացն և ամենայն ազատանւոյն վասանց արքու-նի տոհմին՝ դիմեցին և նոքա իւրեանց ամբոխիւ 'ի տեղին, այլ պատրիարգն ճարտար և հզօր բանիւք ցածոյց ըզ-բարկութիւն Ստրելցացն, և աղերսիւ

որպէս զի 'ի գալ Ռուսաց հրկիզին 'ի Խրիմ՝ ունիցին անդ 'ի պատրաստի զէնս և համբարս:

Իբրև դարձաւ Կոլիցին 'ի Մոսկուա, խնջոյս ուրախութեն կարգեաց Սոփիա ժողովրդեանն, և բաշխեաց պարգևս զօրավարացն և զօրաց՝ որպէս թէ յաղթանակաւ առեալ էր նոցա զԽրիմ:

Առաւել քան զամենեսեան ծանրացաւութիւն լինէր ընդ այս ամենայն Պետրոսի՝ որ չորեքտասանն ամաց էր յայնժամ, և չէր հաճ ընդ անիրաւ լուծութիւն դաշանցն՝ զոր 'ի քսան ամաց հետէ կըռուեալ էին Ռուսք ընդ Օսմանեանս. այլ ոչ կարաց արգելուլ զԿոլիցին 'ի դիմելոյ երկրորդ անգամ 'ի Խրիմ: Որ նորա ոչ ինչ գործ քաջութեն արարեալ, այլ և զմեծ մասն բանակին 'ի պատերազմի կորուսեալ, դարձաւ անդրէն 'ի Մոսկուա ամբարտաւանութե՛ իբրև յաղթական ոք: Պետրոս բանադատեալ 'ի Սոփիայ՝ եւ նմա ընդ առաջ իբր 'ի պատճառս այլոյ, և այնչափ խիթն թշնամանօք և կշտամբութեամբ պատահեաց նմա, զի Սոփիայ 'ի ցասութին սրամտութե բորբոքեալ՝ եգ 'ի մտի բառնալ 'ի միջոյ զՊետրոս զխէթ սրտի իւրոյ 'ի ձեռն գլխաւորի ուրուք 'ի Ստրելցաց:

Ազդ եղև Պետրոսի գաւն. և փախուցեալ 'ի մենաստանն երրորդութե, կոչեաց զաւագանին որ յիւր կողմն էին, և զօրս որչափ ձեռնհաս էր. և

թէպէտ Սոփիա զայն գործեաց որպէս զՍթրելեցան, այլ զօրացաւ բարքանն Պետրոսի, որ հրապարակեաց զանօրէն դաւաճանութիւն նիւթեալ ընդդէմ իւր և մօր իւրոյ. և խստիւ պատուհասեցան դաւադիրքն ամենայն: Կոլեցին զերծեալ 'ի մահուանէ 'ի պատիւ երեսաց ազգակցին իւրոյ մտերմին Պետրոսի՝ աքսորեցաւ 'ի Քարկոպոլ՝ հանդերձ կնաւն և որդւովք, և անտի 'ի Փուսթոսերաք, ուր և մեռաւ յետ քսան և չորից ամաց. իսկ Սոփիա արկեալ յիշխանութէ խնամակալութեան՝ փակեցաւ 'ի մենաստանն, զոր իւր իսկ շինեալ էր մերձ 'ի Մոսքուա. և իւն անցուցեալ յառանձնութեան զմնացուածս աւուրց իւրոց՝ մեռաւ յամին 1696:

Այժմ ահա ածցուք 'ի ճառել ըզգործս Պետրոսի մեծի, որոց սակաւ ունին զուգականս պատմութիւնք անցից աշխարհի:

## ՄԵԾՆ ՊԵՏՐՈՍ

ՄԱՐԴԻԿ ընդաբոյս բերմամբ 'ի նախնեացն աւանդս և 'ի կանխակալ սովորոյթս յախուռն և առանց քաջիկ ընտրողութեան կապեալք, նախօրինակ իմն զօրութեան կարօտացեալ գտանին առ 'ի սուղ ժամանակի վերստանելոյ 'ի ճաշակ-

տաւութի քաղաքականութեան և ռազմ-
նաւորութեան : Այսպիսի ինչ զօրութիւ
յարոյց Աստուած՝ օրէնսդիր և նորոգող
Ռուսիոյ զՊետրոս Ա. ճոխացուցեալ
զնա ամենայն կարևոր հանգամանօք 'ի
գործն մեծ , այս է Ճշգրիտ ընտրութիւ ,
ուշիմ հանճարով , անյողդողդ հաստա-
տութիւ , եռանդուն աշխուժութիւ , ան-
մեղկելի սիրով արդարութեան , և անվրէպ
հմտութիւ բարուց մարդկան :

Մի միայն Թերութիւն երբեք երբեք
մԹացուցիչ այսր ամենայնի գեղեցիկ
կատարելութեանց նորա էր խստութիւն բա-
րուցն , որով կարծիս ետ երբեմն և ա-
նագորոյնութեան . և այն արդարև էին
խժական դաստիարակութեան յոր սնեա-
նա 'ի տղայ տիոց : Երկիւղ յայժ ունէր
'ի նաւարկելոյ . և անդամ ընդ առու
փոքրիկ անցեալ՝ ահաբեկանէր . սակայն
տորմիղս նաւաց կամեցեալ հանել 'ի
ծով յաղթեաց բնութեան իւրում , և
զուարճալի արար անձին զնաւագնացն
լինել : Եւ ոչ յայսմ միայն , այլ և յա-
մենայնի յոր միանգամ կրթել կամէր
զազգն իւր , նախ զանձն 'ի նմին կիրթ
և վարժ կացուցանէր :

Յաւանն Փրէօպրաժենսքոյ մերձ 'ի
Մոսքուա՝ ուր յաճախ զբօսանէր , կազ-
մեաց գունդ փոքրիկ յիւրոց ընկերակ-
ցաց և յազատորդւոց աստորեբոյն յա-
րելոց 'ի նա . և ինքն իսկ զմի 'ի զինուո-
րաց անուն մարզէր 'ի ներքոյ ձեռին Լե-

ֆոռ անուն սպայի զինուացելոյ, ընդ որում սէրս բարեկամութեան կապեալ՝ անմեկնելի պահէր առ իւր ։ Ի նմին գնդի կարգ ըստ կարգէ ամբարձաւ Պետրոս 'ի թմբկահարութէ 'ի զինուո_ րութե, 'ի տասնապետութե, 'ի յիսնա_ պետութե և 'ի հարիւրապետութե ։ Եւ առ սակաւ սակաւ գունդն այն եղե խումբ զօրաց բազմաց՝ անուանեալ Փրէօպրաժենսքի ։ Ի նմին ամի տաս_ սաձիր վարձուց խոստմամբք հրաւի_ րեալ Պետրոս սպայս 'ի Հոլանդիոյ, յԱնգղիոյ և 'ի Գերմանիայ. և եւս ձոխա_ ցաւ գունդն Լեֆոռայ, յորում և Պե_ տրոս զինուորեալ էր ։ Այլ և Կորտոն ոմն Սկովտ յազգէ՝ ունէր ընդ իւրև արս հինգ հազար, յորս սակաւք յոյժ բնիկ Ռուսք էին ։

Սոքա ամենեքեան անդադար էին 'ի վարժս մարզից. և Պետրոս ըղձացեալ փորձ փորձել քաջութեան նոցա՝ հրա_ մայեաց շինել գղեակ մի, զոր կէսք ու_ նէին պաշտպանել, և այլք պաշարել ։ Ի պաշարողաց անտի էր Լեֆոռ իւ_ րովքն, և 'ի ժամ յարձակմանն՝ ուր ո_ մանք մեռան, և ոմանք խոցեցան, վէրս էառ և Լեֆոռ. և Պետրոս զուարճա_ ցեալ յոյժ ընդ հանդէսն՝ կառոյց Լե_ ֆոռայ պալատ գեղեցիկ ըստ արդի ճարտարապետութե ։

Ուշ կալեալ Պետրոս ընդ ցամաքային զօրաց բազմացուցանել և ծովային,

չինաք։ Կոլոմլէին քաղաքապետ տեղւոյն կամեցեալ ցուցանել Չինաց՝ թէ ոչ նուազ ևեթ են յաշխարհէ նորա ձոխք և հզօրք, որպէս կարծէին, սփռեաց 'ի յատակս խորանին իւրոյ շքեղ կապերտս և պաստառս Տաճկաց և Պարսից, և տողեաց շուրջանակի անօթս ոսկւոյ և արծաթոյ։ Եւ հաստատեցաւ պայման ուխտին 'ի լատին բարբառ, յորում սահման երկոցունց պետութեանցն կարգեցաւ գետն Կորպիցա. և ապա երկուս գաղափարս արարեալ պայմանին՝ ստորագրեցին երկուստեք. և կանգնեալ արձան 'ի տեղւոջն՝ փորագրեցին և 'ի նմա զպայմանս ուխտին։

Զայնու ժամանակաւ տեսեալ Օսմանեանց զՊետրոս 'ի կարծեցեալ անփութութե զտեսչութէ իւրոյ աշխարհին՝ ժամանակ պատեհ համարեցան հեռագոյն զնա և զարքայն Լեհաց կացուցանել 'ի բարեկամութէ Գերմանացւոց, ընդ որս պատերազմ էր նոցա յայնժամ. և գաղտ 'ի միմեանց բանագնացս ձեռնէին ընդ Ռուսս և ընդ Լեհս։ Այլ Լեհափոխն 'ի վեր հանեալ զգաղտն, աղաչեաց զերկուս թագաւորսն միաբանել ընդ իւր ընդդէմ Օսմանեանց։ Յանձն էառ Պետրոս, և յերկուս բաժանեալ զզօրսն՝ զԿառտոն հինգ հազարաւն և զԼըֆոռ երկոտասան հազարաւն առաքեաց յԱզով ընդ ափունս Տոն գետոյ, և զՇերեմեթով Սթրել-

ցքն և խաղախոզք՝ տրտմիք երրև ութսուն հազարաւ արձակեաց 'ի խափանել զարշաւանս Թաթարաց ընդ գետեզերս Տնեբերայ. և Քըլայն բրուսացի գայր ածէր զհրաղէնսն և զմեքենայս: Իսկ Պետրոս յայնժամ ըստ զինուորութեան կարգի ընդ առաջայն էր:

Այլ դժուարին էր առնուլ զքաղաքն Ազով ընդ ցամաք և եթ. զի ամուր էր քաղաքն և պաշտպանեալ ինդ, և քաղաքապետ նորին այր փորձ իրաց պատերազմի: Այլ և ոմն 'ի Տանզիկ քաղաքէ ցասուցեալ ընդ Քըլայնի, բեւեռեաց եխից զթնդանօթսն, և փախուցեալ յԱզով դարձաւ յայլազգութիւն: Յայնժամ և Պետրոսի խնայեալ 'ի ժողովուրդն, յորոց երեսուն հազարք անկեալ առ քաղաքաւն, դարձաւ 'ի պաշարմանէ անտի: Սակայն ոչ ինչ տրտաբեկ լեալ՝ զժամանակ ձմերայնոյն ծախեաց 'ի կազմել զնաւսն զոր սկսեալ էր շինել 'ի նաւահանգիս Վորոնեժ քաղաքի՝ բերեալ յայլոց աշխարհաց Եւրոպայ արս ճարտարս 'ի յօրինել և 'ի վարել զնաւսն:

Զօր գումարեաց առաջ 'ի Խալմուխաց, որք յաջողակք էին 'ի հեծելութե հանգոյն Թաթարացն Խրիմու. և խաղացեալ պատրաստագոյն զօրօք քան զառաջինն յԱզով, էառ զայն, և ևս ամրացոյց. շինեաց 'ի նմա դղեակս, և նաւահանգիստ մեծ. և առ 'ի տիրել կղզեացն

զի ուսցին կերտել և վարել նաւս մեծամեծս. առաքեաց և այլս քառասուն 'ի Հոլանդիա յուսումն կառուցանելոյ պատերազմիկ նաւս. դարձեալ և զայլս առաքեաց 'ի Գերմանիա, զի մարզեսցին 'ի զինուորական կարգս աշխարհին:

Եւ ոչ այնու շատացեալ, ըղձանայր անձամբ ուսանել զամենայն զարուեստան՝ զոր բարգաւաճել կամէր յաշխարհին իւրում. վասն որոյ եդ 'ի մտի ճանապարհորդել որպէս սովորական ոք ընդ ամենայն Եւրոպա, և անձամբ հմտանալ կարևորաց:

Իբրև կոչեաց զաւագանին և յայտ արար նոցա զխորհուրդ իւր, նոքա 'ի մի բերան զդէմ կալան խորհրդոյն. չէ օրէն չէ արժան, ասէին, ընդ օտարազգիս օտարահաւատս խառնել զբարեկամութիւն և զկենցաղավարութիւն. մի՛ ջանասցուք լաւ քան զհայրն մեր երևել: Այս խմոր մանրահաւատ տգիտութե յուզեաց զամենայն ժողովուրդն. և Սոփիա 'ի վանս անդ յոր արգելեալն էր՝ անշէջ ունելով զոգին վրէժխնդրութեան ընդդէմ Պետրոսի, և նա և ժողովուրդն, և Սթրելեցքն և ազատանին և ուխտ եկեղեցւոյն վառեցան յապստամբութիւն ընդդէմ թագաւորին, և խորհուրդ արարին դաւել զնա 'ի ձեռն երից ոմանց՝ Ցիքլերայ, Փուշկինայ և Սոկովնայի: Այլ մի ոմն 'ի մտերմաց Ցիքլերայ յայտնեաց Պետրոսի զդաւն, և երեքեան նոքա ձերբակալ

զի ուսցին կերտել և վարել նաւս մե-
ծամեծս. առաքեաց և այլս քառասուն
'ի Հոլանդիա յուսումն կառուցանելոյ
պատերազմիկ նաւս. գործեալ և զայլս
առաքեաց 'ի Գերմանիա, զի մարզեսցին
'ի զինուորական կարգս աշխարհին:

Եւ ոչ այնու շատացեալ, ըղձանայր
անձամբ ուսանել զամենայն զարուեստն՝
զոր բարգաւաճել կամէր յաշխարհին
իւրում. վասն որոյ եդ 'ի մտի ճանապար-
հորդել որպէս սոսկական ոք ընդ ամե-
նայն Եւրոպա, և անձամբ հմտանալ կա-
րեւորաց:

Իբրև կոչեաց զաւագանին և յայտ ա-
րար նոցա զխորհուրդ իւր, նոքա 'ի մի
բերան զդէմ կալան խորհրդոյն. չէ օրէն
չէ արժան, ասէին, ընդ օտարազգիս օտա-
րահաւատս խառնել զպարկեշտութիւն և
զկենցաղավարութիւն. մի՛ ջանասցուք լաւ-
քան զհարսն մեր երևել: Այս խմոր
նանրահաւատ ազդուաւն յուզեաց զա-
մենայն ժողովուրդն. և Սոփիա 'ի վանս
անդ յոր արգելեալն էր՝ անշէջ ունելով
զոգին վրէժխնդրութեան ընդդէմ Պետրո-
սի, և նա և ժողովուրդն, և Սթրելեցքն
և ազատանին և ուխտ եկեղեցւոյն վա-
ռեցան յատելութիւն ընդդէմ Թագաւո-
րին, և խորհուրդ արարին զաւել զնա
'ի ձեռն երից ոմանց՝ Ցիքլերայ, Փու-
շկէքինայ և Սոքովնոյի: Այլ մի ոմն 'ի
մտերմացն Ցիքլերայ յայտնեաց Պետրո-
սի զդաւն, և երեքեան նոքա ձերբակալ

եղեն և պատուհասեցան. իսկ Մոսկուա անդադարոյն զգուշութեամբ արգելեալ մնաց 'ի վնասն :

Յայնժամ Պետրոս աւանդեալ զիշ-խանութիւն աշխարհին 'ի ձեռս Սթրէ-ժենեվայ և Ռոմոդանովսքեայ աւա-գաց, և թողեալ 'ի Մոսքուա զկոմսն զօրավար Իւրով զնդաւն, և զՍթրելեցսն բաշխեալ 'ի սահմանագլուխս Խրիմու, մեկնեցաւ յաշխարհէն և յուղի անկաւ : Ընդ առ անծանօթ մնալ օտարաց՝ կար-գեաց հրեշտակութիւն մեծ, յորում էին Լըֆորտ զօրավար, Կոլովինն կուսակալ Սիպերիայ, Վոզնիցին խորհրդական պե-տութեան, երկոտասան արք աւագք, կըր-կին արքայանեակք առ մի մի դեսպան, և յիսուն զօրականք՝ իւրեանց սպասիւք. ընդ ամենայն ոգիք երկերիւր՝ ամենե-քեան 'ի գնդէն Փռէօպրաժենսքի: իսկ նա ընդ ամբոխին էր և Պետրոս՝ երկրաւ ևեթ ունելով սպասաւորս, և թղթուկ մի :

Յայնչափ ամբոխէ հետաքննին մարդ-կան կասկած երկիւղի կալեալ քաղաքա-պետն Րիկայի, մանաւանդ իբրև ոմանք 'ի նոցանէ ախտեալք ընդ հրապարակն ընդօրինակէին զդիրս վայրացն, և այլք չափէին զխրամս քաղաքին. վասն որոյ կարգեաց ամենայն ուրեք դէտս և պա-հանորդս, զի մի՛ անխափան մնասցեն օտա-րականքն յարքունի տեղիս. և զայս խըս-տութիւն նորա յետ ժամանակաց կալաւ Պետրոս 'ի պատճառս պատերազմի :

Ի Պերլին ցրուեցաւ ամբոխ դեսպանացն 'ի խումբս խումբս. և Պետրոս հընդերտասան աւուրբք կանխեալ յԱմստերդամ քան զընկերս իւր՝ եմուտ 'ի ձև նաւավարի, և գնացեալ 'ի մերձակայ գիւղն Սարտամ՝ ուր կառոյցք էին նաւուց բազմաց, խառնեցաւ ընդ հիւսանսն և վաստակէր ընդ նոսա ժրաջան փութով: Անտի երբեմն երբեմն գնացեալ յԱմստերդամ, ունկն դնէր դասախօսութեան երևելւոյն Ռուիսքիոսի, և ուսանէր զվիրաբուժականն արուեստ. և զբնաբանութիւն ուսանէր 'ի տան քաղաքապետին, և 'ի պարտիզին Պոէրհաւայ, և ուշի ուշով 'ի միտ առնոյր որչափ ինչ կարևոր պէտք էին 'ի կանգնումն Համալսարանի:

Ի նոյն միտս թողեալ առ ժամանակ մի զՍարտամ՝ գնաց անտի յՈւթրէքթ և 'ի Հայկա 'ի տեսանել զարքայն Անգղիոյ, և գտեալ զմուտ և զընդունելութիւն դեսպանաց իւրոց: Յառաջ քան զերթն 'ի Հայկա լուեալ զերկպառակութիւն աւագորերոյն Լեհաց, որոց կէսք ընտրէին 'ի թագաւոր զկայսրընտիրն Սաքսոնիոյ, և կէսք զիշխանն գաղղիացի զՔոնթի, յղեաց պատուէր հրամանի առ զօրսն Ուքրանիոյ՝ զի պատրաստեսցին երեսուն հազարաւ խաղալ 'ի թիկունս կայսրընտրին:

Ի Հայկայանց իւրովքն դեսպանօք 'ի Ռիսվիք 'ի փոխադարձ այցելութիւն

ամենայն մեծամեծաց և դեսպանաց՝ որք անդր գումարեալ էին վասն ժողովոյ։ Անդ եառ զլուր յաղթութեան՝ զոր տարեալ էր Շէյն 'ի վերայ Օսմանեանց և 'ի վերայ Թաթարացն Խրիմու։

Դարձ արարեալ Պետրոսի վերստին 'ի Սարդամ, բաց յայլոց իրաց կատարեաց իւրով ձեռամբ զնաւ մի՝ որ տանէր Թընդանօթս վաթսուն, զոր և սկսեալ էր կառուցանել ամսոց յառաջագունոյն որ էին ընդ նմա, և առաքեաց զայն յԱրքանկել։ Ուղղագրեաց զաշխարհացոյց Թուղթս տէրութեն իւրոյ, և առաքեաց 'ի Ռուսիա արուեստագէտս յամենայն կարգէ։ Այլ գնացեալ ընդ իւրն յԱնգղիա՝ ուսաւ կատարելապէս զարուեստ նաւակերտութեն, և զուսումնականն և զաստղաբաշխականն. անդ եւս հրաման և վաճառականացն Անգղիացւոց յաճախել 'ի Ռուսիա, և տանել անդր զքթախոտ ևս, որ գարշելին էր Ռուսաց, և պատրիարքն իսկ արգելեալ էր զայն իբրև զպիղծ ինչ։

Գուլիելմոս արքայն Անգղիոյ հանդիսացոյց առաջի Պետրոսի զտեսիլ նաւական պատերազմի, և տայր եւ նմա 'ի պարգև զնաւն՝ որով ինքն երթևեկէր 'ի Հոլանդիա. և Պետրոս առաքեաց զնոյն յԱրքանկել երիւք նաւապետօք պատերազմիկ նաւուց, քսան և հինգ նաւավարօք, քառասուն փոխանորդօք սպայից, երեսուն վիրաբուժիւք, եր-

կերիւր և յիսուն թնդանօթաձիգ մարտկօք. և երեքարիւր ձեռագինօք : Յաղթանակ պերճ քան զյոլով թագաւորաց զյաղթանակս և զաշխարհակալութիւնս : Զնոյն առնէր և Շէրէմէթով շուրջ եկեալ 'ի քաղաքս Խոալիոյ :

Պետրոս յԱնգղիոյ անց 'ի Գերմանիա 'ի զննել զկրթանս զինուորացն գերմանացւոց : Եւ այն ինչ կամէր անցանել 'ի Վէննայէ 'ի Վենետիկ՝ ազդ եղև նմա թէ աղմուկ խռովութեան է 'ի Ռուսիա : Քանզի նորաձեւութիւնքն Պետրոսի դեռ ևս չփոխէին զմիտս Ռուսաց, և կուսակիցքն Սոփիայ որսացեալ զՍթրելեցն ցրուեալս առ սահմանօք Լիթուանիոյ՝ ապստամբեցուցին զնոսա 'ի ներքուստ ձեռին զօրավարացն. և նոքա խաղացին դէպ ուղիղ 'ի Մոսքուա՝ թագաւորեցուցանել զՍոփիա : Այլ զօրավարքն Շայն և Կոռտոն յարձակեալ ընդդէմ նոցա՝ իբրև ոչ կարացին հաւանողական և ոչ սպառնական բանիւք ամոքել զնոսա, արձակեցին 'ի վերայ զհեծելազունդն, յորոց այնպէս իմն զահի հարան Սթրելեցքն, զի անդէն արկեալ 'ի բաց զզէնս իւրեանց՝ խնդրեցին զներումն :

Այն ինչ գրեալ էին զօրավարքն առ Պետրոս՝ թէ զի՞նչ արասցեն Սթրելեցացն՝ որովք լի էին բանտք և կապարանք, ահա ինքն իսկ Պետրոս երևեցաւ 'ի Մոսքուա : Կամէր սպանանել զՍոփիա,

այլ Լըֆոռ փիջոյց զնա 'ի ցասմանէն. կամեցաւ գէթ պատուհասակոծ առնել զնա բանիւք կշտամբանաց. սակայն Սոփիա առեալ զանձամբ զկերպարանս քեռ անմեղի՝ այնչափ աղերս արկ առաջի, մինչև յարտասուս շարժել զՊետրոս: Յայնժամ զամենայն զցասումն իւր թափեաց Պետրոս 'ի Ստրելեցսն, մանաւանդ զի պնդեցին զանձինս՝ չյայտնել զպատճառս և զգլխաւորս ապստամբութեն : Երկու հազարք 'ի նոցանէ՝ հանդերձ իւրեանց սպայիւքն և քանի մի երեցամբք 'ի մահ դատապարտեցան. երկու նաժիշտք Սոփիայ և Մարթայի քեռ նորա՝ որք թուղթս 'ի Սոփիայէ առ Ստրելեցսն տանէին և բերէին, կենդանւոյն թաղեցան. և երեքհարիւրք յազատանւոյն 'ի ձեռն այլոց ազատաց գլխատեցան: Ղուրջանակի զմենաստանաւն յորում էր Սոփիա և քորք իւր՝ կախաղանք պատրաստեալ էին, և կախեցան 'ի նոսա Ստրելեցքն հաւատարմագոյնք առ Սոփիա. այլ և երեք ոմանք 'ի նոցանէ՝ որ գրով պաղատանաց հրաւիրեալ էին զՍոփիա 'ի գահ՝ 'ի վանդակապատս երկաթիս պատուհանից նորա կախեալ սպանան, և 'ի նոսա որ գրեացն զաղերսագիրն՝ 'ի ձեռին ունէր զայն: Մի ոմն 'ի պատրաստելոցն 'ի գլխատումն գոչեաց առ այլս՝ տեղի տալ 'ի բաց, զի ինքն նախ առցէ զմահացու հարուածն. յորմէ 'ի գութ շարժեալ Պետրոսի՝

զերծոյց զնա, և այլ ևս օգնս եօթն հազար, և վարեաց ընտանեօք նոցին հանգերձ 'ի Սիպիր, և զայլ Սթրելեցան յԱժտէրխան և յԱզով, արկեալ զամենեսեան 'ի զինուորական պաշտամանէն. և փոխանակեցին զտեղիս նոցա կանոնաւոր գունդք ութուտասն հետևակ զօրաց, և երկու վաշտք հեծելոց:

Որչափ խիստ գտաւ Պետրոս 'ի պատուհասել զյանցաւորսն, նոյնչափ ևս առատաձեռն եղև 'ի պարգևս առ վաստակաւորսն. հաստատեաց զկարգ ասպետութեան սրբոյն Անդրէի, և զնշան պատուոյն բաշխեաց ամենայն զօրավարաց արիացելոց 'ի պատերազմունսն ընդ Թաթարս և ընդ Օսմանեանս: Եւ 'ի մեռանել Լըֆորայ ընդ այն աւուրս՝ արար նմա յուղարկաւորութիւն մեծ յոյժ, յորում ինքնին գնայր 'ի ձև ռամկի զհետ այլոց զօրավարաց:

Այնուհետև վերստին ձեռն արկեալ Պետրոսի 'ի նորոգութիւն պետութեն՝ բազմացոյց զզօրսն զցամաքայինս և զծովայինս. կարգաւորեաց զտուրս հասից և բաժից. հաստատեաց վարժոցս նաւավարութե և լեզուագիտութե, և ետ թարգմանել և տպագրել գիրս բազումս զգիտութեց և զարուեստից, և առանձին հրովարտակաւ պատուիրեաց ամենեցուն ուղեգնացութիւնս առնել՝ զի հմտասցին արտաքնոցն իրաց:

Ջանն ետ սկսանել Ռուսաց 'ի յուն-

վարէ, զի յառաջ 'ի սեպտեմբեր ամսոյ
առնէին սկիզբն. այլ կամեցեալ բառ-
նալ զհանդերձեան երկայնս և զմօրուս՝
պատուիրեաց պալատականացն անմօ-
րուս երևել առաջի իւր՝ գաղղիական
վերարկուաւ և եռանկիւնի գլխանո-
ցաւ: Իսկ վասն ամբոխին, որ պնդա-
պահք էին նախնի սովորութեանց, կար-
գեաց հարկս ըստ մօրուաց և ըստ պճղ-
նաւոր զգեստուց. և զգաղափարս վեր-
արկուացն զորս կամէր ագուցանել նո-
ցա՝ կախեաց 'ի դրունս քաղաքին: Եւ
զայս ամենայն հոգացաւ առնել, զի մի
այլ ևս գարշեսցին Ռուսք յայլոց եւ-
րոպականաց, յորոց ունէին ուսանել զա-
րուեստս և զգիտութիւնս:

Իսկ ամբոխն երիցամբքն հանդերձ
բռնաւոր և անհաւատ ևս կոչէին զնա
վասն այսր ամենայնի նորաձևութեանց:
Ծերքն հարկեալք 'ի բաց զմօրուսն ար-
կանել՝ պահէին զայն զգուշեաւ իբրև
զգանձ ինչ պատուական, զի ընդ իւ-
րեանս թաղեսցին. և ոմանք յազգա-
տոհմոյն յակամայս ուղևորեալք 'ի
Փարէզ և 'ի Վենետիկ և այլուր, և ար-
գելեալ զանձինս յիջևանսն՝ յորս ա-
գանէին, այլ դարձ արարեալ պար-
ծէին՝ թէ չէք բնաւ նոցա տեսեալ ինչ
և կամ ուսեալ: Այս ամենայն բըռնու-
թիւնք փոխանակ լքուցանելոյ զՊետրոս՝
առաւել ևս խրախուսէին զնա յառա-
ջիկայսն և 'ի ծանրագոյն փոփոխմունս:

Պատուիրեաց զի մի ոք չև յարբունս հասեալ՝ մտցէ 'ի կրօնաւորական վարս. արգել եպիսկոպոսաց վարել զաշխարհական իշխանութիւն և զձօխութիւն. և որ մեծն է, պատեհ առեալ զմահ Ադրիանոսի պատրիարգին՝ չեդ 'ի նորա տեղի զայլ ոք, այլ զանձն ասաց գլուխ եկեղեցւոյն Ռուսաց՝ ըստ օրինակի Թագաւորին Անգղիոյ. և զպաշտօն պատրիարգութեան յանձն արար Սինհոդոսի միում՝ որոյ ինքն էր գլուխ, և անդամք՝ երկու փոխանորդք նախագահին, չորք խորհրդականք, և չորք դատողակիցք, ամենեքեան ընտրեալք յեպիսկոպոսաց և 'ի վարդապետաց։

Յետ այնորիկ առ 'ի պարապեցուցանել զմիտս Ռուսաց 'ի նորաձեւութեց անտի 'ի պատերազմականս, կամեցաւ առնուլ 'ի Շվեդաց զԻնկրիա, զի և 'ի Պալթիկ ծովուն կալցի զնաւահանգիստ։ Վասն որոյ միաբանեալ ընդ Թագաւորացն Դանեաց և Լեհաց ոսոխացն Կարոլոսի ԺԲ, Շվեդաց արքայի, որք և երկուստեք յարձակեալ աւերէին զաշխարհն Շվեդաց, յամին 1699 առաքեաց խնդրեաց 'ի Կարոլոսէ իրաւունս վասն Թշնամանացն՝ որովք Թշնամանեալ ասէր զանձն իւր 'ի ճանապարհորդել իւրում 'ի Րիկա։ Յաւել 'ի նոյն և այլ պատճառս, և խաղացոյց 'ի Մոսքուայէ զյառաջապահ գունդն, պատրաստեալ և ինքն գնալ զհետ նոցա

Մնացելովքն 'ի պաշտպանել զՆարվա · այլ կամեցեալ բերան 'ի բերան խօսել ընդ Օգոստեայ արքային Լեհաց՝ որ եկեալ էր 'ի Նովկորոտ՝ յանձն առնուլ զամենայն զզօրսն 'ի դուքսն Քռուա, որով վրիպակ մեծ գործեաց :

Քանզի եհաս 'ի վերայ նորա Կարոլոս բազմութ̃ք զօրաց, և կոտորած մեծ հատոյց Ռուսաց, և զդուքսն հանդերձ այլովք ոմամբք սպայիւք ձերբակալ արար · ապա զնոսա 'ի գերութեն կալեալ՝ զայլ զօրականն արձակեաց ազատս : Ի հռչակաւոր մարտի անդ Նարվայի անկան 'ի Ռուսաց ոգիք քսան հազար, և 'ի Շվեդաց երկու հազար : Եւ առին Շվեդք թնդանօթս հարիւր քառասուն և հինգ, ռմբաձիգս քսան և ութ, դրօշս հարիւր յիսուն և մի, նշանս քսան, թմբուկս երկոտասան, և զամենայն զկահ և զհամբար բանակին Ռուսաց :

Ցաւեաց յոյժ Պետրոսի բեկումն այն, այլ իւրով բնիկ արութ̃ն ասէ ցՇէրէմեթով սպարապետ հեծելազօրուն · «Գիտեմ իսկ էի թէ յոլով անգամ յաղթիլ ունիմք 'ի Շվեդաց · այլ հուսկ ուրեմն յաղթեսցուք նոցա : Խոյս տացուք առ այժմ 'ի մեծամեծ պատերազմաց, և փոքումբք աշխատ արասցուք զնոսա» :

Տեսեալ Պետրոսի՝ զի Կարոլոս ոչ յառաջ ևս վարէ զյաղթանակն, այլ 'ի Լեհս անդր ուշ առնէ, դարձաւ 'ի

Մոսքուա մնացեալ զօրօքն, ձուլեաց թնդանօթս երկերիւր քառասուն և երկուս, և ումբաձիգս երկոտասան, հալեցուցեալ զզանգակս մեծամեծ քաղաքաց աշխարհին. և կազմեաց երկոտասան գունդս առաջաւորաց որ հեծելոց: Այս յամին 1701 իբրև ետես թէ բաւական ձեռն է նորա պայքարել ընդդէմ Շվեդաց, առաքեաց 'ի Լիվոնիա զՇէրէմեթով ութուտասան հազարաւ: Ի թիւս գերեացն զորս գերեցին Ռուսք 'ի Մարիէնպուրկ քաղաքէ՝ էր և օրիորդ մի Մարթա անուն, 'ի մանկութէ որբ մնացեալ 'ի ծնողացն առ երիցու ումեմն. և Պետրոս յանցանելն ընդ Լիվոնիա տեսեալ զնա առ իշխանին Մենշիքովայ՝ հաճեցաւ յոյժ ընդ օրիորդն, և տարեալ 'ի Մոսքուա՝ յանձն առնէր զնա 'ի խնամս գերմանացւոյ ուրումն տիկնոջ, որ կայր յարքունի պալատանն: Այն այս օրիորդ է Կատարինէ Ա:

Մինչդեռ պատերազմ էր Ռուսաց ընդ Շվէտս աստ և անդ, Պետրոս ոչ ինչ անտես առնէր 'ի կարևորացն առ պայծառութիւն ազգին իւրոյ: Մերձ յԱրքանկէլ կանգնեաց ամրոց մի ծովահայեաց. կոչեաց եբեր 'ի Լէհաստանէ, 'ի Սաքսոնիոյ և 'ի Շվեզիոյ հովիւս և հօտս խաշանց՝ վասն ասու. բազմացոյց զարուեստագէտս, և 'ի նպաստ բարգաւաճելոյ վաճառականութեան ակր-

սաւ պնդել զՋրանցսն որով կցի Տօնաւիս գետ ընդ Վոլկայի։ Ապա խաղաց գնաց յԱրքանկէլայ 'ի Նոթեպուրկ քաղաք ամուր 'ի դրունս աշխարհին Շվետաց, և աւուրս երիս մարտուցեալ էառ զայն։ Յետ այնորիկ սփռեաց ըզզօրս իւր ընդ Լիվոնիա, ընդ Ինկրիա, և ընդ Քարէլիա, և ամենայն ուրեք յաղթող գտաւ. և 'ի խրախոյս ժողովրդոց իւրոց՝ մեծաւ հանդիսիւ յաղթանակի եմուտ 'ի Մոսքուա։

Ի միւսում ամի էառ և զկղզին Լուսաթելանա. յայնմ կղզւոջ արկ ըզհիմն դղեկի միոյ՝ զոր անուանեաց Սանկթ-Փեթերպուրկ, այսինքն է Քաղաք սրբոյն Պետրոսի. և եղև յետոյ արքայանիստ քաղաք պետութեն։

Իսկ արքայն Շվետաց յարհամարհս ունելով զզօրութի Ռուսաց վասն խորտակման նոցին 'ի Նարվա, առաւել պանծայր 'ի յաղթութիս իւր ընդդէմ Լեհաց, և ոչ ինչ փոյթ առնէր պաշտպանել իւրոյ աշխարհին։

Խաղաց այնուհետեւ Պետրոս 'ի Տէրբդ զօրօք բազմօք, և առեալ զայն մարտիւ պատերազմի՝ դիմեաց 'ի Նարվա, և ուժգին յարձակմամբ էառ և զայն՝ անհնարին կոտորած 'ի վերայ հասուցեալ բնակչաց քաղաքին։ Իբրև խուժեցին Ռուսք 'ի ներքս՝ արգել Պետրոս չապանանել զոք 'ի բնակչացն, և տեսեալ զերկուս յիւրոցն զի չանսացին հրամա-

նին՝ ընդ սուր անցոյց զերկոսին միանգամայն ։

Տիրեալ ապա բովանդակ նահանգին Ինկրիոյ՝ կացոյց 'ի նմին կուսակալ զՄենշիքով, որ 'ի մանկութենէ սպասաւոր էր առ ումեմն ծաղարարի, և իւրով ճարտարմտութեամբ յառաջադէմ գտեալ 'ի զինուորութեան՝ կարգեալ էր 'ի Պետրոսէ տեսուչ շինութեան Բեթրպուրկայ ։

Իսկ թէ քանի՛ վաստակոց աշխատք եղեն 'ի լիր արկանել զհիմնատակս ճահճին Բեթրպուրկայ՝ յայտ է և յայժմու գրից նորին, և յանբաւ մարդկանն կոտորածէ առ պարսպօք նորա 'ի շինութեան ։ Կանգնեցան 'ի նմա տունք բազումք և ամբարանոցք և՝ ամրոցք, և նաւարան մի, և խանութք, դպրոցք, և ապարանք ։

Սակայն տգիտութի և պնդութիւն Ռուսաց ոչ սակաւ աշխատ արարին զՊետրոս 'ի շինութեան քաղաքին ։ Քանզի ընդ յօրինել Բեթրպուրկայ տամբք և դպրոցօք, համբաւեցաւ ամենայն ուրեք՝ եթէ գետն Նեւա, որպէս գուշակեաց ոմն սուտ մարգարէ, բարձրանալ ունէր երբեմն մինչև 'ի կատար եղևին ծառոյն՝ որ մերձ 'ի դղեակն կայր ։ Եւ հաստատէին զգուշակութիւն նշանաւն արտասուելոյ պատկերի սրբոյ Աստուածածնին որ էր յեկեղեցւոջ անդ հուպ 'ի ծառն ։ Այլ Պետրոսի քննեալ զերան,

և 'ի վերայ համեալ խաբեպատիր հնարից չարախոհ մարդկան՝ առանձին հրովարտակաւ ցրեաց զերկիւղն անտի ։

Իբրև այդ եղև Պետրոսի՝ եթէ արքայն Շվեդաց յետ կացուցանելոյ թագաւոր 'ի Լեհս փոխանակ Օգոստեայ զՍտանիսլաւ, 'ի նեղ արկեալ և զՕգոստոս՝ խաղաղութիւն արարեալ է ընդ նմա, կամէր փութալ 'ի թիկունս մնացելոցն իւրոյ Օգոստեայ․ այլ իմացեալ՝ զի Կարոլոսի զերեսս հաստատեալ էր արշաւել 'ի Ռուսիա, եւ ամրացուցանել զդղեակն Մոսքուայի զՔրեմլինն և զՔիթայ, և պատրաստեցաւ ամենայն զօրութեամբ զդէմ ունել արշաւանին ։

Կարոլոս գաղտ որսացեալ զաթամանն Տոնայի Խազախաց զՄազեփփա, որ ցանկ թշնամի գոլով Պետրոսի՝ ընդամն քան զհաւատարմութիւն կեղծեր առ նա, այդ արար նմա, զի ընդ մտանել իւր 'ի փոքրն Ռուսիա՝ գլուխ ամբարձցէ իւրովքն հանդերձ ընդդէմ Ռուսաց ։ Եւ Մազեփփա կազմեցաւ վեշտասան հազար արամբք ընդառաջել նմա ։

Ապա յամին 1708 խաղաց Կարոլոս 'ի Լիթուանիոյ, և եմուտ անխափան 'ի Ռուսիա, անց մեծաւ համարձակութեամբ ընդ բազում քաղաքս փոքուն Ռուսիոյ և եհաս մինչև 'ի Մոհիլեվ․ անդ ունէր՝ թէ յայնկոյս Տնեպերայ գտցէ համբարս զօրաց իւրոց ըստ խոստմանն Մազեփ-

միայ. այլ նա խորտակեալ ՚ի Ռուսաց՝ հազիւ անկաւ առ Թագաւորն Շվեդաց հազար և հինգ հարիւր խաղախիք ։ Յաւելին և Ռուսք ապականել աւերել շուրջանակի զերկիրն, զի մի՛ այլ ևս յառաջ խաղասցեն Շվէդք. և Կարոլոս դարձաւ դէպ յՈւքրանիա՝ ոչ մնալով զալստեան Լէօվէնհաւպդ անուն զօրավարին իւրում ՚ի Րիկայէ բազմութբ զօրաց ։

Պետրոս առեալ զմասն մի զօրականին՝ խաղաց ընդդէմ Լէօվէնհաւպդայ, և զմնացեալսն առեալ ՚ի ձեռս Շերեմէթովայ արձակեաց յՈւքրանիա ՚ի վերայ Կարոլոսի ։ Ինքն պատահեաց զօրավարին Շվէտաց, և ահագին քաջութբ յարձակեցաւ ՚ի վերայ ։ Ի խուռն անդ մարտին գոչեաց, ասեն, Պետրոս առ խաղախսն վերջապահս, զի Թէ ոք կամ Թէ ինքն իսկ ընդ կրունկն դառնայցէ, զխոտապաստ արկցեն զնա ՚ի տեղւոջն ։ Եւ տարաւ յաւուր յայնմիկ յաղթութիւն մեծ, որ և առաջին էր Ռուսաց սակաւաւորաց քան զկանխաւոր զօրս Թշնամեաց բազմագոյնս՝ յաղթող հանդիսանալ ։

Մինչդեռ Պետրոս հանդէս յաղթանակի կարգէր ՚ի Սմոլէնսք՝ եկաւ զրոյց և զայլոց յաջող ելից յԻնկրիոյ. ապա առաքեաց զՄէնշիքով ՚ի վերայ Մազեփփայ. և նորա պատանէշ պաշարմամբ առեալ զԲաթուրին քաղաք նորա, այ-

րեաց զհամբարոյն պատրաստեալս վասն Շվեդաց, և կարգեաց աթաման փոխանակ Մազեփփայ զՍքորոպայն:

Իսկ Կարոլոս ոչ ինչ սրտաբեկ լեալ ընդ արկածս իւր՝ խաղաց քսան և վեց հազարաւ, անց ընդ գետն Տեսնա և եհաս մինչև յերկիրն Զափոռոժաքի Խազախաց, որք վաղագոյն միաբանեալ էին ընդ Շվէտս 'ի ձեռն Մազեփփայ: Կարոլոս նոքօք հանդերձ պաշարեաց զքաղաքն Փոլթաւա, որ լի էր համբարօք. այլ այնպէս արիաբար զդէմ կալան նմա. Խազախք քաղաքին հաւատարիմք առ Ռուսս, զի յերկարել պաշարմանն պարապ կալաւ Պետրոս ժամանել անդր յամին 1709, 'ի 4 յունիսի:

Զառաջինն կամէր առանց մարտի ազատել զքաղաքն 'ի պաշարմանէն. այլ իբրև ետես զի պակասեալ էր քաղաքացւոցն վառօդ փոշի հրազինուց, ած մերձեցոյց զզօրս իւր 'ի բանակն Շվետաց: Աւուրբ յառաջ քան զպատերազմն ել Կարոլոս գիշերի դիտել զբանակն Ռուսաց, և 'ի գնդէ ուստեք Խազախաց վիրաւորեցաւ հրազինու 'ի բարձին, և անկաւ 'ի մահիճս: Սակայն 'ի վաղիւ անդր 'ի 27 յունիսի հրամայեաց հանել զինքն պատգարակաւ առտաքս, և յարձակեցոյց զզօրս իւր կատաղաբար 'ի վերայ Ռուսաց: Յարձակեցան և Ռուսք 'ի հանդիպոյ, և գունդս վեց հետևակաց և տասն փաշտս հեծե_

լոց 'ի բաց հատեալ 'ի բանակէն Շվեդաց արկին յանտառն, և առին դրօշս չորեքտասան: Անդ խոցեցաւ զօրավարն Շվեդաց Ռէն, և զօրավարն Պաւր հարկեցաւ սակաւ մի յետս յետս գնալ՝ մինչև ելցէ հետևակազօրն Ռուսաց 'ի պատնըշացն. որք իբրև ելեալ ճակատեցան կացին հանդէպ Շվեդաց, յարձակեցան միանգամայն կողմանքն երկոքին և բաղխեցան ահագին սաստկութբ ընդ իրերս. այլ յետ կրկին ժամուց 'ի փախուստ դարձեալ Շվեդաց՝ անկան յանտառն՝ յորում յառաջ ճակատեալ էին: Հարան խորտակեցան 'ի Մէնշչէքօվայ և յայլոց զօրավարացն Ռուսաց և առաջին փախուցեալքն յանտառամէջս անդր. և ձերբակալ եղեն երևելի երևելի զօրավարք Շվեդաց հինգ, և բազում սպայք և զօրականք, և տասն հազարք 'ի նոցանէ անկան 'ի տեղի ճակատուն, թող զցրուեալսն ընդ անտառս և ընդ արտորայս: Գտաւ և պատգարակն Կարոլոսի, 'ի մի կողմն խորտակեալ 'ի ռմբէ: Սակայն և 'ի բանակէն Ռուսաց անկան ոչ սակաւք, և Պետրոս անդամ ընկալաւ գնդակս հրազինուց 'ի գլխանոցն և 'ի թամբս երիվարին: Այս այն բազմահռչակ պատերազմ է Փոլթաւեան, յորմէ յոլով այլափոխս դէպք զհետ եկին ընդ ամենայն Եւրոպա:

Քանզի իբրև ազդ եղև խորտակումն Շվեդաց, և փախուստն Կարոլոսի յեր-

կերն Տաճկաց 'ի Պէնտէր, աճապարեցին Լեհք և Դանիք և Բրուսք և Գերմանացիք, նա և Անգղիացիք, հաստատել զդաշն բարեկամութեան ընդ Պետրոսի, որ եկեալ էր 'ի պատերազմէ անտի 'ի Լեհաստան:

Դարձաւ Պետրոս այնուհետև 'ի Մոսկուա, և արար մեծ և փառաւոր հանդէս յաղթանակի: Եւ մինչդեռ Շերեմեթով և այլ զօրավարք նորա 'ի կողմանս կողմանս յաղթութիւնս գործէին և քաղաքս բազում առնուին, ինքն և եւս բարեկարգէր զկիրս իւրոյ աշխարհին, և զարդարէր զՔետերպուրկ: Կանգնեաց 'ի նմա զեկեղեցի սրբոյն Սամփսոնի 'ի յիշատակ պատերազմին Փուլթաւայի. և զմերձակայ վայրս եկեղեցւոյն զարդարեաց հոյակապ շինուածովք ըստ արդի օրինաց ճարտարապետութեան, և զուարճալի դարաստանօք: Զնոյն հրամայեաց առնել և զօրավարաց իւրոց և իշխանաց, զորս ըստ արդեանց վաստակոցն մեծապէս պարգևօք ճոխացուցեալ էր:

Այն ինչ զերծեալ Պետրոսի յահագին տախէն՝ պատրաստէր ձեռն մխել և ինքն 'ի տասնամեայ պատերազմն որ սակս յաջորդութեան Թագաւորացն Սպանիոյ յուզէր յԵւրոպա, յանակնկալ պահու հարկեցաւ ելանել ընդդէմ Օսմանեանց. Քանզի միջնորդութեամբ Փոնեաթովսկեայ բարեկամին Կարոլոսի,

մեծաւ սիրով ընկալան Տաճիկք զար-քայն Շվեդաց, և խոստացան օգնական լինել նմա զօրօք մինչև հասցէ յառա-ջին իշխանութին իւր: Ապա ըստ բողո-քոյ դեսպանին Ռուսաց հարկեցան ար-ձակել զԿարոլոս 'ի Պէնտէրայ հինգ հարիւր տաճիկ զօրականօք մինչև 'ի սահմանս Լեհաց, և անդ տալ զնա 'ի ձեռս զօրականացն Ռուսաց՝ զի ածցեն յերկիր իւր, առանց այլ ևս բանագնաց լինելոյ ընդ Լեհս: Այլ Փոնեաթովսքի և դեսպանն Գաղղիոյ ամբաստան եղեն առ Թագաւորն սուլդան Ահմէտ զվէզի-րէն՝ որպէս թէ կաշառեալ իցէ նորա 'ի Ռուսաց, և Թագաւորն արգելեալ զդեսպանն Ռուսաց 'ի յԵտի գուլէ՝ հրատարակեաց զպատերազմ ընդդէմ Ռուսաց, ասելով եթէ Պետրոս ընդ-դէմ առաջնոյ դաշանցն գրաւեաց զԼեհս և զԽազախս 'ի սահմանացն իւ-րոց, և թէ չինեաց բերդս և ամրոցս 'ի սահմանագլուխ տեղիս, և զի կարգեաց զօրս պարսպապահս 'ի Քամենից, զի անտի դիւրամուտ լեալ 'ի Մոլտաւիա՝ յանկարծակի արշաւեսցէ 'ի վերայ Օս-մանեանց:

Իբրև ազդ եղև Պետրոսի, պատուէր յղեաց վաղվաղակի առ իշխանն Մի-քայէլ Կոլիցին որ 'ի Լեհս էր՝ զի խա-ղասցէ 'ի սահմանս Վալաքիոյ տան վաշտիւք սաղաւարտաւոր հեծելոց: Հրամայեաց և Շէրէմեթովայ Թողուլ

զԼիֆլոնիա, և քսան և երկու գնդիւք զօրաց խաղալ 'ի սահմանադլուխս Օսմանեանց 'ի Լեհաստան: Այսպէս թողեալ զՄենշչիքով 'ի Բեթրպուրկ՝ գնաց 'ի Մոսքուա, ուր հրատարակեաց զպատերազմ իւր. կարգեաց հաշտակաւ ծերակոյտ մի արանց ութից 'ի տեսչութի իրաց պետութեն, և աւանդեաց նոցա զկարգաւորութիւս կարևորս առժամայն և առ յապա, և պատկեալ յայտնապէս ընդ Կատարինեայ՝ ծանոյց զնա դշխոյ Ռուսիոյ, և նովաւ հանդերձ խաղաց գնաց զհետ զօրաց իւրոց 'ի կողմանս Վալաքիոյ:

Պրանքովան դուքս Ուլահաց խոստացաւ Պետրոսի զօրս և համբարս ընդդէմ Տաճկաց. զոր երբև զգաց սուլդանն՝ առաքեաց դուքս Մոլդաւիոյ զԴեմետր Քանթեմիր, պատուիրեալ նմա ուծացուցանել զՊրանքովան 'ի Ռուսաց. այլ նա և ինքն իսկ միաբանեաց դաշն ընդ Ռուսս 'ի հասանել Շէրէմէթովայ յԵաշ: Մեծապէս առիթ եղև այսոցիկ բանագնացութեանց պատրիարքն Երուսաղեմի, որ 'ի Մոլտաւիա էր յայնժամ. զի ասէր նա. գտաւ 'ի շիրմին Կոստանդիանոսի բան մարգարէական, եթէ Ազգ մի շէկ վանեսցէ զՏաճիկս յԵւրոպայ: Տեսեալ Պրանքովանայ ըզմիաբանել Քանթեմիրայ ընդ Ռուսաց, խորշեցաւ ինքն 'ի նոցանէ, և զնպաստն զոր խոստացեալ էր Ռուսաց՝ գարմոյց

յՕսմանեանս. և պատրիարգն Երուսաղեմի փախեաւ։

Իսկ Պետրոս յանցանել խորում ընդ Լեհս՝ հաստատեալ ընդ Օգոստեայ զառաջին ուխտ միաբանութեան ընդդէմ Օսմանեանց, իբրև եկն անց ընդ գետն Տնեսթեր՝ խորհուրդ կալաւ ընդ զօրավարս իւր, և ամենեքեան ասէին՝ անյապաղ դիմագրաւ լինել տաճկաց միայնոյ գաւառական այլ ևս զօրաց։ Միայն զօրավարն Ալլարթ լուռ կեցեալ կայր. և 'ի հարցանել Պետրոսի թէ զինչ կարծիք իցեն նորա, ասէ. « Որպէս ինձ թուի, գիրք զօրացն մերոց ամենևին հանդէպ են գրից զօրացն Շվեդաց առ Փոլթաւայիւ. այլ և ոչ յանհնարից ինչ է՝ թէ և մեք խափիցիմք 'ի գքտիցն Վալաքիոյ և Մոլտաւիոյ որպէս Կարոլոս 'ի Մազեփփայ »։ Սակայն չեղև լսելի խորհուրդ նորա. և հրամայեցաւ անցանել ընդ գետն Փրութ. ուր յանջրդութէ և 'ի սովոյ կորեաւ բազմութե̄ն մարդկան և անասնոց. և Քանթեմիր արս սակաւս յոյժ քան զոր կարծելին էր՝ ած առ Պետրոս։

Ի վերայ հասեալ կայր զօրացն Ռուսաց և վտանգ սովոյ. այլ 'ի մերձակայ լերանց Մոլտաւիոյ՝ ուր էին համբարանոցք Տաճկաց՝ հոգացաւ Պետրոս ածել զհամբարս 'ի ձեռն զօրավարին Ռէննայ։

Գործ էր չառնել Տաճկաց անցս ընդ Փրութ, այլ նոքա աճապարեցին անցին

յայսկոյս, և անջրպետեցին ընդ զօրան Պետրոսի և Ռէնայ: Պետրոս կամէր խոյս տալ 'ի կողմն Սերէթ գետոյ և մինալ ժողովելոյ ամենայն զօրաց իւրոց. այլ վէզիրն խաղաց մերձեցաւ 'ի բանակն Ռուսաց, և ճակատեցան կողմանքն երկոքին: Օսմանեանք Թաթարօքն հանդերձ էին աւելի քան զերկու հարիւր հազար, և Ռուսացն զօրք քառասուն և չորք հազարք: Վէզիրն, որ էր Պալթաճի Մէհէմմէտ փաշա, առաջնորդութե չվէտ զօրավարի իւրոյ շուրջանակի փակեաց պաշարեաց զՌուսս. և մինչդեռ Պետրոս 'ի գիւղագոյն վայրի կամէր զետեղել զբանակն, վերջապահ զօրք բանակին իւրոյ հարան 'ի Թշնամեաց, և ընդ ժամս հինգ սաստկապէս մարտ եդեալ ոչ զատեան 'ի բուն բանակէն:

Այսպէս 'ի բաղխել Ռուսաց և յառաջակողմն կուսէ՝ կանոնաւոր խաղացմամբն իւրեանց հարկեցուցին զզօրս Տաճկաց մեկնել 'ի բուն բանակն. այլ ոչ ինչ փոխեցաւ դժպատեհ դիրք բանակին իւրեանց՝ շուրջ պատեալ գոլով 'ի Թշնամեաց: Թող զայն, այլ և ոտն 'ի վերայ հանեալ էր, և հիւանդք բազում յոյժ էին 'ի նոսա. խոյս տալ չէր հնար, դիմադրաւ լինել ևս երկիւղալի, զի վտանգ էր կենաց ինքնակալին և դշխոյին, և ընտիր ընտիր զօրաց:

Յանհնարին 'ի տագնապ ժամուն՝ մեկնեցաւ Պետրոս ցաւագին և փափանաւ

ցեալ ոգւովն 'ի վրան նոր, պատուիրեալ զի մի՛ ոք մնացէ առ ինքն ։ Կատարինէ՝ որ ցանգ խորհրդական և ողոքիչն էր Պետրոսի նուրով զգօն բանիւք, համարձակեցաւ եմուտ առ Պետրոս խորհրդգով զօրավարացն, և ամոքեաց զնա, և էառ հրաման փորձ փորձել վասն խընդրոյ խաղաղութեն ։ Շէրէմեթով գրեաց Թուղթ առ Վէզիրն, յորում խոստանայր դարձուցանել առ Թագաւորն Օսմանեանց զԱզով, քանդել զամուրսն նորոգ կանգնեալս, և շնորհել Կարոլոսի անխափան անցս յերկիր իւր ։ Ապա հաստատեցին զօրավարքն, զի թէ Օսմանեանք ոչ հաւանեալ պայմանաց խաղաղութեն՝ հարկ արասցեն Ռուսաց անձնատուր լինել, աներկմիտ խիզախեացեն յարձակել պատառել զզօրս նոցին և անցանել ։

Հաւանեցաւ Վէզիրն և զիջաւ 'ի հաշտութի, զի և զանձկութի զօրացն Ռուսաց ոչ քաջ գիտէր, և խիթայր ևս թէ հասցեն ընդ հուպ և այլ զօրք Պետրոսի 'ի Լեհաստանէ ։ Եւ Պետրոս 'ի 22 յուլիսի մեկնեցաւ յափանց անտի փրկութ գետոյ, և սկսաւ քանդել զամրոցն Սամարայ և զայլս ոչ ինչ այնպէս կարևորս . առայս կատարեաց և զայլ պայմանս ուխտին ։

Արժանի յիշատակաց մեծահանձնութի եցոյց առաւանոր Պետրոս, որով ոչ հաւանեցաւ տալ 'ի ձեռս Տաճկաց զՔան-

թէմիր. այլ ասէ. «Նա համարիմ թա-ղուլ 'ի ձեռս Տաճկաց զամենայն եր-կիրս իմ մինչև 'ի Քուրաք, քան մատ-նել զհաստատութիւն իմ. զի զերկիրն թերևս անդրէն առից յաւուր միում, այլ հաստատութեանն կորուստ ան-գիւտ է»:

Զհետ բազում չփոթից թագաւո-րացն Դանիեաց և Բրուսիոյ, Պետրոս նորոգ դաշնագրութբ 'ի ձեռս իւր կա-լաւ զԻնկրիա, զՔարելիա, զԷսթոնիա, և զքաղաքսն Վիպուրկ, Նարվա, և Րէ-վէլ, զորս առեալ էր 'ի Շվեդաց. և 'ի Րէվէլ շինեալ նաւահանգիստ մեծ՝ ե-լից զայն նաւուքն բերելովք յԱնգղիոյ:

Ի բազմաց հետէ ցանկայր Պետրոս և 'ի նաւամարտի առնել միանգամ իւր անուն: Ապա յամին 1713, յորում ժամանակի ըստ կարգի յառաջադիմու-թե իւրոյ 'ի նաւաստականին՝ երրորդն էր ծովակալ իշխանի, առաքեաց ընդ-դէմ Շվեդաց զծովակալն Ափրաքսին հարիւր և ութսուն ցականաւուքն 'ի Ֆինլանտիա 'ի հրուանդանն Աբօ, և ինքն այլովք վեշտասան նաւուք պատերազմի մեծամեծօք խաղաց 'ի կողմն Րէվէլայ: Բախեցան կողմանքն երկոքին. և Ճիգն Ռուսաց՝ յորոց միջի Պետրոս և մարտիկ էր և նաւաստի և նաւուղիղ և զօրա-վար, յաղթեաց ճգանցն Շվեդաց, որոց զօրավարէր Էրէնշիլտ փոխանակ ծովա-կալի: Յետ երկուց ժամուց նաւամարտին

յաղթող եղեն Ռուսք և տիրեցին գոգ-
ցէս ողջոյն նաւատորմին Շվետաց։ Սա-
կաւք ոմանք ևեթ 'ի նաւացն Շվե-
տաց վերծան 'ի Սթոքոլմ, և անդ տուին
զդոյժն՝ զի վեշտասան հազար Ռուսաց
առեալ էր և զԱլանտ կղզի, և խռովե-
ցաւ ամենայն աշխարհն։ Այլ Պետրո-
սի խնայեալ 'ի զօրս իւր՝ փութացաւ 'ի
Բեթրպուրկ 'ի հանդէս յաղթանակի։

Նշանաւոր և շքեղ յոյժ եղև հան-
դէսն զայս նուագ. զի իշխանն Փէտոր
Ռոմոտանովսքի՝ որ փոխանորդ լեալ էր
ինքնակալին 'ի լինել նորա արտաքոյ աշ-
խարհին, տեսաւ բազմեալ ճոխութբ 'ի
գահն արքունի զարդարեալ ամենայն
կայսերական նշանօք։ Եկն եկաց առա-
ջի ծովակալն Ափրաքսին, և մատոյց առ
տեղակալ թագաւորին զյաղթականն
և զյաղթեալսն, և դրուատեաց զգնացս
և զքաջութիւնս երրորդին իւրոյ Պետրոսի
Ալեքսէյեվիչ, որ կայր անդէն խառն
ընդ այլս 'ի սպայից։ Յառաջ կոչեաց
զնա Ռոմոտանովսքի և եհարց զանցս
նաւամարտին առ Անկութա. և Պե-
տրոս ճառեաց նմա կարգաւ զերս պա-
տերազմին։ Յանժամ վկայեաց տեղա-
կալն՝ եթէ արժանի է Պետրոս պատուոյ
փոխանակի ծովակալին. և ապա իջեալ
'ի գահէ անտի, և զկայսերական զարդսն
'ի բաց եդեալ՝ մատոյց բազմեցոյց անդր
զինքնակալն։ Ընդ զի վառեցէ Պետրոս
զամենեսեան 'ի նախանձ փառաց հայ-

ընկնի աշխարհին՝ շարժեաց զձեռն իւր և ասէ. «Ի՞նչ ոք 'ի ձէնջ այր, եղբարք իմ, որոյ քանի ամաւ յառաջ քան զայս ընդ միտ անցեալ իցէ թէ մարդ ունիցի երբէք յարդարել ընդ իս ընդ այլս Պալթիականին 'ի նաւս ձեռօքն կերտեալս ձեռամբ, և թէ քաղաք բնակութեան առնուցումք յաշխարհս յայսոսիկ մերովս վաստակօք և արութ̃բ : Ո՞վ ոք 'ի ձէնջ գուշակ լինէր եթէ այսչափ մարդկան կրթելոց, այսչափ ճարտար ձեռագիտաց, այսչափ ժրաջան գործաւորաց բազմութիւնք դայցեն երբէք 'ի բարգաւաճել զարուեստ 'ի Ռուսիա : Անդուրեմն 'ի Յունաստան զտեղի կալեալ երբեմն գիտութեանց, անտի ծաւալեցան յիտալիա, և ապա ընդ ամենայն Եւրոպա. այլ ոչ և 'ի Ռուսիա : Եւ պատճառք, անփութութիւն մերոցն նախնեաց : Այսօր մարթի նոցին գիտութեանց լինել և մեզ մասն ժառանգութեան, եթէ և դուք նպաստ լինիցիք խմբել ջանից՝ զժրութիւն և զհնազանդութիւն 'ի մի կցորդեալ : Արուեստք շրջան առնուն յաշխարհի որպէս արիւն 'ի մարմնի. և իցէ երբէք զի 'ի միջի մերում հաստատեալ նոցա զաթոռ իւրեանց, ապա դարձ արասցեն երբեմն 'ի Յունաստան 'ի վաղեմի իւրեանց հայրենիս» :

Ցեառ այնորիկ հրամայեաց Պետրոս՝ զի ամենայն ազատանին 'ի ժամադրեալ աւուր ածցեն զսաւաշեաւ զորդիս իւ-

բեանց 'ի տասնամենից մինչև ցերեսնամեանս, զոր ընտրեացին 'ի նոցանէ զինուորս վիճակաւ. և որոց զանդղաղեացին գալ 'ի կոչն, որպէս մինչև ցայնժամ, սպառնացաւ յարքունիս առնուլ զամենայն զինչս նոցա:

Որդի մի էր Պետրոսի յԵւդոքիայ կնոջէն իւրմէ Ալեքս անուն՝ քսան և երկուց ամաց՝ ձոխ արտաքին ձևիւք, այլ 'ի բարոյս խեռ և անկիրթ. վասն որոյ կին ած նմա հայրն իւր զիշխանուհին Վոլֆէնպուտթէլ զազգակից կայսերն գերմանացւոց Կարոլոսի Զ. զիմաստուն օրիորդն և զզուարթաբարոյ. սակայն Ալեքս վաղ եթող զնա և դարձաւ անդրէն յառաջին խառնագնաց վարս իւր. որով հասոյց Պետրոսի վիշտ մեծ:

Ի գալ ամին միւսոյ կամեցեալ Պետրոսի առանձինն իմն փառաւորել զդըշխոյն Կատարինէ վասն արիական համարձակութեան 'ի մարտին որ առ Փրութ գետով, կարգեաց 'ի պատիւ նորա ըզկարգ սրբուհւոյն Կատարինեայ յաւուր յիշատակի նորին: Ցաւելաւ ուրախութիւն արքունեացն Պետրոսի և գալստեամբ դեսպանացն իւրոց 'ի Կոստանդնուպօլսոյ՝ հաստատեալ զուխտ բարեկամութեան ընդ Օսմանեանս:

Եւ յետ բազմապատիկ բարեկարգութեանց և ջանից 'ի նպաստ բարգաւաճելոյ վաճառաշահութեան Ռուսաց, յա-

ցոյց զնա դառնալ գալ ընդ իւր 'ի Ռուսիա :

Եկաց Ալեքս առաջի Պետրոսի 'ի Մոսքուա, և 'ի ծունր իջեալ խնդրէր զներումն : Պետրոս յարոյց զնա, և եհարց նմա բազում ինչ, սպառնալով նմա զմահ՝ եթէ ծածկեսցէ ինչ 'ի նմանէ : Ապա ած զնա 'ի սրահ[illegible]եծ, ուր էր ժողովեալ ատեանին, և անդ ետ ընթեռնուլ զպայմանագրութիւն պատրաստեալ, յորում ամբաստան լինէր զանուղղայ բարոյից որդւոյն, զհամախոհութիւն նորա ընդ կուսակիցս հին սովորութեանց, զստահակ գնացիցն ընդ կնոջ իւրոյ, զդրժել ամուսնական հաւատարմութիւն՝ յաճախելով առ այլ կին ցածազգի, և զգնալոյն 'ի Վիեննա և ամբաստան լինելոյ զհօրէն առ կայսրն, և խնդրելոյ 'ի նմանէ զօրս 'ի թիկունս . և յաւելլոյր ասել . « Այսպէս ահա դարձաւ եկն որդին մեր . և թէպէտ արժանի մահու էր նա, այլ գթութն մեր հայրենի ներէ նմա զյանցանսն : Սակայն զմտաւ ածեալ զստահակութիւն գնացս նորա՝ չկամիմք թողուլ նմա զթագաւորութիւն մեր, գիտելով քաջ՝ զի 'ի նախատինս և 'ի կործանումն ազգիս և աշխարհիս դառնալ ունի այն : Վասն որոյ ըստ հայրենի իրաւանց մերոց և ըստ կայսերական իշխանութեան՝ զրկեմք զորդին մեր զանդրանիկ զԱլեքս 'ի ժառանգութենէ աթոռոյս Ռուսաց զհետ մեր . և կար-

գեալ յայտ առնեմք ժառանգ թագաւորութեան մերոյ զորդին մեր զկրտսեր զՊետրոս՝ թէպէտ և գեռահասակ, առ 'ի չգոյէ այլոյ ուրուք արժանաւորի »: Այս վճիռ հրատարակեցաւ 'ի Մոսքուա յամին 1718 'ի փետրուարի 14. և Աղէքս ստորագրեաց 'ի նամակին՝ իրաւունս տալով վճռոյ հօրն: Յայնժամ գնաց ինքնակալն 'ի մայր եկեղեցին, և անդ վերստին յանձնեցուցին նա զվճիռն, ընդ որ հաւանեցան և ամենայն եկեղեցականքն և ձեռն եդին վճռոյն:

Կասկած կալեալ ոմանք՝ եթէ այսմ ամենայնի մեծաւ մասամբ պատճառ տուեալ իցէ Կատարինեայ մօրուին Աղէքսի. և թերևս յիրաւի, որպէս թուի յիրացն գիտելոց: Քանզի ոչ շատացեալ Պետրոսի այնու վճռաւն խորհէր եթէ յետ իւրոյ մեռանելոյ անշուշտ ոչ կացցեն յանվտանգի և Կատարինէ դշխոյն, և որդի նորին Պետրոս յերեսաց Աղէքսի և կուսակցաց նորա. հարկ համարէր ապա արկանել զԱղէքս յարեան:

Այլ տագնապ տարակուսանաց պատեալ պաշարէր զնա, զի չգտանէր 'ի մատեանս օրինացն իրաւունս խորհրդոց իւրոց, մանաւանդ թէ զնորին հակառակն. զի յառաջ քան զամենայն ինքն էր գլխաւոր ոսոխ և ամբաստան զորդւոյն, և դատաւոր և վկայ: Սակայն հնարեցաւ հաւաքեաց կուտեաց ողջախ

ինչ գլուխս ամբաստանութե̃ց մարթացաւ դատանել զորդւոյն իբրև զդաւաճանէ և զմատնչէ։ Սախալեաց և զորդին ողոքով և սպառնալեօք՝ խոստովան լինել՝ եթէ կամեցեա՞լ իցէ երբէք դաւել զհայրն, կամ թէ եդեա՞լ իցէ ՚ի մտի ձեռն տալ ՚ի թշնամիս կենաց հօրն՝ եթէ երբէք ուրէք ՚ի վեր երևեսցին։ Յայնժամ ետ նմա պատասխանի Աղեքս գրով, և ասէ. «Եթէ երբէք հրաւիրէին զիս ապստամբք հզօրք յուրեանց կողմն կենդանեաւ իսկ հօրդ իմոյ, հաւաստեաւ կուսակից նոցին լինէի»։

Յետ չորից ամսոց քաղեաց ՚ի բերանոյ Աղեքսի և զայլ խոստովանութիւն հանդէտ առաջնոյն. սակայն և այն ոչ բաւական պատճառք էին սպանանելոյ զնա։ Առաքեաց ապա առ դատաւորս և առ եպիսկոպոսունս, և խորհուրդ հարցանէր ՚ի նոցանէ վասն առաջիկայ իրացն՝ զի կարասցէ անտագիւտ խղճիւ յառաջ վարել զխորհուրդն։ Եւ նոքա խորհուրդ ՚ի մէջ առեալ՝ պատասխանի ետուն ինքնակալին եթէ տէր է նա կենաց և մահու ըստ արարչադիր կարգին. եթէ կամիցի զմահ որդւոյն՝ հրաման է նմա ՚ի գրոց սրբոց, յօրինացն Մովսէսի և յօրինակէն Աբեսաղովմայ (որ այլազգ էր յառաջիկայ իրացն). և եթէ հաճեսցի ներել նմա, օրինակ առցէ ներողամտութե̃ ՚ի Քրիստոսէ. «Սիրտ թագաւորի ՚ի ձեռս Աստուծոյ է, ասեն.

ընտրեալ զկողմն յոր ձեռն տեառն առաջնորդեսցէ քեզ»։

Ցորժամ յայնուհետև վճիռ դատապարտութեան Աղեքսի 'ի բերանոյ ատենին. և իբրև ընթերցաւ այն հրապարակաւ, թալուկն մահու անկաւ, ասեն, զԱղեքսիւ. և ապա հարեալ 'ի կաթուածէ մեռաւ։ Են որք [illegible]ն եթէ Պետրոս ինքնին իւրով ձեռամբ գլխատեալ իցէ զորդին. այլք՝ թէ 'ի ձեռն այլոյ ուրուք լեալ իցէ գլխատումն. և կէսք՝ թէ 'ի թունաւորեալ խարանէ մեռեալ իցէ Աղեքս։ Այս ինչ հաւաստի է, զի Պետրոս կարգեաց նմա յուղարկաւորութիւն մեծ. և ապա պատուհասեաց զբազումս իբրև դաւակիցս Աղեքսի։ Աբրահամ Լափուքին եղբայր Եւդոքսեայ մօրն Աղեքսի, Աղեքսանդր Քիքին, եպիսկոպոսն Ռոստովայ, Փուսթինոյ դրան երէցն Եւդոքսեայ, սպանան անուօք։ Գլեպով զօրավար մտերիմն Եւդոքսեայ սպանաւ 'ի կախաղանի։ Երիցունք և միանձունք յիսուն և հինգ դաւակիցք Աղեքսի՝ գլխատեցան շուրջ զկախաղանաւն. և այլք էին որք ըստ նոցին օրինակի սպանեան, էին և որք յաքսորս առաքեցան. և Եւդոքսիա ինքնին ձաղկեալ յերկուց հաւատաւորաց՝ արգելաւ 'ի մենաստան ուրեք 'ի նորն Լադոկա։

Սակայն ոչ յապաղեաց աստուածային խղճին տագնապեցուցանել զՊետրոս, և

ապաշաւն այն դարձոյց նմա անդրէն զփառս առաջնոյ վաստակոյն։ Ցետ սակաւ ժամանակի և մահ որդւոյն կատարինեայ՝ զոր կացուցեալ էր ժառանգ թագաւորութեանն՝ յաւելեալ 'ի մահ անդրանկին իւրոյ, լքոյց զնա 'ի քաջութէ սրտին. մերժեցաւ այնուհետև 'ի զգօնութէ մտացն, անկաւ թուլացաւ 'ի պնդութէ հոգւոյն, և փակեալ զանձն իւր 'ի Փեթերհոֆ՝ եդ 'ի մտի սովամահ վճարիլ 'ի կենաց, սպառնալիս մահու կապեալ 'ի վերայ՝ թէ ոք իշխեսցէ մտանել առ նա։ Երկն եկաց առ դուրս նորա քաջ իշխանն Տոլկորուքի, և բաղխեաց ուժգին։ Ի ձայն սպառնական գոչէր թագաւորն 'ի ներքուստ, զի թէ իշխեսցէ յերեսս անկանել նմա՝ բարձցէ զգլուխն 'ի նմանէ։ Այլ Տոլկորուքի պնդէր և ասէր. «Բա՛ց զի խօսեցայց ընդ քեզ։ Հասեալ կամ 'ի ծերակուտէ անտի հարցանել ցքեզ՝ թէ զո՞ կարգեսցես ինքնակալ փոխանակ քո, որովհետև դու հրաժարես յաթոռոյդ»։ Ոչ հանդարտեաց Պետրոս արիական սրտոյ իշխանին, եբաց զդուրսն և անկաւ ընդ պարանոցաւ նորա. անսաց զգօնութե խրատուց Ճշմարիտ բարեկամին, և էառ վերստին 'ի ձեռս զսանձ կառավարութե աշխարհին։ Առցուք և մեք անդրէն զթել պատմութե գովելի գործոց ինքնակալին։

Մինչդեռ 'ի Մոսկուա կատարէր զատն Աւետեաց, առաքեալն Շվետաց փութայր խաղաղութիւն առնել ընդ Ռուսաց՝ միջնորդելով բազմահնար խորհրդականին իւրոյ քաջի, որում անուն էր Կօերց: Հաւանեցաւ և Պետրոս, և եղև ժողով մեծ յԱլանտ կղզի, յորում նախ քան զայս[illegible]ս ուխտին ցուցին Թագաւորքն երկուքեան զարդիւնս բարեկամութեան. զի Կարոլոս դարձոյց Պետրոսի զերկաթին զօրավարս նորա զԹրուպեցքոյ և զԿոլովկին, որք անդրաածին 'ի պատերազմէն Նարվայի գերի վարեալ կային 'ի Շվետս. և Պետրոս դարձոյց Շվետաց զմարաջախան Էրէնշիլտ, զոր իւրով ձեռամբ կալեալ էր նորա 'ի վերջնում նաւամարտի անդ իւրում: Իսկ 'ի դաշնագրութեան ուխտին այս պայմանք հաստատեցան 'ի միջի. Ա. Դարձուցանել Պետրոսի առ Շվետս զՖինլանտիա և զմասն Քարելիոյ, 'ի ձեռին պահել զԼիվոնիա, զԻնկրիա, զԷսթոնիա և զԼիվլանտիա. Բ. Օգնական լինել Շվետաց՝ զի առցեն անդրէն յԱնգղիացւոց զՓոմերանիա և զԲրեմա և զՎերտէն. Գ. Հաստատել զգահն Մեքլէնպուրկայ յիւրում տէրութեան, Դ. Զի հաստատեսցէ Պետրոս յաթոռն Լեհաց զՍտանիսլաւ:

Ընդ այն աւուրս մեռաւ Կարոլոս ԺԲ, 'ի պատերազմի. և Պետրոս դարձաւ ուշ ունել զարդարելոյ աշխարհին

խուրդ : Բազմացոյց զգործարանս ազգի ազգի իրաց , ևս և յախճապակաց , մետաքսի , ոսկերչաց , չուխայից , հոլանդեան կերպասուց , և պարսիկ դիպակաց անգամ ոսկեթելից : Առանձին ժողով խորհրդականաց կացոյց 'ի տնտեսել զպեղումն հրահալից , և ճոխացոյց զգործարանս զինուց : Պեղեաց և ջրանցս՝ որովք միացոյց զգետն Նեւա ընդ այլում նաւարկելի գետոյ , և դիւրացոյց յոյժ զերթևեկ վաճառականաց 'ի Բեթրպուրկ : Յառաջ վարեաց և զպեղումն մեծի խրամին՝ որով կցել ունէր ծովն Կասպից ընդ ծոցոյն Ֆինլանտիոյ և ընդ Ովկիանու : Շինեաց և զնոր քաղաքն Լատոկա : Նա յայսմ ամենայնի ոչ միայն ինքնին անձամբ վերատեսուչ կայր , այլ և իւրով իսկ ձեռամբ զձևսն նկարագրէր , զյատական չափէր , և վաստակէր ևս 'ի գործ : Մեծատանց պատուէր հրամանի կապեաց 'ի վերայ՝ վայելուչս կանգնել տունս ըստ ճարտարապետական կարգաց . կարճեաց զխենեշութիւս 'ի հանդերձս , և զզեղծմունս 'ի խաղս բախտի : Յամենայն քաղաքս կարգեաց դպրոցս Թուաբանութե . երարձ 'ի միջոյ զմուրողս , կառուցեալ աղքատանոցս և որբանոցս . և միօրինակս արար ընդ ամենայն Ռուսիա զչափ և զկշիռ : Կարգս եդ և օրինաց դատաստանի՝ ըստ կարի 'ի համառօտն սահմանեալ զվճիռ դատին : Հաւ-

առատեաց վարժոցս արուեստից նորոց, պատերազմի, ծովակալութե՛, արքունի եկամտից և վաճառականութե, և կարգեաց 'ի նոսա մանկունս ազատաց Թըւով : Հրատարակեաց և մատեան օրինաց պարզ և համառօտ 'ի ռուս և 'ի գերմանացի բարբառ . և ուշի ուշով հսկէր 'ի ճշգրիտ կատարումն օրինացն :

Ցեսեալ Գէորգայ Ա, Թագաւորին Անգղիոյ, և այլոց ումանց Թագաւորաց Եւրոպայ զձոխանալ Պետրոսի յամենայնի, և զանցանել զբազմօք 'ի նոցանէ, միաբանեցին՝ որպէս Թէ խրատուս տանել արքային Շվեդաց և գործուցանել 'ի նա զՖինլանտիա և զԼիվոնիա, և չԹողուլ 'ի ձեռս Պետրոսի, բայց միայն զԲեԹրպուրկ, զՔրոնշԹատ, և զՆարվա : Յայնժամ Պետրոս արտասահմանեալ 'ի Ռուսիոյ զՑխատեսանս՝ որք ընդնակուԹեամբ հատուածեալ էին անդանօր, և ազդ տարար հրամանատակացն Շվեդաց՝ զի Թէ չիցէ հաստատեալ խաղաղուԹիւն 'ի միջի ըստ պայմանացն առաջարկելոց, առաքեսցէ առէ զնաւատորմն իւր 'ի Շվէտս : Եւ տարար այնպէս, և առին Ռուսք քաղաքս և աւանս բազումս 'ի Շվետիա և 'ի հարաւակողմն ԱԹոքոլմայ, և անխնայ աւարհարուԹեամբ քանդեցին տունս հնգետասան հազար : Միջնորդ հաշտուԹեան կալաւ դշխոյն Շվետաց զԳէորգ Թագաւոր Անգղիոյ, այլ Պետրոս մերժեաց զմիջնորդուԹիւնն, և

գանգատ կալաւ առ Գէորգ վասն գնացից նորա, որ ըստ բազում գլխոց 'ի վնաս և 'ի Նախատինս Ռուսիոյ բերէին:

Եւ մինչդեռ տակաւին ամրապնդէր զզօրս իւր 'ի խաղաղ ընդդէմ պետութեցն դաշնակցելոց 'ի Նպաստ Շվետիոյ, և 'ի միւս կողմանէ զօրք իւր 'ի Նաւամարտս յաղթութիւնս գործէին ընդդէմ Շվետաց, Փետերիկոս այրն Ուլրիկայ ամբարձեալ յաթոռն Շվետիոյ՝ միջնորդ խաղաղութեան կալաւ զարքայն Գաղղիոյ առ Պետրոս, և զինադադարութիւն եղև: Կարգեցաւ ժողով Թագաւորաց 'ի Նայշթատ, յորում Պետրոս ահարկուն յաչս բազմաց՝ հաճութեամբ ամենեցուն մշտնջենապէս գրաւեաց որչափ ինչ երկրակալութիւն արարեալ էր Նորա 'ի սահմանացն Քուրլանտիոյ մինչև յայնկոյս ծոցոյն Ֆինլանտիոյ, և անտի և 'ի վեր զամենայն զհիւսիսակողմն Քեքսհոլմայ. և հաստատեցաւ պայման ուխտին յ30 աւուր ամսոյն օգոստոսի, յամին 1721:

Ապա 'ի մեծահանդէս կացուրդսն որք հռչակեցան 'ի Բեթրպուրկ սակս մեծի և կարևոր ուխտի խաղաղութեան, ծերակոյտն և սիւնհոդոսն միանգամայն վճիռ եդուն անուանել զՊետրոս Մեծ, և Ինքնակալ, և Հայր հայրենեաց: Իսկ Նա այն ինչ զուարճացեալ յանձն իւր ընդ խաղաղութիւն՝ ակն ունէր անխափան և անընդհատ միտ դնել բարգա-

առձեռին պետութեան իւրոյ, հարկեցաւ 'ի նոր պատերազմ ձեռն արկանել 'ի կողմն Ասիոյ ։

Քանզի ազգն Ղեկաց կամ Լեզկիք բնակիչք Կովկասու գլուխ ամբարձեալ ընդդէմ Հիւսէյին շահի Պարսից՝ ապա-պատակեցին զԱղուանս և զամենայն զարեւմտակողմն Կասպից ծովուն մինչև 'ի Դարբանդ ։ Յաւարի առին և զմեծ քաղաքն Շամախի, և սպանին արս բա-զումս յեկաց և 'ի բնակաց տեղւոյն ըզ-Հայս և զՊարսիկս, ընդ որս և զընկե-րութիւն ռուսց վաճառականաց առաքե-լոց անդր 'ի Պետրոսէ ։ Բողոք կալաւ Պետրոս վասն իւրոցն առ Հիւսէյին շահ. և տեսեալ զի նմա ոչ ինչ փոյթ էր զեղելոցն վասն անպարապութեան 'ի խռովութեանց իւրոյ աշխարհին, մանա-ւանդ թէ և 'ի Պետրոսէ ձեռն օգնակա-նութեան խնդրէր ընդդէմ Մահմուտ միրվէյիզ անուն խանին՝ որ բռնացեալ էր յԱսպահան, յարեաւ Պետրոս քա-ռասուն և հինգ հազար արամբք, և Կա-տարինէ ընդ նմա, և խաղաց եհաս մին-չև 'ի Դարբանդ ։ Յաջողեաց Ռուսաց, զի իշխան անուանի տեղւոյն այր դողով յոյժ և վաղ՝ մտացոյց զբանալիս դրանցն առ Պետրոս. և նա եմուտ 'ի ներքս խաղ-աղութեամբ ։ Ապա իբրև ետես զի ձմեռն պատրաստականացն, և լուաւ զի նաւքն նպա-րակաւորք վտանգեալ էին, շատ համա-րեցաւ զայնչափ՝ զերկրակալութիւն, և

դարձաւ անդրէն 'ի Մոսքուա :

Իսկ խանն Պարսից Մահմուտ խաղաց գնաց և 'ի կողմանս Դարբանդայ՝ աւար հարեալ զամենայն զՃանապարհայն, և բնակիչքն Կիլանու ապաւինեցան 'ի Ռուսս : Մինչ այս մինչ այն, շահ Թահմազ որդի Հիւսէյին շահին զօրացեալ՝ արձակեաց զդեսպան մի առ Պետրոս. և նորա հասեալ 'ի Բեթրպուրկ՝ պայմանաւ ուխտի աւանդէր Պետրոսի զԴարբանդ, և զգաւառս Կիլանու և Մազանդարանայ. և Պետրոս խոստանայր օգնական լինել զօրօք շահ Հիւսէյինայ և որդւոյ նորին :

Ընդ այն ժամանակս հրատարակեաց Պետրոս և մատեան մի օրինաց վաճառականութե, և արգել դատաւորաց մեկնաբանել զիմաստս օրինացն, ատենակալաց ևեթ տուեալ հրաման՝ զերկբայելի դէպս առ ծերակոյտ անդր հանել: Կարգեաց և զմի ոմն 'ի ծերակոյտ ժողովոյ անուն ընդհանուր տեղակալ, որոյ իշխանութիւն էր դիտել զգնացս սինկղիտոսացն, կալ հանապազ առ Թագաւորին, և 'ի լինել նորա արտաքոյ՝ ունել զտեղին :

Բազում նորոգութիւս արար և յեկեղեցական սովորութիւս և եբարձ զզեղծմունս՝ առաջնորդութբ Թէոփանեայ մետրապօլտի Փրոքոփովիչ. Թէպէտ և բազումք 'ի ոդիտաց անէծս կարդային Թագաւորին, և նեռն անգամ կոչէին զնա:

մին 1717 ամաց գնաց դշխոյիւն համանգերձ 'ի Գաղղիա. ուր մեծապէս պատուով ընդունելութիւն գտեալ 'ի Թագաւորէն որ էր Լուդովիկոս ԺԵ, ուշի ուշով զննէր զամենայն զքաղաքական և զզինուորական կարգս, զհասարակաց ատեանս, զկարգս և զուսումնարանս և ըզգործարանս, և զմեծութիւն անգամ գիտնականաց աշխարհին։ Տեսեալ զշիրիմ աշխարհահռչակ ծիրանաւորին Ռիշլիեայ՝ գոչեաց, ասեն, Պետրոս. «Ա՛յր մեծ. կցէի թէ դու առ իս էիր, և ես շնորհէի քեզ զկէս թագաւորութեան իմոյ, և առ 'ի քէն ուսանէի զմիւսոյ կէսոյն ունել զանսասանութիւն»։

Ծանօթս կալեալ զօրացեալ ընդ ամենայն առաջնորդաց նորին Գաղղիոյ, ամենեկութիւնս կարևորս քաղելով յամենեցունց։ Մտանէր առ Աստուածաբանս անդամ Սորբոնեան ժողովոյն, և հնարս 'ի նոցանէ խնդրէր միաբանելոյ զեկեղեցին Ռուսաց ընդ հռովմէականին։ Հաստատեաց ընդ Թագաւորին Գաղղիոյ զդաշն բարեկամութեան, յորում Թագաւորքն Գաղղիոյ և Բրուսիոյ խոստանային միջնորդ լինել հաշտութեան Ռուսաց ընդ Շուէտս։ Հասեալ էր Պետրոս ընդ հաշտութիւնն, սակայն առ ժամն լռեաց՝ մնալով նախ աղաչանաց 'ի Կարոլոսէ, և դարձ արար յերկիր իւր։

Այս արար կողմանցն նորոց առաջե-

և ըստ անխնամ աննողեան 'ի ձեռս հնա-ւէր և յամառոտ դաստիարակաց՝ յամե-նայնի հակառակէր մտաց և կամաց հօրն . որոյ կամեցեալ ուղղել զնա յան-ուղղայ գնացիցն՝ անապաւն ուրեմն կար-գեաց նմին դաստիարակ զՄենշիկով, այլ 'ի զուր ։ Ամուսնացոյց զնա ընդ իշ-խանական օրիորդի . այլ նա տաղտկացաւ 'ի նմանէ, և յառաջին խեռութիւն իւր դարձաւ, մինչև մեռաւ և օրիորդն ։ Յայնժամ գրեաց առ նա Պետրոս թուղթ կշտամբանաց և յանդիմանութեան՝ հան-դերձ սպառնալեօք մահու՝ թէ ոչ զղջա-նայցէ ։ Նա յայլում նուագի դարձեալ գրեաց նմա՝ կամ ուղղել զգնացս իւր և յաջորդել ինքեան յաթոռն արժա-նապէս, և կամ կրօնաւորել . ապա թէ ոչ՝ ասէ, կեալ քո ևեթ զկնի մա-հուն իմոյ շատ է մեր 'ի վայր տապալել զպետութիւն Ռուսաց ։ Յանձն էառ Ալեքս կրօնաւոր լինել . և Պետրոս ամիսս վեց շնորհեաց նմա 'ի խորհել զիրացն, և ինքն յուղի անկաւ 'ի Ռուսիոյ ։

Յայնժամ Ալեքս անհրաման 'ի հօ-րէն գնաց 'ի Վիեննա, անտի 'ի Թիրոլ, 'ի Թուրին, և ապա 'ի Նէապօլիս ։ Ար-ձակեաց Պետրոս զհետ նորա զզօրա-գլուխն Րումեանցով և զխորհրդական իւր զԹոլսթօյ . և երկոքեանս այս այր գալով ծառայաք 'ի գիւտս հնարից՝ եգիտ զապաստանարանն Ալեքսի 'ի բերդն անուանեալ Սանթէլմօ, և հաւանե-

ցոյց զնա դառնալ գալ ընդ իւր 'ի Ռուսիա :

Եկաց Ալէքս առաջի Պետրոսի 'ի Մոսքուա, և 'ի ծունր իջեալ խնդրէր զներումն : Պետրոս յարոյց զնա, և եհարց նմա բազում ինչ, սպառնալով նմա զմահ՝ եթէ ծածկեսցէ ինչ 'ի նմանէ : Այսպէս ած զնա 'ի սրահ մեծ, ուր էր ժողովեալ աւագանին, և անդ ետ ընթեռնուլ զպայմանադրութիւն պատրաստեալ, յորում ամբաստան լինէր զանուղղայ բարոյից որդւոյն, զհամախոհութէ նորա ընդ կուսակիցս հին սովորութեանց, զստահակ գնացիցն ընդ կնոջ իւրոյ, զպղծել ամուսնական հաւատարմութեն՝ յաճախելով առ այլ կին ցածազգի, և զգնալոյն 'ի Վիեննա և ամբաստան լինելոյ զհօրէն առ կայսրն, և խնդրելոյ 'ի նմանէ զօրս 'ի թիկունս. և յաւելոյր ասել. «Այսպէս ահա գործեաց եկն որդին մեր. և թէպէտ արժանի մահու էր նա, այլ գորովն մեր հայրենի ներէ նմա զյանցանսն : Սակայն զմտաւ ածեալ զստահակութէ գնացս նորա՝ չկամիմք թողուլ նմա զթագաւորութիւն մեր, գիտելով քաջ՝ զի 'ի նախատինս և 'ի կործանումն ազգիս և աշխարհիս դառնալ ունի այն : Վասն որոյ ըստ հայրենի իրաւանց մերոց և ըստ կայսերական իշխանութեան՝ զրկեմք զորդին մեր զանդրանիկ զԱլէքս 'ի ժառանգութէ աթոռոյս Ռուսաց զհետ մեր. և կար-

գեալ յայտ առնեմք ժառանգ Թագաւորութեան մերոյ զորդին մեր զկրտսեր զՊետրոս՝ Թէպէտ և գեռահասակ, առ 'ի չգոյէ այլոյ ուրուք արժանաւորի »: Այս վճիռ հրատարակեցաւ 'ի Մոսքուա յամին 1718 'ի փետրուարի 14. և Ալեքս ստորագրեաց 'ի նամակին՝ իրաւունս տալով վճռոյ հօրն: Յայնժամ գնաց ինքնակալն 'ի մայր եկեղեցին, և անդ վերստին յընթերցումն ետ զվճիռն, ընդ որ հաւանեցան և ամենայն եկեղեցականքն և ձեռն եդին վճռոյն:

Կասկած կային ոմանք՝ եթէ այսմ ամենայնի մեծաւ մասամբ պատճառս տուեալ իցէ Կատարինեայ մօրուին Ալեքսի. և Թերևս յիրաւի, որպէս Թուի յիրացն դիպելոց: Քանզի ոչ շատացեալ Պետրոսի այնու վճռով՝ խորհէր եթէ յետ իւրոյ մեռանելոյ անշուշտ ոչ կացցեն յապաստանի և Կատարինէ դշխոյն, և որդի նորին Պետրոս յերեսաց Ալեքսի և կուսակցաց նորա. հարկ համարէր ապա արկանել զԱլեքս յարեւէ:

Այլ տագնապ տարակուսանաց պատեալ պաշարէր զնա, զի չգտանէր 'ի մատեանս օրինացն իրաւունս խորհրդոց իւրոց, մանաւանդ Թէ զնորին հակառակն. զի յառաջ քան զամենայն ինքն էր գլխաւոր ոսոխ և ամբաստան զորդւոյն, և դատաւոր և վկայ: Սակայն հնարեցաւ հաւաքեաց կուտեաց որչափ

ինչ գլուխս ամբաստանութե̃ց մարթացաւ գտանել զորդւոյն իբրև զդաւաճանէ և զմատնչէ: Ստիպեաց և զորդին ողոքով և սպառնալեօք՝ խոստովան լինել՝ եթէ կամեցեա՞լ իցէ երբեք դաւել զհայրն, կամ թէ եդեա՞լ իցէ 'ի մտի ձեռն տալ 'ի թշնամիս կենաց հօրն՝ եթէ երբեք ուրեք 'ի վեր երևեսցին: Յայնժամ ետ նմա պատասխանի Ալէքս գրով, և ասէ. «Եթէ երբեք հրաւիրէին զիս ապստամբք հզօրք յիւրեանց կողմն կենդանեաւ իսկ հօրդ իմոյ, հաւատեաւ կուսակից նոցին լինէի»:

Յետ չորից ամսոց քաղեաց 'ի բերանոյ Ալէքսի և զայլ խոստովանութիւն հանդէտ առաջնոյն. սակայն և այն ոչ բաւական պատճառք էին սպանանելոյ զնա: Առաքեաց ապա առ դատաւորս և առ եպիսկոպոսունս, և խորհուրդ հարցանէր 'ի նոցանէ վասն առաջիկայ իրացն՝ զի կարասցէ անստգիւտ խղճիւ յառաջ վարել զխորհուրդն: Եւ նոքա խորհուրդ 'ի մէջ առեալ՝ պատասխանի ետուն ինքնակալին եթէ տէր է նա կենաց և մահու ըստ արարչադիր կարգին. եթէ կամիցի զմահ որդւոյն՝ հրաման է նմա 'ի գրոց սրբոց, յօրինացն Մովսէսի և յօրինակէն Աբեսաղոմայ (որ այլազգ էր յառաջիկայ իրացն). և եթէ հաճեսցի ներել նմա, օրինակ առցէ ներողամտութե̃ 'ի Քրիստոսէ. «Սիրտ թագաւորի 'ի ձեռս Աստուծոյ է, ասեն.

Մինչդեռ 'ի Մոսկուա կատարէր զատն Աղեքսի, որդւոյն Շվեդաց փութայր խաղաղութիւն առնել ընդ Ռուսաց՝ միջնորդելով բազմահնար խորհրդդականին իւրոյ քաջի, որում անուն էր Կօերց. Հաւանեցաւ և Պետրոս, և եղև ժողով մեծ յԱլանտ կղզի, յորում նախ քան զպայ[illegible]ս ուխտին ցուցին թագաւորքն երկոքեան զարդիւնս բարեկամութեան. զի Կարոլոս դարձոյց Պետրոսի զերկոսին զօրավարս նորա զԹրուպեցքոյ և զԿոլովկին, որք անդըստին 'ի պատերազմին Նարվայի գերի վարեալ կային 'ի Շվետս. և Պետրոս դարձոյց Շվեդաց զմարաջախտն Լեւենհէպտ, զոր իւրով ձեռամբ կալեալ էր նորա 'ի վերջնում նուաճմանն անդ իւրում։ Իսկ 'ի դաշնագրութեան ուխտին այս պայմանք հաստատեցան 'ի միջի. Ա, Դարձուցանել Պետրոսի առ Շվետս զՖինլանտիա և զմասն Քարելիոյ, 'ի ձեռին պահեալ զՎիպուրկ, զԻնկրիա, զԷսթոնիա և զԼիվոնիա. Բ, Օգնական լինել Շվեդաց՝ զի առցեն անդրէն յԱնգղիացւոց զՓամերանիա և զԲրէմա և զՎէրտէն. Գ, Հաստատել զգուքսն Մէքլէնպուրկայ յիւրում տէրութեան. Դ, Զի հաստատեսցէ Պետրոս յաթոռն Լեհաց զՍտանիսլաւ։

Ընդ այն աւուրս մեռաւ Կարոլոս ԺԲ, 'ի պատերազմի. և Պետրոս դարձաւ ուշ ունել զարդարելոյ աշխարհին

իւրոյ։ Բազմացոյց զգործարանս ազգի ազգի իրաց, ես և յախճապակաց, մետաքսի, ոսկերչաց, չուխայից, հոլանդեան կերպասուց, և պարսիկ գխպակաց անգամ ոսկեթելից։ Առանձին ժողով խորհրդականաց կացոյց 'ի տընտեսել զպեղուճս հրահալից, և ճոխացոյց զգործարանս զինուց։ Պեղեաց և ջրանցս՝ որովք միացոյց զգետն Նեւա ընդ այլում նաւարկելի գետոյ, և դիւրացոյց յոյժ զերթևեկ վաճառականաց 'ի Բեթրպուրկ։ Յառաջ վարեաց և ըղպեղուճն մեծի խրամին՝ որով կցել ունէր ծովն Կասպից ընդ ծոցոյն Ֆինլանտիոյ և ընդ Ովկիանու։ Շինեաց և զնոր քաղաքն Լատոկա։ Եւ յայսմ ամենայնի ոչ միայն ինքնին անձամբ վերատեսուչ կայր, այլ և իւրով իսկ ձեռամբ զձևսն նկարագրէր, զյատակսն չափէր, և վաստակէր ևս 'ի գործ։ Մեծամեծաց պատուէր հրամանի կապեաց 'ի վերայ՝ վայելուչս կանգնել տունս ըստ ճարտարապետական կարգաց. կարճեաց զխենեշութիւս 'ի հանդերձս, և զղեղծմունս 'ի խաղս բախտի։ Յամենայն քաղաքս կարգեաց դպրոցս Թուաբանութե. եբարձ 'ի միջոյ զմուրողս, կառուցեալ աղքատանոցս և որբանոցս. և միօրինակս արար ընդ ամենայն Ռուսսիա զչափ և զկշիռ։ Կարգս եդ և օրինաց դատաստանի՝ ըստ կարի 'ի համառօտն սահմանեալ զվճիռ դատին։ Հա-

տատանեաց վարժոցս արտաքին իրաց, պա-
տերազմի, ծովակալութե, արքունի ե-
կամտից և վաճառականութե, և կար-
գեաց 'ի նոսա մանկունս ազատաց թը-
ւով: Հրատարակեաց և մատեան օրի-
նաց պարզ և համառօտ 'ի ռուս և 'ի
գերմանացի բարբառ. և ուշի ուշով
հսկէր 'ի ճշգրիտ կատարումն օրինացն:

Տեսեալ Գէորգայ Ա, Թագաւորին
Անգղիոյ, և այլոց ոմանց Թագաւորաց
Եւրոպայ զճոխանալ Պետրոսի յաւե-
նայնի, և զանցանել զբազմօք 'ի նոցա-
նէ, միաբանեցին՝ որպէս թէ իրաւունս
առնել արքային Շվեդաց և դարձու-
ցանել 'ի նա զՖինլանտիա և զԼիվոնիա,
և չթողուլ 'ի ձեռս Պետրոսի, բայց միայն
զԲեթրպուրկ. զՔրոնշթատ, և զՆար-
վա: Յայնժամ Պետրոս արտասահման
արար 'ի Ռուսիոյ զՅիսուսեանս՝ որք ըն-
նակութեմբք հաստատեալ էին անդանօր,
և ազդ արար հրամանակալացն Շվեդաց՝
զի թէ չիցէ հաստատեալ խաղաղութիւն
'ի միջի ըստ պայմանացն առաջարկե-
լոց, առաքեսցէ անդ զնաւատորմն իւր
'ի Շվէտս: Եւ արար այնպէս, և առին
Ռուսք քաղաքս և աւանս բազումս 'ի
Հիւսիսի և 'ի հարաւակողմն Սթօքհոլ-
մայ, և անխնայ աւարհարութբ քան-
դեցին առաւել հնգետասան հազար: Միջ-
նորդ հաշտութե կալաւ դշխոյն Շվե-
դաց զԳէորգ Թագաւոր Անգղիոյ, այլ
Պետրոս մերժեաց զմիջնորդութիւնն, և

գանգատ կալեալ առ Գէորգ վասն դնա-ցից նորա, որ ընդ բազում գլխոց 'ի վնաս և 'ի նախատինս Ռուսիոյ բերէին:

Եւ մինչդեռ տակաւին ամբաստանէր զզօրս իւր 'ի խաղալ ընդդէմ պետու-թեցն դաշնակցելոց 'ի նպաստ Շվետիոյ, և 'ի միւս կողմանէ զօրք իւր 'ի նաւա-մարտս յաղթութիւնս գործէին ընդդէմ Շվեդաց, Փեդերիկոս այրն Ուլրիկեայ ամբարձեալ յաթոռն Շվետիոյ՝ միջ-նորդ խաղաղութեան կալեալ զարքային Գաղ-ղիոյ առ Պետրոս, և զինադադարումն եղև: Կարգեցաւ ժողով թագաւորաց 'ի Նայշթատ, յորում Պետրոս ահար-կուն յաչս բազմաց՝ հաճութբ ամենե-ցուն մշտնջենաւորէս զգրաւեաց որչափ ինչ երկրակալութիւն արարեալ էր նորա 'ի սահմանացն Քուրլանտիոյ մինչև յայն-կոյս ծոցոյն Ֆինլանտիոյ, և անուն և 'ի վեր զամենայն զհիւսիսակողմն Քեղա-հոլմայ. և հաստատեցաւ պայման ուխ-տին յ30 աւուր ամսոյն օգոստոսի, յա-մին 1721:

Այսպէս 'ի մեծահանդէս կացուրգան որք հռչակեցան 'ի Բեթրպուրգ սակս մեծի և կարևոր ուխտի խաղաղութեան, ծե-րակոյտն և սինհոդոսն միանգամայն վճիռ. հատին անուանել զՊետրոս Մեծ, և Ինքնակալ, և Հայր հայրենեաց: Իսկ նա այն ինչ զուարճացեալ յանձն իւր ընդ խաղաղութիւն՝ այն ունէր անխա-փան և անընդհատ միտ դնել բարեզար-

ւանձնելոյ պետութեան իւրոյ, հարկեցաւ 'ի նոր պատերազմ ձեռն արկանել 'ի կողմն Ասիոյ ։

Քանզի ազգն Ղեկաց կամ Լեզկեք բնակիչք Կովկասու գլուխ ամբարձեալ ընդդէմ Հիւսէյին շահի Պարսից՝ ապստամբեցին զԱղուանս և զամենայն զարևմտակողմն Կասպից ծովուն մինչև 'ի Դարբանդ ։ Յաւարի առին և զմեծ քաղաքն Շամախի, և սպանին արս բազումս յեկաց և 'ի բնակաց տեղւոյն ըզ-Հայս և զՊարսիկս, ընդ որս և զընկերութեն ռուս վաճառականաց առաքելոց անդր 'ի Պետրոսէ ։ Բողոք կալաւ Պետրոս վասն իւրոցն առ Հիւսէյին շահ. և տեսեալ զի նմա ոչ ինչ փոյթ էր զեղջելոցն վասն անպարապութեան 'ի խռովութեանց իւրոյ աշխարհին, միաբանեալ թէ և 'ի Պետրոսէ ձեռն օգնականութեան խնդրէր ընդդէմ Մահմուտ միրվէյիզ անուն խանին՝ որ բռնացեալ էր յԱսպահան, յարեաւ Պետրոս քառասուն և հինգ հազար արամբք, և կատարեաց ընդ նմա, և խաղաց եհաս մինչև 'ի Դարբանդ ։ Յաջողեաց Ռուսաց, զի իշխան անտառիկ տեղւոյն այր գոլով յոյլ և վատ՝ մատոյց զբանալիս դրանցն առ Պետրոս. և նա եմուտ 'ի ներքս խաղաղութեամբ ։ Այսու իրօք ետես զի ձեռն պատերազմականայր, և լուաւ զի նաւքն նպարակաւորք վտանգեալ էին. շատ համարեցաւ զայն չափ՝ զերկրակալութեն, և

դարձաւ անդրէն 'ի Մոսքուա:

Իսկ խանն Պարսից Մահմուտ խաղաց գնաց և 'ի կողմանս Դարբանդայ՝ աւար հարեալ զամենայն զճանապարհայն, և բնակիչքն Կիլանու ապաւինեցան 'ի Ռուսս: Մինչ այս մինչ այն, շահ Թահմազ որդի Հիւսէյին շահին զօրացեալ՝ արձակեաց զդեսպան մի առ Պետրոս. և նորա հասեալ 'ի Բեթրպուրկ՝ պայմանաւ ուխտի աւանդէր Պետրոսի զԴարբանդ, և զդաւառս Կիլանու և Մազանդարանայ. և Պետրոս խոստանայր օգնական լինել զօրօք շահ Հիւսէյինայ և որդւոյ նորին:

Ընդ այն ժամանակս հրատարակեաց Պետրոս և մատեան մի օրինաց վաճառականութ̃ե, և արգել դատաւորաց մեկնաբանել զխմաստս օրինացն, ատենակալաց ևեթ տուեալ հրաման՝ զերկբայելի դէպս առ ծերակոյտ անդր հանել: Կարգեաց և զմի ոմն 'ի ծերակոյտ ժողովոյ անուն ընդհանուր տեղակալ, որոյ իշխանութիւն էր դիտել զգնացս սինկղիտոսացն, կալ հանապազ առ Թագաւորին, և 'ի լինել նորա արտաքոյ՝ ունել զտեղին:

Բազում նորոգութ̃իս արար և յեկեղեցական սովորութ̃իս և եբարձ զզեղծմունս՝ առաջնորդութ̃բ Թէոփանեայ մետրապօլտի Փրոքոփովիչ. Թէպէտ և բազումք 'ի տգիտաց անէծս կարդային Թագաւորին, Նեռն անգամ կոչէին զնա:

Գնելով Գերմանիոյ կանխաւ զհռչակաւոր պահարան հնութեանց Ռուխաքերոյի, հրամայեաց և բժշկի իւրում Արեշքին անուն՝ առնել զհաւաքումն բնական պատմութեն, և վասն երկաքանչիւր հաւաքմանցն կանգնելով շինուած հոյակապ՝ համարձակ տալոյ զմուտն ամենեցուն, և պատուիրեաց հիւրասիրել զեկեալսն խահվէիւ, գինեաւ, ցքռով և աղանդերով, կարգեալ առ այն եկամուտ տարեկան:

Կանգնեաց և ճեմարան գիտութեանց՝ ծանր ծանր պայմանս կարևորս յանգամոց նորին պահանջելով: Առանձին խնամով ուշ կալաւ Թարգմանութեն բազմապատիկ մատենից, այլ 'ի ձեռն տասանց քաջ լեզուագիտաց, զորս և յազգե ռուսս կամէր, և ըստ ամենայնի հմուտս հայրենի բարբառոյն:

Ցայն միջոց ժամանակի կամեցեալ հռչակաւ պսակել զԿատարինէ 'ի կայսրուհի Ռուսիոյ, առանձին հրովարտակաւ հանդիսացոյց զվաստակս և զարժանիս նորին, և ապա յ18 մայիսի յամին 1724 եդ զԹագն 'ի գլուխ Կատարինեայ 'ի մայր եկեղեցին Մոսքուայի, հանդիսատես ունելով զդքսուհին Քուրլանտիոյ զդուստր եղբօրն իւրոյ Իւանայ, և զդուքսն Հոլշթէյնայ: Իբրև ելին յեկեղեցւոյն՝ ետ տանել յառաջոյ կայսրուհւոյն զգաւազանն և զգունտ: Յետ այնր հանդիսին՝ որ պատ-

նայն մեծավայելուչ հանդերձանօք կա-
տարեցաւ 'ի մեծազօր ինքնակալէն, հռչակեցաւ այլով հանդիսիւ և խօսումն Աննայի դստերն Պետրոսի ընդ դքսին Հոլսթէյնայ :

Այլ իբրև վախճան եղև այսր ամենայնի ուրախութեանց՝ ժամանեցին աւուրք վշտացն Պետրոսի : Քանզի անչափ վաստակքն՝ յորս անձնատուր էր 'ի սկզբանէ հետէ թագաւորութենն՝ վատեցին զառողջութի նորա. և սաստիկ դատապարտութեանն Աղեքսի, և մահ որդւոյն Կատարինեայ դառնացուցանէին նմա և ևս զցաւս մարմնոյն. այլ և մխիթարութի պակասեաց նմա այնուհետև յամուսնոյ անտի իւրմէ : Զի Կատարինեայ տաղտկացեալ ինն 'ի նեղասիրտ գնացից խօթագին ինքնակալին՝ խնդրէր զփոփանս իւր 'ի մտերմութե սենեկապանին իւրոյ Մօէնս անուն պատանւոյ : Այն ունէր ևս՝ եթէ յետ պսակմանն 'ի կայսրուհի Ռուսիոյ՝ անցցէ և յաթոռն Պետրոսի. այլ չգտեալ ինչ նշանակ այնպիսի 'ի հրովարտակին՝ սկսաւ անգոսնել 'ի միտս իւր զբարերարն իւր և զամուսին և զտէր :

Տոհմն արքունի 'ի Փեթերհոֆ էր յայնժամ. և անդ Պետրոս անանդորր մնացեալ 'ի յոյզս անընկճելի նախանձու սրտմտութե, զհասարակ գիշերաւ յարուցեալ եմուտ յանկարծակի 'ի սենեակ անդր՝ ուր ննջէր իշխանն Ռեփ-

ընտրեալ զկողմն յոր ձեռն տեառն առաջնորդեսցէ քեզ»:

Յօրինեցաւ այնուհետեւ վճիռ դատապարտութեան Ալեքսի 'ի բերանոյ ատենին. եւ իբրեւ ընթերցաւ այն հրապարակաւ, թալուկն մահու անկաւ, տանեն, զԱլեքսիս, եւ ապա հարեալ 'ի կաթուածէ մեռաւ: Են որք ասեն եթէ Պետրոս ինքնին իւրով ձեռամբ գլխատեալ իցէ զորդին. այլք՝ թէ 'ի ձեռն այլոյ ուրուք լեալ իցէ գլխատումն. եւ կէսք՝ թէ 'ի թունաւորեալ խմորանէ մեռեալ իցէ Ալեքս: Այս ինչ հաւաստի է, զի Պետրոս կարգեաց նմա յուղարկաւորութիւն մեծ. եւ ապա պատուհասեաց զբազումս իբրեւ դաւակիցս Ալեքսի: Աբրահամ Լոփուխինն եղբայր Եւդոքսիայ մօրն Ալեքսի, Ալեքսանդր Քիքին, եպիսկոպոսն Ռոստովայ, փուսթինոյ գրան երէցն Եւդոքսիայ, սպանան անուօք: Գլեպով զօրավար մտերիմն Եւդոքսիայ սպանաւ 'ի կախաղանի: Երիցունք եւ միանձունք յիսուն եւ հինգ զօղակիցք Ալեքսի՝ գլխատեցան շուրջ զկախաղանաւն. եւ այլք էին որք ըստ նոցին օրինակի սպանան, էին եւ որք յաքսորս առաքեցան. եւ Եւդոքսիա ինքնին ձաղկեալ յերկուց հաւատաւորաց՝ արգելաւ 'ի մենաստան ուրեք 'ի նորն Լատոկա:

Սակայն ոչ յապաղեաց [illegible] խղճին տագնապեցուցանել զՊետրոս, եւ

տապաշաւն այն գործոյց նմա անդրէն զփառս առաջնոյ վաստակոյն։ Ցետ սակաւ ժամանակի և մահ որդւոյն Կատարինեայ՝ զոր կացուցեալ էր ժառանգ թագաւորութեանն՝ յաւելեալ 'ի մահ անդրանկին իւրոյ, լքոյց զնա 'ի քաղցրութէ սրտին. մերժեցաւ այնուհետև 'ի զգօնութէ մտացն, անկաւ թուլացաւ 'ի պնդութէ հոգւոյն, և փակեալ զանձն իւր 'ի Փեթերհոֆ՝ եդ 'ի մտի սովամահ վճարել 'ի կենաց, սպառնալիս մահու կապեալ 'ի վերայ՝ թէ ոք իշխեսցէ մատչել առ նա։ Եկն եկաց առ դուրս նորա քաջ իշխանն Տոլկորուքի, և բաղխեաց ուժգին։ Ի ձայն սպառնական գոչէր թագաւորն 'ի ներքուստ, զի թէ իշխեսցէ յերեսս անկանել նմա՝ բարձցէ զգլուխն 'ի նմանէ։ Այլ Տոլկորուքի պնդէր և ասէր. «Բա՛ց զի խօսեցայց ընդ քեզ։ Հասեալ կամ 'ի ծերակուտէ անտի հարցանել ցքեզ՝ թէ զո՞ կարգեսցես ինքնակալ փոխանակ քո, որովհետև դու հրաժարես յաթոռոյդ»։ Ոչ հանդարտեաց Պետրոս արիական սիրոյ իշխանին, եբաց զդուրսն և անկաւ ընդ պարանոցաւ նորա. անսաց զգօնութե խրատուց Ճշմարիտ բարեկամին, և էառ վերստին 'ի ձեռս զանձն կառավարութե աշխարհին։ Առցուք և մեք անդրէն զթել պատմութե գործոց ինքնակալին։

իւրոյ: Բազմացոյց զգործարանս ազգի ազգի իրաց, ևս և յախճապակաց, մետաքսի, ոսկերչաց, չուխայից, հոլանդեան կերպասուց, և պարսիկ դիպակաց անգամ ոսկեթելից: Առանձին ժողով խորհրդականաց կացոյց 'ի տընտեսել զպեղումն հրահալից, և ճոխացոյց զգործարանս զինուց: Պեղեաց և ջրանցս՝ որովք միացոյց զգետն Նեւա ընդ այլում նաւարկելի գետոյ, և դիւրացոյց յոյժ զերթեւեկ վաճառականաց 'ի Բեթրպուրկ: Յառաջ վարեաց և ըզպեղումն մեծի խրամին՝ որով կցել ունէր ծովն Կասպից ընդ ծոցոյն Ֆինլանտիոյ և ընդ Ովկիանու: Շինեաց և զնոր քաղաքն Լատոկա: Եւ յայսմ ամենայնի ոչ միայն ինքնին անձամբ վերատեսուչ կայր, այլ և իւրով իսկ ձեռամբ զձեւն նկարագրէր, զյատակն չափէր, և վաստակէր ևս 'ի գործ: Մեծատանց պատուէր հրամանի կալեաց 'ի վերայ՝ վայելուչս կանգնել տունս ըստ ճարտարապետական կարգաց. կարճեաց զխենեշութիւն 'ի հանդերձս, և զզեղծմունս 'ի խաղս բախտի: Յամենայն քաղաքս կարգեաց դպրոցս թուաբանութե. եբարձ 'ի միջոյ զմուրողս, կառուցեալ աղքատանոցս և որբանոցս. և միօրինակս արար ընդ ամենայն Ռուսիա զչափ և զկշիռ: Կարգս եդ և օրինաց դատաստանի՝ ըստ կարի 'ի համառօտն սահմանեալ զվճիռ դատին: Հաւ-

տասանեաց վարժոցս արտաքին իրաց, պատերազմի, ծովակալութե՛, արքունի եկամտից և վաճառականութե, և կարգեաց 'ի նոսա մանկունս ազատաց Թըւով : Հրապարակեաց և մատենան օրինաց պարզ և համառօտ 'ի ռուս և 'ի գերմանացի բարբառ . և ուղի ուղղով հանէր 'ի ճշգրիտ կատարումն օրինացն :

Ցեսեալ Գէորգայ Ա. Թագաւորին Անգղիոյ, և այլոց ամանց Թագաւորաց Եւրոպայ զճոխանալ Պետրոսի յամենայնի, և զանցանել զբազմօք 'ի նոցանէ, միաբանեցին՝ որպէս Թէ իրաւունս տանել արքային Շվեդաց և դարձուցանել 'ի նա զՖինլանտիա և զԼիվոնիա, և չԹողուլ 'ի ձեռս Պետրոսի, բայց միայն զԲեԹրպուրկ, զՔրոնշԹատ, և զՆարվա : Յայնժամ Պետրոս արտասահման արար 'ի Ռուսիոյ զՅիսուսեանս՝ որք ընակութիւ՛ք հաստատեալ էին անդանօր, և ապա արար հրամանականացն Շվեդաց՝ զի Թէ չիցէ հաստատեալ խաղաղութիւն 'ի միջի ըստ պայմանացն առաջարկելոց, առաքեսցէ աստ զհաւատարիմն իւր 'ի Շվէտս : Եւ արար այնպէս, և առին Ռուսք քաղաքս և աւանս բազումս 'ի Ֆինլանտ և 'ի հարաւակողմն ՍԹոքոլմայ, և անխնայ աւարհարութ՛ք քանդեցին տունս հնգետասան հազար : Միջնորդ հաշտութե կալաւ դշխոյն Շվետաց զԳէորգ Թագաւոր Անգղիոյ, այլ Պետրոս մերժեաց զմիջնորդութիւնն, և

գանգատ կալաւ առ Գէորգ վասն գնացից նորա, որ ըստ բազում գլխոց 'ի վնաս և 'ի նախատինս Ռուսիոյ բերէին:

Եւ մինչդեռ տակաւին ամրապնդէր զզօրս իւր 'ի խաղաղ ընդդէմ պետութեցն դաշնակցելոց 'ի նպաստ Շվետիոյ, և 'ի միւս կողմանէ զօրք իւր 'ի նաւամարտս յաղթութիւնս գործէին ընդդէմ Շվետաց, Փեդերիկոս այրն Ուլրիքայ ամբարձեալ յաթոռն Շվետիոյ՝ միջնորդ խաղաղութե կալաւ զարքայն Գաղղիոյ առ Պետրոս, և զինադադարումն եղև: Կարգեցաւ ժողով Թագաւորաց 'ի Նայշթատ, յորում Պետրոս ահարկուն յաչս բազմաց՝ հաճութբ ամենեցուն մշտնջենապէս գրաւեաց որչափ ինչ երկրակալութիս արարեալ էր նորա 'ի սահմանսն Քուրլանտիոյ մինչև յայնկոյս ծոցոյն Ֆիլանտիոյ, և անտի և 'ի վեր զամենայն զհիւսիսակողմն Քեքսհոլմայ. և հաստատեցաւ պայման ուխտին յ30 աւուր ամսոյն օգոստոսի, յամին 1721:

Ապա 'ի մեծահանդէս կացուրդսն որք հռչակեցան 'ի Բեթրպուրկ սակս մեծի և կարևոր ուխտի խաղաղութեն, ծերակոյտն և սինհոդոսն միանգամայն վճիռ եդուն անուանել զՊետրոս Մեծ, և Ինքնակալ, և Հայր հայրենեաց: Իսկ նա այն ինչ զուարճացեալ յանձն իւր ընդ խաղաղութիւն՝ ակն ունէր անխափան և անընդհատ միտ դնել բարգա֊

դարձաւ անդրէն 'ի Մոսքուա ։

Իսկ խանն Ղրիմոյ Մահմետ խաղաց գնաց և 'ի կողմանս Դաղստանայ՝ աւար հարեալ զամենայն զճանապարհայն , և բնակիչքն Կիլանու ապաւինեցան 'ի Ռուսս ։ Մինչ այս մինչ այն , շահ Թահմազ որդի Հիւսէյին շահին զօրացեալ՝ արձակեաց զդեսպան մի առ Պետրոս . և նորա հաւանեալ 'ի Բեթերբուրգ՝ պայմանաւ ուխտի աւանդէր Պետրոսի զԴարբանդ , և զգաւառս Կիլանու և Մազանդարանոյ . և Պետրոս խոստանայր օգնական լինել զօրօք շահ Հիւսէյինայ և որդւոյ նորին ։

Ընդ այն ժամանակս հրատարակեաց Պետրոս և մանաւանդ մի օրինաց վաճառականութեան , և արգել դատաւորաց մեկնաբանել զխմաստս օրինացն , ատենակալաց ևեթ տուեալ հրաման՝ զերկբայելի դէպս առ ծերակոյտ անդր հանել ։ Կարգեաց և զմի ոմն 'ի ծերակոյտ ժողովոյ անուն ընդհանուր տեղակալ , որոյ իշխանութիւն էր դիտել զգնացս ամենեցունց , կալ հանապազ առ Թագաւորին , և 'ի լինել նորա արտաքոյ՝ ունել զտեղին ։

Բազում նորոգութիւնս արար և յեկեղեցականն առաջնորդս և եբարձ զեղծմանսն՝ միաբանութեամբ Թէոփանեայ մետրոպոլտին Փրոկոպովիչ . Թէպէտ և բամբասէին 'ի ռամկաց անէծս կարդային Թագաւորին , և նեռն անուամբ կոչէին զնա ։

Գնեալ Պետրոսի կանխաւ զհաւաստեաւոր պահարան հնութեցն Ռուսիաստանի, հրամայեաց և բժշկին իւրում Արեշքին անուն՝ տանել զհաւաքումն բնական պատմութեան, և վասն երկաքանչիւր հաւաքմանցն կանգնեալ շինուած հոյակապ՝ համարձակ տարր զմուսան ամենեցուն, և պատուիրեաց հիւրասիրել զեկեալսն խաղհնքիւ, գինեաւ, ցքով և ազանդերով, կարգեալ առ այն եկամուտ տարեկան:

Կանգնեաց և ճեմարան գիտութեանց՝ ծանր ծանր պայմանս կարեւորս յանդամոց նորին պահանջեալ: Առանձին խնամով ուշ կալաւ թարգմանութեան բազմապատիկ մատենից, այլ 'ի ձեռն այսոց քաջ լեզուագիտաց, զորս և յազգէ առուս կամէր, և ըստ ամենայնի հմուտ հայրենի բարբառոյն:

Յայն միջոց ժամանակի կամեցեալ հաւաստեաւ պսակել զԿատարինէ 'ի կայսրուհի Ռուսիոյ, առանձին հրովարտակաւ հանդիսացոյց զվաստակս և զարժանիս նորին, և ապա յ18 մայիսի յամին 1724 եդ զթագն 'ի գլուխ Կատարինեայ 'ի մայր եկեղեցին Մոսքուայի, հանդիսատեսս ունելով զդքսուհին Քուրլանտիոյ զդստեր եղբօրն իւրոյ Իւանայ, և զդուքսն Հոլսթէյնայ: Իբրև ելին յեկեղեցւոյն՝ ետ տանել յառաջոյ կայսրուհւոյն զգաւազանն և զգունտն: Յետ այնր հանդիսին՝ որ պատե-

նայն մեծավայելուչ հանդերձանօք կատարեցաւ 'ի մեծազօր ինքնակալէն, հռչակեցաւ այլով հանդիսիւ և խօսումն Աննայի դստերն Պետրոսի ընդ դքսին Հոլսթէյնայ :

Այլ իբրև վախճան եղև այսր ամենայնի ուրախութեանց՝ ժամանեցին աւուրք վշտացն Պետրոսի : Քանզի անչափ վաստակքն՝ յորս անձնատուր էր 'ի սկզբանէ հետէ թագաւորութեն՝ վատեցին զառողջութի նորա . և սոդիւտ դատապարտութեանն Աղեքսի, և մահ որդւոյն Կատարինեայ դառնացուցանէին նմա և ևս զցաւս մարմնոյն . այլ և մխիթարութի պակասեաց նմա այնուհետև յամուսնոյ անտի իւրմէ : Զի Կատարինեայ տաղտկացեալ իմն 'ի նեղասիրտ գնայից խօթագին ինքնակալին՝ խնդրէր զփոփանս իւր 'ի մտերմութե սենեկապանին իւրոյ Մօէնս անուն պատանւոյ : Այն ունէր ևս՝ եթէ յետ պատկմանն 'ի կայսրուհի Ռուսիոյ՝ անցցէ և յաթոռն Պետրոսի . այլ չգտեալ ինչ նշանակ այնպիսի 'ի հրովարտակին՝ սկսաւ անգոսնել 'ի միտս իւր զբարերարն իւր և զամուսին և զտէր :

Յոհմն արքունի 'ի Փեթերհօֆ էր յայնժամ . և անդ Պետրոս անանդորր մնացեալ 'ի յոյզս անընկճելի նախանձու սրտմտութե, զհասարակ գիշերաւ յարուցեալ եմուտ յանկարծակի 'ի սենեակ անդր՝ ուր ննջէր իշխանն Ռեփ-

գտանիլ և հանդիսի ջրօրհնեաց 'ի տօնի յայտնութեան Տեառն առ Նեւա գետով յամին 1725. և հարեալ 'ի ցրտոյ անկաւ 'ի տենդ անհնարին, և սաստկացաւ ախտն յոյժ, մինչև անկանել նմա 'ի մահիճս մահու: Ի 26 յունուարի ընկալեալ զհոգևոր նպաստսն ըստ իւրում կրօնին, խնդրէր 'ի ձայն բարձր զողորմութիւն Աստուծոյ. ասէր. « Յուսամ յԱստուած, զի գթութեամբ ակնարկեսցէ յիս վասն ամենայն բարութեանց զոր արարի ազգիս իմում »: Կուտեցան բըժիշկք յարքունիս, և 'ի կամել վիրաբուժիցն դարման տանել՝ կալաւ զթագաւորն բորբոք ախտի, և առաւ ճարակեալ 'ի նմա քաղցկեղդ, հարկեւ վարըկեան մի և ժամանակի զանձամբ եղեալ՝ կամեցաւ գրել, և անուանեաց յաջորդ թագաւորութեանն զՊետրոս Բ, զորդի Աղեքսի: Եւ անդէն թաղանայր, և ժամս հնգետասան տագնապեալ յերկարէր 'ի հոգեվարսն: Այլա 'ի 28 յունուարի 'ի չորրորդ ժամու առաւօտուն՝ յորում պահու սովոր էր յառնել 'ի գործս պետութեան՝ վճարեաց զքառասուն և զերիս ամս թագաւորութեան իւրոյ, և զյիսուն և զերկուս կենաց իւրոց. կեանք՝ որով դեռ ևս կենդանի է Ռուսիա: Զի արանց մեծաց կեանք՝ ոչ յանձինս նոցա վախճանին:

Հաստատագեղ էր Պետրոս և ազնուադէմ, այլ ահագնահայեաց և խրոխտ.

ոգելից 'ի բանս և համառօտախօս. ատեցող սէթևեթից և սիրող պարզութե. ցանգ վառեալ 'ի տենչ մեծամեծ իրաց. և անխոնջ 'ի վաստակս առ 'ի հասանել ըղձիցն: Արդարասէր էր և ճշմարտասէր, և 'ի խնդիր ճշմարտութե և արդարութե և առ անարգագոյնս 'ի մարդկանէ զիջանէր, և 'ի խստութիւնս անաչառս անխնայ ձեռն արկանէր: Մեծ էր Պետրոս 'ի բարս, ոչ միայն զի այնպիսիս ունէր բարս 'ի բնէ, այլ զի պահեաց զնոսին և ընդդէմ ապականաբար դաստիարակութեն յոր մտանեալ էր 'ի մանկութենէ: Մեծ և եկաց 'ի գործս՝ զանձն 'ի բուն եդեալ յօգուտ իւրոյ աշխարհին, և մեծամեծս արարեալ յամենայնի: Սակայն և նա ինքնին զփորձ առեալ զտկարութե մարդկային բնութեն, և տեսեալ զի յակամայս ձգի երբեք երբեք 'ի յանցմունս՝ զորս պախարակելիս ճանաչէր, բազում անգամ գոչէր ցաւագին. “Եղո՜ւկ եմ ես. զի կարացից նորոգել զազգն իմ, այլ ոչ և զանձն իմ”:

Ողբս առեալ կոծեցան զնա Ռուսք ամենայն, յոլովք առ սիրոյ, և յերախտագէտ մտաց, և ոմանք առ հիացման: Ընդ ամենայն տեղիս աշխարհին լցին զյիշատակարանս և զարձանս նորա. և ոչ այնու շատացեալ, խնամով հաւաքեցին զոր ինչ միանգամ գտին զնորա առանձին. և մինչև ցայժմ պանծանօք

զնա ընդ Նատալիոյ դստեր մեծին Պետրոսի ։ Ապա օգնական իւր կամեցեալ ունել զկայսրն Գերմանացւոց զԿարոլոս Զ, յորդորեաց զնա դաշն նիզակակցութե հաստատել ընդ Ռուսիոյ 'ի 6 օգոստոսի յամին 1726 ։ Ընդ այս միաբանութիւն Ռուսաց ընդ Գերմանացիս գժդմնեալ Գէորգայ թագաւորին Անգղիոյ՝ 'ի նախանձ մեծ գրգռեաց զբազումս 'ի պետութեց Եւրոպայ, բաց 'ի թագաւորէն Բրուսիոյ, և եղև ժողով մեծ յԱննովէր. և դէպ ժամու անսային 'ի վէգ գալ ընդ Ռուսիոյ։ Ցայս միտս արձակեաց թագաւորն Անգղիոյ երիս նաւատորմս 'ի Րէվէլ և 'ի Քրոնշթատ, և արքայն Դանեաց յաւել 'ի նոսա և տորմիղ մի յիւրոց նաւուցն ։ Այլ Կատարինէ խոհական հանճարով ոչ ինչ խլրտեալ յահէ նոցա՝ հաստատուն եկաց յուխտին Գերմանիոյ ։

Առանձին խնամ կալաւ Կատարինէ բարւոք դաստիարակութե որդւոյն Ալեքսի, զոր կամէր կարգել յաջորդ իւր 'ի թագաւորութե ։ Զայն իբրև զգացին մեծամեծքն դատապարտողք Ալեքսի. երկուցեալ 'ի վրէժխնդրութէ որդւոյն, յորդոր եղեն Կատարինեայ առաքել զպատանին յուսումն 'ի տար աշխարհ. և խորհուրդ կալան՝ զի 'ի մեռանել դըշխոյին ընդ հուպ, որպէս էր կարծել 'ի վատառողջ կենաց նորա, տացեն զթագաւորութիւն դստեր նորին Աննայի ։

զատանելոյ և հանդիսի Ջրօրհնէից 'ի տօնի յայտնութեան Տեառն առ Նեւա գետով յամին 1725. և հարկաւ 'ի ցրտոյ անկաւ 'ի տենդ անհնարին, և սաստկացաւ ախտն յոյժ, մինչև անկանել նմա 'ի մահիճս մահու: Ի 26 յունուարի ընկալեալ զհոգևոր նպաստսն ըստ իւրում կրօնին, խնդրէր 'ի ձայն բարձր զողորմութիւն Աստուծոյ. ասէր. « Յուսամ յԱստուած, զի գթութ̃ ակնարկեսցէ յիս վասն ամենայն բարութեանց զոր արարի ազգիս իմում »: Կուտեցան բըժիշկք յարքունիս, և 'ի կամելն վիրաբուժին գարմանս տանել՝ կալան զԹագաւորին ընդդէմ ախտի, և առաջ ճարակեալ 'ի նմա քաղցկեղոյ, հազիւ վայրկեան մի և ժամանակի զանձամբ եղեալ՝ կամեցաւ գրել, և անուանեաց յաջորդ Թագաւորութեանն զՊետրոս Բ, զորդի Աղեքսի: Եւ անդէն Թալկանայր, և ժամս հնգետասան տագնապեալ յերկարէր 'ի հոգեվարսն: Այսպէս 'ի 28 յունուարի 'ի չորրորդ ժամու առաւօտուն՝ յորում պահու սովոր էր յառնել 'ի գործս պետութեանն՝ վճարեաց զքառասուն և զերիս ամս Թագաւորութեան իւրոյ, և զյիսուն և զերկուս կենաց իւրոց. կեանք՝ որով դեռ ևս կենդանի է Ռուսիա: Զի արանց մեծաց կեանք՝ ոչ յանձինս նոցա վախճանին:

Հասակագեղ էր Պետրոս և ազնուադէմ, այլ ահագնահայեաց և խրոխտ.

ոգելից 'ի բանս և համառօտախօս. ատեցող սեթևեթից և սիրող պարզութ̃ե. ցանգ վառեալ 'ի տենչ մեծամեծ իրաց, և անխոնջ 'ի վաստակս առ 'ի հասանել ըղձիցն: Արդարասէր էր և ճշմարտասէր, և 'ի խնդիր ճշմարտուե̃ և արդարութ̃ե և առ անարգագոյնս 'ի մարդկանէ զիջանէր, և 'ի խստութիւնս անտաչաւս անխնայ ձեռն արկանէր: Մեծ էր Պետրոս 'ի բարս, ոչ միայն զի այնպիսիս ունէր բարս 'ի բնէ, այլ զի պահեաց զնոսին և ընդդէմ ապականաբար դաստիարակութ̃ե̃ն յոր մատնեալ էր 'ի մանկութենէ: Մեծ ևս եկաց 'ի գործս՝ զանձն 'ի բուն եդեալ յօգուտ իւրոյ աշխարհին, և մեծամեծս արարեալ յամենայնի: Սակայն և նա ինքնին զփորձ առեալ զտկարութ̃ե մարդկային բնութ̃ե̃ն, և տեսեալ զի յակամայս ձգի երբեք երբեք 'ի յանցմունս՝ զորս պախարակելիս ճանաչէր, բազում անգամ գոչէր ցաւագին. «Եղո՜ւկ եմ ես. զի կարացից նորոգել զազգն իմ, այլ ոչ և զանձն իմ»:

Ողբս առեալ կոծեցան զնա Ռուսք ամենայն, յոլովք առ սիրոյ, և յերախտագէտ մտաց, և ոմանք առ հիացման: Ընդ ամենայն տեղիս աշխարհին լցին զյիշատակարանս և զարձանս նորա. և ոչ այնու շատացեալ, խնամով հաւաքեցին զոր ինչ միանգամ գտին զնորա առանձին. և մինչև ցայժմ պանծանօք

զնա ընդ Նատալիայ դստեր մեծին Պե-
տրոսի ։ Այպա օգնական իւր կամեցեալ ունել զկայսրն Գերմանացւոց զԿարոլոս Զ, յորդորեաց զնա դաշն նիզակակցութե հաստատել ընդ Ռուսիոյ 'ի 6 օգոստոսի յամին 1726 ։ Ընդ այս միաբանութիւն Ռուսաց ընդ Գերմանացիս գժգմնեալ Գէորգայ թագաւորին Անգղիոյ՝ 'ի նախանձ մեծ գրգռեաց զբազումս 'ի պետութեց Եւրոպայ, բաց 'ի թագաւորէն Բրուսիոյ, և եղև ժողով մեծ յԱննովէր. և դէպ ժամու անսային 'ի վէգ գալ ընդ Ռուսիոյ ։ Յայս միտս արձակեաց թագաւորն Անգղիոյ երիս նաւատորմս 'ի Բէվէլ և 'ի Քրոնշթատ, և արքայն Դանեաց յաւել 'ի նոսա և տորմիղ մի յիւրոց նաւուցն ։ Այլ Կատարինէ խոհական հանճարով ոչ ինչ խլրտեալ յահէ նոցա՝ հաստատուն եկաց յուխտին Գերմանիոյ ։

Առանձին խնամ կալաւ Կատարինէ բարւոք դաստիարակութե որդւոյն Աղեքսի, զոր կամէր կարգել յաջորդ իւր 'ի թագաւորութե ։ Զայն իբրև զգացին մեծամեծքն դատապարտողք Աղեքսի. երկուցեալ 'ի վրէժխնդրութե որդւոյն, յորդոր եղեն Կատարինեայ առաքել զպատանին յուսումն 'ի տար աշխարհ. և խորհուրդ կալան՝ զի 'ի մեռանել դըշխոյին ընդ հուպ, որպէս էր կարծել 'ի վատառողջ կենաց նորա, տայցեն զթագաւորութիւն դստեր նորին Աննայի ։

13

Հնարս նիւթեալ և ընդդէմ Մենչչի-քովայ՝ որ հարստահարէր յոյժ զնոսա յամենայնի, պատեհ առին զհեռանալ նորա առ ժամանակ մի 'ի Բեթրպուր-կայ, և բազում ինչ չարախօս եղեալ զնմանէ առ դշխոյին՝ յաչաց հանէին զնա, մինչև հրամայեաց Կատարինէ բանտար-գել առնել զՄենչչիքով 'ի դառնալ նորա 'ի Բեթրպուրկ։ Այլ միջնորդու-թբ դքսին Հոլսթէյնայ զերծեալ Մենչ-չիքովայ 'ի պատուհասէն՝ ապաշնորհ գտաւ առ բարերարն իւր, և համբաւ առեալ եհան զդքսէն՝ որպէս թէ դաւա-ճանել խորհին զդշխոյն մտերիմք նորա, և ամբաստանեալ յաթոռն զորդին Ալեքսի. սակայն չեհաս որում ցանկայրն, զի ոչ պատրեցաւ դշխոյն այլ ևս 'ի նմանէ։

Ընդ նոյն ժամանակս հիւանդացաւ Կատարինէ 'ի մահ, և կամեցաւ կտա-կաւ հաստատել իւր յաջորդ զՊետրոս Բ։ Եւ զի դեռ ևս մետասան ամաց էր նա, կարգեաց խնամակալս նմին զդստերս իւր զԱննա և զԵղիսաբեթ, և զայր նոցա զփեսայս իւր, և զգերա-գոյն ատեանն, կէտ խնամակալութե սահմանեալ նոցա զեօթնևտասներորդ ամ հասակի պատանւոյն. զոր և անուա-նեաց Դուքս մեծ։ Իսկ գերագոյն ատե-նին խորհրդականս կարգեաց զՄենչչի-քով, զծովակալն Ափրաքսին, զատե-նադպիրն արքունի Օսթերման, և զԴե-մետր Գոլիցին, և զՎասիլ Տօլկորուքի։

Իսկ մեռաւ կայսրուհին յամին 1727, 'ի մայիսի 6, ամաց երեսուն և ութից՝ թագաւորեալ ամս երկուս և ամիսս ինչ։

Սա ըստ գիտելոյ իմն գոգցես ամբարձեալ յանշուք վիճակէ յայն աստիճան բախտի, լինել տացեալ ունէր համբաւանս գնացից բարեկամս 'ի տեսել նմա 'ի բարձրութեան. և հասեալ 'ի դրունս մահու՝ գիտաց և քաջ խորհել, և արիաբար նախախնամել որչափ ինչ կարեւոր օգուտք էին աթոռոյն, որպէս յայտ է և 'ի կտակէ անտի նորա, յորում հաստատածքն կարեւորք էին տղքին.

Ա. Մեծ դուքսն Պետրոս Ալեքսեյեւիչ յաջորդեսցէ նմա՝ բացարձակ իշխանութեամբ. և զնա պայազատեսցեն որդիքն իւր հարազատք։

Բ. Եթէ մեռցի նա անորդի, դուստրն իմ Աննա Փեթրովնա ժառանգեսցէ զաթոռն Ռուսիոյ. և յետ նորա որդիքն իւր։

Գ. Ի մեռանել նորա անորդի՝ անցցէ յաթոռն Եղիսաբեթ դուստր իմ, և ապա որդիք նորա։ Եթէ և նա մեռցի անորդի, անցցէ թագաւորութիւն առ Նատալիա դուստր Ալեքսի։ Այլ աքա ամենեքեան և որք զհետ նոցա, մի՛ կարասցեն ունել զթագն Ռուսիոյ, եթէ ունիցին զայլոց երկիր աշխարհի, կամ չիցեն 'ի յունական դաւանութեան հաւատոյ։

Դ. Դուքսն մեծ յամենայն կացուրդս

ատենին խնամակալեաց տաւաչեկեայ գոյն. և իշխանութիւն ատենին գաղարեցաւ ընդ կատարել յաջորդին իմոյ զվեշտասան ամ հասակին ։ Յայնմ հետէ միայնակ առցէ զերասանակ Թագաւորութեան , այլ մի կարասցէ համարս պահանջել յատենէ անտի զառաջնոյ տեսչութենէն ։

## ՊԵՏՐՈՍ Բ.

ԻՎԱՂՈՒ անդր որ էր յետ մահուանն Կատարինեայ , ատեան խորհրդոյ կողմեալ խնամակալեացն՝ հաստատեցին զկտակ վախճանեցելոյ դշխոյին , և Թագաւորեցուցին զՊետրոս ։ Իսկ փառասէրն և խորամանկն Մենշիքով ած զմանուկ արքայն 'ի տուն իւր , զի մի առանց իւրոյ հրամանին մատչիցին առ նա իշխանք , և ինքն առանձին եկաց տեսուչ ամենայն իրաց պետութեան և փոխանորդ Թագաւորին ։ Եւ առ փաղագոյն ժամանելոյ ընձիւղ իւրոց , զի տենչայր ամուսնացուցանել զՊետրոս ընդ դստերն իւրում , աղաչեաց յարգելանէ բանտէն զհանին Պետրոսի զԵւդոքիա՝ աւետաւորեալ նմա զԹագաւորել Թոռինն , և խնդրելով զհաճութիւն նորա ընդ գաշնաւորեալ ամուսնութիւն ։ Եւ իբրև եկն նա 'ի Մոսքուա , կատարեցաւ հանդէս հարսանեացն մեծաշուք

ստանիւք յապարանս դեսպանին Գերմանիոյ: Ի ժամանակի հարսանեաց ըննաւ չէր ակնարկեալ Պետրոսի յօրինորդն. ընդ որ յայտնապէս ոչ ինչ խոժոռեալ Մենշիքովայ՝ պատճառս կալաւ յանդգնագոյնս վարելոյ ընդ այնոսիկ, զորոց կասկածէր աւելիս իւր լինել և սիրելիս ինքնակալին: Աքսորեաց 'ի Սիպիր և յայլ տեղիս զարս հոյակապս՝ զՄատն, զԼեքին, զՇակուժենսքի, զՓիսարեվ, և զԹոլսթօյ, և գրեա թէ զամենայն զծերակոյտն. բանիւք խստութեան և սպառնալեաց խիզախեաց ընդդէմ Օսթերմանայ, և զԱփրաքսին պատճառանօք իւիք առաքեաց յԱրքանկել: Չարաչար յոյժ վարեցաւ և ընդ դքսին Հոլսթէյնայ՝ մինչև ելանել գնալ նմա ընդ դքսուհւոյն 'ի Ռուսիոյ: Ապա և հրովարտակ արար սպառնալից ընդդէմ ամենայն դաւաճանաց՝ թէ գտանիցին 'ի մէջ Ռուսաց, զորս խստագոյնս պատժել ասէր քան զնախագրեալսդ: Իսկ 'ի գրել զգիր առ Թագաւորն՝ որդեակ զնա անուանէր, և ստորագրէր՝ Հայր քո Մենշիքով:

Այլ 'ի խուռն բազմութեան աւելեաց բռնակալին յաջողեցան ոմանք բանալ զաչս դեռահասակ արքային՝ 'ի ձեռն Տոլկորուքի պատանւոյն, որ հանապազ ընկերէր Պետրոսի յորս:

Ի դէպ պատահեաց ընդ այն աւուրս

յայտնի լինել և այլոյ երկիւ անիրաւութեն Մենչիքովայ. զի Պետրոսի ընկալեալ ոսկեղէնս յընծայ ինն հազար բապլիս՝ առաքեաց առ քոյր իւր. և Մենչիքովայ հանդիպեալ առաջին որ տանէր զդրամն, ասէ ցնա. «Դեռ եւս մանուկ գոլով ինքնակալին՝ չգիտէ զարժէս դրամոյ. ած զնա 'ի սենեակն իմ, և դու անհոգ լեր, ես հաճեցից զնա »: Այսպէս պաշտօնեայն ըստ բանի նորա, և ոչ ինչ եհան 'ի վեր ինքնակալին: Այլ 'ի վաղիւ անդր 'ի գալ քեռ թագաւորին յայց նմա՝ իբրև գիտաց Պետրոս թէ չէք ընկալեալ նորա զդրամն, և ծանեաւ 'ի պաշտօնէէն զոր ինչ արարն Մենչիքով, 'ի զայրոյթ բարկութեն բորբոքեալ՝ կոչեաց զնա առաջի, և այնպէս իմն բարձրացոյց զբարբառ իւր 'ի վերայ նորա, զի Մենչիքով շուարեալ հազիւ հազ կցկցեաց պատճառանս գործոյն, և ցածոյց զարտմտութեն թագաւորին, որ զոտս 'ի գետին հարեալ գոչէր. « Ցուցից քեզ քաջ, եթէ ովքեր եմ, և զհնազանդութե պահանջեմ »:

Յետ աւուրց 'ի խօթանալ սակաւ ինչ Մենչիքովայ՝ պարապ առեալ թշնամիք նորա առաւել եւս գրգռել ընդդէմ նորա զթագաւորն: Սակայն նորա ակն ունելով անդրէն շահել զսիրտ արքայ մանկանն՝ հրաւիրեաց զնա և զնորայսն 'ի նաւակատիս նորաշէն մատրան իւրոյ յՕրանիենպաւմ. այլ թագաւորն պատա-

ճառեցաւ զխօթութն : Գրեաց Մենուչչէքով. թէ է ինչ կնճիռն 'ի միջի, սակայն անխորհուրդ գտաւ և զայլ իմն պատճառս ամբաստանութեան տալով ոոխացս իւրոց. զի 'ի ժամ հանդիսին տեսաւ բազմեալ 'ի գահն՝ զոր իւր իսկ պատրաստեալ էր վասն Թագաւորին : Ի նմին աւուր ընդ երեկս չոգաւ 'ի Փեթերհօֆ, և ոչ եգիտ անդ զՊետրոս. սպասեալ մնայր նմա մինչև ցերեկ աւուրն երրորդի, և նա ոչ եկն. և պալատականքն ոչ էին ընդ Մենուչչէքովայ որպէս յերէկն և յեռանդն : Ուր ուրեմն լուաւ եթէ հրամայեալ էր արքայի բառնալ զամենայն զկահ և զկարասի իւր 'ի տանէն Մենուչչէքովայ և տանել յամարանոցն իւր. զի անդ կամի, ասէն, բնակել :

Յապուշ հարաւ Մենուչչէքով ընդ պատահումնն. և մինչդեռ հնարս խորհէր ընդդէմ ոսոխաց իւրոց՝ եկն Զօլթիքով և յայտ արար, թէ հրաման է արքայի՝ 'ի գլխապահոջ զնա արկանել. ապա խաղացուցին զնա ընտանեօքն հանդերձ 'ի Ռանենպուրկ քաղաք՝ զոր իւր իսկ հիմնեալ էր. ուր և վճարեալ զդատ նորա՝ դատապարտեցին անցուցանել զմնացուածս կենաց իւրոց 'ի խորս Սիբերիայ 'ի Պերեզով, կարգեալ նմա ռոճիկ որ լոկ օրէ տասն րուպլիս փոխանակ անբաւ ճոխութեանցն առաջնոց. քանզի ունէր տասն պերխս հարիւր հա-

զար, և կալուածս բազումս մինչև 'ի հեռաւոր աշխարհս անգամ: Այլ Մենշչիքով զարմանալի անդութեամբ սրտի տաքաւ խստութեն աքսորանացն. և որ յառաջ փառաւորչն էր՝ անդ քաղցաւորչն եղև և ուժեղ. և ճշգելով զպէտս իւր 'ի տասն րուպլէացն՝ կանգնեաց և եկեղեցի մի: Կին նորա 'ի բազում ողբոց կուրացեալ՝ մեռաւ 'ի ճանապարհին. և դուստրն՝ զոր խօսեցեալ էր ինքնակալին, մեռաւ յաքսորս անդ: Յետ սակաւուց մեռաւ և ինքն. և 'ի սա ևս ճշմարտեցաւ բանն՝ թէ «Ոչ կարէ համբառնալ երկիր ... եթէ ծառայ թագաւորեսցէ»:

Այնուհետև 'ի պատճառս մտերմին Պետրոսի Իւանայ Տոլկորուքի՝ տոհմն Տոլկորուքեանց ճոխացան յամենայնի, և զեղծան ևս՝ և դրդուեցին բորբոքեցին զնախանձ ատոխացն իւրեանց. մինչև 'ի խօթանալ Պետրոսի մերձ 'ի մահ՝ զՏոլկորուքեան Իւանաւ արկին զմտաւ. զի ասէին թէ նա է որ անհանգիստ առնէ զարքայ՝ զոր հանապազ յորսս զնա պատաղեցուցեալ: Տոլկորուքեանք 'ի բաց քերեցին յանձանց զչարախօսութիւն՝ նուաճելով զօրօք զխազախան վտարանջեալս, և այլ ևս բազում բարեկարգութիւս առնելով 'ի պետութեն:

Մինչդեռ 'ի խոր խաղաղութեն վայելէր ամենայն աշխարհն Ռուսաց, մեռաւ Նատալիա քոյրն Պետրոսի հնգե-

տասան ամաց. և Իւան Տոլկորուքի 'ի սփոփել զԹագաւորն՝ յանձեցուցանէր զնա յորսս և յայլ և այլ տեղիս: 'Ի միում նուագի հնարիւք իմն դիպեցոյց զքոյր իւր Կատարինէ անուն 'ի տեղւոջն՝ ուր տանելոց էր զՊետրոս. և հաճեալ յոյժ ինքնակալին ընդ ամօթագեղ պարկեշտութեն օրիորդին՝ յամին 1729 'ի Նոյեմբերի 30 խօսեցաւ զնա իւր 'ի կնութի:

Հանդերձեալ էր Պետրոս 'ի մուտս նորոյ տարւոյն 'ի յունուարի 18 ինքնիշխան Թագաւոր հանդիսանալ, և կատարել զհարսանիսն. այլ աւուրբք յառաջ հարեալ 'ի ծաղկէ, մեռաւ 'ի 29 ամսոյն 'ի հասակի վեշտասան ամաց՝ Թագաւորեալ ամ մի և ամիսս ինն. 'ի նմա հատաւ և ցիծն արական Ռոմանովեանց տոհմին: Եւ լացին զնա Ռուսք ամենայն:

Ընդ մեռանել Պետրոսի՝ Իւան Տոլկորուքի ել, ասեն, արտաքս 'ի սենեկէն սուր 'ի ձեռին գոչելով. «Կեցցէ դշխոյն Կատարինէ». այլ ոչ ոք անդրէն կրկնեաց զբարբառն. և նա դարձուցեալ զսուրն 'ի պատեանն՝ մեկնեցաւ 'ի տուն իւր:

## ԱՆՆԱ

ԳՈՒՐԱԳԱՑՆ ատենաւն հանդերձ ծերակուտաւ և զօրավարօք գնալովք ՚ի Մոսքուա՝ խորհուրդ առարկեալ ՚ի վաղիւանդր ՚ի Կրեմլին, առաջարկութեամբ Վասլի Տոլկորուքեայ ընտրեցին զԱննա դքսուհի Քուրլանտիոյ զդուստր Իւանայ եղբօր մեծին Պետրոսի. որ թէպէտ այրի էր, այլ չև էր անցեալ զերեսնամենիւք: Այլ և օրէնք սահմանադրութեան կարգեցան իշխանութեան նորոյ դշխոյին. և ապա արձակեցան նուիրակք ՚ի Միթթաւ քաղաք՝ Վասիլ Տոլկորուքի ՚ի գերագոյն ատենէն, Միքայէլ Կոլիցին ՚ի ծերակուտէն, և Լէոնդիեւ ՚ի դիւանց ազատանւոյն, և խնդրեցին ՚ի դքսուհւոյն ստորագրել զպայմանս գերագոյն ատենին, և չբերել ընդ իւր ՚ի Մոսքուա ըզսենեկապան իւր զՊիրեն: Աննա յերեկէ խրադեկ լեալ ամենայնի ՚ի թղթոյ Եակուժինսքեայ իշխանին՝ ստորագրեաց պայմանաց նուիրակացն, համաներցաւ թողուլ զՊիրեն ՚ի Միթթաւ, և պատրաստեցաւ ՚ի չու:

Մինչ այս մինչ այն՝ իմացաւ Տոլկորուքի, զի Թղթաբեր ոմն անցեալ գնացեալ էր ՚ի Քուրլանտիա, և խօսակից լեալ ընդ դքսուհւոյն՝ գաղտնայս ՚ի Մոս-

քուա. առաքեաց կալաւ զայրն և խա-ղացոյց շղթայակապ ՚ի Մոսկուա. արկ ՚ի պատուոյն և զենակուժենդքի և ար-գել զնա ՚ի խիստ բանտի ՚ի Քրեմլին։

Իբրև մերձեցաւ Աննա ՚ի Մոսկուա, ելին ընդ առաջ նորա խորհրդականք գերագոյն ատենին, և ատենադպիրն մեծ մատոյց առ դշխոյն զժապաւէն կարգի սրբոյն Անդրէի առաքելոյն հան-գերձ։ Զայն տեսեալ Աննայի՝ առ վաղ-վաղակի և արկ զուսովք իւրովք՝ ոչ մնալով արարողութեանց ատենականացն. և այն ինչ ատենադպիրն ՚ի բարեմաղ-թել սկսանէր՝ նա հրամայեաց լուռ լինել։

Ի նմին աւուր ամբարձ ՚ի պատիւ զօ-րավարութեան զՉոլթիքով զարեանառու-մօրն իւրոյ. և միւսանգամ առաքեաց առ երեսս պալատնացն առաջարկելով, այլ ՚ի ծածուկ հնարէր ցրել զամենայն ՚ի ձեռն կուսակցաց իւրոց։ Սոքա զա-ռաջինն կաշառաբեկ արարեալ զպա-հակսն՝ ապա հերձիս երկպառակութեան սերմանեցին ՚ի խորհրդականս գերա-գոյն ատենին. յուզեցին ՚ի տրտունջ և զբաղմաթիւ ամբոխ կրսեր ազատանոյն, ասելով թէ յայսմ հետէ չիք ձեզ ամ-բառնալ ՚ի բարձ ինչ պատուոյ, ուր խորհրդականքն մեծազօրք զնուրեանց ազգականս և զբարեկամս կարգեսցեն յամենայն իշխանութիւն. փոխանակ զի եթէ դշխոյն ազատօրէն իշխէր՝ պատիւք

պաշտամանց ըստ վաստակոց արդեօք կշռէին, որպէս առ մեծաւն Պետրոսիւ :

Յետ սակաւ աւուրց վերջ հարիւր այր յազատացն Մոսքուայի՝ առաջնորդ ունելով զԹրուպեցքոյ, զԳարեաթինայքի և զՉերքասայքի եկին կացին առ դուրս ապարանից դշխոյին, և աղաչէին զնա, զի հրաման տացէ 'ի խորհուրդ բազմել գերագոյն ատենին յաղագս կարևոր ինչ իրաց խնամակալութեան : Աննայի գիտակ գոլով խորհրդոցն Թաքնութեան՝ անց բազմեցաւ 'ի գահոյս 'ի մեծի խորհրդարանին, և անդ հիւրընկալաւ զամենայն զծերակոյտն և զատենակալսն : Հրաման էր 'ի ծածուկ և պահակ զօրացն զի զգուշասցին դրանց խորհրդարանին, և զգաստ լիցին առ ամենայն դէպս : Յայնժամ յառաջ մատուցեալ կոմսն Մաթֆէյէվ ասէ ցդշխոյն. «Ի դիմաց համօրէն ազատանւոյն Ռուսիոյ հասեալ կամ առ ոտս դշխոյիդ մեծի՝ յայտ առնել զպատրանսն յոր ըմբռնեալ էա 'ի նուիրակաց գերագոյն ատենիս. զի որպէս մինչև ցայժմ ազատ ինքնակալօք վարեցաւ Ռուսիա, և ոչ երբէք ատենիւ խորհրդոյ, այն ունէր ամենայն ազգս Ռուսաց՝ զի և առ քև ըզնոյն կարգ իւրոց նախնեացն տեսանիցէ, ունել քեզ և որդւոց քոց ինքնիշխան զիրաւանսն կառավարութեան զաշխարհիս մեծի » :

Զարմանս յոյժ կեղծեաց կայսրուհին ընդ բանսն, և հարցանէր ակնարկելով 'ի Վասիլ Տոլկորուքի. «Միթէ ոչ այն իղձ էր ազգին՝ յորում ձեռնադրեցի ես, ասէ, 'ի Միթթաւ»: Այն ինչ շարժեցաւ Վասիլ 'ի կշտամբել զյանդըգնութին Մաթֆեյեվայ՝ զաղաղակ բարձին ամենեքեան զի լուիցէ: Հրամայեաց գըլխոյն ածել զառաջեաւ զմուրհակ պայմանացն և ետ ընթեռնուլ 'ի ձայն բարձր, և ըստ գլխոց գլխոց հարցանէր՝ եթէ 'ի դէպ իցէ ազգին. և կուսակիցքն իւր գոչէին, ոչ: Ապա ուրեմն յոչ ինչ է պիտանացու մուրհակդ, ասաց, և առեալ պատառեաց զայն: Ցուցել յայտ առնել՝ եթէ քանզի ոչ օրինօք խորհրդոյ, այլ իրաւամբք յաջորդութեան կալեալ է նորա զաթոռն, կամի ըստ նախնեացն իւրոց օրինակի՝ ազատօրէն վարել զիշխանութին իւր:

Անդ էր ապա տեսանել զցնծութիւն կրսեր ազատանոյն և զռամկական ամբոխին: Իսկ խորհրդականք գերագոյն ատենին լուծան լքան 'ի միտս իւրեանց, որով և պատճառս ետուն Պիրենայ գալ բնակել 'ի Ռուսիա 'ի կորուստ անբաւ մարդկան:

Քանզի սա այր փառասէր, շոգմոգ, ոխակալ, անագորոյն, արծաթասէր և անձնասէր, բնիկ 'ի Քուրլանտիոյ՝ որդի գոլով առն անանուանի, ծառայէր զառաջինն Պեսթուժեվայ հազարապետի տան

դքսուհւոյն Քուրլանտիոյ. այսպ 'ի ձեռն Պեսթուժեվայ ամբաստանեալ 'ի պատիւ սեննեկապանութեան դքսուհւոյն՝ նախ զնոյն ինքն զՊեսթուժեւ զքարտուղարն իւր ատելի արար յաչս դքսուհւոյն. մինչև հալածել նմա զայրն 'ի Ռուսիոյ: Այնուհետև որչափ ընդ միտ մտեալ Պիրեն դքսուհւոյն մեծարեցաւ ընդ նմա, նոյնչափ և յառաջեաւ իւր ձգեաց զաւազանին Ռուսաց, որք և մինն իրի պայման եղին Աննայի թողուլ զնա անդէն 'ի Միթթաւ:

Արդ իբրև եկն եհաս Պիրեն 'ի Մոսքուա, 'ի վերայ քննու գերագոյն ատենին՝ այնչափ ինչ ամբաստան եղև զատեանակալացն առ Աննայի, մինչև եբարձ նա 'ի միջոյ զայն ատեան, և կարգեաց փոխանակ նորին զայլ ատեան նորքին. և զՊիրեն տեսուչ և քննիչ ամենայն գործոց խորհրդականացն, որոց գլխաւորք էին կոմսն Օսթերման, իշխանն Չերքասքի, և մարաջախտն Մունիխ. Իսկ այլ աւագանին արգելեալ փակեալ նստէին 'ի տունս իւրեանց պատճառանօք խօթութեան. և իշխանն Կոլովքին գրեաւ թէ զամենայն ժամանակս թագաւորութեան Աննայի եկաց 'ի մահիճս: Զոմանս 'ի Տոլկորուքեանց եւ Պիրեն աքսորել 'ի կողմանս Խազանայ և Սիբերիոյ, և յայլ տեղիս, և զոմանս մահու չարաչար կորուսանել անիրաւ դատապարտութեամբ: Այսպ 'ի պատահման Ան_

նայի հանդիսիւ 'ի կայսրուհէ Ռուսիոյ, ընկալաւ և Պիրոն զպատիւ մեծի սենեկապետութեն. և զդուստր Իւանայ Տոլկորուքեայ զԿատարինէ, զոր խօսեցեալն էր Պետրոսի երկրորդի, 'ի մենաստան ուրեք արգելեալ, հնարեցաւ որդեգրեաց Աննայի զդուստր քեռ իւրոյ դքսուհւոյն Մեքլեմպուրկայ. զի մի հարկ լինիցի տուն լինել Աննայի, որպէս յորդորէին զնա մերձաւորք նորին։ Իսկ որդեգրեալն այն յուրաստ եղև 'ի լուտերական աղանդոյն, և մկրտեալ ըստ օրինի Ռուսաց՝ կոչեցաւ Աննա։ Եւ մինչև եկեալ նորա 'ի Մոսքուա՝ կամեցաւ կայսրուհին երդմնեցուցանել զազգն 'ի ճանաչել զորդեգիրն իւր օրինաւոր ժառանգ աթոռոյն յետ իւր. այլ զի գիտէր զժողովուրդն՝ զի առաւել ակն եդեալ էին Եղիսաբեթի թագաւորելոյ քան այլում ումեք, հոգ յանձին կալաւ ահեղ հանդիսիւ տալ առնել զերդումն, և եթէ 'ի պատրաստութեն պատերազմի կարգեաց յօրինեաց 'ի հրապարակի անդ զամենայն զզօրսն։

Կայսրուհին կամէր, ասեն, և 'ի վանս ուրեք արգելուլ զԵղիսաբեթ, այլ Պիրոն չթողացոյց, զի 'ի մտի եդեալ էր առնուլ զնա 'ի կնութէն անդրանկին իւրոյ, և ազգաւ թագաւորել։ Այլ առժամն ոչ դադարէր տառապեցուցանել զորս միանգամ դժպհիք էին նմա. զզօրավարն Րումեանցով աքսորեաց 'ի կով-

մանս Խաղանայ, զխորհրդականն Փիք 'ի Սիպիր, և զծովակալն Մեւերս 'ի Ֆինլանտիա ։

Այլ մարաջախտն Մունիք վաստակէր 'ի կատարել զքաջագործութիւս և զշինութիւս մեծին Պետրոսի ։ Բազմացոյց զթիւ զօրացն Ռուսաց, և յաւել զռոճիկս սպայիցն, և կարգեաց 'ի պալատին Մենշչիքովայ զվարժոց երեքարիւր համբակաց զինուորութեան դարմանելեաց յարքունի գանձուց ։ Նորին խորհրդով հրաժեշտ կալաւ Աննա 'ի գաւառաց անտի՝ զորս կալեալ էր մեծին Պետրոսի 'ի Պարսից աշխարհէն. զի երեսուն հազար պահանորդք հարկէին կալ հանապազ անդէն, և առ ըստ ամէ կիսով չափ վատնէին ։ Կատարեաց Մունիք և զմեծ գործ ջրանցիցն Լատոկայ՝ որ յանձն էր նմա 'ի մեծէն Պետրոսէ, և հրաւիրեաց տարաւ զկայսրուհին 'ի տեսանել զնոյն ։

Սակայն այս վաստակք և յաջողուածք մարաջախտին գրգռեցին 'ի նախանձ զՕսթերման, և զայլս ոմանս յաւագաց. որք և չարախօս լեալ զնմանէ առ Վիրեն, դժտեցուցին զնա ընդ Մունիքայ 'ի կորուստ նմին Վիրենայ ։

Ընդ այն ժամանակս յամին 1733, 'ի մեռանել Օգոստեայ արքային Լեհաց՝ սկիզբն եղև մրցողմանցն որովք հուսկ ուրեմն կործանեցաւ այն աշխարհ ։ Զի նախադահն Լեհաց ժողով արարեալ

եդ առաջի աւագանւոյն զհարկ ընտրութեան նորոյ Թագաւորի 'ի ցածուցանել զխռովութիւն աշխարհին։ Հաւանեցան եւ կայսրն Գերմանացւոց եւ գլխոյն Ռուսաց ընդ առաջարկութիւնն. այլ յայտ արարին՝ թէ չկամիմք զի ընտրեսցի միաբանեալ Ստանիսլաւ։ Յետ սակաւուց կայսրընտիրն Սաքսոնիոյ մեծամեծ խոստմամբք որսացաւ զԳերմանացիս եւ զՌուսս յիւր կողմն, մինչեւ առաքել Աննայի զօրս 'ի Քուրլանտիա եւ 'ի Լիթուանիա, զի ձեռնտու լիցին եւ թագաւորեցուսցեն Լեհաց զկայսրընտիրն։

Ընդ այս գործ Ռուսաց ծանրացաւսումն եղեալ նախագահին Լեհաց եւ աւագանւոյն՝ միաբան հաւանութ̃ե կարգեցին Թագաւոր զՍտանիսլաւ։ Սակայն Ռուսք բանիւք եւ խոստմամբք եւ դրամովք ակարացուցեալ նախ զկողմն Ստանիսլաւայ, ապա արձակեցին 'ի վերայ նոցա զկոմսն Լասչի քսան հազար արամբք. որ իբրեւ եմուտ 'ի Լիթուանիա, Ստանիսլաւ եթող զՎարշաւ քաղաք եւ փախեաւ 'ի Տանցիկ։ Յայնժամ կուսակիցք Սաքսոնացւոյն զնա կարգացին Թագաւոր՝ Օգոստոս Գ. անուանեալ։ Իսկ Լասչի յիսուն հազարաւ խաղաց 'ի Տանցիկ, եւ մինչեւ ցկէս ամին 1734 հազիւ ուրեմն կարաց պաշարել զքաղաքն։

Ի նմին միջոցի եհաս նմա յօգնութիւն եւ Մունիխ կարգեալ սպարապետ ամե-

նայն զօրացն Ռուսաց. որք յառաջին յարձակմանն՝ սաստկապէս յետս մղա_նեալ, սակայն և ևս ստուարացեալ զօրքն հետզհետէ եկեալք 'ի Թիկունս՝ 'ի գե_րութի նուաճեցին զերիս գունդս Գաղ_ղիացւոց, որք եկեալ էին յօգնութիւն պաշարելոցն, և առաւ Ցանցիկ զկնի հարիւր երեսուն և հինգ աւուրց պա_շարմանն: Ձերբակալ արար Մունիք զնախադահն, զկոմսն Փոնեաթովսքի, և այլ ևս արս աւագս 'ի Լեհաց, և ա_ռաքեաց զնոսա 'ի Ռուսն. և արկ 'ի վե_րայ քաղաքացւոցն տուգանս երկու մի_լիոն սկուդ գերմանացի, փոխանակ զի ասպնջական եղեն Ստանիսլաւայ, և փախուցին ևս զնա, և ընդդէմ կալեալ Ռուսաց՝ պատճառս եղեն կոտորածի լինն հազար զօրականաց և երկերիւր սպայից: Այլ կայսրուհին շնորհեաց նոցա զկէս տուժին:

Ստանիսլաւ 'ի կերպս կերպս այլա_ձևեալ զերծաւ, և ոչ անկաւ 'ի ձեռս խնդրակացն Մունիքայ. և Լեհք յակա_մայս յանձին կալան երդնուլ զերդումն հաւատարմութեան առ Օգոստոս:

Այն ինչ կամէր Մունիք դարձ առ_նել 'ի Պետերբուրգ, հրաման եհաս նմա խաղալ գնալ և պաշարել զԱզով, զի պատերազմ 'ի վերայ կայր ընդ Օս_մանեանս, և ընդ Թաթարս Խրիմու: Իւ_նորա Թողեալ 'ի վերայ զօրացն Լեհաս_տանի զիշխան ումն՝ գնաց 'ի Քիեւ և

պատրաստէր համընդհանուր պատերազ-մին ։ Հրաման էր և առ Լէոնդինեղ զօ-րավար՝ քսան հազար արամբ մտրղեկ զինդաւ , և ութ հազար Խաղախոջք մտա-նել ՚ի Խրիմ ․ այլ նա ոչ կարաց կատա-րել զհրամանն առ սովոյն և ցրտոյն վե-տանգի , և դարձաւ յետս ։ Սակայն Մուշնիք ոչ ինչ լքաւ այնու , և ոչ կա-սեցաւ ՚ի պատրաստութենէն ։

Անտի Թագաւորն Օսմանեանց յահէ եղեալ՝ փութացաւ խնդրել զխաղաղու-թի՝ խոստանալով կարճել զապստամբս Թաթարաց Խրիմու ։ Այլ և ՚ի Ռու-սաց աւագորերոյն ոչ սակաւք չկամէին ընդ պատերազմ ․ սակայն կայսրուհին ոչ դարձաւ ՚ի խորհրդոյն , և Օսթերմա-նայ յանձն եղև գրել զյայտարարութին առ վէզիրն ։ Յայնժամ և Օսմանեանք կազմեցան ՚ի պատերազմ , և զայն նուաղ ոչ արգելին զդեսպանն Ռուսաց յԵօթն դուլէն որպէս երբեմն , այլ արձակեցին խաղաղութբ յերկիր իւր ։

Խաղաց գնաց Մուշնիք և առ նախ զբերդորայն Ազովայ , և զպաշարումն քաղաքին յանձն արարեալ ՚ի Լասցի՝ անց դիմեաց ՚ի Խրիմ , և ելից զաշխարհն արեան ճապաղեօք և քանդմամբ քա-ղաքաց և գիւղից , և չէր ոք որ զդէմ ունէր ընթացից նորա ․ մինչև կոչել զնա Ռուսաց՝ Սիւն պետութեն , և Արծուի ամենատես ։ Այլ որ յաղթուչ կրթեաց զամենեսեան՝ էր հզօրական յաղթանակ

Նորին առ Յեթուաուչան գետով, ուր այնպէս իմն պատեալ պաշարեալ մնացին զօրքն Ռուսաց, մինչև գրել Ալի փաշայի սպարապետին Տաճկաց առ Թագաւորն՝ եթէ Ռուսք անզերծանելի պաշարեալ կան. և չիք այլ հնար, բայց զի անձնատուր լինիցին, և կամ 'ի սուր մաշեսցին։

Քանզի քաղաքապետան Խօթունեայ պատեալ էր զձախ թև բանակին Ռուսաց՝ 'ի Թիկանց ունելով զանտառս և զանմատոյց լերինս. յաջմէ պաշարէր Ալի փաշա հեծելազօրօք իւրովք նոյնպէս յեցեալ 'ի բարձրաբերձ լերինս՝ որ ձգին մինչև 'ի Փրութ գետ. և յեռեկուսէ արգելեալ փակէր խանն Պեւլկորոդայ՝ գլուխ ամենայն Թաթարաց կողմանցն։ Յանել արգելանէ անտի անհնարինելի զերծան Ռուսք հնարիւք իմն, և եղև 'ի տեղւոջն կոտորած մեծ երկուստեք, մինչև Տաճիկք մղեցան 'ի փախուստ, և Մուննիխ տարաւ լի բովանդակ զյաղթութիւն։ Էառ անընդդիմակ զԽօթուն և զՄոլտաւիա, և զՊեւլկորոտ. պաշարեաց և զՕզու, և էառ զայն. և Լասչի հալածեաց զխանն Խրիմու, և խորտակեաց զՏաճիկս մերձ 'ի Խազարու քաղաքաւ. և Պրետաւ՝ երրորդ ծովակալին վանեաց զատորմիղ նաւացն Տաճկաց մինչև 'ի Քէֆէ։ Այսպէս կէս զօրացն Ռուսաց խաղացին 'ի Պէնտէր, և կէսն յԻսպրայիլ։ Այլ քանզի Գերմանացիք

հաստատեցին ընդ Օսմանեանս զդաշինս ուխտին Պելկրատու, Վիլլընեօվ դեսպանն Գաղղիացւոց՝ որ առիթն էր այնմ ուխտի՝ միջնորդ եղև և առ Ռուսս. և հաստատեցան 'ի մէջ պայմանք, զի ա, Քանդեսցին յառաջակեցին ամենայն բերդորայքն Ազովայ. բ, Տաճիկք մի կարասցեն կանգնել նոր բերդս, բայց երեսուն վերստին յայնկոյս քաղաքին 'ի ծովակողմն կուսէ. նոյնպէս և Ռուսք յայսմ կողմանէ. գ, Ընդարձակեսցեն Ռուսք զսահմանս իւրեանց ընդ անապատն կոյս փարախս քաղան, և կալցին զԱսամարա. դ, Դարձուսցին անդրէն առ Օսմանցիս Օզու և Գըլըպուրուն:

Ի ժամանակի պատերազմին Օսմանեանց նորոգեցին Ռուսք և զուխտ բարեկամութե ընդ դրանն Պարսից: Յետ աւուրց ինչ յարեաւ Խազախ ոմն և ասէր զանձնէ թէ Աղէքսան իցէ որդի մեծին Պետրոսի: Հաւատացին նմա ոմանք 'ի զօրականէն. և երկեց գեղջն այնորիկ ազդեցութբ զանգակաց ժողովեալ ըզբնակիչս վայրացն՝ մատոյց զպատարագ և զաղօթս, զի յաջողեսցեն իրք նորոյ թագաւորին իւրեանց: Ի դէպ ժամանակի եհաս 'ի վերայ զօրավարն Ռուսեանցն, զխարբերայն խաղացոյց 'ի Բեթըրպուրկ. ուր դատապարտեալ նորա 'ի մահ՝ անձամբ 'ի գաւառն իւր յՌեզբանիս, և անդ ցցահար եղև: Սպանաւ և երէցն, և զինուորքն որ զհետ չոգան

նորա . և զիւղն քանդեցաւ , և բնակիչքն այսր անդր վարատեցան ։

Ընդ նոյն ժամանակս և Գերմանն ընտրեցաւ դուքս Քուրլանտայոյ , և փոխեաց զանուն իւր 'ի Գերոն , որպէս թէ իշխանէր նա 'ի քաղաքն առհմէն Արմանդուսի Կանթուլթայ՝ որ յամին 1577 մարաջախտ էր 'ի Գաղղիա ։

Փոքր մի վաղ քան զխաղաղութիւնն հաստատեալ ընդ Օսմանցիս կատարեցան հարսանիք օրիորդին Աննայի՝ տուելոյ 'ի կնութիւն դքսին Գրունավիքայ ։ Եւ կայսրուհին 'ի ցոյց իւրոյ մեծութեանն հրամայեաց յամենայն կողմանց աշխարհին ածել 'ի Բեթերպուրգ այր և կանայս յամենայն ազգաց իւրեանց զգեստուք 'ի հանդէս հարսանեացն ։

Մինչդեռ դշխոյն զայսպիսեօք զուարճանայր , անագորոյնն Գիրեն հեշտանայր անպատում արեանց հեղուածովք ։ Կասկած առեալ զոմանց եթէ չարախօս լեալ իցեն զինքենէ առ դշխոյն , զոմանց զձեռս եւ հատանել , զոմանց զլեզուս , զկէսոց զգլուխս , և զայլս աքսորեաց 'ի Սիբերիա ։

Զայնու ժամանակաւ դքսուհին Աննա ծնաւ ուստր մի , որում կայսրուհին իւան անուն եդեալ՝ էառ զնա 'ի ծնողացն իւր յորդեգիր , և սայր սնուցանել յարքունիս իւրում ։ Այլ ինքն յետ սակաւուց խօթացեալ անկաւ 'ի մահճիճս . և որ ըստ օրէ զայրացեալ ախտին՝ իբրև եսես թէ մեռանի , յայս արար

ԻՒԱՆ

ԾԵՐԱԿՈՅՏՆ և սիւնհոդոսն և աւա-գանին ամենայն կոչեցան 'ի վաղիւ անդր յապարանս արքունի, և ընթերցեալ զկտակն ստորագրեալ յԱննայէ՝ թա-գաւորեցուցին զԻւան, և զԲիրոնն կար-գեցին խնամակալ պետութեն : Առա-ջին գործ իշխանութեն նորա եղև՝ ան-ցուցանել 'ի Քուռլանտիա ամբաւ գանձս 'ի ստացուածս կալուածոց և 'ի շինուած հոյակապ ապարանից. Թող զախուրաւոր դրամս զորս ծախէր սակս պճնասէր կնոջ իւրոյ : Գործակիցս ունէր իւր միայն զՕսթերման, զՉերքասքի, և զՊեսթուշեվ, և ինքն տիրաբար և ար-ձակ արձակ հրաման տայր յամենայնի 'ի վեր քան զընիկ զոք ինքնակալ Ռուս-սիոյ :

Այլ ոչ անգիտանայր թէ առ հա-սարակ ատելի է յաչս ամենեցուն, և մանաւանդ յաչս Ուլրիկոսի առն Ան-նայի, և գլխաւոր եպիսկոպոսաց և ա-զատորերոյն. զոր և ստուգեալ 'ի ձեռն լրտեսաց իւրոց՝ կալաւ զբազումս 'ի սպայից գնդին, և եա խոշտանգել զնոսա՝ զի յայտնեսցեն զդաւակիցս իւրեանց : Այս ստիպեաց զդուքսն հրաժարել 'ի զօրավարութենէն. և եթէ, ասէ, դքսու-

հէն իշխեսցէ ինչ գլուխ ամբառնալ, արձակեմ զնա որդւոյն հանդերձ 'ի Գերմանիա, և ածեմ հաստուցանեմ յաթոռն զդուքսն Հոլսթէյնայ: Ամին իրի յայնմհետէ դողալով երևէր միշտ Աննա առաջի նորա:

Մունիք, որ յաւուր ընդհանուր ըսպարապետութե ձեռնատու լեալ էր Պիրենայ՝ զի հասցէ 'ի պատիւ խնամակալութե, իբրև ետես զի դերևացաւ յոյս իւր՝ եդ 'ի մտի բառնալ 'ի միջոյ զվիրագն: Բանս եդ ընդ Աննայի, և ինքն 'ի 28 նոյեմբերի ճաշ և ընթրիս առեալ առ Պիրենայ, զբանիւք անկաւ ընդ նմա մինչև ցմէջ գիշերոյն, և ապա մեկնեցաւ 'ի նմանէ: Իբրև ժամք երկու անցին 'ի վերայ, գնաց Մունիք ընդ Մանսթէյնայ զօրագլխի 'ի ձմերոցն արքունի, ուր էր թագաւորն և ծնողք նորա. խօսեցաւ ընդ Աննայի, և պատուիրեաց կոչել զսպայս պահակացն և յայտ առնել նոցա զթշուառութի իւր և զորդւոյն և զպետութեն. և նա արար ըստ բանիցն, և երդուան ամենայն պահակքն արք հարիւր և քառասուն՝ ձեռն տալ նմա ընդդէմ բռնաւորին:

Յայնժամ Մունիք սպառազինեալ զպահակսն՝ քառասուն այր 'ի նոցանէ եթող 'ի պահպանութիւն դրօշուցն, և ինքն միացելովքն հանդերձ դիմեաց 'ի պալատն Պիրենայ: Մանսթէյն կանխեալ և ազդեալ պահապանացն Պիրե-

նայ զխորհուրդն Մունիքայ՝ քան զօ-
րականօք և միով սպայիւ խաղաց 'ի
ներքս, և 'ի բաց գտեալ զդուրս սենե-
կին Պիրենայ՝ եմուտ անդր, ձայն ետ և
հարուս 'ի վերայ Պիրենայ, կալաւ զնա
ընդդապես մինչդեռ խոր 'ի քուն ննջէր,
և այն ինչ 'ի վեր հարթուցեալ նորա՝
կամէր թաքչել ընդ մահճօքն, հասին
'ի վերայ զօրականք, և նգեալ թաչկի-
նակ 'ի բերան նորա, և կապեալ ձեռս
յետս՝ արկին 'ի կառս և ածին զնա 'ի
ձմերոցն արքունի: Եղկելի կինն Պիրե-
նայ հերարձակ սաստուցեալ յանկողնոյ
թուրմէ ընթանայր և նա զհետ առնն. և
մի ոմն 'ի զինուորացն ած զնա ընդ քարշ-
առ Մանսաթէյն. և իբրև հրամայեաց
Մանսաթէյն դարձուցանել զնա 'ի տուն
իւր, զօրականն խորշեալ յաշխատու-
թէն՝ 'ի բաց ընկեց զնա 'ի ձեան, և գը-
նաց զճանապարհ իւր:

Պիրեն իբրև եդաւ յանքոյթ վայրի,
ըմբռնեցան և երկոքին եղբարք նորա՝
կոմսն Պեսթուշեւ, և զօրավարն Պիս-
մարք: Սպայ սպառազինեցան ամենայն
զօրքն գնդեալք 'ի Բեթրպուրկ և 'ի սահ-
մանս նորա, և շուրջ պատեցին զարքու-
նեօքն: Աննա հռչակեցաւ մեծ դքսու-
հի և խնամակալ, և ամենեքեան եր-
դուան նմա զհաւատարմութի. և եղև
ուրախութիւն մեծ 'ի քաղաքի անդ: Սպայք
ամբարձան 'ի մեծագոյն պատիւ, այլք
դքսուհւոյն կարգեցաւ ընդհանուր ըն-

պարապեալ, և Մունիխ՝ երկրորդ արքային։

Խանդացաւ Օսթերման ընդ փառս Մունիխեայ, և չարախօս եղև բազում ինչ առ դքսին և դքսուհւոյն, մինչև Աննա եբարձ 'ի Մունիխեայ զիշխանութիւն անտեսութեն քաղաքական իրաց պետութեն, և եթող զզինուորականն եւեթ։ Զչարեցաւ ընդ այս Մունիխ, և խնդրեաց՝ կամ լի բովանդակ շնորհել նմա զպաշտօնն, և կամ արձակել զնա յազատութիւն։ Դքսուհին առ ժամանակ մի յապաղեաց նմա զպատասխանին, ապա իբրև ետես՝ զի Մունիխ ընդդէմ կայ և խորհրդոյն Օսթերմանայ՝ մարտ յարդարելոյ ընդ Թագաւորին Բրուսացւոց յանիրաւի, եթող զնա 'ի կամս ազատութեն իւրոյ, և նա հնգետասան հազար րուբլի տարեկան թոշակաւ և միով գնդաւ պահեկապան զօրաց մեկնեցաւ 'ի Հոսթիլիցա։

Զայնու ժամանակաւ ել և վճիռ դատապարտութեն Պիրենայ. այլ դքսուհին շնորհեաց նմա զարիւն՝ եւ աքսորել 'ի Սիպիր, և ընտրեցաւ դուքս Քուրլանտիոյ Լուդովիկոս ազգակից դքսին Պրունսվիքեայ։

Յետ այնորիկ 'ի յաճախել Շվետաց 'ի գործս թշնամութեն ընդ Ռուսս, հարկեցուցին զնոսա 'ի պատերազմ, և Լասչի մարաջախտն յաղթութիւնս բազումս տարեալ 'ի Ֆինլանտիա՝ բարձրացոյց ըղ-

փառս Ռուսիոյ: Ընդ նոյն աւուրս եկն 'ի Բեթրպուրկ դեսպան 'ի Թագաւորէն Օսմանեանց, որպէս և յԱննայէ առաքեցաւ ռուս դեսպան 'ի Կոստանդնուպօլիս, զոր ըստ պայմանաց վերջնոյ ուխտի խաղաղութեանն՝ նովին հանդիսիւ ընդունել ունէին Օսմանեանք, որով ընդունէին զդեսպանն Գերմանացւոց: Շքեղ ևս հրեշտակութիւն էր՝ զոր արար յայնժամ Թահմազ ղուլի խան Պարսից առ Թագաւորն Ռուսաց: Առաքէր նա ընդ դեսպանին իւրում արս վեշտասան հազար և թնդանօթս քսան. ընդ որոց բազմութիւն կասկած երկիւղի կալեալ Ռուսաց՝ արձակեցին գունդս զօրաց 'ի կողմանս Աժտէրխանու: Իբրև եհաս դեսպանն Պարսից 'ի գետն Խըզըլեար, զօրավարն Ափրաքսին առաքեաց ազդառնել նմա՝ զի անհնար անապատ ընդ մէջ կայ Աժտէրխանու և Մոսքուայի, և յանհնարին է հոգալ զպէտս այնչափ ամբոխին. նմին իրի աղաչէր մի աւելի քան երիւք հազարօք խաղալ յառաջ: Զկայ էառ դեսպանն, մինչև եհաս 'ի Թահմազայ հրաման զիջանելոյ Ռուսաց. յայնժամ խաղաց գնաց դեսպանն 'ի Մոսքուա երեք հազար հեծելովք՝ ածեալ 'ի պարգև Թագաւորին Ռուսաց փիղս չորեքտասան, և բազում ակունս պատուականս: Իսկ բուն հրեշտակութեանն էր խնդրել զԵղիսաբեթ զդուստր մեծին Պետրոսի 'ի կնութիւն

Թահմասպայ : Խնամակալ դքսուհին հաձեցաւ իմն ընդ խնդիրն. այլ ոչ Ռուսք, և ոչ Եղիսաբեթ ոչ առին յանձն ազգախառնութիւն կարգել ընդ խուժին :

Էր յայնժամ Ռուսիա 'ի խաղաղութե և 'ի հանգստեան մեծի. այլ որչափ գիւր առնէր դքսուհին ժողովրդեան իւրում, նոյնչափ եւ անանդորր էր յառանձին իրս իւր, մինչև քաժանել նմա յառնէ իւրմէ : Յակայն և ոչ արտաքին խաղաղութիւն յերկարեաց յոյժ : Քանզի կոմսն Կոլովքին ոսոխ յարուցեալ Օսթերմանայ մտերմին Ռուլոիկոսի, յորդորեաց և հաւանեցոյց զդքսուհին անձամբ թագաւորել, պատճառանօք խափանելոյ զխռովութիւն որ կարէին յուզել յանկարծ թէ մեռանէր մանուկ արքայն : Որսացաւ Կոլովքին և զոչ սակաւս յաւագանւոյն, և յ18 դեկտեմբերի հաստատեցին թագաւորեցուցանել զդքսուհին :

Ըստ կարգի յաջորդութեան հաստատելոյ 'ի մեծէն Պետրոսէ, յետ մեռանելոյ Պետրոսի երկրորդի՝ Եղիսաբեթի անկ էր թագաւորութիւն. այլ նա ընդերկար անփոյթ արար զայնմանէ՝ ոչ միայն զի վեհերոտ էր կամ թէ խաղաղասէր, այլ զի և զինքնօրէն կեանս դիւրութե 'ի վեր դասէր քան զամենայն : Ապա Լեսթոք ումն վիրաբոյժ գաղղիացի յազդէ ընդ միտ մտեալ Եղիսաբեթի՝ ստէպ ստէպ յորդորանօք հաւանեցոյց

զնա վրէժխնդիր յառնել խռովութեանց իւրոց: Ըահեցաւ և զոմանս 'ի զօրականաց, և զյոլովս 'ի պահանորդաց:

Յաւուր միում իբրև լուաւ զի դքսուհին 'ի կասկածոտ միտս էր զդաւանացն, առիպեաց զԵղիսաբեթ մի ևս յապաղել զիրսն. և գծեալ 'ի թղթի թագ մի և անիւ, եցոյց Եղիսաբեթի, և ասէ. «Կամ քեզ այսօր մին 'ի սոցանէ, կամ ինձ միւսն առ վաղիւ»: Եւ խոստացաւ նմա Եղիսաբեթ անյապաղ ձեռն 'ի գործ առնել: Յայնժամ գումարեաց Լեսթոք զդաւանակիցսն, և զԵղիսաբեթ ընդհասարակ գլխերաւ ած 'ի ձմերոցս Փրէօբրաժենսքի գնդին, որք 'ի անսիլ զաւետր մեծին Պետրոսի առ հասարակ երդուեան հեզուլ 'ի սէր նորա մինչև ցյետին շնչոյ տրեան խուրեանց. և Լեսթոք զխմեալ նոքօք յապարանսն արքունի՝ ձերբակալ առնէ զդքսուհին և զայր նորա, և զխուան և զքոյր նորին, և խաղացուցեալ սահնակօք 'ի պալատն Եղիսաբեթի՝ 'ի պահ զգուշութե արկանէ զնոսա յայլ և յայլ անձնանկս: Ապա ըմբռնեալ և զՄունեխ և զՕսթերման և զԿոլովքին և զայլս ոմանս՝ բանտարգել առնէ զամենեսեան 'ի բերդի անդ: Եւ ընդ այգն 'ի ժողովել աւագանւոյն և ծերակուտին յայս առըարաւ նոցա անցանել զաւետրն Պետրոսի մեծի յաթոռ նորին, և ամենեքեան 'ի մի բերան երդուան նմա զերդումն հաւատարմութե:

Զհետ երից աւուրց առանձին հրովար-
տակ հանեաւ՝ եթէ դքսուհին Աննա և
այրն իւր ոչ ինչ իրաւունս ունելով 'ի
ժառանգութիւն աթոռոյն Ռուսիոյ՝ առաքին
'ի Գերմանիա. այլ իբրև հասին նոքա
'ի Րիկա, արգելան 'ի միջնաբերդի անդ
ամ մի և կէս. անտի փոխադրեալ մին-
չև 'ի Քօլմօկօրի կղզի 'ի մէջ Տվինա
գետոյ՝ անդ մեռաւ դքսուհին յամին
1786:

Իսկ մանկիկն Իւան բաժանեալ 'ի
ծնողացն յարգելս կայր 'ի Շլիւսել-
պուրկ. և Եղիսաբեթի յամին 1756
կամեցեալ տեսանել զնա՝ եա բերել
անտի, և 'ի խօսել ընդ պատանւոյն
յարտասուս հարաւ սաէն: Այլա Իւան
անդրէն դարձուցաւ յարգելան իւր. և
իբրև եղև ամաց քսան և վեցից, Միրօ-
վիչ անուն խաղախ թոռն Մազեփփայ
կամեցեալ հաստատել զնա վերստին
յաթոռ թագաւորութեան՝ եմուտ բռ-
նութ. ընդ զօրականս ոմանս 'ի բերդն,
և սկսաւ հարկանել զբերդապահսն:
Զայն տեսեալ երկուց ոմանց սպայից որ
կային առ Իւանայ, և երկուցեալ թէ
թէ դուցէ զերծանիցի Իւան, և խառ-
վեսցի աշխարհն, հարին 'ի վերայ պա-
տանւոյն և սպանին զնա: Այսպէս որ
անդստին 'ի տղայ տիոց 'ի ծիրանիս խան-
ձարեալ ինքնակալ կոչեցաւ, յետ վշ-
տալից կենացն պատանեկութեան տեսաւ
դիակն նորա առ դուրս եկեղեցւոյն

Շլուսէլպուրկայ ծածկեալ գձուձ ամղանաւ նաւավարի ։

## ԵՂԻՍԱԲԵԹ

ԸՆԴ անցանել Եղիսաբեթի յաթոռ թագաւորութեան արագ արագ հատաւ և վճիռ գլխապարտութեան իշխանացն կապելոց. այլ Եղիսաբեթ շնորհեաւ նոցա զկեանսն՝ արտաքսահման արար 'ի Սիպիր ։ Ապա վարձահատոյց եղև առատապէս որոց օգնական եղեն նմա և թագաւորեցուցին ։ Դարձոյց յաքսորանացն Սիպերայ ոգիս իբր քսան հազար. որպէս սովորութիւն էր նոր թագաւորացն Ռուսիոյ՝ ազատութիւն շնորհել աքսորելոցն առ նախնի թագաւորօք սակս ոչ յոյժ ծանր յանցանաց ։

Ցանկայր Եղիսաբեթ ուխտ խաղաղութեան հաստատել ընդ Շվէտս. այլ իբրև ետես զի նոքա ծանր ծանր պայմանս պահանջէին, ձեռն էարկ անդրէն 'ի պատերազմ ։ Ապա տեսեալ նորա ըզզեղծմունս որք սպրդեալ էին 'ի թագաւորութեն 'ի Պետրոսէ հետէ, եբարձ զգաղանի խորհրդարանն, և լքացոյց զիշխանութեն ծերակուտին՝ որպէս էրն առ հարբն իւրով ։ Եւս կարեւոր խորհուրդ խորհեցեալ՝ կոչեաց 'ի Բեթրպուրկ ըզդեռահասակ որդի քեռն իւրոյ երիցու,

կարգեաց զնա փոխանորդ ապարապետի, և հաստատեալ իւր յաջորդ 'ի Թագաւորութեան՝ հրամայեաց զի ազգն ողջոյն երդուիցէ նմա զերդումն հաւատարմութե. և փոխեալ զանուն նորա՝ կոչեաց Պետրոս Ֆէոտորովիչ։

Դէպք իմն յանականկալս պատահեցին յայնժամ. զի 'ի վաղիւ անդր որ յետ ընտրութեան Պետրոսի երրորդի, հրեշտակք 'ի Շվէտաց հասին 'ի Բեթրպուրկ հրաւիրել զնա յաթոռ թագաւորութեան Շվէտաց. զի թագաւոր նոցա ծեր էր և անզաւակ, և սա դուքս գոլով Հոլշթէյնայ՝ համարէր 'ի սերնդոց Կուստաւոսի Վազայ արքային Շվէտաց։ Պետրոս եցոյց նոցա փոխանակ իւր զհօրեղբայրն իւր զԱտոլփոս Ֆետերիկոս զեպիսկոպոսն Լուպէքայ։ Եւ որ զարմանալին է, մինչ դեռ ևս այս բանագնացութիւնք լինէին 'ի միջի՝ պատերազմ սաստիկ էր Ռուսաց ընդ Շվէտս։

Մի 'ի պայմանաց թագաւորելոյն Եղիսաբեթի էր՝ զերծուցանել զՌուսս 'ի բռնութենէ եկամուտ ազգաց խառնելոց 'ի նոսա։ Այսու պատճառանօք գունդ մի զօրականին պահանջէր 'ի նմանէ կոտորել զամենայն զօտարականսն, կամ գէթ արտասահման անել զնոսա։ Եւ 'ի չառնուլ յանձն Եղիսաբեթի զխժական խորհուրդն, սփռեցաւ ընդ քաղաքն համբաւ սուտ՝ որպէս թէ հրաման իցէ զօրացն գտելոց 'ի Բեթրպուրկ

սպանանել և կողոպտել զամենայն օ-
տարականս քաղաքին. և նոցա յարձա-
կեալ խուռնբանչիւր դէպ երեսաց խու-
ժեանց՝ անբաւ աղէտս գործեցին 'ի քա-
ղաքի անդ, մինչև հազիւ ուրեմն զօրա-
վարն Քէյթ սանձեաց զնոսա, և խաղա-
աւարառքն պատուհասեցան:

Յետ այնորիկ սաստկագոյնս մարտեցին
Ռուսք զմարտն ընդ Շվէտս, մինչև խո-
նարհեցուցին զնոսա 'ի խնդրել զխաղա-
ղութիւն, և յամին 1743 յամսեանն մայ-
իսի կնքեցան պայմանք ուխտին յԱպօ.
որով եպիսկոպոսն Լուպէքայ ընտրե-
ցաւ յաջորդ թագաւորին Շվեդաց,
որպէս կամէին Ռուսք, և տուաւ Ռու-
սաց մասն մի 'ի գաւառացն՝ զոր կալան
'ի Ֆինլանտիա յայնմ պատերազմի:

Զայնու ժամանակաւ Թահմազ զու-
լի խան որոմնեալ յոյժ ընդ հրաժեշտն
Եղիսաբեթի յերթալոյ նմա 'ի կին,
պատրաստեցաւ խաղալ 'ի վերայ նորա
մարտիւ պատերազմի: Այլ իբրև ետես
զի և Ռուսք զօրաժողով լինէին 'ի կողմանս
Աժտերխանայ և Կովկասու, զիջաւ 'ի
հաշտութիւն, և դարձոյց զդէմ իւր 'ի վե-
րայ թագաւորին Օսմանեանց: Եւ Ե-
ղիսաբեթ դարձոյց զուշ իւր 'ի անեշու-
թիւն ներքին և արտաքին իրաց թագաւո-
րութեան:

Այլ Պեսթուշեվ հազարապետս թա-
գաւորութեան այր փառամոլ և նենգ-
ժոտ՝ բազում գժտութիս արկ ընդ Ե-

ղիսաբեթ և ընդ գեապանս Գաղղիացւոց, որք ձեռնտու լեալ էին 'ի Թագաւորեցուցանել զդշխոյն ։ Այսպէս խանգացեալ և ընդ փառս Լեսթօքայ, և Թըշնամացեալ ընդ նմա սակս բարեկամութեան նորին ընդ Գաղղիացիս՝ այնչափ ինչ արար և հնարեցաւ, մինչև յաջաց եհան զնա Եղիսաբեթի, և առայօք յանցանս արկեալ 'ի վերայ քաղքի աւննե և իւրոյ բարերարի, եւս արգելուլ զնա 'ի բերդ մի, և յետ չորից ամաց աքսորել յՍուսթիւժ վէլիկի մերձ յԱրքանկէլ՝ կարգեալ նմա ռոճիկ օր ըստ օրէ րուբլիս երիս ։ Յետ ժամանակաց Պետրոս Գ յաջորդն Եղիսաբեթի դարձոյց զԼեսթօք յաքսորանացն, և կարգեաց զնա որպէս յառաջն էր՝ բժշկապետ արքունի և խորհրդական ․ ապա և Կատարինէ Բ կարգեաց նմա թոշակ եօթն հազար րուբլիս և կալուածս գեղեցիկս 'ի Լիվոնիա ։

Չև էր հասեալ ժամանակ պատուհասի ժամանին Պեսթուժեվայ ․ որոյ զեռ ևս 'ի շնորհս գոլով Եղիսաբեթի՝ ունէր և զխնամ դաստիարակութեան Պետրոսի, և զբօսեցուցանէր զնա 'ի խաղս և 'ի մեղկութիւնս ։ Հեռացոյց 'ի նմանէ զամենեսեան որ կարէին խորհրդական բարեաց լինել նմա բանիւ և օրինակաւ, և կասկած երկիւղի արկ 'ի սիրտ կայսրուհւոյն՝ որպէս թէ անսանձելի կերպ մեծի դքսին անշուշտ զեան մեծ հա-

յոյս մեծ ընծայէր 'ի չափու ունելոյ և զայրն իւր ։ Ցուցեալ նա և ևս ափոփանս Եղիսաբեթի՝ ծնանելով զորդին իւր զանզգամնիկ, որ կոչեցաւ Պօղոս ։

Իսկ Պեսթուշեվ երթալով երթայր և բռնանայր 'ի վերայ ամենայնի. եւ Եղիսաբեթի հաստատել նոր ատեան բարձրագոյն քան զծերակուտին, անուանեալ Ատեան յարաբերութե, որում անկ էր քննութե գաղանց, պատերազմի, հաշից և ծախուց և ամենայն կարևոր գործոց պետութեն ։ Ուր ուրեմն եբաց զաչս Եղիսաբեթի ատենակապանն Պրոքեննոորֆ, և եցոյց նմա աչօք բացօք զպատրանսն յոր ըմբռնեալ կայր ։ Արկաւ Պեսթուշեվ յիշխանութենէն, և արգելաւ 'ի բանտի ։ Յայնժամ հրապարակեցան բազմապատիկ անիրաւութիւք Պեսթուշեւեայ, և Եղիսաբեթ աանձին հրովարտակաւ նշաւակեալ ըզչարիս նորին՝ հրամայեաց անաչառ դատաստանաւ քննել զնա յատենի առաջի իւր, և ապա աքսորեաց յաւանն Կորեթովօ ոչ ինչ կարի հեռի 'ի Մոսքուայէ ։

Ընդ նոյն ժամանակս յամին 1757 մարաջախտն Ափրաքսին եմուտ պատերազմաւ 'ի Բրուսիա, և էառ զՄեմել. ապա մարտ սաստիկ տուեալ ընդ Բրուսսաց առ Եակերստորֆ քաղաքաւ, 'ի փախուստ դարձոյց զնոսա, և կալաւ 'ի նոցանէ թնդանօթս քսան և ինն. և փո-

խանդակ հետամուտ լինելոյ փախստէիցն՝ դարձաւ ձմերել 'ի Լեհաստան։ Դժուարեալ ընդ այն Եղիսաբեթի՝ հրամայեաց նմա յանձն առնել զզօրսն առ զօրավարն Ֆերմոր, և դառնալ 'ի Ռուսիա տալ զհամար գործոց իւրոց։ Ի Նարվա արկաւ Ապրաքսին 'ի բանտ, և մինչև վճարեալ դատաստանին՝ մեռաւ 'ի կաթուածէ։

Իսկ Ֆերմոր յարձակեալ էառ և զՔէնիկսպերկ և զՔուսթրին, և տարաւ յաղթանակ մեծ 'ի վերայ Պրուսաց. այլ տկարացեալ 'ի բազում վաստակոց յամին 1758 հրաժարեաց 'ի զօրավարութենէն, և առաքեցաւ փոխանակ նորա Զոլթիքով։

Խաղաց գնաց Զոլթիքով դէպ ուղիղ 'ի Քռոսսէն, ուր խառնուրդք եղեն պատերազմին, և Պրուսք մեծամեծ նախճիրս գործեալ 'ի թշնամիս անգր՝ 'ի վերջէ 'ի պարտութի մատնեցան, թողին 'ի տեղւոջն թնդանօթս և դրօշս և մեկնեցան, և անկան 'ի նոցանէ ոգիք երկու հազար, և վիրաւորք չորեքհազար։ Աճապարեցին մտին յաղթականքն 'ի Քռոսսէն, և անտի անցեալ առին զՖրանքֆորթ առ Օտերաւ։ Փեդերիկոս արքայն Պրուսաց ինքնին անցեալ 'ի գլուխ քսան հազար զօրականաց՝ խաղաց գնաց 'ի խափանել զգալուստ Լաւտոն և Հատտիկք զօրավարացն Գերմանացւոց յօգնութի Ռու-

սաց ։ Եւ թէպէտ անազատ ժամանեաց, սակայն խիղախեալ ճակատեցաւ ընդդէմ բանակին Ռուսաց ։

Իբրև սկիզբն եղև մարտին, երկուստեք անպարտելի քաջութ̃ կռուեցան ժամս ութ կամ ինն, մինչև Զօլթիքով բազմութ̃ իւրոցն վանեաց զՊրուսս, և թափեաց 'ի նոցանէ դրօշս քսան և վեց, թնդանօթս հարիւր և յիսուն և կարասի բազում ։ Եւ էին անկեալքն 'ի պատերազմին ութ հազար Պրուսք, թող զվիրաւորսն ոգիս եօթն հազար ․ իսկ 'ի Ռուսաց անկան արք հնգետասան հազար ։ Վասն որոյ թէ և ամենայն Ռուսաց ուրախութի̃ մեծ եղև ընդ յաղթութի̃ն, այլ Եղիսաբեթ գոչեաց ցաւագին ․ «Քանի՜ քանի անմեղք անկան յարևէ» ։ Ապա բաշխեաց զօրավարացն և սպայից և զօրականին պարգևս մեծամեծս ։

Զարմանալի քաջութ̃ շահատակեալ էր յայնմ պատերազմի և զօրավարն Փանին ․ զի ըմբռնեալ յանըմբերելի ցաւոց տանջանութեան՝ ոչ հանդուրժեաց կալ յանկողնի, և 'ի ձեռն ծառայից իւրոց 'ի ձի աշտանակեալ ահագին քաջութ̃ս գործեաց 'ի բանակի թշնամեաց, և ոչ դարձաւ 'ի խորան իւր մինչև ցվախճան պատերազմին ։

Յետ այնորիկ դիմեցին Ռուսք 'ի պաշարել զՔօլպերկ ․ և այն ինչ յառնուլ էր քաղաքն, եհաս 'ի վերայ զօրավարն Վերները չորիւք հազարօք, և ահաբեկ

տարարեալ զՌուսս հալածեաց 'ի տե-ղւոջէն : Զայն պատճառ առեալ նա-խանձորդացն Զոլթիքովայ՝ ստիպեցին զԵղիսաբեթ կորզել 'ի տեղի նորա զՊուԹԹուրլին : Ապա պաշարեցին Ռուսք միաբանգամ զՔոլպերկ 'ի ծովէ և 'ի ցամաքէ կուսէ, և 'ի հինգերորդում ամսեանն անձնատուր եղեն քաղաքա-ցիքն չափաւոր պայմանօք :

Աւետիք այսր յաղթանակի եհաս 'ի Բեթրպուրկ յորժամ Եղիսաբեթ ան-կեալ յախտ մահացու մերձ էր 'ի վախ-ճանել : Ի տագնապ ժամուն ևս յայտ արար նա զընդաբոյս գորով սրտին, և հրամայեաց ազատ արձակել զամենայն բանտարկեալսն յաղագս արգելեալ վա-ճառուց, և զմաքսն ևս շնորհել նոցա : Եհան 'ի բանտէ և զամենայն պարտա-պանս՝ որոց պարտք նուազ էին քան զհինգ հարիւր րուպլիս, և յիւրոց գան-ձուց հատոյց զպարտիս նոցին : Պատուի-րեաց յաջորդին իւրում հաստատուն մնալ յուխտի բարեկամութեան ընդ այլ պետութիւնս, և մեռաւ 'ի 5 յունուարի յամին 1762 :

Առ հասարակ գովութեալ է Եղիսա-բեթ ըստ ամենայն գլխոց . այլ որ զար-մանալին էր յանձին նորա՝ գթութիւն էր անչափ, և թուէր իմն ոչ 'ի թագա-ւորել և 'ի տիրապետել բաղձեալ յա-թոռ արքունի, այլ 'ի մայրօրէն խնա-մովք տածել և սփոփել զամենայն զժող-

տացեալս որք միանգամ գիմեցին առ ոտս նորա ։ Քաջ գիտաց նա միաբանել զքաղցրութիւն ընդ մեծանձնութեան, և զչափաւորութիւն ընդ արքունի պերճութե, որովք և սիրելի եղև Ռուսաց և ահարկու ։ Եւ թէ ոչ սակաւ ժամանակս խաբեցաւ նա 'ի Պեսթուշեվայ, և թոյլ ետ նմա զանիրաւութիւն, այլ միանգամ զանձամբ եկեալ՝ գործեալ յայտ արար զխորաղնին գաստուածն մտաց իւրոց՝ ընտրելով 'ի տեղի նորա իւր բարեկամ հաւատարիմ զկոմսն Վորոնցով՝ զայրն լաւ սրտի նորա ։

Յարգաւանձեցոյց Եղիսաբեթ յոյժ յոյժ և զգիտութիւս և զարուեստս ։ Ճոխացոյց ևս քան զևս զճեմարանն գիտութեց, և հաստատեաց այլ ճեմարան գեղարուեստից ։ և առ նովաւ մանաւանդ սկիզբն արարին Ռուսք իրաւամբք հակառակել ընդ այլ ազինս Եւրոպայ առ 'ի յափշտակել զմրցանակս որպիսի և իցէ փառաց ։

Ոհնգեցունց հոյակապ յաջորդացն Եղիսաբեթի, և մանաւանդ զվերջնոցն երկուց, զԱղեքսանդրէ ասեմ Ա. և զՆԻԿՈՂԱՅՈՍԷ Ա., ոչ ունելով մեր առ ձեռն ճշգրիտ և ոճով պատմութիւն արժանի պանծալի արարոց նոցին, կարեոր համարեցաք գոնեա զերևելի երևելի գործոց նոցին զյիշատակս ժամանակօքն հանդերձ դրոշմել 'ի կարգիս ։

# ԼՐՈՒՄՆ

# ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

# ՌՈՒՍԱՑ

## 1762 = 1830

---

## ՊԵՏՐՈՍ Գ.

ԹԱԳԱՒՈՐԵԱԼ սորա փոխանակ Եղիսաբեթի՝ յառաջին աւուրս անդ զարմացոյց զՌուսս վայելուչ գնացիւքն, որպիսի ինչ ոչ ակն ունէին նոքա տեսանել 'ի նմա: Ներեաց ամենեցուն որք միանգամ մնասակար լեալ էին պատուոյ իւրում առ Թագաւորութեամբն Եղիսաբեթի. դարձոյց յաքսորանաց զՄունիք և զԲիրեն. արձակեաց յազատութիւն և զԼեսթոք, և վարձահատոյց եղև ճոխաբար բարեկամաց իւրոց և հաւատարիմ արբանեկաց:

Եւ քանզի անդստին 'ի սկզբանէ հետէ զարմացեալ էր նա ընդ արիութիւն Ֆեդերիկոսի արքային Բրուսաց, փութացաւ ոչ միայն խաղաղութիւն առնել ընդ նմա և դարձուցանել 'ի նա անդրէն

զամենայն աշխարհն, այլ և օգնական նիզակակից լինել նմա խոստացաւ, և արձակեաց ձրի զամենայն զգերին։

Որչափ մտերիմ էր Պետրոս արքային Բրուսայ, ըստ նմին չափու ոխացոյր ընդդէմ Թագաւորին Գանեայ Փեդերիկոսի Ե., որ տիրապետեալ էր 'ի վերայ իւրոյ հայրենի նահանգին, այսինքն է Հոլսթէյնայ։ Նմին իրի խաղացոյց ընդ այն կողմանս արս յիսուն հազար։ Զայն զգացեալ արքային Գանեայ, զօրահաւոյց եղև և ինքն, և միաբանեաց ընդ Թագաւորին Գաղղիոյ և ընդ Մարիամու Թերեզեայ դշխոյին Գերմանացւոց։

Այս նշանք յայտարարք ճոխաբար իշխանութե և տեւչութեն Պետրոսի հաճոյ եղեն յոյժ Ռուսաց. այլ վաղ խթեցին զաչս բոլորից անկարգ և ցոփ վարք նորա. մանաւանդ ատելութին ընդդէմ Ռուսաց, և կարճելն զհաւս եկեղեցականաց։ Իսկ նա և այնու ոչ շատացեալ՝ արգել առ հասարակ ամենեցուն, զի մի ոք որ չիցէ զերեսնամենիւք՝ մտանիցէ 'ի վանս 'ի կրօնաւորութի։ Աքսորեաց և զարքեպիսկոպոսն Նովկորոտայ, և հրաման ևս եհան բառնալ յեկեղեցեաց զամենայն զպատկերս՝ բաց 'ի պատկերացն Քրիստոսի և Տիրամօրն։ Գայթակղեցան ժողովուրդքն ընդ այս գործ Թագաւորին, և կասկած կալան թէ նա անդրէն 'ի բնիկ աղանդ իւր կամիցի դառնալ 'ի լուտերականութի. և հա-

տատանեցան 'ի կասկածանս՝ յորժամ տեսին զի և եկեղեցի հրամայեաց կանգնել լուտերականաց մերձ 'ի պալատն իւր, և անձամբ առաջնեկայ գտաւ նաւակատեաց նորին ։

Այլ իբրև տեսին զի զժտութիւն էր նա և ընդ ամուսնոյն իւրոյ առաքինւոյն Կատարինեայ, խորշեցան ուծացան 'ի նմանէ, և անկն եդեալ միայն թագաւորելոյն Կատարինեայ ։ Մանրիմէն, և մերձաւորք Կատարինեայ ազդ արարեալ նմա զուխտ արտի ժողովրդեանն, և զմօտաւորուա վտանգ նորին իսկ կենաց, հաւանեցուցին զնա կանխել զառաջասնուլ Պետրոսի, որ 'ի մտի եդեալ էր յ30 աւուր յունիսի արգելուլ զամուսինն որդւովն հանդերձ 'ի բերդն Շլուսէլպուրկայ ։

Աւուրբ յառաջ իշխանն Օռլով և այլք ոմանք յաւագանւոյն աճապարեցին հանել զԿատարինէ 'ի Փեթերհօֆայ՝ մինչդեռ Պետրոս էր յՕրանիենպաում, և տարան զնա 'ի ձմերոց պալատանն՝ որք ըստ յառաջագոյն գիտութեանդէն թագաւորեցուցին զԿատարինէ ։ Անտի անյապաղ փութացան 'ի մայր եկեղեցին Բեթրպուրկայ գիշերայն, ուր և առաջի ատագանւոյն և ուխտի եկեղեցւոյն հռչակեցաւ Կատարինէ 'ի կայսրուհի Ռուսաց, և երդուաւ անարատ պահել զկրօն և զօրէնս պետութեան ։ Իսկ ընդ այգն ամենեքեան որք միանգամ

իրազեկ եղեն պատահելոցն՝ խնդալից սրտիւ երդուան նմա զերդումն հաւատարմութեան :

Յայնժամ Կատարինէ ամենայն ամբոխիւն արամբք իւր հնգետասան հազարաւ դիմեաց յՕրանիենպաւմ : Յադնապետալ Պետրոսի Գ. անակնկալ դէպքն՝ առաքեաց զկոմսն Վորոնցով զի խօսեսցի 'ի հաշտութիւն. այլ Վորոնցով ոչ ես դարձաւ անդրէն առ նա : Գրեաց Պետրոս թուղթ առ Կատարինէ, որով յայտ առնէր թէ ինքն պատրաստ է հրաժարել յինքնակալութենէն և մեկնել 'ի Հոլսթէյն. և մինչչև ընկալեալ նորա զպատասխանին՝ տարածեցաւ համբաւ մահու նորին 'ի յանկարծական իմն խթից որովայնի, որպէս ասէին :

Եւ քանզի չև էր պսակեալ 'ի թագաւոր, մարմին նորա ոչ 'ի շիրիմս նախնեացն իւրոց թաղեցաւ, այլ 'ի վանս Աղէքսանդրի Նեւսքեայ : Սակայն յետ երեսուն և չորից ամաց թագաւորեալ որդւոյ նորին Պօղոսի, եհան զոսկերս հօրն 'ի գերեզմանէն, և 'ի վերայ տապանին կատարեալ զհանդէս պսակմանն՝ հռչակաւ և մեծաւ փառօք զետեղեաց զնա 'ի կարգս այլոց ինքնակալաց :

## ԿԱՏԱՐԻՆԷ Բ.

ԶՆԵՐՈՂԱՄՏՈՒԹԻՒՆ առ կուսակիցս Պետրոսի Նախկին գործ արարեալ Կատարինեայ, այս 'ի վերջ կոյս 1762 ամին գնաց 'ի Մոսքուա և պսակեցաւ 'ի կայսրութիւն. և անդ 'ի հրապարակել դաւանաց երից ընդդէմ նորա՝ զխառնակ արարան ձեռբակալ արարեալ եա աքսորել 'ի Սիպիր. այլ զՄիրովիչ զբա-րեացապարտն 'ի մահ դատապարտեաց:

Զայնու ժամանակաւ 'ի մեռանել Օգոստեայ արքային Լեհաց՝ եբերև ժողո-վեցան 'ի խորհուրդ աւագորեար նոցին, Գերմանացիք, Բրուսք, Օսմանեանք և Ռուսք արձակեցին զօրս 'ի սահման-գլուխս Լեհաստանի, զի մի՛ ինչ ազ-մուկ յարուցեալ Լեհաց ըստ հերեանց ազատութեան մրցմունքեցեն զխաղաղու-թիւն հասարակաց. և Կատարինէ յայս արար աւագանւոյն Լեհաց՝ թէ իւր ուխտ արար է անթռնել յաթոռն թա-գաւոր զոք ընկել Լեհ յազգէ: Նմին իրի որոշեցան յընտրութեան լեհացիք չորք. Գրանեցքի, Ձարտորինսքի, Լիւպոմիր-սքի, և Ստանիսլաւ Փոնեաթովսքի. և ընտրեցաւ վերջինն՝ մեծաւ զօրաւ Կատարինեայ, և թագաւորին Բրուսաց:

Յետ սակաւուց բազումք յաղատա-

նուոյն Լեհաց միաբանեցին ընդդէմ ամենայն ազգաց այլադաւանից գտելոց 'ի Լեհաստան, զի մի՛ տայցի նոցա պատիւ և համարձակութիւն ազատութեան հաւատոյ այլոց Լեհաց. և այնչափ աճեաց խռովութիւնն, մինչև Ստանիսլաւայ և ծերակուտին յօգնութեան կոչել զԿատարինէ. զի միաբանեալ խռովարարացն ընդ իւրեանս և զԹաթարս՝ նոքօք հանդերձ խաղացին 'ի Լեհս: Արձակեաց Կատարինէ 'ի Լեհաստան արս քառասուն հազար, որք անհագին կոտորած հասուցին 'ի վերայ նոցա: Ընտի և Գաղղիացիք յօգուտ ուղղափառ հաւատոյ համարելով զաղմուկն՝ բանիւք և դրամովք խրախուսէին զապստամբսն: Իսկ նոքա գրգռեցին և առ Թագաւորն Օսմանեանց սուլթան Մուստաֆա. և նա զի պատճառս խնդրէր պատերազմի ընդդէմ Ռուսաց, զօրաժողով եղև մեծապատրաստութեամբ մերձ յԱդրիանուպօլիս, և արձակեաց զվէզիրն դէպ 'ի Լեհաստան վեցհարիւր հազար զօրօք:

Յամին 1769 զօրավարն Կոլիցին էառ պատերազմաւ զամուրն Խօթուն. այլ ապա դարձ արար յետս 'ի խնդիր համբարուց: Զհետ աւուրց քառասնից միւսանգամ յարձակեալ Կոլիցինայ յ8 սեպտեմբերի բազում կոտորածս հասոյց 'ի զօրս Տաճկաց. և 'ի փախչել Էնիչէրեացն՝ յառաջ եւս խաղացեալ էառ զԵաշ և զՊուքրէշ, և զկուսակալս

Մոլտաւխոյ և Վալաքիոյ ձեռնտուեալ ա-րարեալ տաճկաց 'ի Բեթրպուրկ։ Էառ այս և զայլ քաղաքս մինչև 'ի Պէնտէր. և թէպէտ զօրք Օսմանեանց նուաղեալ և ահաբեկ էին, այլ Կոմսցին ոչ իշխէր յարձակել 'ի վերայ ամուր ամրոր քաղաքային մնացելոց։ Յայնժամ արձակեաց Կատարինէ ընդդէմ Օսմանեանց զգունդ սպարապետաւն Ռումեանցով, և զզօրավարն Փանին, զի վանս ձեան արասցեն մարտին՝ ակն եդեալ առնուլ զամենայն երկիրն որ է 'ի մէջ Տնեստեր և Փրութ գետոց։

Ռումեանցով վաթսուն հազար զօրօք ձակատեալ ընդդէմ բանակին Տաճկաց, յարձակեցոյց երկուսեք 'ի պատանէշս նոցա զզօրավարսն Ռեփնին և զՓոթեմքին, և յետ արիւնհեղուշա պատերազմեաւին նոքա մինչև զչորրորդ կարգ պատնըշացն։ Եւ Ռումեանցով մնացելովքն ձիոց զհետ մտեալ փախստէիցն Տաճկաց, որք աւելի էին քան զերս հարիւր և երեսուն հազար, զկազմուածս 'ի նոցանէ զբազմամեայս աւար 'ի Դանուբ, և զմնացեալսն հալածեաց մինչև 'ի հեռաստան, և այս զարձու բաշխեաց 'ի զօրս իւր զաւար և զձոխութիս զօրացն Տաճկաց՝ որք ափիւս տարածեալ անկեալ կային զամենայն զձանապարհաւն։ Այս էառ զօրավարն Ռեփնին զՔալաս քաղաք, և Պաւէր զԱքերման և զՔիլի։

Մեծապոյն ձգանց պէտք եղեն զօրավարին Փանինայ յառնուլ զՊէնտէր։ Զի պաշարեալքն Տաճիկք և Թաթարք արք իբր հնգետասան հազար՝ յուսահատ մնօք զդէմ կալան Ռուսաց զաւուրս հնգետասան, մինչև հարկեցաւ Փանին նոր զօրս խնդրել ՚ի Րումեանցովայ։ Այսպ ՚ի 26 սեպտեմբերի անհնարին սաստկութե̃ յարձակեալ Ռուսաց՝ առին գիշերայն զՊէնտէր, և աւար հարին զամենայն զքաղաքն և յանձինն գործուցին. այլև ինքեանք կորուսին ՚ի յարձակման անդ աւելի քան զոգիս հնգետասան հազար։

Յետ այնորիկ եղաւ և զօրավարն Կլեպով զԻբրայիլ՝ յորմէ փախուցեալ էր զօրացն Տաճկաց. և այնուհետև ամենայն մերձակայ վայրքն անձնատուր եղեն ՚ի Ռուսս։ Անտի և Օռլով ՚ի նաւամարտի յաղթեաց Օսմանեանց մերձ ՚ի Զմիւռնիա։

Ռուսաց ՚ի բազմաց հետէ աչս եդեալ ՚ի ցամաք կղզին Խրիմու, զայն ժամանակ պատեհ համարեցան յերկանս ձգել զանձին, որով դիւրանայր նոցա նաւագնաց լինել ընդ Պոնտոս։ Արաքեցաւ անդր իշխանն Տոլկորուքի զօրօք բազմօք, և մարտուցեալ ընդ Թաթարս՝ էառ նախ զՕրն, և ապա զԽարասու և զԿէօզլէվ։ Անտի գնաց ՚ի Քէֆէ, ուր ամփոփեալ էր մեծ մասն Թաթարաց, և երեսուն հազար զօրօք պաշա-

պանէին քաղաքին։ Ռուսք 'ի 29 յունիսի յամին 1772 յարձակմամբ առին զքաղաքն, զգինեակայսն կոտորեցին, զզօրսն գերի վարեցին, և զհայ բնակիչսն աւելի 1200 վարեցին 'ի Ռուսիա. որք յետ ամաց ինչ դարձ արարեալ մեծաւ մասամբ 'ի Խրիմ սփռեցան յայլ և այլ քաղաքս կղզւոյն։

Այսպէս առին պատերազմաւ և զԱրապատ, և կողոպտեցին զայն։ Իսկ Կերչ և Ենի գալէ ինքնին անձնատուր եղեն Ռուսաց։

Յայնժամ Սէլիմ Գէրէյ խան Խրիմու առաքեալ առ Ռուսս այր աւագ ոմբ վեցհարիւր՝ աղաչեաց 'ի հաշտութիւն, խոստանալով յայնմհետէ հպատակել Ռուսաց, և ըստ կամս նոցա վարել զաշխարհն՝ հատեալ 'ի բաց զամենայն հաղորդակցութիւն ընդ Օսմանցիս։ Այլ Սէլիմ խան վաղ նենգեալ երդմանն՝ փախեաւ յերկիրն Տաճկաց. և Տոլկոռուքի կարգեաց փոխանակ նորա զՇահին Գէրէյ խան։

Ռումեանցով դեռ ևս 'ի Մոլտաւիա գոլով բազում պատերազմունս մղեաց ընդ Օսմանեանս, զորոց յերկար լինէր ճառել. մինչև հասեալ ուրեմն յամին 1774 հինգերորդ անգամ անցեալ ընդ Դանուբ՝ ել բովանդակ տարաւ զյաղթանակն՝ առեալ և զՇումնի. և խոնարհեցան Օսմանեանք 'ի սկզբան թագաւորութեան սուլթան Համիտ խնդրել

զհաշտութիւն ըստ պայմանացն զոր պահանջէին Ռուսք, և հաստատեցան դաշինքն 'ի Գայնարճըգ գիւղ առ Սիլիստրաւ: Եւ էին գլխաւոր պայմանքն՝ ազատ մնալ խանին Խրիմու 'ի ներքուստ ձեռին Օսմանեանց, և ունել Ռուսաց զԿերչ, և զԵնի գալէ, և զամենայն զեզերն մինչև յԱզով:

Մեծաշուք յոյժ եղև հանդէս յաղթանակին Ռումեանցովայ 'ի Բեթըրպուրկ, և պատուեցաւ նա Զատունայսքի կոչմամբ՝ սակս անցից նորա անդր քան Դանուբ: Նոյնպէս և զայլս 'ի զօրավարացն մեծապարգևս մեծարեաց Կատարինէ, և զօրացն դարձեալ բազմապատիկ պարգևս բաշխեաց:

Ի ժամանակին յորում անդուլ պատերազմ էր Ռուսաց ընդ Օսմանեանս՝ կրկին դէպք նշանաւորք պատահեցին 'ի ծագս սահմանացն Ռուսիոյ: Առաջին՝ զի չորեքհարիւր հազար խալմուխք անցին գնացին յերկրէն Ռուսաց 'ի Չինս, և չեն յայտ պատճառքն: Երկրորդ, զի խաբեբայք հինգ՝ մի զմիոյ կնի 'ի վեր ելեալ 'ի մէջ Տոնացի Խազախաց՝ և այլուր, ասացին զանձինս թէ Պետրոս լինել այրն Կատարինեայ, և աղմկեցին զաշխարհն. չորք 'ի նոցանէ յոչինչ եղեն՝ պատուհասեալք և փախուցեալք. այլ հինգերորդն ոչ սակաւ սասանեցոյց զՌուսիա:

Զօրական էր սա խազախ՝ Փուհաչեվ

անուն, փախուցեալ 'ի բանակէն Պէնտերայ 'ի Լեհս. անդ գնացեալ յՈւրալեան լերինս հաւանեցոյց զխազախս տեղւոյն թէ ինքն Պետրոս Գ է թագաւոր Ռուսաց, և զիւրև ածեալ արս չորեքտասան հազար՝ խաղաց պաշարեաց նոքօք զԵայիք քաղաք, և որ ըստ օրէ բազմանայրին զօրք նորա: Կեղծէր զբարեպաշտութիւն միայն առաջի զօրացն, և ասէր թէ ոչ այլ ինչ կամիմ ես, բայց նստուցանել յաթոռ թագաւորութեան զորդին իմ զՊօղոս, և միանձնանալ:

Կայսրուհին է առ 'ի զառաջս ունել չարեացն՝ հրովարտակ տարաւ՝ յայտ ածելով զխարդախութիւն նենգաւորին, և միանգամայն առաքեաց ընդդէմ նորա զզօրավարն Պիպիքով: Նա և Փուհաչէվ հրատարակեաց հրովարտակ մի յանուն Պետրոսի երրորդի, և պատահեալ մարտիւ Պիպիքովայ և այլոց զօրավարաց՝ էր զի յաղթեցաւ, և էր զի յաղթեաց, մինչև եհաս 'ի վերայ նորա Փանինն, և ընդ նմա Միքելսոն. և երկոքին առքա երկուստեք հալածեալ փախուցին զՓուհաչէվ մինչև յայնկոյս Վոլկայի, և սակաւաւոր ընկերքն Փուհաչէվայ յուսահատեալ ետուն զնա 'ի ձեռս Ռուսաց: Յամին 1774 'ի Նոյեմբերի ածաւ Փուհաչէվ 'ի Մոսքուա, և գլխատեալ՝ ապա անդամ անդամ յօշեցաւ, և հնգեքին ընկերք նորա գլխաւորք աքսորեցան 'ի Սիպիր:

Յետ այնորիկ քակտեցաւ և հաշտաւոր բանակ միաբանութե̃ Զափորոժացի խազախաց, փոխանակ զի չկամեցան տալ զօրացն Ռուսաց արշաւելոց 'ի Խրիմ համբարս և երկվարս, և համարեցան ձեռնտուք 'ի Թշնամիսն Ռուսաց:

Յամին 1775 Կատարինէ կին ած Պօղոսի զդուստր Լանտկրաւոյ Հասսիա Տարմշթատ նահանգի. այլ 'ի մեռանել այնր օրիորդի տարաժամ մահուամբ՝ ընտրեցաւ իշխանուհին Վիրթեմպերկայ Սոփիա. և Պօղոս ուղևորեցաւ ընդ Րումեանցովայ 'ի Պեռլին, զի խօսեսցի զՍոփիա իւր 'ի կին: Մեծապէս պատուասիրեաց Փեդերիկոս արքայ զՊօղոս, և տուեալ նմա զօրիորդն՝ դարձոյց շքով մեծաւ 'ի Բեթրպուրկ: Ընդ կատարեցան հարսանիքն փառաւորագոյն հանդիսիւ քան զառաջինն, և Սոփիայն կոչեցաւ Մարիամ Ֆէոտորովնա:

Ստէպ ստէպ յաճախութիւնք ուրախութեանց և հանդիսից հաշտկելոց 'ի Բեթրպուրկ ոչ ինչ կասեցուցին զԿատարինէ 'ի փութոյ կարևոր խնամոց պետութե̃ն: Ուշ եդ բարդաւաճելոյ վաճառականութե̃ն Ռուսաց ընդ Չինս. և 'ի դիւրացուցանել և ևս զվաճառաշահութի̃ն ընդ Պարսս՝ արձակեաց զՎօյնավիչ կոմս զօրօք հանդերձ 'ի Դաղըստ. և նա դիւրաւ նուաճեալ զամենայն զարևմտեայս կասպից ծովուն՝ յամին 1779 էառ և զԴարբանդ և զամենայն

գաւառսն զորս դարձուցեալ էր Աննայի առ Թահմազ:

Տեսեալ Հերակլի արքային Վրաց ըզ-տիրապետել Ռուսաց մինչև մերձ 'ի սահմանս իւրոյ աշխարհին, օտարացաւ 'ի Թագաւորէն Օսմանեանց, և զհարկն զոր հարկէր նմա՝ դարձոյց առ Ռուսս, և եմուտ ընդ հովանաւորութեամբ նոցին:

Գիտաց Կատարինէ յօգուտ 'ի կեր-պրկանել և զերկրակալութիւն առ Խրի-մու, և կառոյց զքաղաքն Քերսոն, զի լինիցի համբարանոց վաճառականութե Ռուսաց ընդ արևելեայս: Օսմանեանք որք 'ի վաղուց տաղտկացեալ էին ընդ պայ-մանս ուխտին հաստատելոյ 'ի Գայնար-ճըզ՝ առաքեցին 'ի Խրիմ զնոր խան Տեվլեթ Քէրէյ անուն. այլ Ռուսք ա-ճապարեցին ձեռն տալ Շահին Քէրէյ-այ ընկել խանին Խրիմու, և Տեվլեթ փախստական դարձ արար 'ի Կոստան-դնուպօլիս: Փոքր միւս ևս և մերձ էին յուզէր պատերազմն Ռուսաց ընդ Օս-մանեանս, այլ միջնորդութեամբ դեսպա-նին Գաղղիոյ դարձեալ հաստատեցաւ և մեկն ևս վճռեցաւ ուխտ բարեկամու-թեան առաջնոյ:

Սակայն Շահին Քէրէյ ցանկ անհան-գիստ գոլով յերեսաց Տաճկաց, հուսկ ուրեմն խորհեցաւ տալ զիշխանութիւն իւր բռնաւորութիւնն 'ի ձեռս Կատարինեայ. և նա որ յայն սակս իսկ ազատ կացու-ցեալ էր զԽրիմ և զփոքր Թաթարս 'ի

ներքուստ ձեռին Օսմանեանց՝ փութացաւ հաստատեաց զբանն առանձին յայտարարութ̃բ 18 ապրիլի յամին 1783, որով մասն համարեցաւ և Խրիմ երկրին Ռուսիոյ. և իշխանն Փոթեմքին եառ յամենայն Թաթարաց կողմանցն զերդումն հաւատարմութ̃ե առ կայսրուհին:

Սասանեցան Տաճիկք ընդ լուր, և ձայն ետուն մարտի անհնարին սրտմտութ̃բ. ընդվայր ճգնէր և դեսպանն Գաղղիոյ խաղաղել զնոսա. որ և միջնորդ կալաւ առ Կատարինէ զՅովսէփ Բ կայսր Գերմանացւոց. այլ նա կապեալ էր մտերմութ̃բ ընդ Կատարինեայ: Այս 'ի վերջէ սուլտան Ապտիւլհամիտ լռեաց և եթող Կատարինեայ տիրանալ խաղաղութ̃բ յաշխարհակալութ̃իս իւր:

Այլ յաջողեաց բախտն Կատարինեայ և եւս, զի ոչ միայն Հերակլ արքայ Վրաց, այլ և այլք յոլովք ինքնագլուխ իշխանք ընդարձակ հովտացն Կովկասու հարկատու եղեն Ռուսաց, և խնդրեցին զպաշտպանութ̃ի նոցա:

Մինչդեռ այսչափ և այսպիսի աշխարհակալութ̃ք գերածայրեալ էր պետութիւնն Ռուսաց առ Կատարինեաւ, ոչ այլ ինչ պակասէր փառաց նորա՝ բայց զի և մեծ քահանայապետն Հռովմայ Պիոս Զ միաբանեալ ընդ այլ պետս աշխարհի խնդակից լինիցի նմա: Վասն որոյ պատճառս կալեալ յընդունելութ̃է անախ զոր եցոյց Կատարինէ Յիսու-

բեանցն բարձելոց յԵւրոպայ, և կարգեաց զնոսա դատաւորակս մանկանց ուղղափառաց, տուեալ պայման առ նոսա 'ի գլխոց եւրոպ'նուիրակ զհաշտականւորն Աղեքէթթի։ Կատարինէ ըստ խնդրոյ քահանայապետին շնորհեաց ուղղափառաց զեկեղեցի մի 'ի Բեթրպուրկ, երիս ուղղափառ եպիսկոպոսունս յաւել յարքեպիսկոպոսն Մոհիլեվայ, և կարգեաց մետրապոլիտ զոմն վասն ամենայն նահանգաց պետութեն ընդ Ասիա և ընդ Եւրոպա, և զայլ ոմն եպիսկոպոս ուղղափառ յոյն 'ի Փլոցք։

Այլ յընդարձակածաւալ աշխարհաց ոչ ընդ երկար լռեն պատերազմունք։ Վասն որոյ ընդ այն աւուրս և Օսմանեանք գժտեալք ընդ անցանել Վրաց և Կովկասայնոց առ Ռուսս՝ ձեռն արկին 'ի մարտ կազմել ընդ նոսա 'ի սահմանան յայնասիկ։ Զայն զգացեալ Կատարինեայ՝ ազդ արար 'ի դուռն Օսմանեանն՝ բաց յայլոց պայմանաց անձնել և զարշաւանս Լեզկեաց և Աղուանից 'ի Վրաս, և գիտել ստուգիւ, զի Վիրք բողոքմամբն ընդ տէրութեամբ անկեալ են Ռուսաց։ Օսմանեանք ետուն պատասխանի թէ Լեզկիք և Աղուանք ինքնագլուխք են, և ոչ հնազանդքն Տաճկաց. իսկ աշխարհն Վրաց 'ի սկզբանէ հետէ անկանէր ընդ իշխանութբ դրանն մեծի, և ոչ երբէք ընդ տէրութբ Ռուսաց։

Յայսց պատճառաց, և 'ի գրգռութեց Անգղիացւոց Տաճիկք պատրաստէին 'ի պատերազմ՝ յորժամ Կատարինէ չո-ւեաց մեծաշուք ուղևորութ՟ 'ի Խրիմ, ուր իշխանն Փոթեմքին բազմապատիկ խնճոյիւք և յաղթական կամարօք մե-ծարեաց զնա:

Ի գալստենէն Կատարինեայ 'ի Խրիմ առաւել ևս հաստատեցան Տաճիկքն թէ նորա միտք են խաղալ յառաջ մին-չև 'ի Կոստանդնուպօլիս, և զերկրորդ թոռն իւր զԿոստանդին կարգել յա-թոռն Բիւզանդիոյ, որպէս համբաւէր: Կայսրուհւոյն բնաւ այլ միտք էին յոր-ժամ դարձ արար 'ի Մոսքուա. սա-կայն Տաճիկք արգելեալ զդեսպանն Ռուսաց յեդի գուլէ՝ յայտ արարին զպատերազմն:

Յամին 1787 յարձակեցան Օսմա-նեանք 'ի Գինպուրուն, այլ Սուվորով վանեաց զնոսա անտի սաստիկ հարուա-ծովք: Հասին այլ զօրք եօթանասուն հազար 'ի միւս կողմանէ՝ որոց զօրավա-րէր Փոթեմքին իշխան, և խորտակեալ նախ զԹաթարս Կուպանայ, մարտ ե-դին ընդ Տաճիկս, և բազում մարդիկ կորուսեալ՝ հուսկ ուրեմն եկին պաշա-րեցին զամրոցն Օզու:

Յառաջնում աւուր անդ յուլիսի հասին և 'ի ծովէ նաւք Ռուսաց. և մինչդեռ նոքա մարտնչէին ընդ նաւա-տորմին Տաճկաց, յարձակեցաւ 'ի վե-

րայ քաղաքչին և 'ի ցամաք կուսէ փոթեմքին, և առ զպատանեչան: Այլ Հասան փաշա ծովակալն ոչ կամեցեալ երկրորդ անգամ մարտնչել, խոյս ետ նաւուքն 'ի Կոստանդնուպօլիս. և Փոթեմքին պատանէչ պաշարմամբ նստաւ առ բերդաւն Օզուի:

Իբրև հաս 'ի մերոյ ձմեռան սաստկատուայց, թէպէտ Ռուսք ոչ ինչ կարի նեղէին 'ի ցրտոյն, 'ի սորա երկրի բնակեալք, այլ զի համբարքն պակասեալ էին՝ փոթեմքին եդ 'ի մտի անակնկալ յարձակմամբ առնուլ զքաղաքն: Սակայն տեսեալ զամրութիւն քաղաքին, և զպաշարելոցն ահեղ պատրաստութիւն և զիւրոյն նուաղութիւն՝ ոչ վստահացաւ. զի Օզուեցիք աւելի էին քան զքառասուն հազար, ուր Ռուսք չորեքտասան հազար ևեթ միացեալ էին:

Զեան էարկ յայլ ինչ հնարս, և սպառալար 'ի քաղաքն՝ թէ չեն իւր կամք պատերազմել 'ի բքալից ժամանակին, վասն որոյ մեկնի յաշխարհ իւր. այլ պատրաստ կացցեն 'ի գալ գարնայնոյն զոհ լինել սրամտութեան զօրաց իւրոց, զի անշուշտ առից ես. ասէ, զքաղաքդ. և հարեալ զթմբուկսն մեկնեցաւ անտի: Զայն տեսեալ պաշարելոցն՝ խնդացին յոյժ, և մինչդեռ անհոգացեալ թմբրեալ առ հասարակ խոր 'ի քուն ննջէին՝ Փոթեմքին ընդ այլ ճաղի ած գիշերայն զզօրս իւր դարձեալ ընդ բեր-

դաւ քաղաքին. և յ17 դեկտեմբերի յաւուր տօնի սրբոյն Նիկողայոսի պաշտպանի Թագաւորութեն Ռուսաց՝ երեք բանակին քաջալերս կարդաց առ զօրն՝ թէ որ ոք մեռանիցի յայսմ աւուր 'ի սէր իւրոյ Թագաւորին՝ սուրբն Նիկողայոս ահա տարածեալ զգիրկս իւր կայ յերկինս ընդունել զնա առ իւր:

Խրախուսեցին զօրքն և 'ի բանէն. և 'ի վեց առաջս բաժանեալ՝ զօրավարն Փալեմ դիմեաց 'ի պատնէշսն որ 'ի վերայ լերին կային, Փալմէնպրաք յարձակեցաւ 'ի խորտակել զդրունսն. գնդապետն Փլաթով մարտ եդ ընդ Ալպանիացիս որ 'ի վերայ վիմին մեծի պահ ունէին, և զօրավարքն Անհալթ և Տոլկորուքի անցեալ ընդ մին 'ի դրանց քաղաքին՝ և ոչ ինչ միտ եդեալ դիմակացութե պաշտպանողն՝ հասին հասին մինչև յաշտարակն Հասան փաշա գալէսի, և առին զայն, և խուժեցան 'ի քաղաքն ընդ. ամենայն դրունս նորա:

Յայնժամ քաղաքացիքն 'ի տանց իւրեանց հրազէնս արձակեալ 'ի վերայ Ռուսաց 'ի հարուածս սաստիկս հարկանէին զնոսա, մինչև մեռան և ինքեանք ընդ փլատակօք տանցն, զի 'ի ծովակողմն կուսէ անդադար ումբաձիգ լինէին Ռուսք 'ի քաղաքն: Ի հինգ վայրկենի առաւ քաղաքն, որպէս հաւաստեաց Փոթեմքին. և զի հրամանն էր յաւարի առնուլ զայն, այնչափ ճոխա-

Իսկ զօրք Կատարինեայ առաջնորդութեամբ զօրավարացն Ուշաքովայ, Հէլմանայ և Փոթեմքինայ առին զամենայն երկիրն առ Դանուբաւ և զնորին Քիլի, և Փոթեմքին պաշարեաց զԽոմայիլ: Յետ յերկար պատերազմաց Սուվորով յարձակեալ եմուտ 'ի քաղաքն ընդ դեղադէզ դիակունս անկեալս 'ի նմա. և տևեաց մարտն այլ ևս երիս աւուրս, և Ճապաղիք արեան վտակօրէն խաղացեալ ընդ փողոցս քաղաքին՝ հարկանէին մինչև 'ի ծունկս յաղթականացն: Յայնմ մարտի անկան 'ի Ռուսաց արք երկոտասան հազար, և 'ի Տաճկաց առաւել քան զքսան և վեց հազար: Նուսուֆ փաշա վերստին զօրաժողով լեալ յարձակեցաւ 'ի վերայ Ռուսաց, այլ 'ի փախչել իւրոցն և ինքն կալեցաւ:

Ի նմին ժամանակի և զօրավարն Կուտովիչ խորտակեալ զԹաթարս Կուպանայ և զԿովկասայինս՝ խաղաց մինչև յԱնափա և էառ զայն:

Ապա յամին 1791 Փոթեմքին 'ի գնալն 'ի Բեթրպուրկ մեռաւ զճանապարհայն, և փոխանակ նորա առաքեալ կոմսն Պեզպորոտքի՝ զիջաւ խօսել ընդ Օսմանեանս զհաշտութիւն 'ի 11 յունուարի յամին 1792 'ի քաղաքն Եաշ. և պայմանք ուխտին եղեն, զի մնասցէ Օզու 'ի ձեռս Ռուսաց, և հաստատուն կացցեն պայմանքն հաստատեալք 'ի Գայնարճէ, և Թագաւորն Օսմանեանց

հատուսցէ Ռուսաց երկոտասան միլիոն դահեկանս, և մի ևս խառնեսցի երբէք յիրս աշխարհին Լեհաց։ Եւ յետ ձեռնադրելոյ թղթի դաշանցն՝ Պետերբուրգի յայս արար վճիռն՝ թէ կայսրուհին շնորհէ նմա զպայմանեալ արծաթն։

Ընդ այն ժամանակս սուլթան Սէլիմ խոստացեալ էր Լեհաց արս քառասուն հազար, եթէ և նոքա յանձն առցեն առաքել առ նա զօրս քսան հազար ընդդէմ Ռուսաց։ Յայս սակս փութացեալ Կատարինեայ 'ի հաշտութիւն՝ մինչդեռ զօրք իւր ոգիք ութսուն հազար գանային գային փութանակի և մերձ էին 'ի սահմանս Լեհաց, պատուէր տաքեաց առ աւագանին Լեհաց՝ յետս կալ 'ի խորհրդայն զոր հաստատեալ եդեալ էին 'ի մէջ. այսինքն էր նոր իմն օրէնս կարգել՝ զի և իւրեանց թագաւորք որդի 'ի հօրէ առցեն զաթոռն։ Եւ յընդդէմ կալ Լեհաց և 'ի խիղախել 'ի պատերազմ, հրաման ետ Կատարինէ զօրացն դարձելոյ՝ յարձակել 'ի Լեհս։

Բազում քաջութիւնս ցուցին Լեհք յայնմ պատերազմի՝ որ եղև յՈւքրանիա և 'ի Լիթուանիա զօրավարութբ Յովսեփայ Փոնեաթովսքի եղբօրորդւոյ արքային, և հռչակաւորին Թադէոսի Քոշուսքայ. այլ Ռուսք բազմադոյնք քան զԼեհս՝ ստան ստան յառաջ խաղային, մինչև եկին հասին 'ի Վարշաւ քաղաք,

ուր վարանեալ մնայր Ստանիսլաւ արքայ սակաւ զօրօք։ Եւ ահա եհաս առնա գիր 'ի Կատարինեայ՝ թէ որ զինչ պահանջեմ ես 'ի քումմէ աւագանւոյդ՝ խորհրդով և միաբանութե̄ թագաւորացն Գերմանիոյ և Բրուսիոյ է այն ամենայն։

Յայնժամ Ստանիսլաւ աճապարեաց դուլ առնել զինուց, և ունայնացոյց զօրէնս յաջորդութեան նորոգ հաստատելոյ յաւագանւոյն։ Խուռնք ախոյեան ընդ ամենայն քաղաքս Լեհաց, և Լեհք նուիրակս առաքեալ առ կայսրուհին՝ աղաչեցին զնա ընդունել զԼեհաստան դարձեալ ընդ իւրով հովանաւորութե̄ որպէս կանխաւն, և անյիշաչար լինել։

Յետ սակաւ ժամանակի մինչ դեռ ևս խեռային բազումք 'ի Լեհաց ընդ եղեալսն, Քոշուսքոյ որ մեկնեալ էր 'ի Լիփսիա ընդ ոմանս յիւրոց համախոհից, ետ համբաւել ընդ Լեհաստան՝ թէ գրամս բազումս առեալ իւր 'ի Գաղղիացւոց՝ գայ ազատել զԼեհս 'ի ծառայութէ̄ թագաւորի, և ազատութե̄ շնորհել ամենայն գիւղականաց և ծառայից։ Անդէն վաղվաղակի 'ի վեր երևեցան հարիւր հազար գիւղականք սպառազէնք յամենայն կողմանց. և Քոշուսքոյ նոքօք հանդերձ և այլովք բազմօք մտեալ նախ 'ի Քրաքով անդ անտի 'ի Վարշաւ. ուր աղմուկ անհնարին յուզեալ՝ ընդ ժամս երեսուն և չորս

եղև մարտ սաստիկ, և կոտորեցան բաց յերկուց հազար Ռուսաց գրեթէ ամենայն աւագորեարն Լեհաց՝ որք հաւանեալն էին ընդ պահանջանս Կատարինեայ :

Մինչ այս մինչ այն, և ահա Ռուսք և Բրուսք և Գերմանացիք հեղեղեցին ամենայն ուստեք յաշխարհն Լեհաց, հարին ցրուեցին զժողովեալսն առ Քաշուպքայ, և զնա ձերբակալ արարին :

Դարձեալ զօրաժողով եղեն Լեհք 'ի Բրակա մերձ 'ի Վարշաւ, և մարտնչէին ընդ Ռուսս. այլ սոքա առաջնորդութեամբ քաջին Սուվորովայ ժամս վեց անհնարին պնդութեամբ մարտ եդեալ առին զաւանն, և հարին 'ի Լեհաց արս քսան և երիս հազարս ընդ մեռեալ և ընդ վիրաւոր :

Ստանիսլաւ որ փախուցեալ մեկնեալ էր յաշխարհէն՝ առաքեաց առ Կատարինէ մուրհակ հանդիսական, որով տայր 'ի ձեռս նորա զթագն իւր մինչև 'ի սպառ, և ինքն ևս գնաց 'ի Բեթըրպուրկ: Յայնժամ և երկքին պետութիւնքն բաժանեցան յիւրեանս զԼեհաստան մինչև ցայսօր :

Յետ այնորիկ էառ Կատարինէ և զՔուրլանտիա և զՍեմիկալլիա, և կացոյց զնոսին նահանգս Ռուսիոյ: Անդ և զօրավար նորա Զուպով էառ զԴարբանդ, և սկսաւ յառաջ խաղալ 'ի վերայ Պարսից՝ որք նեղէին զՀերակլ:

Իսկ Կատարինէ մինչդեռ ակն ունէր այլոց ևս յաղթանակաց՝ յանկարծամահ եղև գիշերայն 'ի կաթուածէ 'ի 15 աւուր Նոյեմբերի յամին 1796, ամաց լեալ վաթսուն և եօթանց, և թագաւորեալ ամս երեսուն և չորս իբրև զմիւս ոմն Շամիրամ:

Յայլ իմն կերպարանս փոխեցաւ Ռուսիա առ նորա թագաւորութբ̃ն, եթէ 'ի բազմապատիկ աշխարհակալութ̃եցն, և եթէ յիմաստուն տնտեսութ̃են ըստ ամենայն գլխոց, և զարմացաւ ամենայն Եւրոպա ընդ ճոխ պերճութ̃ի արքունեացն Պետրպուրկայ և ընդ անբաւութ̃ի աշխարհացն զորս կալան Ռուսք 'ի տասն վերջին ամս Կատարինեայ:

Մինչև 'ի ժամանակս խռովութ̃են Գաղղիոյ՝ վայելեցին և ճարտարք եւրոպացիք 'ի բարձս պատուոյ և 'ի շահս օգտի յաշխարհին Ռուսաց. այլ անտի և այսր փակեցաւ իմն ընդդէմ նոցա Ռուսիա: Սակայն և գիտունք ոչ այնչափ զարգացան առ նովաւ որչափ ակնունելի էր. և վասն պատերազմաց յաճախութ̃ե անկատար մնացին յոլով շինութ̃իք՝ զորս սկսեալ էր նորա, ևս և մատեանն օրինաց զոր յօրինէր:

Արժանի յիշատակաց գիւտք եղեն առ նովաւ յաւերակս Ապլայկք քաղաքի 'ի դաշտն Սիպիրայ առ Իրթիշ գետով, զի գտան մեծամեծ դարանք հազարաւոր ձեռագիր մատենից յանձա-

նօթ բարբառս և . 'ի լեզուս Չինաց, խալմուխից, և Մանչու Թաթարաց, և պահին ցարդ 'ի գրատունս ճեմարանին:

## ԳՕՂՈՍ

ՋԱՄԵՆԱՅՆ ժամանակս Թագաւորութեն Կատարինեայ կեցեալ Գօղոսի 'ի Կաչինա, ուր զբօսնոյր գնդաւ միով զօրականաց՝ զորս զգեցուցեալ էր 'ի ձև Բրուսացի, իբրև անց բազմեցաւ յաԹոռ մօրն իւրոյ՝ նախկին գործ արար յետս կոչել զզօրսն առաքեալս 'ի Կատարինեայ 'ի Պարսս: Զի նոքա անտավորք օդոյ և բերոց կողմանցն այնոցիկ՝ յախտս մահու անկեալ կոտորէին օր ըստ օրէ, և 'ի հարիւր հազար զօրաց հազիւ Թէ հնգետասան հազարք եկին ապրեցան 'ի Ռուսիա:

Պետութիւնք Եւրոպայ բազում անգամ յորդորեալ զԿատարինէ, և հաւանեցուցեալ էին զնա առաքել յամին 1795 տորմիղ մի ութուտասան նաւուց յօգնութի Անգղիացւոց ընդդէմ Գաղղիոյ: Եւ Գօղոս որ ատեայր զԳաղղիացիս ժամանակին՝ ոչ միայն որպէս Թագաւոր, այլ և որպէս այր իշխական՝ որ զզուէցի 'ի Թեթևամիտ նորաձևութեց, եդ 'ի մտի միաբանել ընդ Թշնամիս Գաղղիոյ իբրև պաշտպան ապետութեն

Մեքլենպուրկայ և քահանայապետին Հռով-մայ, և Նիզակակից Թագաւորին Օսմանեանց. և պատուէր ետ զօրացն Լեհաստանի չուել ՚ի Գաղղիա կոյս ընդ զօրավարութեամբ Ռազէմպերկայ կոմսին։ Այլ նա ոչ այնչափ յաջողակ թուէր ՚ի գործն որպէս քաջն Սուվորով, որ բազում անգամ պաղատեալ էր զԿատարինէ և զՊօղոս՝ զի թոյլ տայցեն ինքեան երթալ և ընդ փարէզ անցուցանել զանցսն Օզուի և Բրակայ։ Բայց Կատարինէ վաղ մեռաւ, և Պօղոս զառաջինն ընդ ակամբ հայէր ընդ քաջ զօրավարն. սակայն ՚ի վերջէ կարգեաց զնա մարաջախտ մեծ, և արձակեաց յԻտալիա փոխանակ Ռազէմպէրկայ։

Մինչդեռ Քռայ զօրավար Գերմանացւոց խորտակեալ էր զԳաղղիացիս ՚ի Վերոնա, Սուվորով եմուտ ՚ի Միլան իւրովքն, և գերմանացի զօրօք, և անտի անց ՚ի Պադոս գետ։ Անդ յայնկոյս գետոյն հարկեցաւ զօրավարն Գաղղիացւոց Մառօ ճակատ յարդարել ընդդէմ եօթանասուն հազար զօրաց՝ երկոտասան հազար Գաղղիացւովք. և երկիցս յաղթեալ՝ յերրորդումն ՚ի պարտութեան մատնեցաւ, և խոյս ետ ՚ի տեղի մի ամուր, մինչև եհաս և Մաքտոնալ իւրովքն ՚ի Նէապօլսոյ. այլ և նա ոչ տևեալ առաջի ամբոխին Սուվորովայ՝ ՚ի փախուստ դարձաւ։

Այսպէս ընդդէմ Ռուսաց Ճուապեա

զօրավար, և 'ի խառնուրդս մարտին մինչ դեռ քաջապէս կռուէր, հարեալ 'ի հրազինուց մեռաւ անդէն, և ցրուեցան Գաղղիացիք:

Եհաս 'ի Ռուսիոյ նոր զօրք ընդ նոյն աւուրս և Քորզաքով մինչև 'ի Զուիցցերի: Ընդ առաջ եղև նմա Մասսէնա զօրավար Գաղղիացւոց, և եղև անդ մարտ սաստիկ յոյժ, յորում անհնարին հարուածս ընկալան Ռուսք՝ այն առաջին անգամ յայնմ դարու 'ի պարտութի մատնեալք. և 'ի փախչել անդր թերևս 'ի սպառ խորտակէին՝ թէ չէր Մասսէնայ երկուցեալ 'ի գալստենէն Սուվորովայ:

Զի ծերունին այն զօրավար այնպէս իմն երագէր ձեպէր յընթացսն ընդ ձիւնապատ լերինս Զուիցցերաց, զի գունդք գունդք Գաղղիացւոց դիպեալք զճանապարհայն՝ և անգամ զդէմ ունել արշաւանին ոչ իշխէին: Եւ իբրև իւրքն պարտասեալք 'ի սովոյ և 'ի ցրտոյ և յաշխատութէ ճանապարհին՝ ոչ ևս կամէին յառաջ խաղալ, Սուվորով ետ պեղել փոս մի 'ի վերայ ճանապարհին, և ինքն տարածեալ անձամբն 'ի նմա գոչէր. « Ծածկեցէք զիս ընդ հողովս. և թողջիք աստ զզօրավար ձեր. չէք դուք իմ որդիք, և ոչ ես հայր եմ ձեր, թոյլ տուք ինձ աստէն մեռանել »: Խիղախեցին զօրականքն, և յարուցեալ զնա՝ խրախոյս կարգացին ելանել 'ի կա-

տար լերինն և հալածել անտի զԳաղղիացիս, որպէս և արարին իսկ: Այլ Սուվորով առեալ զլուր միանգամ և երկիցս պարտելոյն Քորզաքովայ, և զԳերմանացւոցն նիզակակցաց՝ լքանել զքանակն Ռուսաց, դարձ արար և ինքն և մեկնեցաւ յաշխարհ իւր:

Զայս ամենայն իբրև զգաց Պօղոս, ցասուցեալ ընդ վատութեն նիզակակից զօրավարացն՝ հրամայեաց ամենայն զօրաց իւրոց դառնալ դալ 'ի Ռուսիա, և այլ ոչ ևս խառնեցաւ 'ի շփոթս Եւրոպայ:

Սուվորով մեծաւ աշխանօք եկեալ 'ի Գերմանիոյ՝ առ ցաւոց սրտին խօթացաւ, և կիսամահ հասեալ 'ի Բեթըրպուրկ՝ յետ ոչ բազում աւուրց մեռաւ այրն քաջ՝ մականուանեալն 'ի Կայսերինէայ Ռիմնիքեցի, զի հասեալ էր մինչև 'ի Ռիմինի քաղաքն, և 'ի Պօղոսէ՝ Իտալական. որ և ուրեք յիւրում հրովարտակին կոչէ զնա զօրավար վեհագոյն ամենայն զօրավարաց՝ որ երբէք կացեալ իցեն ուրեք մինչև 'ի ծագս աշխարհի. և հրամանք նորա և կարգադրութիւնք մի մի օրէնք համարեցան զինուորական վարժից Ռուսիոյ:

Իսկ զօրք նորա քան հազար նշխարեալք յութսուն հազարացն՝ խոնջք և վաստակք անշքացեալք և տառապեալք և քրձազգեստք դարձ արարեալ յաշխարհն՝ ոչ նուազ փառաւորեցան՝ քան

եթէ զամենայն զԵւրոպիա զինու զօրու-թբ նուաճեալ էին. և յաղթականք անգամ նոցին յապուշ հարան ընդ ան-յողդողդ արիութիւն նոցա և ընդ հաւատս առ Աստուած և առ զօրավար իւրեանց:

Ցայնչափ մխսատուցին, և յառաւելն ա-ռատաձեռնութեցն Կատարինեայ հա-տան սպառեցան գանձք աշխարհին, և Պօղոս զիջոյց զարժէս դրամոց յոյժ յոյժ, և հնարեցաւ զթղթադրամն ըստ այլոց ոմանց եւրոպական պետութեանց: Այլ իբրև ետես զի կարի իմն յաճա-խեաց թուղթն, յաւուր միում վեց մի-լիոն թուղթս հրամայեաց այրել 'ի հրա-պարակի, և բազմացոյց առ ժամն զպղն-ձի՝ մինչև բովք Սիպիրիայ առ սակաւ սակաւ լրացուցեն զթերին արքունի գանձուցն:

Այս եմոյծ Պօղոս 'ի զօրս իւր զեւրա-տութի զինուորայն Բրուսաց, և զան-ցոյց ևս զնոքօք, մինչև արանջել նո-ցա զինքնակալէն: Ոգունք չափ զուն գործեաց անհետ առնել և զամենայն գաղղիական նորաձևութիւս, և անգամ զքաճկան գաղղիացի և զգլխարկ բոլոր-չի՝ յանցանս գրէր զգենլեացն: Զկրօ-լովս վասն այսպիսի յանցանաց և վասն այլոց կասկածանաց եդ 'ի բանտի, աք-սորեաց, և մերկացոյց յրնչից: Իւ 'ի վերջէ ըստ կասկածոտ բարոյիցն ան-հանգիստ եղեալ, մեռաւ 'ի 11 մարտի յամին 1801, թագաւորեալ ամս չորս

և ամիսս ինչ, և էր ինքն քառասուն և եօթն ամաց ։

Փոքր մի յառաջ քան զմահն Պօղոսի ստացան Ռուսք և զաշխարհն Վրաց. զի տեսեալ որդւոյն Հերակլի՝ թէ Պարսք վաղ կամ անագան ունին յինքեանս գրաւել զաշխարհն Վրաց, լաւ համարեցաւ տալ զայն 'ի ձեռս Ռուսաց, և ինքն եկն 'ի Բեթրպուրկ ։

Որդիք չորք էին Պօղոսի. Աղէքսանդր, Կոստանդին, Նիկողայոս, և Միքայէլ. և զմի մի 'ի նոցանէ կարգեաց դնդապետս գնդից գնդից պահակաց, և զանդրանիկն եդ հրամանատար ընդհանուր զօրացն Բեթրպուրկայ ։

Սիրող գոլով արդարութե, կարգեաց արկղ մի՝ յորում համարձակ էր ամենեցուն արկանել զգիրս պաղատանաց և հայցուածոց, և մի ոմն 'ի խորհրդականաց իւրոց այգուն այգուն մատուցանէր նմա զիմաստս թղթոցն. այլ զեղծանել նովաւ անխոհեմին խափանեաց զայն ։

Եբարձ 'ի գիւղականաց զբաժ ցորենոյ և այլոց արմտեաց, և ազատեաց ըզբազումս 'ի Լեհաց բանտարկելոց, ընդ որս և զՔոշչուսքօյ ։ Հաստատեաց զկարգադատաստանւոյն, կանգնեաց դպրոցս որբոց և օրիորդաց, որոց և զտիկինն իւր կարգեաց 'ի պաշտպան ։ Կառոյց հոյակապ շինուածս Հասարակաց 'ի Մոսկուա և 'ի Բեթրպուրկ ։ Կարգեաց ատեան քննութե և օտարազգի գրոց մտելոց 'ի

Ռուսիա, և ապա բնաւ իսկ արգել ըզ-մուտ նոցին: Հրատարակեաց զմատեան օրինացն Կատարինեայ 'ի պարծանս մեծի կայսրուհւոյն: Շնորհեաց բազում և կարևոր ազատութիւս առանձինն հրովարտակօք Հայոց բնակելոց յԱժտէրխան, 'ի Գրիգորիպօլիս, 'ի Դարբանդ, 'ի Խարասու, և յՂուկի Խրիմ:

Ձեռն էարկ Պօղոս և 'ի կարևոր գործ հաստատութեան կարգի յաջորդութեան, որ անփոփոխ և անշարժ կարիցէ մնալ մինչև 'ի սպառ. և ձեռնագրեալ 'ի կտակին ինքն և դշխոյն իւր՝ յաւուր պսակման իւրոյ յինքնակալ եդ զայն 'ի վերայ սեղանոյ եկեղեցւոյն 'ի Մոսկուա: Այսպէս յամին 1797 հրատարակեաց զանջնջելի օրէնսն՝ որովք սահմանիւր աթոռանակալն տոհմին ըստ գլխոց զկալուածս, և զեկամուտս, զիշխանութիւս և զինչսն անդամ պատուոյ, և զկարգ պայազատելոյ նոցա զիրերաց ըստ ամենայն գուշակելի դիպուածոց և հանգամանաց:

Այսպէս Պօղոս 'ի սուղ ժամանակի թագաւորութեան բազում ինչ յօգտակարաց 'ի գլուխ տարեալ՝ թէ ոչ կոչեցաւ պերճ ինքնակալ և աշխարհակալ, այլ յիրաւի բարի և բարերար և հայր աշխարհին իւրոյ խոստովանեցաւ յամենեցուն:

# ԱՂԵՔՍԱՆԴՐ Ա.

ԱՄԲԱՐՁԵԱԼ Մեծի Թագաւորին յաթոռ ինքնակալութեան Ռուսաց 'ի 24 մարտի, յամին 1801, ըստ 'ի մանկութէ գեղեցիկ դաստիարակութեան 'ի ձեռս համբաւոյն իւրոյ Կատարինեայ երկրորդի, և հռչակաւոր բանասիրին Լահարփայ՝ անդէն յայտ արար զօրգաւոր մարդասէր և իմաստուն բարոյիցն՝ բազմապատիկ շնորհս և ազատութիւնս պարգևեալ կարօտելոց: Նուազեաց զհարկս, դարձոյց զաքսորեալս, ներեաց զապառիկս զինուորաց, և եբարձ զխափան մտից օտարազգի գրոց 'ի Ռուսիա. այլ այս ազատութիւն յետ ամաց ինչ 'ի դէպ ամփոփեցաւ: Կարգաւորեաց զդատաստանական կարս, և ձեռն եառ 'ի բարգաւաճել զվաճառականութիւն: Հրաման ետ եհան 'ի բաց լքանել իշխանաւորաց զանուան անուանակոչութիւնս աւելորդս:

Առանձին խնամով ուշ կալաւ 'ի զարգացումն գիտութեանց և արուեստից յիւրում պետութեան՝ մեծապարգև մեծարեալ զընտիր մատենագիրս. և 'ի յոլով քաղաքս, որպէս և 'ի Տփխիս յամին 1804, կանգնեաց մեծամեծ դպրոցս հասարակաց:

Խաղաղասէր որդին Աղեքսանդրի հնարս

հաշտութիւն հոգացեալ ընդ պետութիւնս Գաղղիոյ և Անգղիոյ, աղաչէր զնոսա 'ի մէջ դաշնաւորութեան յամին 1805: Այլ Նաբոլէոն տիրապետեալն յայնժամ 'ի Գաղղիա՝ Թշնամանօք հանդերձ արհակեաց զդեսպանն Ռուսաց 'ի Փարիզէ 'ի Ռուսիա: Այսմ իբրև Գերմանացիք 'ի մտօք խաղացին ընդդէմ Նաբոլէոնի, անձնապարեաց և Աղեքսանդր յօգնութիւն նիզակակցացն իւրոց Գերմանացւոց. այլ չև հասեալ նորա՝ առաւ Վեննա, և Աղեքսանդրի 'ի միում ճակատամարտի ձախողեալ եթող զզօրս իւր առ սահմանօքն Աւստրիոյ, և մեկնեցաւ 'ի Պեթերբուրգ:

Ի տիրել Նաբոլէոնի 'ի Պրուսիա և 'ի յարձակիլ զօրք 'ի Ռուսս յամին 1807, Ռուսք ոչ կարացեալ զդէմ ունել բռնութեան Գաղղիացւոց 'ի սպառ, յետս ընդ կրունկն նահանջեցան. և Աղեքսանդր խօսեցաւ ընդ Նաբոլէոնի 'ի հաշտութիւն յ8 յուլիսի:

Յելս կոյս 1808 ամին 'ի բորբոքել վերստին պատերազմին Գաղղիացւոց ընդ Գերմանացիս՝ Աղեքսանդր ոչ միանեաց 'ի մի կամ 'ի միւս կողմն: Այլ իբրև եառ Նաբոլէոն միւս անգամ զՎեննա և զՊրուսիա, և անհնարին խորտականօք սպառնայր Ռուսաց՝ կանգնել անդրէն զտէրութիւն Լեհաց զկործանեալն, և պահանջէր յԱղեքսանդրէ ծանր ծանր պայմանս անհարկելիս և անկրաւս, Աղեք-

սանդր զուն գործէր հնարս խաղաղու-
թեն գտանել, այլ 'ի զուր։ Զի Նափո-
լէոն առանց ինչ արգասաւորութեան մնացեալ
'ի սահմանս նորա հինգհարիւր վաթսուն
հազար զօրօք յամին 1812։

Մինչդեռ Աղեքսանդր խորհէր հա-
ստատ մեծ զաշխարհին իւրոյ թողուլ
'ի Գաղղիացիս՝ զի գտնես միւսոյ մասինն
յապահովելի կացցէ մնասցէ իշխան, իւրքն
ահաւորին սաստկութեամբ գոռայքն ընդ Գաղ-
ղիացիս առ Սմոլենսք քաղաքաւ. յո-
րում ձախատու կատարած անհնարին
լեալ երկուանքն՝ մնայր մարտն անպար-
տելի։ Ապա Ռուսք առ 'ի ձգել զթըշ-
նամին 'ի խորս աշխարհին իւրեանց յա-
մայի և յանձրդին անապատ՝ յետս
ընկրկեալ մեկնեցան 'ի Մոսքուա։ Իսկ
եկին մերձեցան Գաղղիացիքն անդր, հուր
հարին Ռուսք ընդ ամենայն կողմանս
քաղաքին, և խոյս ետուն 'ի ներքսա-
գոյն անապատս. և 'ի հասանել Նափո-
լէոնի անդր՝ աճիւնացեալ տեսանէր ըզ-
թագաւորեալ քաղաքն։

Յայնժամ հրաման ետ Նափոլէոն զօ-
րաց իւրոց չու դարձի առնել, զի ձմեռն
սաստկապատույց 'ի վերայ հասեալ կայր. և
մինչ դեռ զանգաղէին նոքա, պաշարեցաւ
երկիրն առհասարակ, և կոտորեցաւ
գնդացեալ ողջոյն բանակն. և զմնացեալսն
'ի սուր սուսերի կոտորեալ Ռուսաց՝
առին միւսանգամ զՎիլնա, և զՎարշաւ,
ուր յայտ արար Աղեքսանդր և զերա-

ւունս իւր ընդդէմ Նաբոլէոնի առան-ձին հրովարտակաւ։

Իսկ Նաբոլէոնի վերստին զօրաժողով լեալ 'ի Փարէզ՝ խաղաց երկքարիւր և վաթսուն հազար զօրօք և եկն զՍաք-սոնիա։ Անդ գրգռեցաւ մարտ սաստիկ ընդ Գաղղիացիս և ընդ դաշնաւորեալ պետութիւնսն Ռուսաց և Բրուսաց և Գերմանացւոց. յորում մարտի, որպէս և յայլ նուագս, Աղեքսանդր ինքնին գլխովին շահատակեալ քաջութեամբ նախ-ճիրս 'ի թշնամիս անդր գործէր։

Նաբոլէոն և յայս նուագ յաղթա-կան գտեալ վանեաց զդաշնաւորսն, որք և 'ի նահանջել իւրեանց յետոյ՝ հրձիգ-արարին զամենայն՝ առ 'ի չթողուլ Գաղ-ղիացւոց համբարս կերակրոյ։ Յայն-ժամ պայմանեցաւ երկուստեք առ սուղ ժամանակ դուլ առնել զինուց. յո-րում ժամանակի որոշեցաւ Նեմսակա-ցւոցն և զԱւստրիականսն ակրանն՝ աստուա-րացան յոյժ յոյժ քան զԳաղղիացիս, և ճակատեալ առ Լիփսիա քաղաքաւ՝ հարին խորտակեցին 'ի սաստ զզօրս Նա-բոլէոնի 'ի 16, յ17, և յ18 հոկտեմբե-րի յամին 1813. և իբրև ոչ զիջանէր նա 'ի չափաւոր պայմանս առաջարկեալս նոցին 'ի Նեմսականաց յաղթականացն, վա-նեցին զնա մինչև 'ի Գաղղիա, և մտե-ցան առ հասարակ յաշխարհն։

Անդ էր տեսանել զԱղեքսանդր իբրու-նոր զոմն Աստուածային խաղաղութեան համ-

աշխարհական բանակին, և քաղաքներ բնակչաց երկրին. քանզի նա ինքնին էր որ խօսէր 'ի դիմաց նիզակակցաց իւրոց յամենայն պէտս՝ ըստ նոցին իսկ սահ-մանելոյ: Որոյ մտեալ ընդ նոսա 'ի Փա-րէզ՝ քաղաքներեաց զբնակիչսն, և նոցին իսկ Գաղղիացւոց յղեաց առաք՝ զի զօր-ազգ և օտարազգ տէրուն կամեցին յայնմ հետէ ունել, ինքեանք ընտրեալ կալ-ցին: Եւ 'ի խնդրել Գաղղիացւոց 'ի մի-բերան զԼուդովիկոս ԺԸ Բուրպոնեան 'ի Թագաւոր, և յուղարկեալ կալ 'ի Նա-փոլէոնէ, հաւանեցաւ նոցա Աղէք-սանդր. և անդ դեգերեալ մինչև 'ի գալ Լուդովիկոսի՝ եւ նմա ընդ առաջ գըր-կախառն ողջունիւ, և ած զնա յապա-րանս նորին, ուր չէր ինքն օթևանեալ՝ 'ի պատիւ գահուն Գաղղիոյ:

Արդ յ30 մայիսի յամին 1814 հաս-տատեցաւ 'ի Փարէզ հաշտութիւն խաղա-ղութեն 'ի մէջ ամենայն պետութեց Եւ-րոպայ, և 'ի վաղիւ անդր Աղէքսանդր ճաշեաց ընդ արքայի յարքունիս նորին. յորում պահու խուռն բազմութիւն քա-ղաքին գոյթ առեալ 'ի հրապարակ անդր՝ 'ի ձայն ցնծութեն աղաղակէին. «Կեցցէ Աղէքսանդր, կեցցէ խաղաղա-րարն Եւրոպիոյ. Կեցցէ արքայ, կեցցէ Լուդովիկոս ցանկալին »:

Թողեալ Աղէքսանդրի զՓարէզ եկ և պատարուն հռչակաւ իւրոց գեղեցիկ գնացիցն բարեկամութեն՝ խաղաց գնաց

ընդ Փեգերիկոսի Գ. արքային Պրուսաց 'ի Լոնդոն և յՕքսֆորտ, և ամենայն ուրեք կայսերական շքով մեծարեալ՝ դարձ արար անդրէն յաշխարհ իւր, և եհաս 'ի 25 յուլիսի 'ի Պետերբուրգ ընդ գշխոյին իւրում, որ ընդ առաջ եկեալ էր նմա մինչև 'ի Գերմանիա:

Եւ թէպէտ Աղեքսանդրի վաղագոյն կանխեալ ազդ արարեալ էր անդր՝ չառնել ինչ նմա հանդէս յաղթանակի, զի ուսեալ է ասէր յաջողուածն մարտին, սակայն քաղաքացիքն մեծաշուք հանդէս ցնծութեան կատարեցին 'ի մտանել նորա 'ի Պետերբուրգ: Յայնժամ տպեաց Աղեքսանդր պատկեր պատուոյ առ. 'ի բաշխել զօրականին՝ փորագրեալ 'ի մի կողմն. «Մի՛ մեզ տէր, մի՛ մեզ, այլ անուան քում տո՛ւր զփառս»:

Իբրև անցին 'ի վերայ ամիսք ինչ, գնաց ընդ արքային Պրուսաց 'ի Վիեննա, ուր 'ի ժողովել ամենայն թագաւորաց Եւրոպայ՝ յառաջնում աւուր ամսոյ նոյեմբերի յամին 1814 ածեր լինել ընդհանուր ժողով թագաւորաց: Ի հասանել անդր կայսերն Գերմանացւոց Փրանչիսկոսի Բ., այն ինչ շուրջ ածէր զաչս իւր կայսրն եթէ ոք ձեռն տացէ նմա իջանել յերկիւորէն, փութացաւ էջ Աղեքսանդր յիւրմէ երկիւորէն, և ընթացաւ կարկառ. զձեռն իւր առ. կայսրն 'ի հիացումն ամենայն:

Ի ժողովի անդ զամենայն ձիգն թա-

փեաց Աղեքսանդր ընդդէմ ոսոխաց իւ-
րոց առ 'ի պինդ ունել և չզատանել 'ի
պետութէն Ռուսաց զԹագաւորութիւն
Լեհաց. որում 'ի վերջէ հաւանեցան
ամենեքեան 'ի յունուարի ամին 1815,
Ճանաչելով զԱղեքսանդր 'ի Թագաւոր
Լեհաց՝ անուամբս՝ Թագաւոր կարգեալ
'ի բարեկարգուն աշխարհին: Զոր և ար-
դիւնացոյց Աղեքսանդր՝ բազմապատիկ
պիտանի կարգաւորութեքն 'ի Լեհաստան:
Ի նմին ամի հաշտութիւն արար Աղեք-
սանդր և ընդ Ֆէթհ Ալի շահին Պարսից,
որ եթող 'ի Ռուսս 'ի սպառ զամենայն
զՄիւնիս, և զՏաղստան, ապա և զՎիրս:
Այն ինչ այսպէս յանդորրու էր Եւ-
րոպա, Նափոլէոն զերծեալ յարգելա-
նէն իւրմէ յԷլպա կղզւոյ՝ դայր մտա-
նէր 'ի Փարէզ: Աճապարեաց Աղեք-
սանդր ազդ առնել նիզակակից Թագա-
ւորաց, և ինքնին խաղաց 'ի Գաղղիա:
Այլ մինչչև հասեալ նորա անդր, Վէլ-
լինկդոն զօրավար Անգղիացւոց նկուն
արար 'ի սպառ զՆափոլէոն. և Աղեք-
սանդրի մտեալ 'ի Փարէզ, և խնդակից
լեալ Լուդովիկոսի, դարձ արար 'ի
Լեհս. ուր սա աւաջին 'ի Ռուսաց ե-
դաւ զԹագ աշխարհին, և ապա անց
գնաց 'ի Բեթրպուրկ ցնծալից հրճուա-
նօք և աղաղակաւ քաղաքացւոցն 'ի
ձայն զանգակաց և հրազինուց:
Յամին 1816 'ի յունուարի 1, հրո-
վարտակ արար տարագրութե Յիսու-

սեանց 'ի Ռուսիոյ, ըստ ամբաստանութեան, թէ նոքա գործուցեալ իցեն զոմանս յապստամբութեան 'ի հռոմէական հաւատս՝ ընդդէմ օրինաց նախնի թագաւորացն Ռուսաց։

Գտաւ Աղեքսանդր և 'ի ժողովի թագաւորացն գումարելոց 'ի Վերոնա քաղաք յամին 1821 'ի բարեկարգել զիրս Իտալիոյ և Սպանիոյ. և անտի եւ շրջել ընդ երևելի քաղաքս աշխարհիս։ Դարձ արարեալ յԻտալիոյ 'ի Ռուսիա լի եռանդեամբ ժամուն առնելոյ և զերն ազգային ծագ քաղաքականութեան, իմաստութեան և ճարտարութեան, զոր իւրովի քաջակիրթ անդրժակաւ և խոհական ընթացք գիտնական էր յամենայն կողմանս Եւրոպայ, այնչափ ինչ բարեկարգութիւն յաւել յառաջինն, զի յիրաւի անուանեցաւ մեծ խնամակալ ազգի ոչ միայն մեծի և քաջի, այլ և իմաստնոյ և ճարտարի, և անյագ ուսումնասիրի։

Ողբերգեալ տայր զօգուտս ընդ ամենայն կողմանս լայնածաւալ աշխարհին իւրոյ, յերկրորդում նուագի ճանապարհորդութեան իւրոյ 'ի Խրիմ յամին 1825, երբ եհաս 'ի Թագանռոգ քաղաք, ընկղմեցաւ 'ի տենդն, և 'ի սակաւ աւուրս վախճանեցաւ անդ զկեանս իւր յամսեանն դեկտեմբերի։

Լացին զնա Ռուսք առ հասարակ, լացին և օտարազգիք համօրէն. նոքա երբ զերախտեանց բնիկ հայր գոլովութ.

և տէր աշխարհաշէն, և տարա խորհ զմի 'ի մեհաղանց և 'ի ակերն անխղելաբանա-լեաց, որոց գործք և բանք և խորհուրդք սքանչելիք յոյժ և գովելիք՝ առաւել օրի-նակի լեալ լինին աշխարհի։

## ՆԻԿՈՂԱՅՈՍ Ա.

ՔԱՆԶԻ Աղեքսանդր ոչ եթող որդի ժառանգ աթոռոյն, ըստ կարգի անկա-նէր թագաւորութիւն Կոստանդնի եղ-բօր նորին երկրորդի որդւոյն Պօղոսի. այլ զօրութեամբ յայտարարութեան հրա-տարակելոյ յԱղեքսանդրէ յամին 1823 անկարծաւ յաթոռ ինքնակալութեան եր-րորդ որդին Պօղոսի ՆԻԿՈՂԱՅՈՍ Ա., որ և թագաւորէ այժմ մեծաւ փառօք։

Յամին 1826, 'ի 5 սեպտեմբերի օծ-անեցաւ նա 'ի Մոսկուա իբրև ինքնա-կալ Ռուսիոյ, և 'ի նմին աւուր առան-ձին հրովարտակաւ յայտ արար իւր ա-թոռաժառանգ լինել միահաւանն զորդի իւր զմեծ իշխանն Աղեքսանդր Նիկո-լայեւիչ, զծնեալն 'ի 29 ապրիլի յա-մին 1818։ Այլ յամին 1829, 'ի 24 մայիսի պսակեցաւ 'ի Վարշաւ որպէս թագաւոր Լեհաստանի։

Անդէն ընդ ինքնակալել իւրում յա-ծույց զապստամբութիւն ծագեալ 'ի Բե-թըրպուրկ։ Այլ արար զպատերազմն

ընդդէմ Օսմանեանց, յորում հանդիտացան յոյժ յոյժ երկոքեան զօրավարք նորա Տիպիչ և Փասքեւիչ. առաջինն անուանեցաւ Զապալքանսքի՝ իբր զի անցոյց զզօրս Ռուսաց ընդ քան զԲալքան լերինս, և եմուտ յաղթանակաւ յԱդրիանուպօլիս. և երկրորդն կոչեցաւ Երեւանսքի՝ վասն երկրակալութեցն 'ի Հայս.

Տորմիղ նաւաց նորա նիզակակից եղև Անգղիացւոց և Գաղղիացւոց 'ի հաշակաւոր պատերազմին Նաւարինայ յամսեանն հոկտեմբերի յամին 1828, որով ազատութիւն շնորհեցաւ նորոյն Յունաստանի:

Յամսեանն նոյեմբերի յամին 1830 ապստամբեցին Լեհք 'ի նեղութեան ձեռին Ռուսաց, մինչև մեկնել Կոստանդդնի 'ի Վարշաւայ: Ինքնակալն արձակեաց 'ի վերայ նոցա զՏիպիչ. այլ 'ի յաճախել աղմկին, և 'ի մեռանել Տիպիչայ յախտական ախտէն յամին 1831 'ի յունիսի 10, (որպէս և Կոստանդին եղբայր ինքնակալին մեռաւ 'ի նմին ախտէ.) առաքեցաւ 'ի վերայ Լեհաց քաջն Փասքեւիչ. որոյ առեալ պաշարմամբ զՎարշաւ՝ նկուն արար 'ի սպառ զԼեհս:

# ՆԿԱՐԱԳԻՐ ·

## ՌՈՒՍԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԻ

---

ՌՈՒՍԻԱ գրեթէ եօթներորդ մասն է ցամաքի աշխարհաց, և վեշտասաներորդ մասն ազգի մարդկան բնակեն 'ի նմա: Զի մակերևոյթ նորին ողջոյն ընդ Եւրոպայ և ընդ Ասիա և ընդ Ամերիկա հաշուի 5,912,000 մղոն քառակուսի. և բնակիչքն ընդ ամենայն 60,000,000: Անհուն ընդարձակութիւն աշխարհին Ռուսաց կարէ աւելին տածել ոգիս 150,000,000. և բնակիչք նորուն ասին յաւելլանալ ամ ըստ ամէ 500,000 ոգիք՝ անընդհատաբ եւեթ, և այն առաւել բնիկ Ռուսք՝ քան թէ եկք և այլա-ազգք:

Այս ճշգրիտ նկարագրութիւն մեծի աշխարհիս՝ կարևոր թուի ըստ արդի աշխարհագրաց բաժանման ճառել զնմանէ 'ի կարճոյ. այս է առանձինն սահմանել և կարգել զԵւրոպականն,

զԱսիական և զԱմերիկեան մասունս Ռուսիոյ ։

## ԴԻՐՔ

ԵՒՐՈՊԱԿԱՆ մասն համարի 'ի 16 աստիճանէ արևելեան երկայնութեան յ62 . և 'ի 40 աստիճանաց լայնութեան յ70 . առեալ ընդ նմին և զԼեհաստան ։

Ասիականին երկայնութիւն է ընդ մէջ արևելեան 34 աստիճանաց, և արևմտեայց 173 . իսկ լայնութիւն է ընդ մէջ 38 և 78 աստիճանաց ։

Ամերիկեան Ռուսիոյ արևմտեան երկայնութիւն է ընդ մէջ 133 և 17 աստիճանաց, և հիւսիսային լայնութիւն ընդ մէջ 55 և 71 աստիճանաց . ոչ հաշուեալ զկղզիսն ։

## ՍԱՀՄԱՆ

ԵՒՐՈՊԱԿԱՆՆ Ռուսիա 'ի հիւսիսոյ ունի սահման զՈվկիանոս հիւսիսային, յարևելից զՌուսիա Ասիոյ, և զծովն Կասպից . 'ի հարաւոյ զՌուսիա Ասիոյ, զՍեաւ ծով, զՄոլտաւիա, զՏաճկաստան Եւրոպիոյ, զԱւստրիա, և զՔրա-

քով. յարեւմտից զԲրուսիա, զՊալթիկ ծով, և զՇվէտս:

Ասիականին սահմանք են 'ի հիւսիսոյ Եւրոպականն Ռուսիա, և Ովկիանոս հիւսիսային. յարեւելից՝ ծովն և նեղուցն Պերինկայ, Ովկիանոս մեծ, և ծովն Օխոթսքայ. 'ի հարաւոյ Քուրիլեան կղզիք, Չինք, ծովն Կասպից, Պարսք, Հայք, և Սեաւ ծով. յարեւմտից Սեաւ ծով, կիրճն Ենիգալէի, ծովն Ազախու, և Ռուսիա Եւրոպիոյ:

Ռուսիա Ամերիկոյ ունի իւր սահման 'ի հիւսիսոյ զՈվկիանոս հիւսիսային. յարեւելից զԱմերիկա անգղիական. 'ի հարաւոյ զՈվկիանոս մեծ. յարեւմտից զՈվկիանոս մեծ, զծովն Պերինկայ, և զՈվկիանոս հիւսիսային:

## ԼԵՌԻՆՔ.

ԵՒՐՈՊԱԿԱՆ Ռուսիա ըստ մեծի մասին դաշտ իմն է գոգցես լայնածաւալ՝ 'ի տեղիս տեղիս զարդարեալ բլրովք և լերամբք ոչ մեծամեծօք: Իսկ հարաւային և արեւելեան սահմանք նորին յաւէտ լեռնայինք են: Արդ գլխաւորք 'ի լերինս Ռուսիոյ այսպէս հաշուին ըստ ոմանց. Սկանդինաւեան լերինք, 'ի միջնաշխարհին Ռուսիոյ, յորս բարձրագոյն է Վալտայ լեառն 175 ճողաչափ: — Կով-

Ջուր յոյժ , բխէ 'ի Լատոկա լճէն , և բաժանեալ 'ի բազում առուակս՝ խառնի 'ի Սայմա ծովակ ։ Այս գետ գեղեցիկ պանծացուցիչ Բէթթըրպուրկայ՝ բազում անգամ ողողացեալ՝ ոչ սակաւ վնասնս հասուցանէ նմին ։ — Նարվա , բխէ 'ի Բէյփուս , և թափի 'ի Ֆինլանտիա ։ — Տվինա հարաւային , բխէ մերձ յակունս Վոլկայի , և անկանի 'ի ծոցն Լիվոնիոյ ։ — Նեման , բխէ 'ի Մինսք գաւառի , և մտեալ 'ի Բրուսիա՝ անուանի Մեմել ։ — Վիս-թուլա , բխէ յԱւստրիա , և անցեալ ընդ Լեհաստան՝ մտանէ 'ի Բրուսիա ։

Ի Սեաւ ծով , Դանուբ · յորմէ Փրութ գետակ ևեթ անկանի 'ի Ռուսիա ։ — Տնէսթր կամ Տնէսթէր (այն է Թուռլա) , որ բխէ յԱւստրիա ։ — Տնէբէր , բխէ 'ի Սմոլենսք , և մերձ յՕզու թափի 'ի Սեաւ ծով ։ — Տոն կամ Տանայիս , ան-ցեալ ընդ գաւառան Թուլա , Թամպով , Վորոնեժ , և ընդ աշխարհն Խազախաց՝ թափի յԱզախ ։ — Կուպան , բխէ 'ի լե-րանցն Կովկասու , և անցեալ ընդ Աբա-զա և ընդ Չէրքէզս , թափի՝ ըստ մասին 'ի Պոնտոս , և ըստ մասին յԱզախ ։

Ի հիւսիսային Ովկիանոս , Փաչէչ , սահման Շվէտաց , բխէ յԻնարա ծովա-կէ ։ — Քոլա , անցանէ ընդ Լապոնիա Ռուսաց ։ — Փէչորա , բխէ յՈւրալ լե-րանց ։

Ի Սպիտակ ծով , Վին , Քէմի , և Քոնկա , բխեն մերձ յԱրքանկէլ ։ —

Օնէկա, բխէ մերձ 'ի լճին համանուն։ — Տվինա հիւսիսային, ձևանայ 'ի խառնուրդս Սուխոնա և Եուգ գետոց։ — Մէզէն, ձևանայ 'ի լճակաց գաւառին Վոլոկտայ, և թափի 'ի ծոց Սպիտակ ծովուն։

Ի ծովն Կասպից, Ուրալ, որ և Եայիք, բխէ 'ի համանուն լերանցն։ — Վոլկա, կամ Էթիլ, մեծ քան զամենայն գետս Եւրոպայ, բխէ 'ի Վոլքոնսքի անտառաց, և անցեալ ընդ բազում գաւառս Ռուսիոյ՝ ընդ 65 կամ ըստ այլոց ընդ 70 բերանս թափի 'ի Կասպից ծով։ Չունի ինչ ուրեք ջրվէժս. վասն որոյ և անխափան նաւարկեն ընդ նա աւելի քան զ5000 նաւակս ակաղձեալս բազմապատասիկ արդեամբք ծովու և ցամաքի։ — Կումա, բխէ 'ի լերանցն Կովկասու, և ընդ բազում բերանս անկանի 'ի Կասպից ծով։ — Թէրէք կամ Թէրք, բխէ 'ի Խազբէկ լերանց։ — Սուլաք, և Սամուրա բխեն 'ի լերանցն Կովկասու։

Յասիական բաժնին հռչակաւոր են գետքս Օպի կամ Օբ, Իրթիշ. Ենիսէյ՝ մեծ քան զամենայն գետս Ասիոյ, Եւրոպայ և Ափրիկոյ. Թայմուրա, Խաթանգա, Անապարա, Օլէնէք, Լէնա, Եանա, Ինտիգիրքա և Քոլիմա, որք թափին 'ի հիւսիսայինն Ովկիանոս։ — Անատիր և Քամչաթքա, 'ի ծովն Պերինկայ։ — Ուրալ, Եմպա, և Կուր, 'ի ծովն Կասպից։ — Ռիոն կամ Փասիս, 'ի Սեաւ ծով։

Են և յԱմերիկեան Ռուսիա գետք բազումք և մեծամեծք, այլ անուանք նոցին և տեղիք չև ևս են քաջածանօթք :

## ՋՐԱՆՑՔ

Ի ԴԻՒՐՈՒԹԻՒՆ վաճառաշահութեան Ռուսիոյ՝ խնամ կալեալ ինքնակալք աշխարհին անդստին 'ի Մեծէն Պետրոսէ՝ փորել ջրանցս և խրամս, և միաւորել զբազում լիճս և զգետս և զծովս Ռուսիոյ. և ցայժմ են անդ աւելի քան զքսան ջրանցս մեծամեծս և պիտանիս. յորս գլխաւորք համարին, ՎԵՐԻՆ ՎՈԼՈՉՈԿ, որ կցէ զՎոլգա ընդ Վոլխով գետոյ, որով և ընդ Նեւայի, ևս և զծովն Կասպից ընդ Պալթիականին. ձգի ընդ մղոնս երիս յերկայնութիւն, և ունի երիս ջրմէժս: Բացաւ յամին 1711: — ԹԻԽՎԻՆԵԱ, որ կցէ զԹիխվինքա գետ ընդ Վոլխովի, և ունի հնգետասան ջրմէժս: Զսա երաց Աղեքսանդր Ա: — ՋՐԱՆՑՔ ՄԱՐԻԻՆՍԿՈՅ, զոր սկսաւ բանալ Մեծն Պետրոս, և աւարտեաց Աղեքսանդր յամին 1808: Կցէ զգետն Կովժա ընդ գետոյն Վիթեգրա. ձգի ընդ մղոնս չորս, և ունի երկոտասան ջրմէժս: — ԼԱԴՈԺՍԿԱ, որ առաւել յաճախեալն է 'ի նաւարկութեան, կցէ զերկուսին զմեծամեծ ջրանցսն զառաջինս ընդ

ափսեանս . ունի երեսուն և երկու ջըր-վէժս , յորոց կէսք զայլ գետս անեն Թափեն 'ի Նոյն , և կէսք զուելը ջուրս նորին արկանեն 'ի ծովակն Լատոկա : — ՋՐԱՆՑՔ ՄԵԾԻՆ ՊԵՏՐՈՍԻ , զոր նորին իսկ անեալ էր զմտաւ , և այժմ յառաջ վարի 'ի կատարումն , ունի կցել զՊոն-տոս ընդ ծովուն Կասպից՝ կցելով զՏոն գետ ընդ Վոլկայի 'ի ձեռն Իլովլեայ և Խամիշենկա անուանեալ բազկաց երկո-ցունց գետոցս . որով երկայնութիւն ջրան-ցիցս ձգեսցի ընդ մղոնս քսանուն :

## ԱԶԳՔ

Ի ԽՈՒՌՆ բազմութիւն այլալեզու և այլազգան ազգաց Եւրոպականն Ռուսիոյ մարթ է այսպէսի իմն զնել խառն բա-ժանման , և հաշուել ընդհանուրս .

| | |
|---|---|
| Ա. ՍԼԱՒԵԱՆՔ . . . | 50,440,000 |
| Մեծ Ռուսք . . . | 33,000,000 |
| Փոքր Ռուսք . . . | 10,000,000 |
| Լիթուանք . . . . | 1,300,000 |
| Լեհք . . . . . . | 5,500,000 |
| Լեթթոնք . . . . . | 600,000 |
| Բուլղարք . . . . . . | 30,000 |
| Բ. ԳԱԼԹԻԱԿԱՆՔ . . . | 3,000,000 |
| Ֆինլանտացիք . . . | 1,400,000 |
| Եսթոնք . . . . . | 480,000 |
| Լափոնք և Լիվոնիացիք . | 11,000 |

| | |
|---|---|
| Սիրիացիք | 30,000 |
| Վոկուլք և Փերմիացիք | 50,000 |
| Ձուաշք | 400,000 |
| Ձերեմիսք | 200,000 |
| Մորտուինք | 100,000 |
| Օսթեակք, Վոթեակք, ևն. | 362,000 |
| Գ. ԹԱԹԱՐՔ | 2,500,000 |
| Ղրիմի Թաթարք | 1,200,000 |
| Խաղմուխք | 200,000 |
| Նողայք | 150,000 |
| Թիւրքմէնք | 200,000 |
| Խըրղըզք | 400,000 |
| Բուխարացիք | 10,000 |
| Բաշկիրք | 150,000 |
| Եախուտք, ևն. | 100,000 |
| Դ. ԿՈՎԿԱՍԵԱՅԻՆՔ. | 1,150,000 |
| Վիրք | 560,000 |
| Լազք կամ Լազիկեցիք | 230,000 |
| Չերքեզք | 190,000 |
| Աբխազք | 90,000 |
| Օսէթք, Միզղիք, ևն | 90,000 |
| Ե. ԹԵՒՏՈՆՔ ԵՒ ԳՈԹԱՑԻՔ. | 437,200 |
| Գերմանացիք | 380,000 |
| Շվէդք | 56,000 |
| Դանիք | 1,200 |
| Զ. ԱԶԳՔ ՀԻՒՍԻՍՈՅ | 200,000 |
| Թունկուզք | 50,000 |
| Սամոյեդք | 20,000 |
| Քամչատացիք, ևն | 500,000 |
| Կուրիլացիք | 70,000 |
| Ամերիկացիք | 20,000 |
| Է. ԱԶԳՔ ԱՍԻԱՑԻՔ. | 900,000 |

Հրէայք . . . . . . 500,000
Հայք . . . . . . . 300,000
Տաճիկք, Չինկենեանք,
Հնդիկք . . . . . . 50,000
Արաբացիք, Պարսք, ևն. . 50,000
Ը. ԱԶԳՔ ԱԶԳՔ ԵՒՐՈՊԱՑԻՔ. 165,000
Մոլդովանք և Ուլահք . 130,000
Յոյնք . . . . . . . 30,000
Անգղիացիք, Գաղղիացիք, ևն. 5,000

Զայս ամենայն հաշիւս ըստ ամանց 'ի նոր աշխարհագրաց եդաք մեր 'ի մերոյ. այլք յոլովք՝ են որ կարի և են որ փոքր մի այլազգ հաշուեն. զոր օրինակ ըղ-Հրէայս ամանք գնեն 460,000, և ամանք 600,000. զՀայս՝ ամանք 74,000. կէսք՝ 200,000, այլք 400,000. զնոյն իմա և զայլոց :

Իսկ ըստ կրօնից՝ գտանին 'ի Ռուսիա Յոյնք կամ Յունադաւանք. որպիսի են Ռուսք, Խազախք, Ուլահք, Վիրք, և ամենայն հիւսիսականք՝ դարձեալք 'ի քնական հաւատս 'ի ձեռն Ռուսաց. ընդ ամենայն հաշուեալք 48,000,000 : — Հռոմէական Ուղղափառք, այսինքն են Լեհք, Ռուսնիակք, Լիթուանք, Հայք և Վիրք ըստ մասին, և այլք, իբր 6.600,000 : — Հայք. 300,000 : — Լութերականք. զոր օրինակ Ֆիննլանտացիք, Շվէտք, ևն, հաշուեալք 2,000,000 : — Հրէայք. 500,000 : — Մահմետականք. 4,000,000 : — Խալմուխք, Մողոլք, և այլ կռապաշտք՝ իբր 600,000, առա-

ւել յԱսիա. զի որք յԵւրոպական բաժնին են՝ նուազին որ ըստ օրէ՝ գտանալով 'ի լոյս առեւտրականին :

## ԲԱՐՔ ՌՈՒՍԱՑ

ԽՏԻՐ մեծ է ընդ Մեծ և ընդ Փոքր անուանեալ Ռուսս : Փոքր Ռուսք (Մալօ-Ռօսսի) բնիկ Սլաւեանք՝ Թխահերք են և մեղուակն և հաստակազմեալ, և բարբառ նոցա ներդաշնակաւոր իմն և քաղցրահնչիւն, իսկ ըստ բարուց՝ պարզամիտ, զուարթ և անհոգ : Մեծ Ռուսք (Վէլիկօ-Ռօսսի) այլիւս բնակեալք մերձ յաշխարհս Գոթաց և Ֆինլանտացւոց՝ խառնուրդ իմն ունին 'ի նոցանէ յամենայնի. վասն որոյ շիկահերք են, և յաճախ ունչքն սակաւ մի 'ի վեր կոյս ցցուեալք. և ըստ բարուց մաղձայինք, շահախնդիրք, և խորամանկք այնչափ՝ մինչև ասել երբեմն մեծին Պետրոսի, «Եթէ դէպ լինէր Իսրայէլացւոց անցս յինէն խնդրել ընդ Ռուսիա, չտայի նոցա թոյլ, զի մի՛ խաբեսցին 'ի Ռուսաց» :

Սակայն առ հասարակ Ռուսք առաւ ունին զլսելիս, և միջահասակք են, այլ յաղթանդամք և տոկունք յոյժ յամենայն ներգործութիւնս և 'ի վաստակս. չափաւորք են 'ի կերակուրս, և ազատք 'ի յաճախ հիւանդութեանց. իսկ զետղ սովո-

րական առ նոսա ընդդէմ բազում ախտից օդն է բարկ՝ խառնեալ երբեմն պղպեղիւ, երբեմն և վառօդով. Եւ և յաճախութիւն բաղանեաց՝ որք անշուք են, և առ գետով ուրեք կառուցեալք սովորաբար, զի բազումք ընդ ելանելն 'ի բաղանեաց՝ արկանեն զանձինս 'ի ջուր ցուրտ, երբեք՝ և 'ի ձիւն, առողջարար համարելով զայն և պնդիչ մարմնոյ ։

Բազում հետաքննին սովորութիւնք էին երբեմն, և ցարդ ևս են 'ի ռամիկս Ռուսաց, որք յաչս եւրոպացի աշխարհագրաց զարմանալիք թէ իցեն, այլ ոչ նոյնպէս և արեւելեայց ։ Գովեալ են առ հասարակ հայրենասէր բարք ազատանւոյն Ռուսաց, և ձիգն նոցա 'ի պայծառութիւն աշխարհին իւրեանց ։

## ԿՐՕՆ

Ի ԺԱՄԱՆԱԿՍ գիցապաշտ մոլորութեան Ռուսաց երկրպագոյն 'ի դիս նոցա համարէր Փէռուն ամպրոպային, որոյ պատկերին գլուխ էր արծաթի, ականջքն և ընչացք ոսկի, բարձքն երկաթի. և մնացորդն փայտ անփուտ. և 'ի ձեռին ունէր քար շանթաձև ։ Քուրմք նորա անշէջ վառէին զհուր առաջի նորա. և երբեմն մարդազոհ ևս առնէին նմա ։

գիս ընդ իշխանութեամբ սիւնհոդոսին հաշուին 480 մենաստանք արանց, և 80 կուսաստանք, առ համարակ 'ի կարգէ արտաքոյ Բողոքի. 28,112 եկեղեցիք, և 67,900 եկեղեցականք։ Իսկ գլխաւոր գործոց կամ վարժարան և աթոռ աստուածաբանութեան եկեղեցականացն Ռուսաց է 'ի Կիեւ։

Ի գալ մեծին Պետրոսի 'ի Փարէզ և 'ի ցուցանել զիղձս իւր միաւորելոյ զեկեղեցին Ռուսաց ընդ հռովմէականին, Աստուածաբանք Սորպոնեան ժողովոյն՝ որոց գլուխ էր հռչակաւորն Լուդովիկոս Հաբերտ, առաջի արարին նմա զդաւանութիւն հռովմէական սուրբ եկեղեցւոյ՝ մի առ մի բացատրելով զգլխաւոր մասունս հաւատոյ, յորս միաբանին և Ռուսք, և դիւրացուցանելով զխնդիրսն որ յաղագս բղխման հոգւոյն սրբոյ, և յաղագս գլխաւորութեան քահանայապետին Հռովմայ։ Պետրոս հաճեցաւ յոյժ ընդ առաջարկութիւնն. և դարձ արարեալ 'ի Բեթրբուրգ՝ մատոյց զթուղթն եպիսկոպոսունս իւր, և պահանջեաց 'ի նոցանէ զպատասխանիսն։ Նոքա այնչափ յապաղեցին զպատասխանին՝ դըժուարութեամբ բազում 'ի մէջ բերելով, մինչև եկին 'ի վերայ պատերազմունք Շվեդաց և Դաղկաց, որովք զբաղեցաւ Պետրոս. և արքեպիսկոպոսն Ռեազանայ և մետրապոլիտն Թէոփանէս մտերիմն Պետրոսի խափանեցին 'ի սպառ զխնդիրն

բանիւք և գրովք գրելովք լուտերական ոգւով ընդդէմ ուղղափառ հաւատոյ: Այսպէս յետ ժամանակաց Բենեդիկտոս ԺԴ պապ գրեաց առ Եղիսաբէթ, և յորդոր լինէր նմա փոյթ առնել միաբանութեան. այլ նա եւս պատասխանի՝ թէ եկեղեցին Ռուսաց չկարէ առնել ինչ առանց հաւանութեան պատրիարգացն արևելից. և ոչ եւս այլ բանք եղեն զմիաբանութէ:

## ԼԵԶՈՒ

Մի 'ի վաթսուն և աւելի եւս շառաւիղաց Սլաւեան բարբառոյ՝ և գլխաւոր 'ի նոսին է և Ռուսացն. այլ սա եւս կրկին համարի. Մեծին Ռուսիոյ՝ որ է Նովկորոտեան Սլաւեանցն, և Փոքուն Ռուսիոյ, այն է Քրիվիչացւոցն. այլ խտիր սոցա առաւել 'ի հնչման անդ նշմարի, քան 'ի կազմութեն բարբառոյն:

Բարբառն Մոսքուայի Նովկորոտեանն է. որ և ճոխացեալ է յոյժ 'ի պերճախօսութե, 'ի քերթողականսն և 'ի բարոյականսն: Քաղցրահնչիւն է, որպէս վկայեն Եւրոպացիք եւս, և առ յաճախութե ձայնաւորաց և ազգի ազգի բաղաձայնից՝ յարմար յոյժ յերաժշտութե և 'ի քերթողութի:

## ԴՊՐՈՒԹԻՒՆ

ԱՆԱԳԱՆ ուրեմն սկիզբն եղև բարգմանելոյ բարբառոյն Ռուսաց 'ի մետասաներորդ դարու, յորում ծաղկեցաւ Նեստորիոս միաբան Քիեվայի, և գրեաց զպատմութիւն Ռուսաց յ858 ամէ մինչև ցամն 1113. նա է հայր պատմագրաց Ռուսաց: Մեծն Պետրոս զարգացոյց զդպրութիւն՝ հաստատելով զճեմարանն գիտութեանց 'ի Բեթրպուրկ, երես զդպրոցս 'ի Մոսքուա, և երկուս համալսարանս յերկոսին 'ի քաղաքսն: Այլ մեծապէս յառաջադիմութիւն դպրութե Ռուսաց եղև առ Թագաւորութեամբ յաջորդաց նորին, որք և անխնայ վարձատրութեամբ քաջ մատենագրաց խրախուսեցին և խրախուսեն զամենեսեան 'ի ծաղկեցուցանել զդպրութիւնս: Աղեքսանդր Ա, երբեմն և զարգելս չընդունելոյ 'ի Ռուսիա զգիրս օտար ազգաց. և գաղղիականն բարբառ հաստատեալ է առ նոսա:

Մատենագիրք նոցա հռչակաւորք են, Նեստոր միաբան 'ի Քիեվայ, ժամանակագիր Ռուսաց նախկին. մեռանի յամին 1100:

Թէոֆանէս Փրոկոփովիչ մետրապօլիտ. ունի բազում գրուածս աստուածաբա-

ամն հրկէզ եղեալ՝ ըստ մասին տպագրե-
ցաւ 'ի Միւլլերայ : — 1750 :

Լոմոնոսով որդի առն ձկնորսի լեալ՝ հայր եկաց մատենագրաց, և մանաւանդ քերթողացն Ռուսաց, Արխանգելոս ծնեալ առ 'ի նոցանէ : Ունի երգս 'ի Մեծն Պետրոս, քերթուածս հովուականս, ողբերգութիւս, թարգմանութիւս 'ի յոյն և 'ի լատին լեզուաց. կանոնս քերթողականս, քերականականս, ճարտասանականս. ներբողեանս յԵղիսաբեթ և 'ի Մեծն Պետրոս, և վերջինն այս գործ՝ գլուխ համարեալ է ռուս պերճախօսութե. արար և Պատմութիւն Ռուսաց յամն 1054 : — 1765 :

Սումորոկով քերթող քաջ 'ի յօրինուածս հովուականի և չափաբանեալ առակաց, ունի և բազում ողբերգութիւս 'ի պատմութեանց հայրենի աշխարհին : Արար հետեւակ բանիւ և Տարեգիրս Մոսկուայի, և Պատմութիւն Սթրելցաց. և ըստ վսեմ և ներդաշնակաւոր ոճոյ՝ գլուխ է ամ մատենագրացն Ռուսաց : — 1777 :

Քէրասքով հմուտ գրեթէ ամենայն լեզուաց Եւրոպայ, պատկերաց զքաջութի իւր 'ի քերթողականին՝ Ռուսիականն մակագրելով դիւցազնական բանաստեղծութե, որոյ նիւթ է առումն խազանայ յԻւանայ Վասիլեւիչ : — 1807 :

Պղատոն արքեպիսկոպոս Մոսկուայի

գլուխ համարեալ քարոզչացն Ռուսաց՝ ունի ճառս և քարոզս յինն հատորս ։

ՆՈՎԻԿՈՎ քաջ հնախոյզ՝ բաց յայլոց գրուածոց ունի Վաղեմի մատենադարան Ռուսաց 'ի տասն հատորս ։

ՄԻՒԼԼԷՐ բազմահմուտ վէսթփալացի, ամս յիսուն և եօթն դեգերեալ 'ի Ռուսիա՝ բազմապատիկ մատեանս աշխատասիրս եթող 'ի ռուս, 'ի լատին և 'ի գերմանացի բարբառս ։

ՌԺԷՎՍԿԻ և ՄԱՅԿՈՎ քերթողք անուանիք, ունին բազում երգս, ողբերգութիւնս, հովուականս և այլ քերթուածս ։

ՔՈՆՏՐԱԹՈՎԻՉ թարգմանեաց և յօրինեաց առաւել քան զտասն հազար վերտառութիւնս, թարգմանեաց և զՀոմերոս, և յօրինեաց զԲառարան ռուս, և Բառագիրս ինչ յերկոտասան լեզուս ։

ՇԷՐԲԱԹՈՎ քաջ պատմագիր․ ունի պատմութիւն Ռուսաց ճշգրտագոյն քան զառաջինսն ։ — 1790 ։

ՓՈՓՈՎՍԿԻ Ճարտար թարգմանիչ՝ փոխեաց 'ի ռուս լեզու զՓոփայ անգղիացւոյ զՃառն յաղագս Մարդոյ, զԼոքայ զՃառն յաղագս Դաստիարակութեան, զերգս Անակրէոնի, զԹուղթս և զերգս Ովրատեայ, զմեծ մասն Լիւիոսի, ևն․ — 1760 ։

ՖՈՆ ՎԻԶԻՆ հանճարեղ 'ի յօրինուածս Թատերական խաղուց ։ — 1792 ։

ԼԷՓԷԽԻՆ ատենադպիր Ճեմարանին

Բեթրպուրկայ՝ ունի ճանապարհորդա-րան յայլ և այլ կողմանս Ռուսիոյ, և բազում ճառս ախտանիս:

Քրաշէննիքով, հրամանաւ պետու-թեան անձամբ ճանապարհորդեալ մինչև յարևելեան ծագս աշխարհին՝ գրեաց զստորագրութիւն վայրացն:

Աշքով իշխանուհին՝ հանդիսացեալ առ-նացի քաջութեամբ 'ի զօրս Ռուսաց, ապա սակս ճարտար քերթուածոցն և բազ-մապատիկ հմտութեան կարգեցաւ 'ի կայս-րուհւոյն տեսուչ ճեմարանին և գրագու-թեանց Ռուսիոյ:

Լոմոնոսով, աշխոյժ 'ի քերթողութէ, գրեաց և զաղղիացի տաղս այնչափ ճար-տար, մինչև պատուել փարիզեցւոց անգամ, և կարծել գործ Վոլթէռեայ զթուղթն առ Նինոն՝ զարգասիս ռուսս հանճարոյ:

Կոլիքով, արար զպատմութիւն մեծին Պետրոսի 'ի հատորս 18: — 1801:

Տերժավին քերթող անուանի, ունի տաղս հռչակաւորս: — 1816:

Օզերով քերթող Թատերգակ: — 1816:

Քարամզին քաջ բանաստեղծ և պատ-մագիր՝ համարի 'ի Ռուսաց Վիրգիլիոս և Թուկիդիդէս միանգամայն: Ի բազմա-պատիկ գրուածս նորա գրուատեալս առհասարակ՝ երևելի է Պատմութիւնն Ռուսաց լիակատար, որ և թարգմանի 'ի գաղղիական և յիտալական բարբառս: — 1825:

